# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋԷՆ

## ՔՍԵՆՈՓՈՆԻ ԱՐՇԱՒԱՆՔԸ ՄԻՆՉԵՒ ՍԵՒ ԾՈՎ

ՁԻՆՈՒՈՐԱԿԱՆ-ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ԵՒ ՑԵՂԱԳՐԱԿԱՆ
ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ ՄԸ




Հեղինակ՝ Է. Ֆ. ՀՕՖՄԱՅՍԹԸՐ
Անդամ Սպայակոյտի Աւստրիական Բանակին


Գերմաներէնէ թարգմանեց՝ Ե Տ Ա Ն

106 պատկերներով, մեծ մասամբ ճեղինակին կողմէ տեղին վրայ առնուած, եւ 4 աշխարհացոյց քարտէսներով


Հրատարակութիւն Հ. ԿՕՇԿԱՐԵԱՆԻ
եւ «ԿԻՐԹԷՄԻՂԵՐԿ ՄԱՏԵՆԱԴԱՐ» Թիւ 17

Կ. ՊՈԼԻՍ
1913

« Ex Oriente lux »

Արեւելքէն կուգայ Լոյսը

## ՅԱՌԱՋԱԲԱՆ

Հեռուն Արեւելքի մէջ կայ գեղեցիկ ընդարձակ երկիր մը: Երկու ծովերու մէջտեղը տարածուած, յաւէրժածին կատարներով բարձրաբերձ լեռնաշղթաներէ եզերուած եւ թափանցուած, լայնածաւալ լիճեր կը կրեն իր անծառ լեռնադաշտերը եւ ծնունդ կուտան ջուրի հոսանքներու, որոնք կ'ոռոգեն ամէն կողմէ աշխարհի քաղաքակրթութեան ամենահին երկիրը՝ Բաբելաստան, եւ դրախտանման պարտէզները:

Այս երկիրը կը կոչուի ՀԱՅԱՍՏԱՆ:

Անոր մասին ծանօթութիւնը կը հասնի մինչեւ ջրհեղեղի զրոյցը, որուն համեմատ բոլոր Հայկական լեռներուն ամէնէն բարձրին եւ ամէնէն ժողովրդականին՝ Արարատի վրայ գնաց կառչեցաւ Նոյ նահապետին տապանը, ուրկէց «դուրս ելաւ մէն մի արարած՝ բազմանալու համար երկրի վրայ»:

Պատմութեան մէջ կը մտնէ իբրեւ անկախ Հիթիթական-Հայկական պետութիւն մը, բայց քիչ ատենէն կտոր կտոր կ'ըլլայ. յետոյ կը միանայ եւ կրկին կը կոտրակուի Ասորեստանցւոց, Մարաց եւ Պարսից տիրապետութեան ներքեւ: Զմրան եղանակին, անոր ձիւնապատ դաշտագետիններուն վրայէն կռիւներով ու տառապանքներով առաջնորդեց Քսենոփոն իր տասը հազարնոց գունդը մինչեւ Սեւ Ծով, եւ այդ երկրին այն ատենուան վիճակին ու անոր բնակիչներուն վրայ տուաւ մեզի արժանընտիր եւ այսօր իսկ յաճախ գերազանց նկարագրութիւններով

պատկեր մը: Մեծն Աղեքսանդր իր կայսրութեան կցեց զայն. Աննիբալի յատակագիծերուն համեմատ ապառաժներով շարամանուած Արաքսին վրայ կառուցուեցաւ Արտաշատ ոստանիկ քաղաքը: Յետոյ եկան Հռոմայեցիք: Անոնց իշխանութեան ներքեւ Հայաստան կը կազմէր Հին Աշխարհի յեղաշրջումներու անկիւնը եւ ամբողջ դարերու ընթացքին սահմանածայրերու վրայ կործանարար պատերազմներու թատերաբեմը եղաւ Հռոմայեցիներուն եւ Պարթեւներուն միջեւ: Աւելի վերջերը Խալիֆաներու իշխանութեան տակ, Հուլաղուի եւ Թիմուրի Մոնկոլները աւերեցին զայն, եւ վերջ ի վերջոյ մեծագոյն մասամբ Օսմանցիներուն ստացուածք դարձաւ:

Ասով կնքուեցաւ իր ճակատագիրը: Իր նոր տէրերուն տակ, կէս հազարեակ տարիներ անջատ մնաց ժամանակի ընթացքէն եւ ժողովուրդներու շարժումէն. մոռցուած էր: Վերջին ռուսեւթրքական պատերազմները եւ մանաւանդ տասնըհինգ տարի առաջ Աբտիւլ Համիտի օրով խուժդուժ ջարդերը եկան իրենց սարսուռներով ապշահար աշխարհին յիշեցուցին թէ տակաւին Հայաստան մը կայ, բարձր մշակոյթով երբեմնի հզօր պետութիւն մը, եւ Հայկական ժողովուրդ մը, որ աշխարհի բոլոր ժողովուրդներէն առաջին անգամ ինք քրիստոնէական հաւատքը դաւանեցաւ, եւ ինք միայն առանձինն երկու հազարեակ տարիներ անյողդողդ կառչելով քրիստոնէութեան՝ պահպանեց իր ցեղին միութիւնը ամենազգի կռիւներու եւ գժտութիւններու հակառակ, բայց քրիստոնէական հաւատքին պատճառաւ իսկ պարտաւորուեցաւ հանդուրժել ամենածանր ճնշումներու եւ հարստահարութիւններու:

Մեծ երկրի մը եւ ժողովուրդի մը դարերով բովանդակ աշխարհի կողմէն այս կերպով մոռցուիլը հազուագիւտ երեւոյթ մըն է, որուն օրինակը չկայ Պատմութեան մէջ: Սակայն ճիշդ այս պարագան դրդեց զիս որ կրկին այցելութիւն մը տամ Հայաստանին, եւ այս առթիւ նաեւ իբրեւ զինուոր, Քսենոփոնի հայթայթած ցանցառ տեղեկութիւններուն համեմատ, իր արշաւանքին զինուորականօրէն հաւանական ուղղութիւնը բռնեմ Եփրատի երկրամասէն սկսեալ մինչեւ ծովը:

Որոշումս անմիջապէս գործադրեցի. իմ տարիքս եղող մարդ մը պէտք չէր որ ձգձգէր:

Ուղեւորութիւնս վերջ գտաւ, նպատակիս հասայ, եւ ջերմ շնորհակալութեան զգացում մը կ՚արթննայ մէջս այն քարեդէպ ճակատագրին հանդէպ, որ թոյլ տուաւ ինծի շատ բաներու ձեռնարկել իմ բազմայոյզ կեանքիս մէջ եւ ի գլուխ հանել:

Սիրելի՛դ իմ մատեան, հաւատարմօրէն քեզի յանձնեցի ինչ որ զգացի եւ ապրեցայ: Հիմա աներկիւղ յաջորդէ՝ քու երեք եղբայրներուդ, ԱՐԵՒԵԼՔԷՆ եւ ՀԱՐԱՒԷՆ, եւ ԳԱՀԻՐԷ-ՊԱՂՏԱՏ-Կ. ՊՕԼԻՍ, պատմէ՝ հեռաւոր երկրին եւ ժողովուրդին վրայ, անցեալին եւ ներկային վրայ, պատերազմի վայրերուն եւ ճակատամարտի դաշտերուն վրայ, աւերակներուն եւ վանքերուն վրայ, ձմեռնական խստութեան եւ գարնանային պերճանքին վրայ: Եւ խիզախ առաջնորդ մը եղի՛ր մեզի տասը հազարին արշաւանքին վրայ ծովէ ծով, եւ ցոյց տո՛ւր մանաւանդ թէ. ո՛ւր եւ ի՛նչպէս երբեմն Քսենոփոն փառանգներու եւ կարօտութիւններու մէջէն իր գունդը տարաւ անցուց Հայաստանի սառնապատ լեռներուն եւ դաշտագետիններուն վրայէն, ինչ որ գովեստ եւ դրուատիք յօրինեց իրեն եւ ամէնուն համար ալ անմահ համբաւ:

Առաջնորդէ՛ մեզի, մատեա՛նս, որ չմոլորինք այլ ուղիղը գտնենք եւ դաւանինք:

**Է. Ֆ. ՀՕՖՄԱՅՍԹԸՐ**



Գրքիս հեղինակ՝ **Է. Ֆ. ՀՕՖՄԱՅՍԹԸՐ**

## ԵՐԿՈՒ ԽՕՍՔ ՀՐԱՏԱՐԱԿԻՉՆԵՐՈՒՆ ԿՈՂՄԷ։

Նկատի առնելով գրքիս մեծ կարեւորութիւնը, զոր պատրաստած է Աւստրեւհունգարական սպայակոյտին ամէնէն ձեռնհաս անդամներէն մին՝ յատուկ թելադրութեամբը Աւստրիոյ արտաքին գործոց նախարարութեան, հարկ դատեցինք մենք ալ Հայ ազգին ծանօթացնել՝ հրատարակելով այս յոյժ շահեկան գործը։ Վերջերս, Հայկական Խնդրին վերարծարծման առթիւ, Աւստրեւհունգարական կառավարութիւնը հարիւր հազարաւոր օրինակներ տպագրել տալով, հրապարակ հանած էր որպէսզի իր ժողովուրդը մօտէն ծանօթացնէ Հայաստանի եւ Հայ ժողովուրդին անցեալին ու ներկային։

Երկար խօսիլ չենք ուզեր եւ կը ձգենք ողջախոհ հասարակութեան գնահատումին՝ **Հայաստանի Մէջէն** գիրքին մասին, որ կը խօսի Հայաստանի անցեալին եւ ներկային, Հայ ցեղին, ֆիզիքական, բարոյական, ընտանեկան սովորութիւններուն ու ծիրքերուն վրայ։

Գրքիս բնագինն է ՈՒԹՍՈՒՆ ղրուշ, բայց մեր ընթերցողները պիտի կարենան տէր ըլլալ միմիայն ՏԱՍԸ ՂՐՈՒՇՈՎ, այն ալ իւրաքանչիւր պրակին 20 փարա վճարելով։ Տպագրութիւնը շքեղ եւ մաքուր ըլլալու համար ամէն զոհողութիւն յանձն առած ենք։ Գործը մեծածախս ըլլալուն՝ քիչ օրինակներ միայն տպագրած ենք, որով ամբողջանալէն վերջ գինը պիտի կրկնապատկուի, ուստի փութացէք պրակը գնել։

Միակ կեդրոնատեղի՝ Կ. Պոլիս, Պապը Ալի, Ճըղալ օղլու սօգագը, **ՀԱՅԿ ԿՕՇԿԱՐԵԱՆ** գրատուն, Թիւ 9։



Սումելայի վանքը՝ ժայռերուն մէջ փորուած 



# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋԷՆ

"Երկինքը բարձր է եւ Ցարը ընդարձակ է.,,

(Ռուսական առած)

## 1. Հարաւային Ռուսիա–Բօթի–Թիֆլիզ



Չերքեզուհի

Երբ մէկը Եւրոպական Ռուսիոյ սահմանէն անցնի կա՛մ Վիրպալէն, Ալէքսանդրովօ, կամ, ինչպէս ես անցայ 1905ին եւ այս անգամ, Կալիցիայէն Բօդվօլօցիսքա, բոլորովին ուրիշ աշխարհի մէջ ոտք կը կոխէ: Որովհետեւ իրաւ է թէ Նոր ժամանակի երկաթն ու ոսկին շատ մը քարեր փլցուցած է Ռուսիոյ սահմանածայրի պատերէն — բայց տակաւին իբր այն կը մնայ եւ անջրպետ պատուար մը կը կազմէ Արեւմուտքին եւ Արեւելքին միջեւ: Կը հասկնանք ասիկա արդէն իսկ անցնելով ներսը

դուրսը ժանտարմներով լեցուած անմաքուր եւ ասիատիկ Ջուլֆա մաքսատունէն, ինչպէս նաեւ ճամբորդելով անծայրածիր միակերպ դաշտագետիններու մէջէն, բայց ամէնէն աւելի թերեւս ամէն կողմ դիտելով կեանքը ժողովուրդի մը, որ մեզմէ օտար է ոգիով, հաւատքով եւ լեզուով, կայուդիրքով եւ սովորութիւններով:

Եւ այս տպաւորութիւնը կը տեւէ. չի փոխուիր, նոյն իսկ հազարաւոր փարսախներ կտրելէ վերջ: Նոյնաձեւութիւնն ու տեղական պարագաները յոգնեցուցիչ ազդեցութիւն կը գործեն. դաշտանկարներու եւ գոյներու փոփոխութիւնը շատ քիչ անգամ միայն ուղեւորին կը խնայէ այլեւայլ զրկումներ եւ անհանգստութիւններ: Այսպէս, այսօր իսկ տակաւին, հակառակ ժամանակին ամէն բան իրարու կապող ընթացքին, եւ հակառակ փոխադրութեանց միջոցներուն բարւոքումին, քիչ անգամ միայն զբօսաշրջիկ օտարականին ոտքը կը կոխէ ռուսական հողին վրայ:

Եւ ինչպէս բաց ընդարձակ երկրին, նոյնպէս նաեւ ռուսական բազմամարդ կեդրոններուն մէջ տարբերութիւնը նուազագոյն է, աչքին եւ ականջին համար հազիւ հազ նշմարելի: Այս պատճառաւ հետեւաբար ա՛լ աւելի կարեւոր երեւոյթ մըն է հետաքննել օտարներուն յայտարարութիւնները բովանդակ ռուսական կեանքին վրայ: Բայց դժուարութիւնը, իմս ալ, ճիշդ այս կէտին մէջ կը կայանայ. որովհետեւ անթիւ անհամար գրուածներու մէջ կը կարդանք թէ տեսակէտները ո՛րքան իրարմէ կը տարբերին, եւ ասիկա ոչ միայն ուղեւորներուն իրենց աչքով տեսածները պատմելուն եւ դատելուն համեմատ, այլ նաեւ Ռուսիոյ մէջ բնակող օտարահպատակներուն պատմածին համեմատ: Շատ մը գործի տէր մարդիկ հոն կ'ապրին օտար ժողովուրդի միջեւ, որուն կարգուսարքը հրապոյր չունի իրենց համար, որուն լեզուն խուպոտ եւ խժալուր կ'երեւի իրենց, որուն ժողովրդային երգերը միակերպ

*տաղտկալի կը թուին իրենց: Գովեստը եւ պարսաւը իրենց յաջողութենէն կամ անյաջողութենէն կը հոսին յաճախ, բայց խնդիրը ա՛ն է թէ անոնք չեն շփուիր ռուս ժողովուրդին հետ. եւ Սլաւական աշխարհը գրեթէ երբեք հայրենիք չըլլար իրենց՝ իրականին մէջ:*

*Այսու հանդերձ, Ռուսերուն նման մեզի անմիջական սահմանակից մեծ ժողովուրդ մը իրաւունք ունի պահանջելու որ յարափոփոխ երեւոյթներու համեմատ վերիվերոյ չդատուի ինքը եւ ո՛չ թէ օտարին՝ այլ իր սեփական քանակովը չափուի: Իր անցեալը եւ իր երկրին պարագաները պէտք է քննուին, խուզարկուին աշխատութեամբ եւ սիրով, մակերեսին ներքեւ գտնելու համար էութիւնը, անոր աղբիւրը, ժողովուրդին հոգին:*

*Գրեթէ քառասուն տարի առաջ, ուրկէց ի վեր կը զբաղիմ ռուս լեզուով եւ ռուս գրականութեամբ. այցելեցի Ռուսիա, ամէն անգամ որ կարելի եղաւ ինծի. եւ կէս երկվեցեակ անգամ այդ առասպելական երկիրը շրջեցայ ամէն ուղղութեամբ: Իմ վերջին երկու ճամբորդութիւններս տեղի ունեցան 1904ին եւ 905ին. հետեւաբար ռուսօ-ճաբոնական պատերազմին առեն, իր յարուցած բոլոր բազմակողմանի տպաւորութիւններով եւ տրամադրութիւններով: Ինծի համար այս անգամ աւելի հրապուրիչ երեւցաւ ընտրել միեւնոյն ճամբան. զոր 904ին բռնեցի Հարաւային Ռուսիոյ մէջէն դէպի Կովկաս:*

*Պատերազմի տարին. մինչեւ իսկ պատերազմը սկսելուն պէս. ամբողջ Ռուսիոյ մէջ հանրային կարծիքը վերջին ծայր գրգռուած էր: Հիմա շատ մեղմացած է, դարձեալ կը լսենք ծիծաղիլ, ինչ որ այն ատեն բոլորովին մոռցուած կը թուէր: Բայց ամբողջութիւնը առնելով չկարողացայ իրական տարբերութիւն մը գըտնել: Նոյն խմբած, հեղձուցիչ եւ հոգիին վրայ ճնշող մթնոլորտը ընդարձակածաւալ դաշտավայրերուն վրայ, եւ—խօսքս հոս Հարաւին եւ Կովկասին վրայ է—քիչ անգամ կը տեսնուի որ մէկը լրագիր կարդայ եւ*

քաղաքականութեան վրայ խօսի, ինչպէս այն ատեն-ները: Ուղեւորութեան միջոցին, կամ՝ այլապէս զանա-զան առիթներով, քաղաքականութեան վրայ խօսք բացի. բայց կարծես յանկարծ մղձաւանջ մը կը ծանրանար ներկաներուն վրայ: Իրարու երես կը նայէին, ուսերնին կը թօթուէին եւ լուռ կը մնային: Երբ անգամ մը մեծ շրջանակի մը մէջ, ուր գտնուողները ճշդիւ գիտէին իմ ո՛վ ըլլալս, բոլորովին աննպատակ կերպով յայտարա-րեցի թէ Տաւրոն հիմա ինծի աւելի բանաւոր կը թուի սկիզբները եղածին հետ բաղդատելով, եւ խօսքէն զար-ծի դարձած կը թուի. ամէն կողմէ երեսս նայեցան շանթահար եղածի պէս, եւ քովս նստողը սիկարէթը մէկդի նետեց ու բառերը մրթմրթալով. «Զօրթ վօմի», «Գրո՛ղը տանի:»

Ահա ա՛յս էր ռուսական կարծեցեալ «սահմանա-դրութեան» վիճակը: Ռուս վաճառական մը այս մասին կրկնեց ինծի հետեւեալը, որ կարծեմ՝ Մարք Թուէնի խօսքն է. «Մեր երկրին մէջ հիմա ունինք երեք թան-կագին տուայուած, որոնց համար Աստուծոյ ո՛րքան շնորհակալ ըլլանք դարձեալ քիչ է. այսինքն՝ խօսքի ազատութիւն, մամուլի ազատութիւն, եւ սակայն ոչ մէկուն եւ ոչ միւսին ծառայելու խոհեմութիւնը»: Ամէն պարագայի մէջ, ինծի կը թուի թէ այսօր Ռուսիոյ մէջ աւելի մեծ անխոհեմութիւն կայ քան թերեւս ուրիշ տեղ:

Ժանտարմըրին եւ ոստիկանութիւնը, երկուքն ալ մանրադիտութիւն ըլլալու աստիճան կազմակերպուած Ռուսիոյ ներքին կեանքին: Դրանները, առաջուան չափ բազմաթիւ ըլլալու չէր, եւ ամէն պարագայի մէջ, առաջուան չափ անբնական չէին երեւնար ինծի: Կայսերա-կան արտօնագրով եւ բաց հաղորդով կը ճամբորդէի, Կովկասի Փոխարքային գիտէր ճամբորդութեանս սկիզբը, ընթացքը եւ նպատակը, եւ սակայն կը զգայի թէ հսկողութեան տակ եմ, թէեւ ո՛չ այնքան որքան պատե-րազմի տարիին, երբ առօրեայ բան էր լրտեսութեան

ահաբեկումը — կը յիշեմ միայն գլխուս եկածները Էջմիածնի, Սամարայի եւ Օրէնպուրկի մէջ — բայց եղածը դարձեալ բաւական էր գիտակից ըլլալու համար թէ հսկողութեան տակ էի:

Երկրին անսովոր եւ տարաշխարհիկ հանգամանքը ամբողջութեամբ մեզի կը ներկայանայ անմիջական կերպով եւ ամէնէն աւելի մեր վրայ կ՚ազդէ Քիէվի մէջ, որ Նովկորոտէն վերջ Իլմէն լիճին վրայ Ռուսիոյ բոլոր քաղաքներուն, Մոսկուան ալ բացառութիւն չըլլալով, ամէնէն հինը եւ ամէնէն ռուսականն է: Այս պատճառաւ հոն ալ այցելեցի ամէն անգամ որ անոր մօտէն անցայ, եւ այս անգամ ալ չէի կրնար դէպի հոն շեղում մը կատարելը զանց ընել:

Արդարեւ ինչ հմայք կը պատէ եկեղեցիներու այս տարօրինակ քաղաքը: Օդը հիանալի էր: Արեւը կը շողշողար անթիւ կանանչ, գունագեղ եւ ոսկեդրուագ գմբէթներուն վրայ, եւ լայնածաւալ ստանեղէն գնացքին մէջ Տնիէբէր եզերքներէն յորդելով իր յորաճուն գորշ դեղին ջուրը դէպի ծով կը թաւալէր:



Երբ ման կուգայի Քիէվի դէպի բարձրադիր մասը, բերդը, որուն վրայ հաստատուած է Լաւրա՝ ռուսական վանքերուն ամէնէն հինը եւ ամէնէն նշանաւորը, խաղաղիկ փողոցները ոգեւորուած գտայ գործի մարդոցմով. եւ քաղաքական-կրօնական բոլոր այն վատահամբաւ ցեղային կռիւներէն, որոնք դեռ քիչ ժամանակ առաջ իրենց արիւնահեղ թատերաբեմը այս քաղաքին մէջ կը գտնէին, այսօր այլ եւս ոեւ է հետք չէր մնացած: Բայց ամէն կողմ մեր աչքին զարնողները վաճառականներն ու արհեստաւորները չէին, որքան ալ կարե-

ւոր ըլլար առանց թիւը, ոչ ալ Փոքր Ռուս մշակներու եւ օրիորդներու երփներանգ հոյլը, կամ բազմաթիւ մուրացկանները, զինուորները, ոստիկաններն ու ժանտարմաները, այլ քահանաներն ու ուխտաւորները:

Երբ Լավրայէն աչքերս ուղղեցի քաղաքին եւ գետին եւ սակէց անդին մինչեւ Տօն եւ Վօլկա անվերջանալի կերպով տարածուող դաշտագետիններուն վրայ, Ռուսիոյ ամբողջ պատմութիւնը առջեւս կը կանգնէր կենդանի, Պետութեան ինչպէս նաեւ Եկեղեցիին պատմութիւնը:

Հոս, Քիէվի մէջ, կը գտնուէր հին սլաւական կուռքերու պաշտամունքին գլխաւոր կեդրոնը: Րուրիքի տունէն սերած պատերազմասէր Սուիէթօսլաւի որդւոյն՝ Վլատիմիր Մեծ Դուքսին իշխանութեան օրով յոյն վանականներ հազար թուականին Բիւզանդիոնէն հոս, Տնիէբէրի ափունքներուն վրայ բերին քրիստոնէական հաւատքը, եւ քաղաքը «սրբազան» իշխանին եւ ժողովուրդին մկրտութեամբ: Հայաստանը միայն բացառութիւն ըլլալով, նոր վարդապետութիւնը աշխարհի մէջ ուրիշ ո եւ է տեղ չկրցաւ մուտ գործել եւ տարածուիլ առանց ո եւ է դղրդումի ինչպէս Ռուսիոյ մէջ, գլխաւորաբար ա՛յն պատճառաւ, որովհետեւ հին սլաւական հեթանոսութիւնը, որ իրականին մէջ բնութեան պաշտամունքն էր, որոշ քրմական դասակարգ մը չունէր, նոր հաւատքին դէմ սուր պայքար մղելու կամ էնթրիկներ սարքելու համար:

Ռուսիոյ ամբողջ պատմութիւնը իր մեծ գիծերուն մէջ իմ կարծիքով կը պատկերանայ ռուս իշխաններուն վեհապետական կեդրոնին Նովկորոտէն Քիէվ, Մոսկուա եւ Բեթերսպուրկ փոխադրութեան մէջ.—Այս պատմութիւնը ցոյց կուտայ Պետութեան զարգացումը դէպի կէս եւրոպական իշխանապետութիւն՝ միտումով մը դէպի Արեւելք, դէպի ասիական Ջարութիւն մոնկոլական ազդեցութեան տակ, եւ դէպի եւրոպական կայսրութիւն հետզհետէ բուռն քայլեր առնելով Եւրոպայի

մօտենալու համար,— դարձեալ նոյն պատմութիւնը ցոյց կուտայ Եկեղեցիին ընթացքը եւ զարգացումը դէպի Մեծապայծառութիւն Բիւզանդիոնի Պատրիարքներուն տակ, դէպի անկախ Պատրիարքութիւն Պօրիս Կօտունովի օրով եւ վերջապէս Եկեղեցիին եւ Պետութեան ձուլումը Սուրբ Սինոդի հաստատութեամբ Մեծն Պետրոսի օրով:

Վլատիմիրէն վերջ կայսրութիւնը երկու մասի պառակտեցաւ. դարեր սահեցան անհետ եղան:

Հարաւի եւ հարաւային արեւելքի մէջ, Վերին Ասիոյ խորհրդաւոր ներքնամասէն, Թուրք-Մոնկոլական ժողովուրդներ վայրագ գունդերով, անդիմադրելի խուժումով, արշաւեցին Տիեզերքի միւս կողմը տարածուած դաշտավայրերուն վրայ մինչեւ Եւրոպայի սրտին մէջ, կառչեցան մնացին Վօլկայի բացատաստաներուն մէջ, որոնք իրենց ասիական հայրենիքին հետ մերձաւորութեամբ եւ նմանութեամբ իրենց համար կրնային ամենամեծ հրապոյրը ունենալ: Անկէց դուրս, Ստորին Վօլկայի վրայ իրենց գլխաւոր կեդրոնէն, Սարայէն, Մոնկոլական «ոսկի հրոսակ»ը ամբողջ երկու դար Ռուսերը իրեն հարկատու ըրաւ. անոնց թողուց միմիայն իրենց բնիկ իշխանները եւ հաւատքը, որ ազգային զգացումին եւ հասարակաց լեզուին հետ անխորտակելի կապ մը հիւսած էր արդէն ռուսական արեւելքին շուրջ եւ ժողովուրդը ոտքի վրայ կը պահէր այդ ժամանակի դարհուրելի աղէտքին մէջ:

Իվան Քալիթայի օրով 1328ին Մեծ-Դքսութիւնը Քիեվէն գաղթեց Մոսկուա, որուն անունը առաջին անգամ՝ ըլլալով կը գտնուի ԺԲ. դարուն կէսին, եւ հետեւաբար Մոսկուա Քիեվի տեղ ժողովրդական եւ կրօնական կեդրոնը դարձաւ: Թերեւս Եկեղեցին իր ազդեցութիւնը ունեցաւ մայրաքաղաքին փոխադրուելուն վրայ. որովհետեւ մինչ Մոնկոլները ի հարկէ կը ջանային մեծ-դուքսերը հետզհետէ իրենց աւելի մօտը քաշել, յոյն-ռուսական Եկեղեցին իր կարգին կը փափաքէր եւ կ'աշխատէր դէպի Արեւելք սպրծիլ՝ խուսա-

փելու համար Լատինական.Արեւմտեան Եկեղեցին ճընշումէն, քանի որ այս վերջինը աւելի հզօր էր, մտաւորապէս գերազանց եւ իր կառոյցքին մէջ ամրապինդ:

Մոսկովական Ցարութիւնն ու Պատրիարքութիւնը զօրացաւ, մոնկոլական լուծը ինկաւ, եւ յոյն–ռուսական Եկեղեցին ժողովրդական ռուսական եղաւ: Բայց որքան Մեծ-Դուքսերն ու Պատրիարքները ձեռք ձեռքի տուած կը գործէին՝ կէս ասիական պետութիւնը պահպանելու Եւրոպայի մտաւորական լուծին դէմ եւ ամէն նորութիւն մերժելու, ռուսական եկեղեցին այսպէս անջատուեցաւ Քրիստոնէութեան շարժումէն. Պետութիւն եւ Եկեղեցի քարացան :

Եւ ահա կ'երեւնայ, ի հեճուկս իր ժամանակին, «գիշերային փոթորիկի պահուն կայծակի նման», Մեծն Պետրոս, առաջին կայսրը, հսկայ մը մարմինով ու հոգիով, բիրտ, բուռն ու կոշտ, ռուսական ոգին մարմնացումը թէ՛ ի բարին եւ թէ ի չարն, եւ կը սկսի իր լայնածաւալ աշխատութեան: Նորութիւններուն դէմ ամէնէն աւելի կ'ընդվզէր ժողովուրդին հետ սերտ կապերով աճող Եկեղեցին. բայց Կայսեր կամքը չէր ճանչնար ոեւէ ընդդիմութիւն եւ խիզախ ու անվեհեր յարձակեցաւ անոր ամէնէն ներքին կեանքին վրայ, ժողովուրդին հանդէպ անոր դիրքը փոխեց պակսեցնելով անոր կալուածները, եւ Պետութեան հանդէպ ալ անոր դիրքը փոխեց, անձնական պատրիարքութիւնը ջնջելով, եւ հաստատելով Սուրբ Սինոդը, զոր ստորադասեց Պետութեան: Անտարակոյս ասիկա է Պետրոսի ներքին մեծագործութիւններուն ամէնէն արդիւնաշատը, որովհետեւ ասով Եկեղեցին ամուր կապեց Պետութեան եւ ժողովուրդին վրայ անոր ունեցած անսահման ազդեցութիւնը յաւէտ ծառայեցուց Ռուսիոյ ուժերուն միաձոյլ զարգացումին, ներսէն եւ դուրսէն :

Մեծն Պետրոսի մէջ ծնաւ Ռուսիոյ ապագան: Բայց այսօրուան տակաւին, ինչպէս այն ատենները, Եկեղեցին կը հակառակի կառավարութեան մէջն մի նորացուցիչ



Ռիոնի ճահիճներուն մէջ խրճիթներ

ճիգին՝ իբրեւ արտայայտութիւն մը ժողովուրդին տոկունութեան եւ յամառութեան, իբրեւ խնկապէս պահպանողական տարրը. միայն թէ իր ուժին մէջ տկարացած է, Պետութեան հետ կապուածըլլալով: Ռուս ժողովուրդին կրօնական ազգային զգացումին հիմն ու կարեւորութիւնը կը կայանայ Պետութեան եւ Եկեղեցիին այս ձուլումին մէջ:

Քիէվ բառին բովանդակ նշանակութեամբ եկեղեցիներու, քահանաներու, եւ ուխտաւորներու քաղաք մըն է, եւ կարելի չէ այցելել հոն առանց ռուս Եկեղեցիին եւ անոր անհամար պաշտօնէից հետ զբաղելու: Այս վերջինները, աղքատ, տգէտ, եւ ամենամեծ մասամբ ալգոլի անձնատուր, հասարակ ժողովուրդին նման ստրկացած եւ խորհելու ոեւէ ազատութենէ զուրկ. ժողովուրդին հանդէպ մեր մէջ եղածէն էապէս տարբեր դիրք մը ունին, որովհետեւ ո՛չ այնքան իրենց թեմականներուն հոգեւոր խնամատարներն են որքան պաշտամունքին բեմակիրները. եւ կը յարգուին իրենց պաշտօնակատարութեան եւ աստիճանին

համեմատ, ոչ թէ իրենց անձով: Ժողովուրդն ալ քահանաներուն չափ անհմուտ է հաւատքի վարդապետութեանց իմաստին. կրօնական նուազագոյն հմտութեան բաղձանքի տեսակէտով իր ամբողջ բարեպաշտութիւնը կը կայանայ լոկ արտաքին երեւոյթներու մէջ, ինչպէս սուրբերու յարգանք եւ սաստիկ պահեցողութիւն, եւ այս երկուքն ալ աւերիչ ազդեցութիւն մը կը գործեն ժողովուրդին վրայ բազմաթիւ տօնական անգործ օրերով եւ ըստ ինքեան յոռի ուտելիքներուն առաջ բերած ապականութեամբ: Այսու հանդերձ, դարձեալ Հայաստանը բացառութիւն ըլլալով, չկայ տեղ մը ուր Եկեղեցին ա՛յն աստիճան տիրապետէ ժողովուրդին բավանդակ կեանքին վրայ որքան Ռուսիոյ մէջ, այո՛, ա՛յնքան ազգային եղած է ան որ իրեն համար ստեղծած է իր սեփական Տէր Աստուածը, «Ռուսերուն Աստուածը», իր սեփական Աստուածամայրը Քազանի եւ Իբերի, եւ, մինչեւ իսկ սրբացուցած է Ռուսիան, որովհետեւ Ռուսը իր հայրենիքը Անգլիացիին կամ Ֆրանսացիին նման իր «Հին Անգլիան» կամ «Գեղեցիկ Ֆրանսան» չանուաներ»,— «Սուրբ Ռուսիա»ն կ'անուանէ, սուրբ՝ անոր մեծութեանը համար թափուած արիւնին, իր Զարերուն պատմութեան, իր Եկեղեցիին եւ իր սուրբերուն շիրիմներուն պատճառաւ:

Եկեղեցիին ուժին վրայ այս ազդեցութիւնը Ռուսիոյ ոչ մէկ վայրին մէջ ա՛յնքան շատ կ'ունենայ մարդ, որքան երբ Քիէվի մէջ «սուրբ դուռ»էն ոտք կոխէ Լավրա վանքին ներսը: Հոս կը գտնուի ամենահին կեդրոնը սեւ կամ վանական հոգեւորականութեան, որ սպիտակ կամ աշխարհիկ հոգեւորականութենէն անջատուած է խստիւ եւ գրէթէ հակառակամարտ ոգիով, արտասովոր սակայն պատմութեան մէջ հիմնուած երեւոյթ մը: Որովհետեւ երբ Քրիստոնէութիւնը Յոյն վանականներու ձեռքով Ռուսիա եկաւ, ասոնք ալ ջանացին նոր երկրին մէջ իրենց ձեռքին մէջ միացնել ամենամեծ հոգեւոր ոյժը եւ պահպանել զայն, ուրիշ խօսքով՝ տիրապետող

վանական կղեր մը կազմել յունական դրօշմով, որուն դէմ քիչ ատենէն ստորին հոգեւորականութեան մէջ ժողովրդային ոյժ մը պիտի բարձրանար. առաջինը եղաւ սեւը, վերջինը սպիտակը: Սեւ հոգեւորականութիւնը այսօր իսկ տակաւին իբրեւ տիրող դասակարգը գրեթէ միմիայն ինք կը վարէ Եկեղեցին առաջնորդութիւնը իւրացնելով վերին աստիճանաւորութիւնը, գրաքննութեան եւ հսկողութեան ենթարկելով հոգեւոր ուսումներուն հաստատութիւնները: Եւ եռանդով կը պահպանէ այս իւրացումը: Ոեւէ մտաւոր զբաղում չեն ճանչնար ո՛չ վանականները, ո՛չ աշխարհիկ քահանաները, Բօբերը. եւ անկէց խուսափելու պատճառներ ունին. որովհետեւ յոյն-ուղղափառ եկեղեցին մէջ ամէն ինչ կարգի կանոնի տակ դրուած է, եւ հիմակ ա՛լ աւելի քան անկէց առաջ ոեւէ ազատ մտածում կը մերժուի իբրեւ վտանգաւոր պերճանք մը. հաւատքը ամուր է. հարցում եւ տարակոյս ոեւէ քննութեան պէտք չունին:

Երեսունըհինգ տարիներ վերջ Լաւրայի մէջ կրկին այցելեցի սուրբ Անտոնիոսի քարայրը. ստորերկրեայ, նեղ. չորս կողմը պատերով նկուղ մը, կողմնակի փոքր վայրերով, որոնք մասամբ իբրեւ մատուռ կը ծառայեն, եւ որմափակ խուցերով: Ասոնց մէջ ատենօք կը բնակէին ճգնաւորներ, որք մարդկային մտքին մէկ արտառոց մոլորութեամբը ողջ ողջ ինքզինքնին թաղեցին մինչեւ իրենց արանոցըպ կաւային հո-



Քութայիս։ Ռիոնի վրայ հին մասը

ղին մէջ իրենց ապաշխարութեան գինը բարձրացնելու համար:

Հապա ուխտաւորնե՛րը: Տակաւին մեծ Տօնին ժամանակը չէր — Յուլիս եւ Օգոստոս — եւ սակայն վանականներու տաղաւարներով փակուած վանքին բակը անոնցմով լեցուած էր: Հարիւրաւոր մղոններ, թերեւս ռուսական երկարատեւ ձմրան սառոյցին եւ ձիւնին մէջէն յոգնած քայլերով ասոնք հոս եկած են զրկումներո՛վ լեցուն ճամբորդութեամբ եւ հալած մաշած մարմինով, գլխաբաց, փայտի կեղեւէ ոտնամաններով, ուսերնուն վրայ պատառոտուն պաստառ մը, գոյնզգոյն շապիկին վրայ գօտի մը կապած, կտաւէ պարկը կռնակնին, եւ ձեռքերնին ուխտաւորի ցուպը: Հիմա իրենց նպատակին հասած են. մարդկային անարժանութեան ամէնէն յուզիչ արտայայտութիւնը եղող անմռունչ երկրպագութեամբ կը համբուրեն սկեդրուագ երկնաբերձ մայր եկեղեցին աստիճանները, եւ սրտաճմլիկ հաւատքով: Ժողովուրդէն մի՛ առնէք իր հաւատքը: Որովհետեւ ի՞նչ պիտի ըլլան մարդկութեան բոլոր այն տառապեալ խաչակիրները, որոնք ամենադառն հոգերով քօղարկուած կեանքերնին կը քաշքշեն, բեռան տակ ընկճուած, ճզմուած, կրկին եւ կրկին խարազանուած անօթութենէ եւ ամէն տեսակ կարօտութիւններէ, եւ անողորմաբար առաջ քշուած իրենց թշուառութեան ընկերներէն: Որովհետեւ ի՞նչ պիտի ըլլան միլիոնաւոր եղկելիներն ու ծանրաբեռնուածները, զորս լուսեղէն հաստատութիւն մը իրեն կը կանչէ, երբ հաւատքը չըլլար. խնդիր չէ ի՛նչ ձեւով ալ ըլլայ, եթէ չըլլար մէն մի մարդկային հոգիի մէջ բոյն դրած յոյսը անդրաշխարհեան արդարութեան վրայ, որ հաւասար կը բաշխուի ամէնուն: Տառապողէն մի՛ առնէք իր հաւատքը, մի՛ յափշտակէք զայն, որպէսզի անմխիթար չգլորի իր անդունդին մէջ:

Եւ եղկելիներուն մխիթարութիւն եղաւ: Խունկի ծուխին եւ կիսալոյսին մէջ աղօթեցին, եւ հիմա զուարթ

*կերպարանքով դուրս կուգան եկեղեցիին դուռնէն եւ սպիտակամօրուս ծերունիի մը շուրջ կը հաւաքուին: «Օ՛ն ուրեմն, տղա՛ք, յառա՜ջ, յառա՜ջ դէպի տո՜ւն: Արդէն ժամանակ անցած է. եւ ճամբան դեռ երկար է: Աճապարե՛նք, աճապարե՛նք:»*

*Քիչ մը տեսնողը բնաւ կանգ չառներ Պոնտական բացաստաններուն հարաւային եզերքին վրայ ճաղատ ու անհրապոյր կառուցուած Օտեսային մէջ: Առանց այլ եւ այլի հետեւաբար նստայ նախորդ ճամբորդութիւններէս*



Ս. Գէորգ եկեղեցիին աւերակները

ինծի համար դժբախտաբար արդէն հանրածանօթ Բուչքին շոգենաւը, որուն պատկառելի արտաքին երեւոյթին վրայ ժամանակը առանց ոեւէ հետքի անցած գացած կը թուէր, ներսի մասերուն մէջ թողլով ամ՛որ տխողոսաւոր սեփականութիւնները, առնէտներն ու սեւ միջատները — չխօսելու համար ասոնց միւս խաղակից ընկերներուն վրայ: Ամէն կողմ շոգենաւին մէջ կը վխտային տղաքներ, ըստ ինքեան զուարճալի եւ նոյն իսկ օգտակար՝ մարդկային սեռին յառաջացումին համար, բայց ծովային ճամբորդութեան առթիւ յոռի յաւելուած մը:

Սեւ ծովը դժնեայ ընկեր մըն է: 1904ին գրեթէ միեւնոյն ժամանակին — Ապրիլին — հայելիի պէս միապաղաղ եւ արեւառեսիլ էր. այս անգամ սակայն ալեծուփ եւ քիչ առենէն փոթորկայոյզ յայտնուեցաւ, իմ հին բարեկամներս. դելփինները չէին երեւնար, եւ փոթորկաւէր ուրուրները միայն հանգիստ կը թառէին ջուրին վերեւ: Խրիմի սովորաբար լուսաճաճանչ կաճային խարակները, որոնց մէկէն, Արտեմիսի նուիրական պուրակէն, Իփիգենի «Յոյներուն երկիրը փնտռեց հոգիով,» Եալթայի «սքանչելի» թաւուտները, առասպելական Կովկասի թաւաթուփ դալարագեղ լեռնագօտին՝ Էլպրուսի երկնապող ձիւնակատարով, — ամէն ինչ սեւ մառախուղի մէջ քօղարկուած: Դասական ծովուն ափունքը ժամանակաւ պարուրուած էին ծաղկեալ գաղթավայրերու պսակով մը, որոնք յունական ոգին եւ յունական քաղաքակրթութիւնը կը տանէին իրենց հետ, պատերազմասէր բնիկներուն հետ յաճախակի կռիւներու մէջ մարզուած եւ ջրդեղուած. այսօր ծովափունքը ամայացած է:

Բօլթիի առջեւ մեկնեցայ առանց ոեւէ ցաւի Բուչքինէն, իր բոլոր ճամբորդներուն համար ի սրտէ մաղթելով բարեյաջող գնացք, եւ կեանքիս մէջ երրորդ անգամ ըլլալով ոտք կոխեցի Անդրկովկաս: Ասիկա ամենահին ժամանակներու մէջ արդէն ծանօթ էր



Գղաթի վանքը: Ս. Մարիամի մայր եկեղեցին

Կողքիս անունով. վերջերը, ինչպէս Միջին Դարու մէջ, ուր շատ քիչ անգամ միայն շփուեցաւ ժողովրդային արշաւանքի աւերիչ եւ արդիւնաւոր մակընթացութեամբ, գրեթէ մոռացութեան մէջ ինկաւ, եւ անցեալ դարուն էր որ նորէն աշխարհի ուշադրութիւնը իրեն վրայ հրաւիրեց գրաւող Ռուսին հետ լեռնաբնակ ժողովուրդներուն բուռն մարտնչումներուն պատճառաւ:

Կողքիս վայրենի երկիր մը կը համարուէր: Պրոմեթէոս Եւրոպայէն փախչող Ցօվը կը զգուշացնէր Կողքիսացիներէն, որովհետեւ անոնք «պիղծ», մարդատեաց մարդիկ էին, որոնցմէ հարկ է խուսափիլ, եւ յոյն Արգոնաւորդները Տրովական պատերազմէն շատ առաջ համբաւով ու աւարով հոս եկան աներկիւղ համարձակութեամբ:

Հին Փասիսը եւ այսօրուան Բօթին հաւանաբար երեք հազար տարի առաջ Միլէտացի գաղթականներէն հիմնուեցաւ: Ստրաբոն, որ ինքն ալ այցելած է հոն, կը գովէ անոր մեծութիւնը եւ պտղաբերութիւնը. շատ աւելի հին Հիպոկրատ սակայն անոր շրջակայքին վրայ հետեւեալ նկարագրականը կ'ընէ. «Փասիսի (Ռիոնի) ցած գետինները ճախճախուտ են, տաք եւ անտառախիտ: Մարդիկ կ'ապրին ցիցերու վրայ հաստատուած խրճիթներու մէջ, փայտէ եւ ճիւղերէ շինուած: Կը վայելեն արեւուն կիզիչ ճառագայթներէն հոտած տաք ջուր եւ տենդէ կը տառապին:»

Իրականին մէջ այսօր ալ ճշմարիտ է ասիկա: Սեւ ծովուն ամբողջ արեւելեան եւ հարաւային ափունքը տենդային է, Ռիոնի ճահիճներուն մէջ հաստատուած Բօթին ճիշդ կեդրոնն է, որմէ արտաբուրուած գոլորշիները ամէն ուղղութեամբ կը ճառագայթեն: Թէեւ այս պարագան քաջածանօթ էր ինծի, բայց տենդի մասին դիւրազգածութիւնս բանի տեղ չդնելով, ընդհակառակն Բօթին ընտրեցի իբրեւ այս անգամուան ելքի կէտ դէպի Հայաստան իմ շրջագայութեանս համար, որովհետեւ կ'ուզէի անձամբ տեսնել Ռիոնի համբաւաւոր ճահիճները եւ այցելել Քութայիս եւ Գղաթի վանքը:

Փոխադրութեանց եւ վաճառականութեան ծառայող գլխաւոր նաւահանգիստը խիստ թերի է տղմուտներուն պատճառաւ, եւ հարկ կ'ըլլայ շարունակ առաջ տանիլ զայն Ռիոնի բերած ցեխերուն համար: Ճամբորդ շատ քիչ կուգայ, եւ իրաւցնէ հոն այցելելիք ոչինչ կայ, որովհետեւ Բօթի իրապէս տխուր տեղ մըն է: Խոզեր, սովալլուկ շուներ, մուրացկաններ եւ գինովներ, որոնց ինչպէս ամէնուրեք ընդարձակ Ռուսիոյ մէջ անցորդները կը հանդիպին բանաւոր կարեկցութեամբ, կը զարդարեն գէշ սալարկուած փողոցները: Պազարն ալ խեղճ է. ամէնէն աւելի տեսնելու արժանի բանը հոն պարսիկ արջապան մըն էր: Խոնաւ տաք օդը կը կարկամէ մարդուն անդամները եւ կ'ազդարարէ շուտ մեկնիլ: Բայց տարօրինակ բա՞ն: Հոն ալ մարդիկ կը բնակին եւ գոհ են իրենց տեսակին մէջ: Գրեթէ անմիջական կերպով ճահիճներուն կից կը գտնենք իրաւցնէ սիրուն եւ մաքուր ալ պահուած հասարակաց պարտէզ մը՝ արեւադարձային տունկերով լեցուն. մակլոնենիներ բացուած կոկոններով, պամպուններ եւ շաքարեղէգներ, նաեւ քանի մը արմաւենիներ, որոնց ցանցառ ոստերուն տակ սիրակցորդ ամոլ մը շուք կը փնտռէր: Զբօսարանին ծայրը կը բարձրանայ աշտարակաւոր շէնք մը, քաղա-

քապետին պաշտօնական բնակարանը ուր բարեկամաբար հրաւիրուեցանք:

Քաղաքապետը պատմեց ինծի թէ երկար ատենէ ի վեր հոս կ՚ապրի: Ամրան եւ աշնան իրաւ է որ սաստիկ կերպով տենդ կը տիրէ, բայց քանի մը չըներ—«նիչեվօ՛»—մարդ կը վարժուի. ուրիշ տեսակէտով, փառք Աստուծոյ, ամէն ինչ լաւ կ՚երթայ, եւ անձի ու ինչքի ապահովութիւնն ալ հիմա ամէն ուրիշ տեղէ աւելի մեծ է: Կրնայ ըլլալ: Բայց ասկէց առաջ, եւ մանաւանդ 1905ի խռովութիւններու միջոցին հոս եւ աւելի կամ նուազ բոլոր Կովկասի մէջ գործը տարբեր էր։ Շրջակայքը մանկանէզի հանքատէրի մը, որուն պատահմամբ հոս հանդիպեցայ, այն թուականին արեւ բարի օր մը, բաց պատուհանէն սամավարը գողցան: Աճապարանքով ոստիկանապետին դիմեց. բայց գործը դէշ գնաց: «Ի՞նչ կ՚ուզէք, հայրիկ. սամավա՞ր մը վրայ գնաց քեզմէ: Ախ, Աստուա՛ծ իմ, քանի մը չէ ատիկա: Այս գիշեր հոս ձիեր, եզներ եւ ոչխարներ, նոյն իսկ ազնուական օրիորդ մը գողցուեցան: Եւ դուք հիմա կուգաք խեղճ ու կրակ սամավարի մը համար: Մի՛ նեղէք զիս, եւ նոր մը գնեցէ՛ք»:


Իմերեթացի գեղջուկ

Այդ հանքատէրը պատմեց ինծի նաեւ թէ հանքը առատ է եւ գործաւորներու օրավարձը աժան է, միայնտասնըհինգ րուպլի ամիսը. բայց այսչափն ալ կը բաւէ ամէն կերպով, որովհետեւ գործաւորը ամսուան տասնըհինգ րուպլ ալ կը գողնայ, սովո-

րութիւն մը՝ որմէ պիտի չհրաժարի, նոյն իսկ եթէ աւելի բարձր ըլլայ վարձքը: Ժողովուրդին համար ամէնէն վատթար բանն է օրերով տեւող հարսնիքները, որոնք անչափելի խնջոյքներով ամբողջ եղածը չեղածը կուլ կուտան, եւ յետոյ նոյն կերպով տօնուած. դըժբախտաբար անխուսափելի յուղարկաւորութիւնները:

Ռիօնի համբաւաւոր ցած պետինները, որոնց վրայէն երկաթուղին մինչեւ Քութայիս կ'անցնի ցած թումբերէ, ընդարձակ են, մացառախիտ, կանանչ ճահիճներով եւ մօրուտներով, որոնց վերեւ կարծես բողոքարկուի պէս կը ցցուին գարշահոտ կապարագոյն օդին մէջ մէկ քանի մամռապատ կաղնիի բուներ, անտանելիօրէն միակերպ եւ մելամաղձոտ դաշտանկար մը: Ասիկա շատ մը մասերով ինծի կը յիշեցնէր քառասուն տարի առաջ իմ այցելած եւ տակաւին չչորցուած Բրիբէթի ճահիճները Պրէսթ Լիթօվսքի եւ Մօհիլէվի միջեւ: Հոս, ինչպէս հոն, աչքին կարածին չափ, ո՛չ մէկ բնակութիւն, ոչ մէկ կենդանութիւն երկրի վրայ, ո՛չ մէկ թռչուն օդին մէջ, ո՛չ մէկ ձայն: Այս բնութիւնը թըշնամական եւ սպառնական կը կանգնի մարդոց հանդէպ, որոնք ոչինչ կրնան ընել անոր հետ:

Վերջապէս Բօթիի եւ Քութայիսի միջեւ կէս ճամբուն վրայ հաստատուն հողի վրայ կոխելով՝ մարդ շունչ մը կ'առնէ, կարծես հեղձամղձուկ ճնշումէ մը ազատուած, եւ կը վայելէ չորս կողմը հոյակապ, գարնանային պաճուճանքով շողացող ստեղծագործութիւնը:

Երկար ատենէ ի վեր անցած անհետացած է եօթանասնամեայ պատերազմը Կովկասի մէջ, պատերազմ մը՝ ո՛չ այնքան մարդ մարդու դէմ այլ գերահզօր բնութեան դէմ: Ռուսական կրկին արծիւը իր մագիլներով յաղթապանծ կը ճապուէ երկու երկրամասերը բաժնող կատարներն ու ապառաժները, եւ հովիտները խոր խաղաղութեան մէջ թաղուած են: Մնաց որ սակայն ես պատերազմի տիրող վիճակի ապաւորութիւնը ունեցայ ամբողջ Անդրկովկասի մէջ, եւ գրեթէ ա՛լ

աւելի քան 1905ի խռովութիւններուն առեն: Ամէն մէկ, նոյն իսկ ամենափոքր կայարանի մէջ անխուսափելի եւ դողնիդողը դիտուած ժանտարմներէն զատ կեցած են զինուորական պահակներ քովնտի հրացաններ ցցած, առանց ետեւն ալ փոխնորդ պահակագունդ մը. եւ բոլոր իմ ճամբորդութեանս միջոցին հանդիպեցայ բազմաթիւ Խազախ պահայոյզներու, որոնք թղթատարութեան ալ կ'ընկերանան. պատկեր մը որ բնաւ քաջալերական չէ ուղեւորական հաճոյքին:

Որչափ մօտենաս Քութայիսի, գրեթէ երեսուն հազար բնակիչներով, Ռիօնի յարաճուն հոսանքներուն եւ Կովկասէ մինչեւ հոս երկարող սարերուն փէշին վրայ սփռուն կերպով հաստատուած քաղաք մը, ամբողջ երկրամասը պարտէզի մը կը փոխուի: Այո՛, Քութայիս, Կողքիսի հին Այիա կամ Քիթէա մայրաքաղաքը եւ Մեդէայի հայրենիքը, ճշմարտապէս պարտէզներու քաղաք մըն է, որուն խաղաղաւէտ բնակարանները հեռուէն հրաւէր կը կարդան ափնիւ պտղատու ծառերու ազօտ կանանչին մէջէն, եւ կտնաձեւներու, դափնիներու, մրտենիներու, մակնոլենիներու յորդառատ թաւուտին մէջէն: Գարնանային բովանդակ պերճութիւնը կը շողայ Սուրբ Գէորգ եկեղեցիին մամռահիւս աւերակներէն, ուր ընտիր կերպով սալարկուած ճամբայ մը կը տանի Ռիօնի աջ ափունքէն: ԺԱ. դարուն կիսուն Բիւզանդական-Հայկական ոճով շինեցին զայն Բագրատիոն Դ. իշխանը եւ իր բարեպաշտ տիկինը Հելենա՝ Բիւզանդիոնի կայսեր աղջիկներէն մին, եւ երկու հարիւր տարիէ աւելի առաջ Թուրքերը կործանեցին զայն: Սակայն իր փլատակները անգամ՝ տակաւին ցոյց կուտան շէնքին երբեմնի գեղեցկութիւնը: Երբ կը գննէի կամարաձեւ ընդարձակ յօրինուածքին ներսերը, մօտակայ վանքի մը դպրոցին երգեցիկ տղոց ձայնը հնչեց: Վարժութիւն կ'ընէին յառաջիկայ զատկական տօնին երգեցողութեանց համար, եւ սրտառուչ ազդեցութիւն մը ներգործեց նուրբ եւ բարձր ձայներուն միջեւ դպի-

րին խոր բամբը՝ «Կօ՛սքօտի քօմի՛լուի», Տէր ողորմեա՛: Ցոյն օրթօտոքս եկեղեցիին ձայնական ծիսարանին մէջ մելամաղձիկ բան մը կայ, նոյնը նաեւ ռուս ժողովրդական երգին մէջ: Տեղւոյն կիսալոյսին եւ խունկի ծուխերէն սեւցած ու աղօթողին վրայ ծանրացող սիւներուն եւ պատերուն շատ հեշտ կը պատշաճի հանդիսաւոր արտաբերումը սա՛ ցաւագին ձայնին — Տէր ողորմեա՛»:

Ս· Գէորգ եկեղեցիին երկայնքին տարածուող բարձունքէն քանի մը քայլերով կը հասնինք հին Իմերեթական արքայադղեակին աւերակներուն, ուրկէց հրաշալիօրէն կարելի է չորս կողմէն դիտել քաղաքը, ապառաժներուն անկիւնին մէջ մռնչող Ռիօնը, Կովկասեան լեռնագօտիին գեղածիր գիծերը եւ մինչեւ միգամած ծովը ստորանկող Կողքիսական հարթավայրը: Բայց ուր որ երբեմն ընտանի էին փայլ ու տօն, ուր որ Կախեթի կարմիր գինին հոծ խրախունքներու ատեն հրավառ կը հոսէր երակներուն մէջ, հիմա գերեզմանի լռութիւնը կը թագաւորէ, եւ քարերը կը մնան բորբոսած: Զոյգ մը մեծղի մողէզներ կը սահին ոտքի տակէն — այլապէս ո՛չ մէկ շարժում· ամէն ինչ ամայի եւ լքուած:

Քութայիսէն գրեթէ քսան քիլոմեթր անդին սարին ծաղկաբոյր հովիտներուն մէջ փառաւոր գնացքէ մը վերջ մեզ կ'ողջունէ Գղաթի վանքը, ողջոյն մը Իմերեթիոյ թագաւոր «Նորոգող» Դաւիթին, ԺԲ. դարուն սկիզբները: Բալխիրիս (Թրոյքա) խստերախ երկանիստուն ձիերը սանսարձակ . քառասմբակով կը բռնեն բարձունքը: Պարիսպին մէջէն նեղ դուռ մը կայ միայն, զոր կրկնակի բաղխումներէ վերջ միայն կը բանայ մեզի խման դռնապան մը, քանիցս խնամով ծակէն նայելէ վերջ: Կէս օր է, եւ արեւը կը թխսէ ընդարձակ բակին խոտախռիւ սալայատակին վրայ: Քանի մը վանականներ ժուռ կուգան աչքերնին վար կախած, աղօթագիրք եւ վարդարան ձեռքերնին: Ոչ ոք կարեւորութիւն կուտայ

ինծի, եւ ոչ ոք կը խօսի, որովհետեւ միաբանական կա-
նոնը լռութիւն կը պատուիրէ:

Ճիշդ վանքին բակին մէջտեղ կը բարձրանայ Ս. Մարիամ Մայր եկեղեցին, աւազաքարէ կոյտերէ ագուցուած եւ բուն վանքէն հարիւր տարի աւելի հին: Ներքին մասը սովորական կերպով խաչաձեւ, մինչ պատերը ծածկուած են իւղաներկերով եւ սուրբի պատկերներով: Նրբաձայն եկեղեցի կը հրաւիրեն զանգակները, բայց բոլորովին թափուր կը մնայ. կոյգ մը վանականներ միայն ծնրադիր կ'աղօթեն. այս է անոնց միակ զբաղումը, եւ ասիկա ամէն օր երկու ժամ առաւօտուն, կէս օրին եւ իրկունը, սակայն ներկայ Մեծ պահոց մէջ ամէն ժամ փոխն ի փոխ անընդհատ գիշեր ցերեկ: Կարելի է հաւատալ որ այսքան առատ աղօթասացութիւն մը պէտք է բաւական ըլլայ ամէնուն յամառ մեղքերուն ապաշխարութեան: Բայց գործը այսպէս չէ, որովհետեւ հոն ա՛յն աստիճան եռանդուն բարեպաշտներ կան որ եկեղեցիին մէջ աղօթելէ վերջ իրենց խուցը կը քաշուին եւ ի ծածուկ սատանային փորձութեան դէմ եւ հոգիին փրկութեան ապահովութեան համար կը շարունակեն, որչափ ատեն մարմինին տկարութիւնը ներէ :

Մայր եկեղեցիէն ոչ շատ հեռի կը գտնուի Դաւիթ Թագաւորին կիսափուլ դամբարանը եւ մօտն ալ վանականներուն ընակարանը: Ներս մտայ, լուսաւոր վայր մը. լրջադէմ խցաբնակը աթոռ մը ցոյց տուաւ, անբնակ թերայարդար սրահին մէջ միակ աթոռը: Պատուհանին մօտ աղօթարանին վրայ դրուած է եկեղեցական հօր մը գործը. բացուած թերթերը ժամանակէն դեղնած են, անվրէպ նշան մը թէ բարեպաշտ ընթերցողը հասուն խորհրդածութեան նիւթ ըրած է սուրբ խօսքին իմաստը եւ զգուշացած է մտքին անգործութիւնը վրդովող մեղանչական աճապարանքէ:

Վանքերը անդիմադրելի հրապոյր մը ներգործած են միշտ իմ վրաս. ե՛րբ եւ ո՛ւր որ կրցած եմ, այցե-

լած եմ անոնց, եւ ճամբուս վրայ հանդիպած ո եւ է վանքի մէջ ներս չմտած չեմ անցած: Իրաւ է որ վանականի կեանքին հագուստները եւ սարքերը իր օրէնքներուն, յոյսերուն եւ նպատակներուն նման ամէնուրեք միեւնոյնն են, եւ կը տարբերին միմիայն ուժի սպառումի չափէն, զոր մարդ անհրաժեշտ կը նկատէ մահացնելու համար ամէն ինչ որ աշխարհային է, եւ մերժելու համար ո եւ է մեղսահրապոյր ազդեցութիւն փրկութեան ճամբէն: Ցայտնապէս հոս յաջողած են այդպիսի ուժի սաստ չափ մը ձեռք բերել. սուրբ եղբայրներուն ամբողջ երկրաւոր գոյութիւնը խստամբեր միաբանական դաստիարակութեամբ միմիայն անդէնականին նուիրուած է—թէեւ քսան ոչխարներ ալ պակաս ըլլալու չեն անոնց մէջ:

Վանականը միշտ լուռ կը կենար առջեւս: Միակ բանը զոր դժուարաւ կրցայ քաղել իր բերնէն, ա՛յն էր թէ այդ պահուն Աբբահայր մը եւ ինը եղբայրներ միայն կային, թէ հինգ տարի առաջ «Յեղափոխութեան ատեն» լեռնաբնակ ժողովուրդը վանքը թալլեց եւ այս պատճառաւ անկէց ի վեր գողերու դէմ պաշտպանութեան համար պահակ հաստատուած է: Եւ պատուհանէն ցոյց տուաւ ոստիկան մը, որ թմբիի մը շուքին տակ՝ թեւը գլխուն տակ, կռնակին վրայ պառկած էր, եւ ձայնաւոր խորդալով արդարի քունը կը քնանար, արդարեւ ամէնէն խելացի բանը զոր «պահակ» մը կրնար ընել քունի այս հաստատութեան մէջ: Երբ կը մեկնէ խուցէն, դրան վրայ կարդացի ճգնաւորական աշխարհատեցութեան ազդը. Մահուան վրայ մտածէ՛:

Ամէն ժամանակ եւ ամէնուրեք եկեղեցին ըմբռնած է բնութեան համակերպիլ գովելի հնարամտութեամբ մը իր հիմնարկութիւններուն համար: Այսպէս Գողաթի վանքին դիրքն ալ գեղեցիկ է, եւ անկեց տեսարանը հիանալի է Իմերեթիոյ արեւոտ բլուրներուն եւ հովիտներուն վրայ. կշտապինդ կանանչ մը հագած են եւ երկնակապոյտին մէջ ցցուած Կովկասեան Էլպրուսի գօտիէն բարձրադիր, մեր Ալպեաններուն չափ հիւրամերժ եւ անջրդի, բայց աւելի բարձր, աւելի վայրի եւ աւելի մեծափառ:

*Դէպի Թիֆլիզ ուղեւորական գնացքը կրկնապատիկ հրապուրիչ է. հողամասի եւ մարդոց տեսակէտով: Արեւատոգոր Կողքիսեան հարթավայրէն դուրս կը բարձրանայ երկաթուղին անտառային նեղ հովիտներու մէջէն, ուր բալենիի եւ յասմիկի ծաղիկները դուրս կը ժայթքեն մութ կանանչէն եւ ժանտաթզենին կը պարզէ իր ատամնաձեւ խոշոր թերթերը, Սեւ եւ Կասպից ծովերուն միջեւ ջուրերու բաժանումը կազմող Սուրամ սարին կռնակը, երկար փապուղիով մը կը կտրէ զայն, եւ խոնարհելով ապա Կուրի հողամասին մէջ՝ կը մօտենայ Թիֆլիզի, որ իր յարափոփոխ դաշտանկարներով յաճախ Ալպեանները կը յիշեցնէ: Եւ ահա մարդի՛կը: Ճշմարտապէս փառաւոր կերպարանքներ, աճումով, կեց ու դիրքով եւ պատկառանքով անպարսաւ Հայեր, իրենց ճերմակ գառնենի գդակներով: Կայարանները լեցուն կեանքով ու յորդումով, բայց նաեւ լիք զինուորներով եւ ժանտարմներով. Թիֆլիզի մուտքին առջեւ զինուորական պահակներ ցանկապատի նման կը կենան ցից սուիններով կառախումբին երկայնքը, ինչպէս ատենօք Պաքու հասնելուս, ա՛յնպէս որ մարդ կրնայ իրապէս կարծել թէ խռովայոյզ քաղաքի մը մէջ մտած է:*



Խազախ



Վրացուհիներ

**Շղարշդ ետեւ նետէ՛,**
**Ինչո՞ւ կը քօղարկուիս:**

(Միրզա Շաֆի)

**Գործին վախճանը գովելի է:**

(Առակք Սողոմոնի)

## 2. *Թիֆլիզ–Կարս*

*Արեւելքի միւս քաղաքներուն նման Թիֆլիզ չի կրնար պարծիլ հնութեամբ եւ մեծ անցեալով: Որովհետեւ Միջին Դարու մէջ միայն երեւցաւ իբրեւ կեդրոն Կրուզինեան (Կիւրճի) թագաւորներու, կրկին եւ կրկին կործանեցաւ Նախաասիական ժողովուրդներու շարժումներէն եւ պարսկական արշաւանքներէն, եւ իր*

*երբեմնի փայլին իբրեւ վկայ պահած է մեզի միայն հին դղեակին բարձրադիր լայնանիստ աւերակները: Թիֆլիզ երկայնաձիգ տարածութեամբ հաստատուած է ցից լերկ ապառաժներու միջեւ փրփրոտ Կուրի նեղ հովիտին մէջ Եւրոպայի եւ Ասիոյ սահմանին վրայ. իրարու կը միացնէ Արեւմուտքն ու Արեւելքը: Վրացի ճարտարապետութեամբ իր բազմաթիւ եկեղեցիներն ու աշտարակները. ռուսական սպիտակ շէնքերով ընդարձակ պողոտաներն ու հրապարակները, եւ ա՛լ աւելի իր նեղ, յաճախ ցից փողոցներն ու փողոցիկները իրենց յարածուփ երփներանգ ժողովրդային կեանքով Արեւելքի յատուկ լիալիր լոյսի մէջ՝ նախորդ ճամբորդութեանս հին հրապոյրը ներգործեցին վրաս. բայց դժբախտաբար այս անգամ — Ապրիլի կէսը — դեռ շատ ետ մնացած էր բոյսերուն աճումը, մինչ որ կոշտ հակապատկեր մը կը կազմէր Կողքիսի գարնանազուարճ հարթադաշտին եւ Սուրամի անտառախիտ բարձունքներուն. ո՛չ մէկ տերեւ ծառերուն վրայ, փողոցներուն մէջ հով ու փոշի: Միրզա Շաֆիի սիրազեղ եւ գինեթաթախ նուագներուն մէջ շռայլօրէն երգուած քաղաքին հրապոյրները չկային, որոնք նախորդ անգամուն շատ մը օրեր կաշկանդեցին զիս հոն, այլ այս անգամ ջանացի միայն Կարսի ճակատամարտի դաշտերուն ու Անիի աւերակներուն այցելութեանս համար հարկ եղած օժանդակութիւնը ձեռք բերել, առանց որուն ընդարձակ Ռուսիոյ մէջ ոչինչ կարելի է ընել, եւ յետոյ հարկ եղած պատրաստութիւնները կատարել Հայաստանի անբնակ հովամասերուն մէջէն կառքով ու ձիով շաբաթներ տեւող կարաւանական մտածուած ճամբորդութեան համար:*

*Կառավարական իշխանութեանց մօտ յանձնարարութեան գալով, մեր արտաքին գործոց պաշտօնատունը Պերլինի մէջ ինծի հաղորդած էր թէ Կովկասի Փոխարքային Ռուս կայսերական կառավարութենէն հրահանգտրուած է ամէն կերպով օժանդակել ինծի նպատակիս հասնելու համար: Եւ արդարեւ ամէն ինչ կարելի եղա-*

ծին չափ հեշտ գնաց. սակայն դարձեալ տեսակ մը ձգձգումով, որովհետեւ Կովկասի Փոխարքային կոմս Վորոնցով Տաշքով ժամանակէ մը ի վեր ծանր հիւանդ էր եւ գործերը յանձնուած էր իր օգնականին՝ ծերակուտական Պալթացիի, որ պարտաւորուած էր ամէն բանի վրայ տեղեկութիւններ քաղել:

Ճամբորդութեան համար նախ եւ առաջ ծառայութեանս մէջ առի ճարտար թարգման մը, որ սահուն կերպով կը խօսէր ռուսերէն, թուրքերէն եւ հայերէն, եւ անոր օգնութեամբ գնումներու ելայ, սկսեալ ճամբու անկողիններէն մինչեւ պաստառի չուանն ու լուցկին: Այս գնումներն ալ բաւական ժամանակ կը բռնէին, թէեւ ես շատ մը փորձառութեամբ ճշդիւ գիտէի թէ ինչ պէտք է ընել սխտանոյս ոչինչ մոռնալու համար: Ազատ ժամերուս առանց յոգնելու կը շրջագայէի Պարսիկներուն եւ Վրացիներուն թաղերը: Հայեր. գիւղացիներ, բազմածալ վերարկուով եւ գառնենի գդակով, Չերքէզներ, Թաթարներ, Բօքեր երկայն պատմուճաններով եւ մազերով, մուրացիկներ քրքրեալ ոտնամաններով եւ պատառոտուած զգեստներով — ամէնքը կը խուժէին աղմկայոյզ, եւ կը քաշուէին միմիայն փութկոտ քայլերով եկող գացող զինուորներուն առջեւ կամ իրարմէ յանկարծ կը բաժնուէին անվերապահօրէն հետապնդող Կազակ պահակներուն առջեւ:

Այս անգամ ալ մեծ բան մը չտեսայ շատ գովուած Վրացուհիներէն, տեսածս ալ քիչ բացառութեամբ այնքան հրապուրիչ բաներ չէին: Արեւելքի քողարկումը բաց կը թողու միայն ճակատը եւ մանրիկ ոտքերը բարձր գարշապարով ոտնամաններու մէջ: Սակայն մերթ ճերմակ շղարշին տակէն թուխ հոգելից աչքեր կը կայծկլտան եւ կ'արթնցնեն սա ըղձանքը. «Շղարշդ ետեւ նետէ՛:»

Վերջապէս ճամբայ ելլելու կազմ եւ պատրաստ էի, երբ կոմս Վորոնցով Տաշքով հաղորդեց ինծի թէ իրաւ է որ ինքզինքը շատ տկար կը զգար, բայց պարտք

կը համարէր ուրիշ օր մը կէս օրին ընդունիլ զիս, եթէ մնամ տակաւին եւ եթէ կը փափաքիմ տեսակցիլ իրեն հետ, որ անկողին ինկած է: Ուրիշ կերպ կարելի չէր ընել, եւ վեց տարի առաջ եղածին նման, գացի Կօլօվինաքի Հրապարակին վրայ հաստատուած Փոխարքայական պալատը, որուն առջեւ հրացանը ուսերնին կեցած էին բաւական թուով պահակներ: Կարմրազգեստ խազախ Թիկնապահը անմիջապէս առաջնորդեց զիս կոմսին ննջարանը. Թէեւ յայտնապէս կը տառապէր անկողինին մէջ, զիս ընդունեց արտասովոր համակրութեամբ եւ ըսաւ թէ արդէն անունս իմացած էր եւ շատ ուրախ է ու եւ է կերպով ինծի օժանդակելուն վրայ: Երբ գրէթէ մէկ ժամ խօսակցութենէ վերջ հրաժեշտ առի, անգամ մըն ալ խոստացաւ իմ գործս անձամբ կարգադրել, որպէս զի բոլորովին ապահով ըլլամ թէ



Թիֆլիզ։ Թաթարուհի

ամէն տեղ ամէն ինչ պատրաստ պիտի գտնեմ: Ժամանակացոյցին համեմատ Թիֆլիզէն Կարս օրը երկու անգամ կառախումբ կայ. մին կէս օրէ վերջ եւ միւսը գիշերը: Շրջակայքէն բան մը տեսնելու համար, որովհետեւ ասկէց առաջ ծանօթ էր ինծի միայն մինչեւ Աղեքսանդրոբօլի կէս ճամբան, կէս օրէ վերջի կառախումբը ընտրեցի եւ կ'ուզէի ճամբայ ելլել: Բայց նոր արգելք մը ելաւ մէջտեղ, անցագիրը: Այո՛, ըսաւ

թարգմանս, այնքան շուտով վիզէ ընել տալ կարելի չէ, եւ տուրքը թէեւ ութսուն կոպէկ է միայն, բայց հինգ րուպլիէն պակասով չի վերջանար, որովհետեւ կաշառել պէտք է բոլոր քարտուղարները: Ուստի կը մնար ինծի միայն փութով անձամբ ոստիկանութեան դիմել, ուր անցագրի դիւանը մարդոցմով լեփլեցուն գտայ: Երբ այն խոնաւ սենեակին մէջ չորս կողմս կը դիտէի, լաւ հագուած մարդ մը ականջիս փսփսաց թէ ամբողջ վեց ժամէ ի վեր կը սպասէ եւ այսօր ալ պիտի չկրնար մեկնիլ: Ութը կամ տասը գրասեղաններու առջեւ նստած էին նոյնքան երկտասարդներ եւ բաներ մը կը մրոտէին, գլուխնին թուղթին վրայ, եռանդով:

Ինչպէս Արեւելքի մէջ, Ռուսիոյ մէջ ալ ժամանակին յարգը չեն գիտեր: Ռուսերէն լեզուին մէջ «նիչեվօ» (ոչինչ) բառէն զատ, որ ամէն հնարաւոր նշանակութիւններուն կը հանդուրժէ, չկայ ա՛յնքան շատ գործածական կամ աւելի չարաչար գործածուած բառ քան «սըչաս»ը, հէնց ա՛յս րոպէիս: Ամէն ինչ «սըչաս» կ՛ըլլայ կը լմննայ, բայց ամէն ինչ յաւիտենականութիւն կը տեւէ: Քանի որ այս անիծեալ բառը գործածական կը մնայ, Ռուսիոյ մէջ առաջ երթալ կարելի չէ եւ չըլլար:

Ուղղակի դիմեցի ոստիկանապետին, եւ ինչ տեսնեմ. ձեռքի մէ՛կ շարժումով ընդունեցի անցագիրը, վճարեցի ութսուն կոպէկս, որ ուղող ալ չեղաւ, եւ հպարտութեամբ մեկնեցայ պաշտօնատունէն ոստիկանապետին օգնականին կողմէ մինչեւ սանդուխ առաջնորդուելով, խեղճ սպասողներուն խոնարհ յարգանքներուն տակ: Արդարեւ այսօրուան օրս աւելի դիւրին է Ռուսիա երթալ եւ անկէ մեկնիլ: Ամէն պարագայի մէջ անցագրի այդ անիծեալ դրութիւնը առաջուան չափ կը մնայ. աս ինքնին կը բաւէ հրաժարիլ տալ հոն ճամբորդելէ:

Հայու կաշառուելու կերպերը եւ անթիւ անհամար տարին պաշտօնեանե՛րը, «Չինօվնիքնե՛րը»: «Արեւելքէն

եւ Հարաւէն» գործիս մէջ արդէն այս մարդիկը ցոյց տուած էի իբրեւ Ռուսիոյ քաղցկեղը, իբրեւ անմիտ մնապարծներ, դէպի վերերը սողոսկող, իսկ դէպի վարերը կոշտ ու ամբարտաւան, եւ հիմակ ալ ճիշտ նոյն տպաւորութիւնը ունեցայ կրկին: Անհաւատալիօրէն ագէտ են: Անոնց հետ գործ ունեցողը աղէկ կ'ընէ Կատարինէ Բ.ի խօսքը բանելով հիմակ ալ. «Շատ մարդիկ կան Ռուսիոյ մէջ որ չեն գիտեր թէ ծովային քաղաք մը նաւահանգիստ կ'ունենայ»:

Վերջին պատերազմէն ի վեր կեանքը ամէնուրեք Ռուսիոյ մէջ, եւ մանաւորապէս Անդրկովկասի մէջ խիստ սղած է, բայց մեծ մասամբ գոյն ամսականները անփոփոխ մնացած են կամ հազիւ թէ քիչ մը բարձրացած: Ուստի կը տեսնուին պաշտօնատարներ, նոյն իսկ իրենց գործին մէջ հինցած ամբացած եւ քիչ շատ արդար պաշտօնատարներ, թէեւ թիւով խիստ ցանցառ, որոնք իրենց ընտանիքները ապրեցնել կարենալու համար երկրորդական հասոյթներու աչք կը տնկեն, շատ բանաւոր նկատելով զանոնք եւ կ'առնեն ո՛ւր որ գտնեն: Հոս ատոնց դարման գտնելը բաւական դժուար է, որովհետեւ խորապէս արմատացած է անիրաւութիւնը, որուն առաջքը առնելու համար վերջերս ալ կ'աշխատին Պետական Խորհուրդի կարծեցեալ վերաքննու-



Թիֆլիզ։ Փայտկիր

թիւններով, եւ ո՛ւր որ գանգատը կը պակսի, դատաւոր ալ կը պակսի: «Երկինքը բարձր է եւ Ջարը ընդարձակ է»: Ինչ ինչ շատ վրան բաց արատներ տեղ տեղ կը մաքրուին, բայց հիմնական գոյնը աղտոտ կը մնայ եւ վերջ ի վերջոյ ամէն ինչ հինին պէս է: «Սեւամորթը ճերմկցնել ուզելով սափրիչը իր օճառը վրայ կուտայ»: Ուրեմն դեռ ո՛րքան ճշմարիտ են այս կացութեան նկարագրութիւնները, զոր ունինք Կօկօլի, Տօլթօեէվսքիի, Թուրկենիեւի, Նէքրասովի եւ ուրիշներուն գրիչէն: Իրաւ է թէ իմ ճամբաս ամէնուրեք հարթուած էր առջեւս, եւ իրօք ոեւէ պատճառ չունեցայ գանգատելու, բայց կրնանք ճշդիւ ըսել թէ աղքատը եւ դիրքի տէր չեղողը, մանաւանդ գիւղացին, այսօր իսկ տակաւին ոեւէ իրաւունքի չի կրնար հասնիլ: Ցաճախ հեռուներէն գալով՝ նախասենեակներուն մէջ կը սպասէ ժամերով եւ օրերով. թերեւս իր մէկ խոնարհ դիտողութեան վրայ երբեմն կոպիտ «սըչաս» մը կամ «մօլչաչ» (լռութի՛ւն) մը փակցուի ճակատին, մինչեւ որ վերջապէս գդակը ձեռքին մէջ դարձնէ, խաչակնքէ եւ եկած երկար ճամբէն ետ դառնայ: Եւ այս ամէնուն կը հանդուրժէ համբերութեամբ, որմէ առատ չափով նուիրած է իրեն իմաստուն Նախախնամութիւնը. բնաւ չի նախատեր, եւ բնական կը համարէ այս վիճակը, որովհետեւ ուրիշ չի գիտեր: Գերութեան ժամանակ ալ այսպէս եղած է: Եթէ գեղացիի մը խրճիթին յարդէ տանիքը փտէր կամ փոթորիկէն վնասուէր, եւ ձրի ծառայութեան ժամեր խնդրէր ինչպէս նաեւ փայտ եւ յարդ, խիստ ձմրան մուտքին առջեւ իր տանիքը ամրացնելու համար, բուն տէրը, «պարին»ը, թերեւս պարագաներու համեմատ բան մը ընէր: Բայց Բեթերսպուրկի կամ Բարիզի մէջ ապրողին հոգը չէ բնաւ, բանէ մը տեղեկութիւն չունի եւ ամէն բան վարիչին, կառավարական պաշտօնէին կը թողու, ինք դրամ կ՚ուզէ միայն, շատ դրամ եւ չախորժիր ոեւէ գանգատէ, ոեւէ անհանգստութենէ: Եւ վարիչն ալ դրամը կը հայթայթէ

անողորմաբար, մանաւանդ երբ, ցաւ է ըսել, ծագումով գերմանացի ըլլայ: Գեղացիին ետեւէն կ'իյնան մէկ անգամ, տասը անգամ, հարիւր անգամ. խրճիթը կը փլչի ու ինքը կը կործանի: Որո՞ւն հոգը: Յաճախ շրջեցայ լայնածաւալ Ռուսիոյ շատ մը կողմերը, ո՛չ միայն փոխադրութեանց ընդարձակ ճամբաներուն վրայ, այլ նաեւ կողմնակի գիւղէ գիւղ: Եւ միշտ միեւնոյն պատկերը: Խեղճ ու կրակ խրճիթներ կը կռթնին կանանչ գմբէթով փայտէ հին մատուռի վրայ. մօտիկն ալ կայ գինետունը: Ոչխարի աղտոտ մուշտակը ամառ ձմեռ գիւղացիին հագուստին ամէնէն կարեւոր մասն է, զոր ընաւ չի փոխեր, եւ որուն մէջ կը քնանայ, կ'աշխատի, կը խմէ եւ կը մեռնի:

Երբ Կօկօլ իր նշանաւոր վէպը, «Մեռած հոգիները» գրեց, իրեն նիւթ տուաւ վերջին վերաքննութենէն ի վեր մեռած բայց տակաւին ցանկերուն մէջ մնացող մարդկային ստրուկները. կիները հոգի չունէին եւ անոնք չէին հաշուուեր: Ըսել կ'ուզեմ թէ մեռած հոգիներ այսօր ալ տակաւին կան լայնածաւալ Ռուսիոյ մէջ: Անոնքեն աղքատութեան, աղտեղութեան եւ ագիտութեան մէջ ապրող գեղացիները, եւ նաեւ բոլոր այն բազմաթիւ հազարները, որոնք եկեղեցի կ'երթան ու կը խաչակնքեն, որոնք կ'ուտեն, կը խմեն, կը խաղան եւ իրենց կեանքը կը վատնեն հոգեկան անմխիթար ամայութեան մէջ: Բարձր դասու Ռուսը անթերի է ձեւակերպութիւններու մասին եւ ընդհանրապէս հրապուրիչ քաղաքավարութիւն մը ունի, ան ալ կը սիրէ գեղեցիկ բառերով ազատական հովեր առնել եւ տարօրինակ կերպով ընկերվարական գոյն ունեցող տեսութիւններ պարզել



Թիֆլիզ ։ Ջրկիր

մարդկային իրաւունքներուն վրայ, մանաւանդ երբ լաւ մը կերած խմած է, լաւ մը կշտացած ու հանդիստ կը զգայ ինքզինքը. բայց այս ամէնը զուտ արտաքին է իրեն մէջ եւ չի շարժեր ուղեղը, այնպէս որ տակաւին ճշմարտութեան մեծ բաժին մը կայ սա՛ խօսքին մէջ զոր ատենօք Տիտօ կամ Նաբօլէոն Ա. եւ յետոյ ուրիշներ ըսած են. «Քերեցէ՛ք Ռուսը եւ պիտի գտնէք Թաթարը:»

Կէս օրէ վերջ ժամը չորսին 1910 Ապրիլ 22ին մեկնեցայ Թիֆլիզէն: Կառախումբը, ինչպէս գրեթէ միշտ Ռուսիոյ մէջ, խիտ առ խիտ լեցուն էր, որովհետեւ կառախումբերը քիչ են, եւ ամբողջ գիծերուն վրայ խճողուած են, եւ կառքերուն պակասը խիստ մեծ է: Պատերազմին ժամանակ այսպէս էր, որովհետեւ ամբողջ գիծերէն մեծաքանակ իրեղէններ փոխադրուեցան դէպի Սիպերիական գիծը եւ անոնց մանաճիւղերը. եւ հիմակ ալ իբր թէ խնայողութեան պատճառաւ:

Տափարակ ալեկերպ գետիններուն վրայ երկարագոյն գնացքէ վերջ միշտ բարձրացող երկաթուղին ճեղքեց Վրաստանի ապալեր բազմակիրճ լեռը եւ հասաւ Քարաքիլիսէ կայարանը, ուր վեց տարի առաջ կառախումբէն իջած էի, արտաքոյ կարգի թղթատարով այցելելու համար Կօքչայի լիճը, Երեւան, Էջմիածին եւ Արարատ, եւ ժամը երեքին հասայ Աղեքսանդրօբօլ: Հոս անախորժ անակնկալը ունեցայ, կառախումբը Կարս պիտի չերթար, եւ ինը ժամ պարտաւոր էի սպասել գիշերը Թիֆլիզէն մեկնող կառախումբին: Դժբախտաբար պէտք եղած չափով տեղեկութիւն չէի առած Թիֆլիզի մէջ, եթէ սակայն հոն ալ գիտցող կար, չնայելով որ Ռուսիոյ մէջ եւ մանաւորապէս անոր հեռաւոր մասերուն մէջ իրական տարբերութիւնը կը կայանայ գրուածին եւ պատահելիքին եւ բուն պատահածին միջեւ: Գրուած է թէ այս ինչ բանը այս ինչ կերպով պիտի ըլլայ: Բայց իրականին մէջ բոլորովին տարբեր կ'ըլլայ:

Ի՞նչ կրնայինք ընել: Պարտաւորուեցայ մնալ ցուրտ կայարանին մէջ —Աղեքսանդրոբօլ 1500 մէթր բարձր է, քաղաքը շատ հեռու էր բնականաբար, որովհետեւ Ռուսերը ճշմարտապէս զարմանալի ճարպիկութիւն մը ունին կայարանները կարելի եղածին չափ բնակութիւններէն հեռի հաստատելու. նաեւ պանդոկ բռնելու արժանի բան մըն ալ չկար:

Մարդ Ռուսիոյ մէջ ճամբորդելու, եւ շատ ճամբորդելու է, որպէսզի կարենայ չափել տառապանքը թէ ի՛նչ ըսել է ինը ամբողջ ժամեր, որոնց կէսը գիշեր ատեն, անցընել ռուսական փոքրիկ կայարանի մը մէջ: Երկաթուղիի մեծ կայարանները շատ լաւ են եւ նաեւ համեմատաբար մաքուր, սակայն շատ գէշ են պզտիկները, թէեւ իրենց ընդհանրապէս սովորական մոմի լոյսերովը, քարիւղի կանթեղներովը, ոսկեզօծ պատկերներովը, թաղարատունկերովը անհամակիր տպաւորութիւն մը չեն ըներ: Արդէն բազմոց չկայ ճճիներուն պատճառաւ, եւ երերուն աթոռները պէտք է նախազգուշութեամբ գործածել: Ամէն բանէ առաջ կ՚արժէ լուսնալուն սպասել: Ասոր համար պէտք է երեք ամէնէն ամուր աթոռներուն վրայ զոյգ մը ծածկոց զետեղել,



Աղեքսանդրոբօլ: Խումբ մը գործաւորներ

բայց պատէն հեռի ըլլալու խոհական նախզգուշութեամբ, յետոյ լոյսերը մարել, սենեակին դուռն ու պատուհանները գոցել. եւ այսպէս

դէշ աղէկ քնացայ լոյսին սպասելով սա՛ մխիթարական գիտակցութեամբ թէ աշխարհի վրայ ամէն նեղութիւն այսպէս կամ այնպէս վախճան մը ունի:

Քիչ շատ լոյսը ճեղքուելուն պէս, բարձր մուճակներով եւ գլխու ծածկոյթով մը, որ կնոջական կարծեցի, երկբայելի էակ մը ներս մտաւ, եւ մաքրութիւն կատարեց, այսինքն՝ մատնաչափ թանձրութեամբ փոշին դէպ ի վեր փոթորկեցուց, որ դարձեալ հանդարտութեամբ իջաւ նստաւ սովորական տեղը: Աւելորդ է ըսել թէ չկրցայ լուացուիլ, որովհետեւ այն տեղուանքը այդ տեսակ պէտք չկայ. այսու հանդերձ իրաւի մարդ պէտք է զարմանայ թէ Ռուս մը ո՛րքան քիչ ջուրով կրնայ գործին մէջէն ելլել:

Այսպիսի պարագաներու տակ ինծի ուրիշ բան չէր մնար ընել, եւ առնական որոշում մը տուի հետիոտն քաղաքը այցելելու: Ինչպէս կը սպասուէր, ճամբան ընդարձակ էր, փոշելից, անծառ եւ անթուփ: Հետզհետէ աչքի զարնուեցան զոյգ մը միայարկ քարէ տնակներ, յետոյ աւելի. ոլորապտոյտ փոշիի ամպեր, քանի մը քնացած խափչիքներ (կառապաններ) պզտիկ գխախուխ ձիերով, ոստիկաններ, խումբ մը թափառական աշխատաւորներ եւ զօրականներ: Գլխաւոր փողոցին մէջ էի. Պէտք է խոստովանիմ թէ իմ տեսած հարիւրաւոր ռուսական քաղաքներէն Աղեքսանդրոբօլ ամէնէն տխուրներուն կը վերաբերի: Նոյն իսկ Բօթին իր տենդոտ օդին հակառակ նախանձելի վայր մը կը թուի ինծի, որովհետեւ գոնէ ծով ու բոյս ունի. Եօթը ամբողջ ամիսներ հոս անողոք ձմեռ կը տիրէ, եւ մնացեալ ժամանակն ալ կը վնասէ եղանակին ամենակոշտ փոփոխութիւններով, ա՛յնպէս որ ռուս զինուորական մը շատ իրաւունք ունէր, որուն հետ խօսեցայ կէս ճամբան, երբ պատմեց ինծի թէ տասներկու տարիէ ի վեր Աղեքսանդրոբօլ կը մնայ, բայց ասիկա կեանք չէ, այլ մահ: Քաղաքը երեսուն հազար մեծ մասամբ Հայ բնակիչներէ կը բաղկանայ եւ վերջին ռուսեւթրքական պատերազմէն առաջ

կարեւոր սահմանապահ բերդ մըն էր այն միջոցին դեռ թրքական Կարսին դէմ:

Դիպուածով կարդացի քարէ շէնքի մը վրայ սա՛ արձանագրութիւնը. «Ռուսական բանակ», եւ ասիկա ճակատագրին մէկ ժպիտը երեւցաւ ինծի, ո՛րքան ալ շէնքը երկբայելի թուէր. եւ իսկապէս այդ շոգիի շէնքին մէջ ժամանակին մնացած մասը անցընելէ տարբեր բան մը չկրցայ ընել: Կանչուած բանակայանը անսովոր պարգեւի մը ակնկալութեամբ ճշմարիտ խանդավառութեամբ մը խնձմով ըմբռնեցաւ, եւ սաստիկ տաք տեղին մէջ վրաս բանեցաւ երկու ժամ ա՛յնքան մանրակրկիտ կերպով որ խոհեմութիւն համարեցի դէպի կայարան վերադարձը կատարել ա՛յն թեթեւ միաձի կառքերէն մէկով, որոնցմէ կէս երկոտասնեակ մը կը սպասէր դրան առջեւ սակաւագիւտ հիւրերու: Արեւը կը շողար եւ տաք էր:

Կայարանին մէջ իմացայ թէ Թիֆլիսի կէս օրուան կառախումբը քիչ առեննէն պիտի գար, որովհետեւ ետեւօք եւ առջեւօք կեցած էին արդէն ժանտարմներ, եւ պահակներ ալ չէին պակսեր: Հայ թարգմանս պատմեց թէ արդէն ժանտարմներ իրմէ երեք անգամ տեղեկացած էին թէ ծրարները որո՞ւ կը պատկանէին, թէ ես ո՛վ եմ եւ ո՛ւր պիտի երթամ, ամէն բան արձանագրած էին, ա՛յն ատեն միայն գացեր են երբ ան իրենց ըսեր է թէ Փոխարքային կողմէ կուգայ եւ Կարսի կառավարիչին կ'երթայ: Սիրո՛ւն երկիր: Վերջապէս սովորական յապաղումով կառախումբը ճամբայ ելաւ:

Ալեքսանդրօբօլէն Կարս երեքուկէս ժամուան գնացքը—75 քիլոմէթր է, բայց մարդ դանդաղ եւ աւելի ապահով կ'երթայ Ռուսիոյ մէջ—շատ տխուր բան է. լերկ, քարուտ, անմարդի լեռնադաշտեր. երկու կողմերէն լեռնագօտիներէ անձկացած, որոնք մինչեւ ստորոտը ձիւնով ծածկուած էին: Կուր գետին վրայէն անցնելէ վերջ հողամասերը յանկուցիչ կ'երե-

*ւէին խնծի, որոնց վրայ տեղի ունեցան Կարսի մօտ կռիւները. ակնյայտնի կը բարձրանային փոքր ու մեծ Եանիի բլուրները, մինչեւ իրենց ետեւը ձիւնապատ, որ լայնաձիգ կը տարածուէին Ալաճա Տաղի 2600 մէթր բարձր թիկունքին վրայ:*



Թաթարներ

Բարեկամին կարկանդակ,
Թշնամիին գնդակ:
(Ռուս զինուորին երգը)



Զինուոր ժանտարմ

## 3. Կարս

Կարսի մէջ ուր մարդ ոչինչ կը տեսնէ զինուորէ զատ, ինձ կ՚սպասէր ոստիկանապետը, Ռուսիոյ մէջ խիստ ազդեցիկ անձնաւորութիւն մը, պատուանշաններով զարդարուած, հաղորդեց ինծի թէ կառավարիչին մօտ արդէն ինձ համար խօսուած է, եւ պանդոկ առաջնորդեց զիս: Անկէց անյապաղ ուղղուեցայ կառավարիչին, զօրավար Ֆօն Բարքաուի, ծագումով գերմանացի ռուս մը, որ իմ յարգանքներս փոխադարձեց համակրութեամբ, ապահովեց ինծի կռուի դաշտերուն, ինչպէս նաեւ Անիի աւերակներուն այցելութեանց համար իր բովանդակ աջակցութիւնը, եւ անմիջապէս կանչել տուաւ իր սպայակոյտի պետը, մի ոմն գնդապետ Լէվիցքի: Որովհետեւ լիովին տեղեակ էի թէ հակառակ ցոյց տրուած

բոլոր պատրաստակամութեան ռուսական բերդաքաղաքին մէջ իմ՝ ներկայութիւնս անվստահութեամբ կը դիտուէր, կանխաւ եւ քանիցս Նորին Վսեմութեան յայտարարեցի թէ Կուրի դաշտերը եւ Աւերակները միայն պիտի տեսնէի, կարսէն ոչինչ կ'ուզեմ տեսնել, եւ նոյն իսկ քաղաքին մէջ առանձինն ժուռ գալէ զգուշանալ:

Վայրերուն տեղեակ մարդոց հետ տեղի ունեցած խորհրդակցութեան հետեւանքով յայտնի եղաւ որ իմ ձեռնարկութիւնս կարծածէս աւելի դժուար էր. ըսուեցաւ ինձ թէ բազմաթիւ պահակներ պէտք է որ ճամբաները հարթէին, որովհետեւ վերջերս տեղացող առատ անձրեւներէն սաստիկ սեւ եւ հազիւ ձիւնահալ գետերը ըստ ամենայն հաւանականութեան ա՛յնքան ճահճային է որ կարսէն դուրս կառքով մարդ դժուարաւ կրնար ճամբայ կտրել. գէթ խազախներու բազմաձեան գունդ մը անհրաժեշտ է. ինծ համար ալ երկու ձի, նաեւ կառք եթէ երբեք ձիերը չկրնան քաշել: Վերջապէս գործը ա՛յնպէս կարգադրուեցաւ որ ես երրորդ օրը կանուխ իւրաքանչիւրը չորս ձիով երկու կառքով եւ մէկ սպայի առաջնորդութեամբ տասը խազախներու հետեւորդութեամբ ճամբայ ելլեմ, եւ այնուհետեւ միայն մտածուի թէ կուրիներու դաշտին վրայէն ի՛նչպէս Անի (գրեթէ 50 քիլոմէթր գիծ մը) պիտի հասնիմ: Բայց բուն Անիի մէջ ալ պատսպարան պիտի չկրնայի գտնել. ասոր համար պարտաւորուած էի որ Արփա Չայի մէկ հունէն անցնելով երթայի միւս կողմը հաստատուած Հայկական Խօշավանքը: Երկրորդ օրը առտուն քաղաքը պտտելու համար իմ կրկնակի թախանձանքիս վրայ կասկածի ամէն երեւոյթ փարատելու նպատակաւ, կառավարիչը տրամադրութեանս տակ դրաւ հարիւրապետ մը, ինչպէս նաեւ ժանտարմայի սպայ մը. եւ կէս օրէ ետք ժամը երեքին ճաշի հրաւիրեց զիս:

Ամէն կողմէ գոհունակութեամբ կը թուէր գործը կարգադրուած ըլլալ եւ պանդոկս գայի, զոր առաջին

անգամ հիմա, եւ աւելի մեծ խնամքով, աչքէ անցուցի: Ճաշարանին մէջ, ինչպէս ամենուրեք Ռուսիոյ մէջ, սեղանին վրայ կային անխուսափելի մոմի կանթեղները, եւ քովն ալ փոքրիկ պնակներ Սաքուսքա կոչուած աղանդերներով, պանիր, երշիկ, սխտոր, բողկ եւ ձուկ, ամենքն ալ հնութենէն դեփդեղին կտրած, գարշահոտ եւ ճանճերով խճողուած: Անճաշակելի թեթեւ ընթրիքէ մը վերջ սաստիկ յոգնած փռուեցայ անկողինիս վրայ, ծածկոցներով եւ բազմոցներով դժբախտաբար առատօրէն յարդարուած սենեակիս մէջ: Հանգիստս սակայն կարճատեւ եղաւ, որովհետեւ քիչ ատենէն երեւցան ա՛յնքան մլուկներ, որ սոսկումով անկողնէն դուրս ցատկեցի, եւ մէջտեղը շտկել տուի միջատասպան փոշիով կրկին ու կրկին ցանցնուած ճամբու շարժական անկողինս: Բայց աս ալ հանգիստ չպիտի տար ինծի: Անհաւատալի կերպով խոշոր չար ծնունդները կրկին ու կրկին վրաս թափեցան, առանց երբեք կարեւորութիւն տալու փոշիին: Վերջապէս ճարահատ եւ յուսահատ սաստիկ ցուրտ գիշերուան մնացեալ մասը փայտէ աթոռի մը վրայ անցուցի սրունքներս վեր ժողված, կրկնակի տառապանք, որովհետեւ նախորդ գիշերն ալ Աղեքսանդրոբոլի կայարանին մէջ ոտքի վրայ անցուցած էի: Կռուի աւելի մեծ պատրաստութեան համար Թարգմանս ալ սենեակս առի եւ լոյսը վառ թողուցի, ահաբեկելու համար մլուկները եւ ծակուծուկերէն լրտեսող սեւ միջատները՝ որոնք Բրուսաքի (Բրուսիա) տարօրինակ անունը կը կրեն՝ իրենց անկիւնները վանելու համար: Աստիճան մը պրծայ մլուկներէն եւ միջատներէն, բայց ոչ լուերէն, որոնց դիւրաշարժութիւնը եւ փայլածանաչութիւնը արդարեւ զարմանալի են. մեծամեծ հանճարներ, ինչպէս Կէօթէ, երգած են զանոնք կեանքի համար եւ տիրող կարգին դէմ իրենց բուռն պայքարին առթիւ. առասպելներու մէջ թագաւորներ սիրած են զանոնք, իրենց իսկ արիւնով սնուցած են — հպատակի մը հանդէպ ամէն պարագայի մէջ հազուա-

գիւտ շնորհք — եւ մինչեւ իսկ նախարար ըրած են: Ասիկա անոյշ անոյշ կը կարդացուի, բայց ի՞նչ օգուտ ունի ամբողջ բանաստեղծութիւնը, հիմակ հոս ասոնք պարզապէս զարհուրելի են:

Ո՛վ որ ինծի չափ ճամբորդած է Արեւելք, մարդկութեան եւ միջատին դրախտը, այլեւս համբակ չէ եւ հեռատես եղած է եւ տառապանքներու հանդուրժելու համար համբերատար: Բայց կարծեմ՝ թէ մնացեալ ամբողջ աշխարհին մէջ չկան այնքան զանազան միջատներ՝ որքան տասական իմաստով մլուկոտած, ճճոտած Անդրկովկասի մէջ, ուրուն երանելի բնակիչները իրենց կեանքին մէկ մեծագոյն մասը պէտք է որ անցընեն անոնց հետ կռուելով: Ո՛վ, սո՛ւրբ Ռուսիա: Մինչեւ ե՞րբ ամուր պիտի կառչիս քու լուերուդ, մլուկներուդ եւ սեւ միջատներուն, քու անհամար եկեղեցիներուդ, սովալլուկ Բօքերուդ եւ աղքատութեան ու ցնցոտիներու մէջ ապրող ժողովուրդիդ, կամ ե՞րբ կամ ի՞նչպէս ասիկա պիտի փոխուի:

Լուանալու վրայ եղած ատեն իմ մէջս հասունցաւ սա՛ որոշումը թէ, ի՛նչ որ ալ ըլլայ, այլ եւս գիշեր պիտի չանցընեմ «պանդոկ»ի մէջ, այլ, երբ ուրիշ կերպ ալ չըլլայ, պիտի նախընտրեմ բաց դաշտին վրայ գիշերել: Յետոյ ճամբան հանդիպեցայ իմ բարեացակամ եւ հոգածու հարիւրապետին, եւ այցելեցի քաղաքը որքան որ խոհեմութիւն համարեցի: Օտարականներուն, մասնաւորապէս զինուորականի համար խիստ դժուարացած է այցելութիւնը տիրող կասկածին եւ անցագրի դրութեան առթիւ. ուստի օտարները կը զգուշանան, եւ իրաւցնէ ես առաջին բրուսիացի սպան, ո՛ւր մնաց, զօրավարն էի, որ գլխաւորաբար եւ մասնաւորապէս խուզարկութեան նպատակաւ ժամանակ կ՚անցնէի քաղաքին պարիսպներուն մէջ:

Կարս, գրեթէ քսան հազար բնակիչներով, հինէն ի վեր մինչեւ հիմա ռազմավարական բարձր նշանակութիւն ունի իբրեւ փականն կէտը Աղեքսանդրոպոլի վրա-

յէն Թիֆլիզէն Էրզրում ճամբաներուն, եւ այսօր ամէնազօրաւոր բերդաքաղաքն է Կովկասի զինուորական շրջանակին մէջ, ինչպէս նաեւ բովանդակ Ռուսիոյ ամէնէն կարեւոր բերդերէն մին։ Կը գտնուի Սօղանլը Տաղէն բղխող Կարս Չայի վրայ, 1700 մէթր բարձր, գարնան մէջ միայն ջուրերը առատ են այս գետին, բայց ամառը մնացեալ մասը ընդհանրապէս անջրդի է, եւ Անիի վերեւէն Արփա Չայի մէջ կը թափի։ Փոթորկայոյզ ուժգնութեամբ իրեն համար ճամբայ մը բացած է Սօղանլը Տաղին շարունակութիւնը եղող բարձունքներուն մէջէն, եւ ճիշդ Կարսի առջեւ, որ հիւսիսէն կը պարուրէ երկպաձեւ, կը ձեւացնէ խորափիտ եւ կրճանման հովիտ մը։ Արեւմուտքէն եւ հիւսիսէն Կարս Չայի ձախ, ինչպէս նաեւ հիւսիսային արեւելքէն աջ ափունքին վրայ կը ցցուին սեպ ճաղատ սարեր, անմատչելի եւ հովտին ծոցէն 100—200 մէթր բարձրացած, անմիջապէս գետին վրայօք, մինչ դէպի արեւելք եւ հարաւ արեւելք գետինը իրապէս աւելի արձակ եւ աւելի բաց կը պարզուի։ Հիւսիս արեւմտեան անկիւնին մէջ գետին վրայ նեղնալով կառչող հին քաղաքին մօտ կը բարձրանայ աւելի բարձր առանձնակի լաւայի բլուր մը միջնաբերդով, որ հիմա զինուորականապէս անարժէք է, բայց բոլոր նախորդ կռիւներուն մէջ բերդաքաղաքին շուրջ առաջնակարգ դեր մը խաղացած է։

ԺԸ. դարուն կիսուն Պարսիկներէն եւ 1828 Յուլիս 1ին Ալեքսանդրոփոլի վրայէն Բասքէվիչի հրամանատարութեամբ յառաջացող Ռուսերուն կողմէ Թուրքերը յաղթահարուեցան Կարսի մօտ։ Ռուսերը, թէեւ Թուրք պահակազօրքէն նուազ բազմաթիւ, Յուլիս 5ին հարաւէն եւ հարաւ արեւելքէն քաղաքը ռմբակոծեցին, հինգ օր վերջն ալ միջնաբերդը, եւ առանց կենալու Էրզրումի վրայէն խուժեցին մինչեւ Տրապզոնի մօտերը, ուր արդէն Մոսկովներուն յարձակումին կը սպասուէր։ Բայց այնպէս չեղաւ, որովհետեւ Ռուսիա Էտիրնէի Հաշտութեամբ պարտաւորուեցաւ (14 Սեպտ. 1829) դարձեալ

Թուրքիոյ ետ դարձնել իր գրաւումներուն մեծագոյն մասը, որոնց մէջ նաեւ Կարսը:

Խրիմի պատերազմի միջոցին անգլիացի զօրավար Ուիլեըմսի ականաւոր առաջնորդութեամբ՝ արեւմտեան եւ հիւսիսային լեռներուն վրայ ամրութիւններու շարքով մը եւ արեւելեան ու հարաւային կողմին վրայ միջնակաց բերդերով պատսպարուած յառաջակարկառ պարիսպի մը միջոցաւ զօրաւոր բերդաքաղաքի մը վերածուեցաւ, եւ յետոյ Մուրավիէվի հրամանատարութեամբ կրկնապատիկ ուժով Ռուսերուն դէմ, որոնք ձախ եզերքին բարձունքները կ՚ուզէին բռնագրաւել, ա՛յնքան սքանչելի կերպով պաշտպանեց ինքզինքը որ հինգ ամսուան դիմադրութենէ վերջ միայն, եւ ան ալ անօթութեան եւ հիւանդութիւններու պատճառաւ կարելի եղաւ պարտաւորել: Բարիզի Հաշտութեամբ անգամ մը եւս (30 Մարտ 1856) Թուրքիոյ թողուեցաւ:

Վերջին Ռուսեւթրքական պատերազմէն ետքը, երբ Ռուսերը հարաւէն եւ հարաւ արեւելքէն 1877 Նոյեմբեր 17—18 գիշերը, Բասքէվիչի նմանողութեամբ կրկնակի ռմբակոծութենէ վերջ յարձակեցան, Կարս իր ամբողջ շրջակայքով Պերլինի դաշնադրութեամբ (13 Յուլիս 1878) վերջնականապէս Ռուսիոյ անցաւ: Անկէց ի վեր Ռուսերը, ինչպէս հոն պատմուեցաւ ինծի, գոհացուցիչ կերպով շիներ են հաղորդակցութեան ճամբաներ դէպի արտաքին ամրոցները եւ անոնց միջեւ, ինչպէս նաեւ այս վերջիններն ալ ամրացուցեր են եւ մասամբ յառաջացուցած են, հաշուի առնելով այսօրուան թնդանօթներուն հրձգութեան մեծագոյն շրջանակը:

Ինչպէս ըսուեցաւ, չելայ բարձունքներուն վրայ, նոյն իսկ ո եւ է կէտի վրայ՝ ուրկէց կարելի էր քիչ շատ ընդարձակ տեսարան մը դիտել, թէեւ պիտի արտօնէին ինծի թերեւս տեղ տեղ, նոյն իսկ ակամայ. բայց ուշադիր շրջագայութեանս միջոցին սա՛ տպաւորութիւնը ունեցայ թէ ինծի եղած յայտարարութիւնները գոհացուցիչ են, եւ բերդերուն ներսերը—1877—78

տարուոյն անոնցմէ տասներկու հատ կային, հինգը Կարս Չայի աջ եւ եօթը ձախ ափունքին վրայ—հիմա աւելի ընդարձակ վայր մը պատրաստուած է: Այս կերպով Կարս խիստ կարեւոր սպառազէն քաղաքի մը վերածուած է, բայց իր պաշտպանութեան համար ալ համապատասխան մեծ ուժերու կը կարօտի, մանաւանդ որ ամբողջութիւնը մէջտեղէն կտրող Կարս Չային կիրճը մեծապէս կը դժուարացնէ պաշտպան ուժերուն միացումը, ինչպէս նաեւ պահեստներուն գործածումը գետին մէկ կողմէն միւսին վրայ:

Արդարեւ ըստ ինքեան չորս կողմէն փորուած Կարսը, որ դէպ ի արեւելք եւ հարաւ միայն երկննալու կարելիութիւն ունի, խիստ դիւրայարձակելի է արեւմուտքէն եւ հիւսիսէն, որովհետեւ պաշտպանուելիք բաներ չեն այն կողմի ապառաժները ինչպէս նաեւ քաղաքը աջ ափունքին վրայ գտնուած ամրութիւններով: Սակայն ճիշդ այս պատճառաւ այս բարձունքներուն վրայ զօրավար Ուխլերմսի կողմէ յիշատակուած բերդերը կառուցուեցան, հովիտին ծոցէն 2–4 քիլօմէթր վեր, որոնց մասին առիթով մը բարձրաստիճան սպայ մը Կարսի մէջ ըսաւ ինծի թէ հիմա անոնք ամրակայն եւ հրետանական տեսակէտով ա՛յնքան զօրաւոր կը նկատէ որ բաւարար պահակազօրքով, պարենաւորումով եւ ջուրի մթերքով գրէթէ անառիկ են(*):

Ասկէց զատ արեւմուտքի եւ հիւսիսի հրաբղխային, պատառատուն լեռնային գետինները կը դժուարացնեն պաշտպանութիւնը, որովհետեւ տեսարանը կը սահմանափակեն եւ շարժումները կը խափանեն, բայց միեւնոյն պատճառներով յարձակումի համար ալ աննպաստ են, եւ պաշարման թնդանօթներու զետեղումը, որոնք

---

(*). 1877-78 տարւոյն հարկ եղաւ. եւ ասիկա շատ գէշ պարագայ մըն էր, ամբողջ բերդերուն կամ անոնց մեծ մասին ջուրը գետէն հայթայթել. չկրցայ հասկնալ կամ հարցնել թէ բերդերուն ջուրը հիմա սեփական աղբիւրներէ՞ կը հայթայթուի թէ ստորերկրեայ խողովակներով:

ամէնէն աւելի պէտք է դէպի արեւմուտք փոխադրուին Կարսի հարաւային կողմը գտնուած Կարս Չայի հովիտէն, անտառաւոր դժուարութիւններ կը ներկայացընէ:

Ուստի, պետիններուն այս նկարագրուած կայութեան պատճառաւ 1828ին Բասքեւիչ, նմանապէս Լօրիս Մելիքով 1877ին բերդաքաղաքին վրայ յարձակեցան հարաւ-արեւելքէն, թէեւ 1877ին մանաւորապէս ամրացուած էին իրեղէններով եւ սպառազինութեամբ դէպի հարաւ-արեւելք հարթավայրին մէջ կարկառուած երկու բերդերը, Հաֆըզ փաշա եւ Քանլը կոչուած: Բայց հարաւ-արեւելքէն եւ հարաւէն յարձակումը ո՛չ միայն ռազմավարօրէն այլ ռազմագիտօրէն եւս կ՚արդարանար, որովհետեւ այս ուղղութեամբ յաջողութիւն մը իրապէս պիտի պարտաւորեցնէր պահակազօրքը, ինչպէս որ ալ պատահեցաւ, Թրքական Ներքնաշխարհին ճամբան բռնել, քանի որ անկարելի է բազմաթիւ զօրք բերել համախմբել արեւմտեան բլուրներուն վրայ, ո՛ւր մնաց պաշարման գիծէն անցընելով: Երբ վերջերը հարաւ-արեւմտեան ուղղութեամբ Կարս Չայի երկայնքէն ճամբաս շարունակեցի դէպի Էրզրում, ա՛լ աւելի հաստատուեցայ իմ սա՛ տեսութեանս մէջ թէ ուրեմն Ռուսերը 1877ին ուղիղ ռազմագիտութեան հետեւեցան յարձակելով աջ ափունքի ամրութիւններուն վրայ, մնացեալ ճակատներուն դէմ ցոյցեր ընելով հանդերձ:

1877 Հոկտ. 15ին Ալաճա Տաղի ճակատամարտէն վերջ պահակազօրքը սաստիկ դղրդած էր, սակայն բուռն ընդդիմութեան ընդունակ, եւ, ինչպէս տեսնուեցաւ, որոշեց դիմադրել, բերդերը զինելով, պարենաւորումը երկար ժամանակի համար ապահովելով: Բայց Ռուսերը, Մեվլինի կռիւին առեն եւ անկէց վերջը պատահած նոյնօրինակ աղէտքի մը չենթարկուելու նպատակաւ, դէպի Էրզրում իրենց յօրագոյն գործողութեանց համար ապահով խարիսխի մը պէտք ունէին. փորձառութեան

Համեմատ այն կողմերուն սաստիկ ձմեռը դրան ետեւը կեցած էր, եւ խիստ դժուար պիտի ըլլար երկարատեւ պաշարման մը գործադրութիւնը քարուտ, սառած գետնին վրայ, ինչպէս նաեւ զինուորներուն պարենաւորումը, ուստի կարելի եղածին չափ արագ որոշում մը տրուեցաւ: Ասիկա կրնար ըլլալ լոկ յանկարծական բուռն յարձակում մը, եւ նկատի ունենալով յարձակման դաշտին ո եւ է թաքստոցէ զերծ ըլլալը եւ Թուրք պաշտպաններուն կրակին տկարութիւնը, ճիշդ գիշեր ատեն, հարկ եղած բերդերուն եւ կարելի եղածին չափ միջնակաց մասերուն եւ բուն քաղաքին ու իր մթերանոցներուն կրակով սպառնալէ վերջ: Ընդհանուր յարձակումին համար ընտրուեցաւ Նոյմ. 17–18 գիշերը, ա՛յն հաշուով որ լուսինին վիճակն ալ կրնար նպաստել թէ յարձակող գունդերուն համար բաւական պայծառ պիտի ըլլայ, իսկ միւս կողմէն բաւական մութ, որով Թուրք՛-րը պիտի չկրնան ամէն կերպով օգտուիլ իրենց պաշտպանողական ուժերէն: Խնամով պատրաստուած յարձակումը յաջողեցաւ, թէեւ մեծամեծ զոհողութիւններու գնով. աջ ափունքին բերդերուն գրաւումէն վերջ Նոյմ. 18ի առտուն Ռուսերը քաղաք խուժեցին. ամբողջ պահակազօրքը, գրեթէ տասնըեօթը հազար հոգի, պարտաւորուեցաւ զէնքընկէց ըլլալ:

Կարս Ջայի կամուրջէն դիտուելով գեղանկար երեւոյթ մը կը ստանայ Հայկական, Սելճուքեան եւ Թրքական ժամանակներէն սերող հին միջնաբերդը իր դեղնաշորթ քարերով: Պատկերը դիպուածով կրցայ ձեռք բերել Թիֆլիզի մէջ լուսանկարիչէ մը: Բայց աւելի լաւ կը դիտուի մօտակայ քլիւպի մը պարտէզէն, ողորմելի պարտէզ մը քանի մը խեղճուկրակ ծառերով, սակայն ծառազուրկ Կարսի համար ամէն պարագայի մէջ ախորժելի երեւոյթ մը, քլիւպն ալ փայտէ ցաւալի տուն մը: Հպարտութեամբ կ'ուզէին ցոյց տալ ինծի բարձր դա-

տու ընկերութեան այս ամառնային ժամադրավայրը. բայց նախ որ բանալին չէին կրնար գտնել եւ յետոյ զսպանակը չէր բանէր, որովհետեւ, ինչպէս անխռով հոգիով յայտարարեց կանչուած պահապանը, «կղկղանքով խցուած է:»

Մինչ դիտելու արժանի ոչինչ ունի հին Օրթա Գափու արուարձանին տեղը հարաւային կողմը նորաշէն ռուսական քաղաքը, շահեկանութենէ զուրկ չէ պտոյտ մը թրքաբնակ թաղին մէջ, որ գետէն վեր կը բաղկանայ իրարու վրայ խճողուած մթագոյն քարէ տուներէ: Շատ բնակարաններ դեռ աւերակ են կամ լքուած, ապացոյց մը թէ Կարս թրքական ժամանակներուն մէջ անկէց առաջ այսօրուընէ աւելի բազմաբնակ էր: Մօտը կը գըտնուի նաեւ քաղաքին ամէնէն աւելի տեսնելու արժանի վայրը, 930 թուականին Հայ Բագրատունի թագաւոր Աբասի օրով սեւորակ լաւայի քարերէ շինուած, տարօրինակ ձեւով եկեղեցին, որ Թուրքերուն կողմէ մզկիթի վերածուելէ վերջ, այսօր ալ Ռուսերուն կողմէ պահակազօրքին համար եկեղեցիի վերածուած է: Վերջերս Քիէվէն հոս բերուած է ոսկեկուռ եւ հրաշագործ կարծեցեալ Ս. Կոյսի պատկեր մը, որ առարկայ է ընդհանուր յարգանքի:

Երբ «պանդոկ» վերադարձայ, սա՛ անմխիթար լուրը հաղորդուեցաւ ինծի թէ պահակներուն տեղեկութեան համեմատ Կարսէն դուրս դէպի կռիւի դաշտերը եւ դէպի Անի տանող ճամբաները իրօք անհաստատ էին, եւ, անկէց զատ, թէ կարելի չէ Անիի մօտ Արփա Ջայէն անցնիլ այս միջոցին: Վերջին լուրը մանաւանդ վրդովիչ էր ինծի, որովհետեւ ես գիշերել կ'ուզէի գետին միւս կողմը, բազմապատիկ տանչութիւններով հետաքրքրական Հայկական հին Խօշավանքին մէջ:

Սպայակոյտի պետին եւ ոստիկանապետին հետ նոր խորհրդակցութենէ մը վերջ, որոշեցի ոչ թէ Կարսէն ուղղակի այցելել Կռիւներու դաշտը եւ Անին, այլ Հիւսիսէն, այսինքն Ալեքսանդրոբոլի եւ Կարսի միջեւ հաս-

տատուած Քարաճալ կայարանէն, ուր դիպուածով իմ Հարիւրապետս իբրեւ ժանտարմայի սպայ կեցած էր եւ բնակութիւն կ'ընծայէր ինծի: Հաստատապէս յայտարարեցի այսօր իսկ ճամբայ ելլել իրիկուան կառախումբով —այնուհետեւ պէտք էր գոնէ չորս ժամ սպասել— Հարիւրապետին ընկերակցութեամբ, որպէս զի երկրորդ գիշեր մըն ալ անցընելու չպարտաւորուիմ պանդոկին մէջ: Գիշերը գլխուս եկածներուն նկարագրութիւնը նախ ան հաւատալի զարմանքով ընդունեցին ինծի ընկերացող պարոնները. բայց իմ առաջ բերած շօշափելի ապացոյցներուն վրայ գործը ձեռք առին ռուսական ձեւով — ոստիկանապետը իսկոյն պանդոկին տիրոջ ըսել տուաւ որ, եթէ այդ աղտեղութիւնները անմիջապէս չմաքրէ, ինք գոցել պիտի տայ պանդոկը եւ ծառաներուն ձեռքով պիտի մաքրէ: Ազդեցութիւնը չուշացաւ. քանի մը օր վերջ Կարս վերադարձիս աշխատաւորներ եռանդով կը զբաղէին տարիներով դիզուած աղտեղութիւնները փողոցը թափելու:

Կառավարիչին մօտ հացկերոյթը պաշտօնական էր, համազգեստով՝ եւ պատուանշաններով. հրաւիրուած էին երեսուն տիկիններ եւ պարոններ, վերջինները զինուորական կամ համազգեստաւոր պաշտօնատարներ, ինչպէս սովորական է Ռուսիոյ ամէն կողմը: Ռուս բարձր դասու շրջանակներուն մէջ յաճախ մտնողները կրնան չափել հիւրին հանդէպ ցոյց տրուած բարեացակամութիւնը: Արդարեւ, ատիկա պէտք չէ մարդ մոռնայ մանաւանդ Ռուսիոյ մէջ, ահագին տարբերութիւն կայ էութեան եւ երեւոյթին միջեւ, իրին եւ անոր անունին միջեւ. սակայն ռուսական սրահի մը՝ մէջ ընդունելութեան եւ յարգանքի տեսակը անպայմանօրէն յանկուցիչ բան մը ունի: Առիթ ունեցայ ազատօրէն շարժելու, եւ կարելի եղածին չափ անկէց օգտուելու, բայց պարտաւոր էի կառախումբին հասնելու պատճառաւ հրաժեշտ առնել կառավարիչին կողմէ գերմաներէն լեզուով մեր կայսեր եւ իմ կողմէ ռուսերէն լեզուով ռուս

կայսեր կեանքին բաժակաճառերէն քիչ վերջ, թէեւ թախանձագին խնդրեցին որ օր մըն ալ մնալ, եւ այդ պահուն մինչեւ իսկ առանց իմ գիտնալուս ծրարներս կառավարչատան մէջ տրամադրութեանս տակ դրուած սենեակ մը փոխադրած էին: Բայց այսպէս ըլլալը լաւ էր, որովհետեւ կ'ուզէի անպայման խուսափիլ ոեւէ սրտնեղութիւն պատճառելէ իմ երկարատեւ ներկայութեամբս, քանի որ միտքէս չէր հաներ սա՛ հին խելացի խօսքը թէ մարդ լաւ կ'ընէ ճիշդ ատենին ընդհատելով ուրախութիւնը, եթէ կ'ուզէ որ բարի յիշատակը մնայուն ըլլայ:

Հոս եւ այլուր խումբ մը ռուս սպաներու հետ խօսակցեցայ: Ոմանք արդէն քսան եւ աւելի տարիէ ի վեր Կարս կը մնան, եւ ամէնքն ալ բացէ ի բաց կը գանգատին թէ այսօր Ռուսիոյ մէջ անկարելի է առաջ երթալ առանց պաշտպանութեան. առաջունին պէշ է հիմա այս մասին. Բեթերսպուրկի մէջ ընաւ չեն գիտեր թէ դուրսերը ինչե՛ր կ'ըլլան: Կրնայ մարդ մինչեւ իսկ անօթի մնալ քիչ թոշակով եւ ներկայ արտասովոր կերպով սուղ գիներով: Հարցնող փնտռող չկայ:

Շնորհակալութեամբ ընդունեցի կառավարիչին սիրալիր հրաւէրը՝ կուրի դաշտին եւ Անիի աւերակներուն այցելութենէս վերջ պանդոկ չմնալ, այլ իր բնակարանին մէջ անցընել, եւ կէս օրէ վերջ ժամը հինգին բաժնուեցայ Կարսի կայարանէն հարիւրապետին ընկերակցութեամբ:

Հիմա իսկապէս կը սկսէր իմ ճամբորդութիւնս:



Գնդակը յիմար է,
Սուինը միայն ամբողջ մարդ է:
(Սուվարով)

Մաիկ ըրէ՛ք, երիտասարդներ, մաիկ ըրէ՛ք.
ինչ որ մենք մեծերս պատերազմին վրայ
կը պատմենք ձեզի:
(Ռուս զինուորին երգը)

# 5. Կուրցի դաշտը Կարսի մօտ



Եզներու լուծք Քարաեալի մէջ

Երկու ժամուան գնացքէ վերջ եկանք Քարաեալ կայարանը: Դեռ բոլորովին մութ էր եւ գիւղին չէր կայարանի շէնքէն ճահիճին վրայօք եւ ձիւնախառն անձրեւին տակ ճամբայ բանալ դէպի ա՛յն տնակը, ուր իր շատ թեթեւ սպասարկութեան համար հարիւրապետը հաստատած էր իր բնակութիւնը համանուն գիւղին մօտ: Ժամանակին ուշ ըլլալուն հակառակ եւ թէեւ տանտիկինը, վայելուչ Վրացուհի մը, կանխաւ իմ գալուս մասին բան մը չէր գիտեր, տեղ որոշուեցաւ քիչ ժամանակէն ինծի եւ իմ մարդոցս համար, ինչպէս նաեւ յաջորդ առտուան համար գիւղին մէջ կառք մը պատրաստուեցաւ, եւ գաւաթ մը տաք թէյէ վերջ՝ կրցայ

անպարսաւելիօրէն մաքուր բազմոցին վրայ ճշմարտապէս բարերար հանգիստ մը վայելել:

Այսպէս երջանիկ էի Քարաճալի մէջ, խեղճուկ գիւղակ մը, որ արդէն ինծի դիպուածով ծանօթ էր իբրեւ առժամանակեայ կեդրոնը Մեծ-Դուքս Միխայիլին՝ վերջին պատերազմին ատեն, եւ որուն մասին երբեք չէի երազած թէ իմ կեդրոնս ալ հոն պիտի ըլլար: Մինչեւ հիմա էապէս շատ քիչ գործ տեսած էի, սակայն մարմնապէս ա՛յնքան բռնուած կը զգայի ինքզինքս որ կարծես մեծ աշխատութիւններու տակ մտած ըլլայի անկէց առաջ. ցուրտ էր եւ կը սառէի, անհրապոյր նախընթաց մը: Բայց հիմակուընէ գործս յաջող կ'երթար եւ ճամբորդութեան սկսայ, յետոյ կ'ուզէի ամէն բանի տոկալ յօժարակամ եւ նոյն իսկ ա՛լ աւելին հանդուրժել, որովհետեւ «յոգնութիւնը ո՛րքան մեծ ըլլայ՝ վարձքն ալ նոյնքան գեղեցիկ կ'ըլլայ,» եւ «երանի՜ անոնց որոնք արդարութեան համար կը վշտակրին:»

Յաջորդ օրերը նուիրուեցան կուրի դաշտին ինչպէս նաեւ Անիի աւերակներուն այցելութեան, ընկերակցութեամբ հարիւրապետին եւ ջոկատ մը ձիաւոր ժանտարմներու, առտուան ժամը եօթնէն սկսեալ մինչեւ գիշեր, օրական 80-90 քիլոմէթր ամէնէն գէշ ճամբաներէ եւ դաշտին մէջէն ձիւնին, անձրեւին եւ արեւուն: Ո՛չ թէ կարսէն այլ հիւսիսէն դաշտ ելլելս աւելի նպաստաւոր եղաւ ինծի, որովհետեւ ամէն դժուարութեամբ կրցայ այս կերպով ճշդել Ռուսերուն ամբողջ յառաջխաղացումը եւ յարձակումը, ինչպէս նաեւ Թուրքերու հակահարուածները:

Երբ մէկը վերջին ռուսեւթրքական պատերազմին խօսքը լսէ, կը յիշէ իսկոյն Բլէվնան եւ Շիբքայի կիրճը, Թօթլէպէնը, Կուրքօն, Սքօպէլէվը, Օսման եւ Սիւլէյման փաշաները. բայց Ասիոյ մէջ ա՛յնպիսի գործողութիւններ եւ ճակատամարտներ տեղի ունեցան իրաւցնէ նուազագոյն կարեւորութեամբ եւ տկարագոյն

ուժերով, այլ ամէնէն դժուարին գետիններու վրայ, որոնք կը պահանջէին դիւցազնական ինքնազոհութիւն եւ զինուորական բարձր ձիրք — ահա՛ այս կէտն է որ շատ ծանօթ չէ. հազիւ թէ ասոնք նկարագրուած են, ո՛չ ոք բան մը կարդացած է ասոնց մասին: Այս էր ամենագլխաւոր շարժառիթներէն մին իմ այս անգամուան ուղեւորութեանս Հայաստանի մէջէն, Կարսի եւ Էրզրումի կռիւի դաշտերը այցելել եւ դէպքերուն ընթացքին նկատմամբ լուսաբանուիլ ճիշդ տեղին վրայ:

Կարսի եւ Էրզրումի կռիւներուն վրայ խօսելէ առաջ, որոնց մասին պիտի անդրադառնամ յետնագոյն հատուածի մը մէջ, թո՛ղ ներուի ինծի պատերազմին հայկական թատերաբեմին վրայ կարճ շեղում մը ընել եւ դէպքերը պատմել ինծի մատչելի եղած նիւթին համեմատ:

Ռուսեւթրքական պատերազմին սկիզբը, 1877-78ին, Թիւ Մէկ քարտէսին վրայ կիտագրուած հին սահմանը Պաթումի եւ Արտահանի հիւսիսային կողմը Սեւ Ծովէն դէպի հարաւ Կարսի շուրջ աղեղ մը կը ձեւացնէր. յիշեալ վայրերը տակաւին թրքական տիրապետութեան տակ կը գտնուէին: Երկաթեայ գիծ ըլլալով գոյութիւն ունէր միայն Բօթի-Թիֆլիզ գիծը:

Ռուսերը չորս զօրաբաժին հաստատած էին, ստորին Ռիօնի վրայ Պաթումի դէմ, Ախալցխայի առջեւ նախ ամրացած Արտահանի դէմ, Աղեքսանդրօբօլի առջեւ (ռուս գլխաւոր ուժերուն կեդրոնը) Կարս բերդաքաղաքին դէմ, եւ Երեւանի առջեւ Պայազիտ փոքր բերդաքաղաքին դէմ: Աղեքսանդրօբօլի եւ Երեւանի երկու ամէնէն կարեւոր զօրաբաժիններուն կը հրամայէին երկու Հայեր, զօրավար Լօրիս Մէլիքով եւ զօրավար Տէր Ղուկասով. վերին հրամանատարութիւնը Միխայիլ Մեծ-Դուքսին ձեռքն էր: Դիտաւորութիւն կար Արտահանն ու Պայազիտը իսկոյն գրաւել եւ Կարսը մեկուսացնել: Յետոյ դէպքերուն առնելիք ընթացքին համեմատ Ախալցքայի եւ Երեւանի զօրաբաժինները, նաեւ Կարսի առջեւ

*մնալու պէտք չունեցող Աղեքսանդրոպոլեան զօրաբաժինին մասը համախումբ պիտի քալէին Երզրումի վրայ, մինչ լեռնոտ գետիններուն դժուարութեան պատճառաւ անջատուած Ռիօնի զօրաբաժնին յանձնուած էր ծովեզերքներուն պաշտպանութիւնը, ի հարկին Պաթումի դէմ գործողութեամբ մէկտեղ:*

*Թուրքերը ամէն տեղ աւելի տկար, համապատասխան համախմբութիւններով ռուսական ուժերուն դիմաց կը կենային. վերին հրամանատարութիւնը կը վարէր Մուխթար փաշա:*

*Եթէ նկատի չառնենք Ռիօնեան զօրաբաժինը, որուն գործողութիւնը մինչեւ Պաթում պիտի տարածուէր, Ռուսերը եօթանասուն հազարի չափ էին, աւելի զօրաւոր հեծելազօրքով եւ երկու հարիւրէ աւելի թնդանօթներով, ընդհակառակն Թուրքերը յիսուն հազար հոգի էին միայն, գրեթէ աննշան հեծելազօրքով եւ հարիւր թնդանօթներով:*

*1877 Ապրիլին վերջերը Ռուսերուն բոլոր չորս զօրաբաժինները անցան այն ատենուան սահմանէն: Արտահանը գրաւուեցաւ Մայիս 17ին կորստաբեր կռիւներէ վերջ միայն եւ Աղեքսանդրոպոլի զօրաբաժինին մէկ մասին ալ աջակցութեամբ. ընդհակառակն Պայազիտ ինկաւ առանց գնդակ մը արձակելու որուն վրայ անմիջապէս Տէր Ղուկասով դէպ ի*



Յոյն կիներ Սուպաթանի մէջ

արեւմուտք դարձաւ Մուրատչայի կողմը (Եփրատ) եւ յառաջացաւ մինչեւ Տէլի պապա կիրճը եւ գրաւեց զայն յաղթական կռուէ մը վերջ: Ռուսական կեդրոնը առաջ տարուած էր մինչեւ Կարսի երկրամասը, եւ անոր առջեւ Մուխթար փաշա առանց այլ եւ այլի, բաւական թուով պահակազօրք Կարսի մէջ թողլով, դէպի Սօղանլը տաղ, եւ աւելի հեռուն Սէվինի առջեւ հզօր դիրքի մը մէջ քաշուեցաւ. հոն աւելի մօտը կ'ըլլար Կարսէն եւ Պայազիտէն դէպի Էրզրում տանող ճամբաներուն երկճիղ կէտին, եւ աւելի դիւրաւ կրնար խափանել երկու կողմերէն իրեն սպառնացող թշնամի ուժերուն միացումը: Ռուսերը հիմա չորս կողմէն կը սեղմէին Կարսը, արտասովոր դժուարութիւններով իրենց յառաջացուցած պաշարման հրետանին զետեղեցին (ամէնէն վերջին մարտկոցները Յունիս 25ին) եւ ռմբակոծութիւնը սկսաւ:

Թուրքերը ամէնուրեք կը նահանջէին, եւ իրենց աջ կողին վրայ Տէր Ղուկասով յանկարծական երեւոյթով ա՛յնքան վտանգաւոր դարձած էր որ նոյն միջոցին կարելի էր ըսել թէ արշաւանքը արդէն իսկ Ռուսերուն համար յաջողած լմնցած էր, Թուրքերուն համար ալ կորսուած:

Բայց ահա՛, յիրաւի վերջին րոպէին, Մուխթար փաշա ինքզինքը ժողվեց, իր ուժերուն մէկ մասովը Սէվինէն Տէլիպապա կիրճը փութաց, հոն Յունիս 21ին յարձակեցաւ Տէր Ղուկասովի վրայ՝ յանկարծակիի բերելով զայն Էզպէք Էլիասի առջեւ եւ քշեց զայն կիրճին մէջ: Յետոյ արագօրէն վերադարձաւ Սէվին, եւ չորս օր ետքը, Յունիս 25ին զօրավար Հայմանի յարձակումը ետ մղեց այնքան կատարեալ կերպով որ Ռուսերը պարտաւորուեցան ո՛չ միայն վերցնել Կարսի նոր սկսուած պաշարումը, այլ մինչեւ իսկ Կարս գետին ետեւը քշուիլ: Ինչպէս վերջերս ալ քանիցս ճաբոնական պատերազմին մէջ յայտնուեցաւ, Ռուսերը նուազ կարեւորութիւն տալով թշնամիին ուժերուն եւ նուազ

յարգելով արդի զէնքերուն ազդեցութիւնը, աղէտաբեր ձախողանքներու ենթարկուեցան, Սէվիլի առջեւ ալ նուազագոյն ուժերով եւ առանց հրետանիի բաւարար պատրաստութեան խիտ առ խիտ կարգերով յարձակեցան՝ միմիայն հատու զէնքերով, ընթացք մը՝ որ այն միջոցին նաեւ միաժամանակ պատերազմին եւրոպական թատերաբեմին վրայ (Բլէվնա) եւ վերջերը ռուսեւճաբոնական պատերազմին սկիզբը մեծ յուսախաբութիւններու եւ կորուստներու առաջնորդեց զիրենք: Ռուսական բանակին մէջ՝ հակառակ նորագոյն յառաջդիմութիւններու՝ այսօր իսկ յայտնապէս կ՚ապրի տակաւին սլաւական եսասիրութենէն բղխող եւ աւանդութեամբ մինչեւ ատեն մը նուիրականացած Սուվարօվի սա՛ խօսքը. «Գնդակը յիմար է, սուինը միայն ամբողջ մարդ:»

Մուխթար փաշա դանդաղօրէն ետ գնաց մինչեւ Կարսի բարձունքներուն առջեւ եւ դիրք բռնեց՝ մէկ թեւը կրթնցնելով Արփա Չայի եւ Կարսի վրայ, ճակատը մօտաւորապէս դէպի հիւսիս:

Մինչ այս մինչ այն, բազմաձեռն Քրդական գունդեր եւս Պայազիտի վրայ Վանէն առաջ խաղացած էին Ֆայիգ փաշայի առաջնորդութեամբ, եւ միջնաբերդը մեկուսացնելով՝ Մուրատչայի մէջ յետախաղաց եղող Տէր Ղուկասովը պարտաւորեցին դէպ ի հիւսիս Իկտիր շեղիլ, ուր օգնական զօրք քաշեց իրեն, կրկին Պայազիտի վրայ յառաջացաւ, Յուլիս 10ին ազատեց միջնաբերդին դիւցազն պաշտպանները եւ դարձեալ Իկտիրի վրայ ետ գնաց:

Արեւմտեան կովկասի մէջ ցամաք ելան Թուրք զինուորներ, եւ լեռնցի ժողովուրդներ ալ ապստամբեցան:

Ուրեմն Յուլիս ամսուն կը տեսնենք 1796 եւ 1814 տարիներուն Նաբոլէոնեան հարուածները գրեթէ յիշեցնող Մուխթար փաշայի գործողութիւնները՝ ներքին գիծերուն վրայ անբաւական ուժերով ձեռնարկուած

ամբողջ ռուսական յարձակողականը յաղթահարուած, եւ Ռուսերը դրեթէ ճշդիւ հոն հասած, ուր կը գըտնուէին արշաւանքին սկիզբը: Արտահանը շահեցան, բայց տասը հազար հոգի կորսնցուցին եւ ետեւնին ալ ունէին վտանգաւոր ապստամբութիւն մը։

Երկու հազար մէթր բարձրութեամբ սարահարթ մըն է ա՛յն գետինը, Կարսի արեւելակողմը, որուն վրայ տեղի ունեցան վճռական դէպքերը, որ Աղեքսանդրօբօլի եւ Կարսի միջեւ Ալակէօզի արեւմտեան ստորոտէն կը տարածուի մինչեւ Սօղանլը Տաղին կարեւոր բարձունքը: Խորակտուր Արփա Չային, որ իր միջին ընթացքին մէջ այն ատեն սահմանագլուխ գետն էր Ռուսիոյ եւ Թուրքիոյ, եւ Կարս Չային միջեւ կը կազմուի տափարակ գմբեթաձեւ մը, որ դէպ ի հիւսիս ինչպէս նաեւ դէպ ի երկու գետերը կը հակի հետզհետէ խոնարհելով: Հարաւէն կը սահմանափակուի 2600 մէթր բարձր Ալաճա Տաղէն եւ Ավլիարի ու Վիզինքէօյի բարձունքներէն, որոնք անոր արեւմտեան շարունակութիւնը կը կազմեն Կարսի ուղղութեամբ: Հիւսիսէն դիտուելով, ակնյայտնի կը բարձրանան եւ կը բաժնուին Ալաճա Տաղէն եւ անոր տակի բաւական խոր փորուածքէն:

Կարսի լեռնադաշտը ինքնին, մօտէն ուշադրութիւն ընելով, տափարակ չէ բնաւ, այլ վէտվէտուն գետին մը, որ իր մեծ գիծերուն մէջ նպաստաւոր է պաշտպանողականի եւ յարձակողականի միանգամայն, պաշտպանին ընծայելով կրակի լայնալիր շրջանակ, եւ յարձակողին ամբողջ կիսաբաժիններն ալ կրնան, առանց հակառակորդ կողմէն տեսնուելու, շարժիլ եւ տեղափոխուիլ: Նուազագոյն բարձունքի մը վրայ հաստատուած, մեծ մասամբ Թրքախօս յոյն Սուպաթան եւ Հաճի Վէլի գիւղերը գրեթէ միջին կէտը կը կազմեն: Ալաճա Տաղին եւ Ավլիարի ու Վիզինքէօյի յիշատակուած բարձունքներուն հիւսիսային կողմը իւրաքանչիւրը 100էն 200 մէթր բարձր լերկ եւ ցից չորս առանձնակի բլուրներ կան, շարունակական եւ մերձաւոր, ու միեւնոյն ուղղու-

թեամբ, տափարակ գետնին վրայ ցցուած. Իւչ Թէփէն, Գըզըլ Թէփէն, ինչպէս նաեւ մեծ ու փոքր Եանիին: Հրաբըղխային բնութեամբ Ալաճա Տաղի բովանդակ զանգուածին նման — մեծ ու փոքր Եանիին կատարեալ կոն մը կը ձեւացնեն — այս չորս բլուրները շատ կը դիւրացնեն. ամէն կողմէ տեսանելի ըլլալով, զինուորական ուղղութիւնը եւ բնականաբար ջախջախիչ կարեւորութիւն կ'ունենան երկուստեք բանակներուն ռազմագիտական կարգադրութիւններուն եւ յաջողութեան համար:

Ամբողջ դաշտանկարը կատարելապէս բաց է առանց ծառի ու թուփի: Հայերէ, Յոյներէ եւ Թուրքերէ բնակուած, հողէ խրճիթներէ բաղկացած սակաւաթիւ գիւղերը կիսով չափ գետնին կը կառչին. շատ քիչ պատեր ունին միայն. եւ երկրամասին միայնութեան մէջ շատ մօտէն տեսնուելով միայն կը ճանչցուին: Ասոնցմէ մէկ քանին կը պարփակեն քարաշէն բայց հիմա կիսաւեր աշտարակներ, որոնց մէջ հին ատենէն սկսեալ մինչեւ հիմա բնակիչները ապաստան կը փնտռեն կարօտութեան ու վտանգի պահուն եւ իրենց գոյքն գոյքերը կը պատսպարեն: Սաստիկ սեւ հողը քարերով խճողուած է: Անձրեւներէն վերջ եւ մանաւանդ գարնան ձիւնհալէն վերջ, այսինքն ճիշդ պատերազմական գործողութեանց սկիզբը եւ նաեւ իմ այցելութեանս ատեն, խորունկ ու անհաստատ է եւ հետեւաբար զինուորական ոեւէ շարժումի խափանարար, — ամառը կարծր ու սաստիկ չոր:

Յուլիսի երկրորդ եւ Օգոստոսի առաջին կիսուն երկու հակառակորդները հանդարտ անցուցին: Ռուսերը կրկին յառաջացած էին Կարս Չայի վրայ եւ Աղեքսանդրոպոլ—Կարս ճամբէն մինչեւ Անի կը կենային Գըզըլ Թէփէի վերեւ, այսինքն դէպի հարաւ արեւմուտք 20 քիլոմէթր երկար ճակատով մը, — Թուրքերը անոնց դիմացը. Ալաճա Տաղի հիւսիսային զառիթափին վրայ, աջ թեւը Արփա Չային վրայ, ձախը՝ որ Կարսի պահակազօրքի մասերէն կը բաղկանար՝ մեծ ու փոքր Եանիին



Խրճիթներ Հաճի Վէլիի մէջ

վրայ: Երկու կողմէն, սակայն Թուրքերուն համար Կարսի պահակազօրքն ալ հաշուելով, քառասուն հազար հոգի տրամադրելի կը թուէին ըլլալ, այսինքն մէկ մէթր ճակատի վրայ հազիւ երկու մարդ: Մինչ Ռուսերը Օգոստոսի եւ Սեպտեմբերի ընթացքին ստուար օգնական ուժերու կը սպասէին, Մուխթար փաշա անոնցմէ յոյս չունէր կամ շատ քիչ չափով միայն, եւ ամէն բանէ առաջ, ինչպէս վերը յիշատակեցինք, գրեթէ բոլորովին զուրկ էր հեծելազօրքէ:

Սակայն ճակատագրին արեւը դարձեալ շողաց իրեն: Օգոստոս 18ին, պէտք եղած չափով օգնական ուժերուն հասնելէն առաջ, Լօրիս Մէլիքով յարձակեցաւ Եանի բլուրներուն վրայ Թուրքերուն ձախ թեւին դէմ, զանոնք Կարսէն ետ մղելու դիտաւորութեամբ: Սէվինի դառն դասէն վերջ յարձակումը այս անգամ լաւ նախապատրաստած եւ գիտակցօրէն գործադրած էին, բայց չյաջողեցաւ, որովհետեւ խիստ տկար էր: Երբ Օգոստ. 24ին Ռուսերը կ'ուզէին նորոգել 18ի յարձակումը, եւ ասոր համար իրենց ձախ թեւէն ու կեդրոնէն ստուար ուժեր քաշած էին դէպ ի աջ թեւը, Մուխթար փաշա գիտցաւ օգտուիլ ռուսական ճակատին տկարութենէն, որուն փորձը առած էր, որովհետեւ իր բոլոր տրամադրելի ուժերով յաջողապէս յարձակեցաւ Գըզըլ Թէփէի, ինչպէս նաեւ Սուպաթան գիւղին վրայ եւ դիմադրեց Ռուսերուն բոլոր հակահարուածներուն:

Հիմա անոնց վիճակը խիստ վտանգուած էր, կեդրոնը ետ մղուած, եւ Արփա Չային վրայ իրենց ունեցած ձախ թեւը աւելի կամ նուազ օդին մէջ կը կախուէր: Եթէ Մուխթար փաշա երկրորդ օրը, Օգոստ. 25ին, ռուսական կեդրոնին դէմ իր յարձակումը հաւասար կորովով նորոգէր, անկարելի չէր իրեն մէջտեղէն ճեղքել զայն, կամ անոր հետ ամբողջ ռուսական ճակատը աւելի անդին Ալեքսանդրոփոլի վրայ քշել խուճապով:

Բայց ասիկա տեղի չունեցաւ: Մուխթար փաշա մնաց իր շահած դիրքերուն մէջ, եւ ասիկա ոչ թէ անոր համար որ իր յաղթութեանց համար Սուլթանէն իրեն շնորհուած “Ղազի„ (յաղթական) տիտղոսը գոհացուց զինքը, կամ կորովի մասին պակասութիւն ունէր, այլ որովհետեւ իր զօրքերը սաստիկ տկարացած եւ ուժասպառ եղած էին բազմօրեայ կռիւներով — երեք հազար հոգի կորսնցուցած էր:

Տէր Ղուկասով եւս, թէեւ օգնական ուժ ստացած, ոչինչ կրնար ընել Իկտիրէն մինչեւ Երեւանի հարաւարեւմտեան երկրամասին մէջ յառաջացած իր հակառակորդին դէմ, որ հիմա Իսմայիլ Փաշայի հրամանատարութեան տակ կը գտնուէր, եւ հազիւ կրնար զսպել զայն՝ Մուխթար Փաշայի հետ անոր միացումը արգիլելու համար. այսպէս Օգոստոսի վերջերը եւ Սեպտեմբերի սկիզբները Թուրքերը կը գտնենք իրենց բարձր կէտին վրայ, ինչպէս Յունիսի ելքը իրենց ինկած կէտը ցոյց տուած էր: Բայց բախտին յանկարծական դարձը արդէն կը նախապատրաստուէր. որովհետեւ ստուար օգնական ուժեր հեղեղի պէս կը թափէին հայրենիքէն Ռուսերուն համար, մինչ Թուրքերը իրենք իրենց վստահացած միայն կը մնային եւ պարտաւոր էին կռուիլ նաեւ հիւանդութիւններու դէմ, որոնք ճարակ գտան իրենց շուրջ վիրաւորներուն եւ հիւանդներուն խճողումին հետեւանքով, բժշկական անբաւական խնամքներուն պատճառաւ:

Սէվինի դժբախտ կռուէն անմիջապէս վերջ (Յունիս 25) Ռուսերուն կողմէ շարժման մէջ դրուած էին չորս նոր զօրաբաժիններ, որոնցմէ երկուքը Կովկասի մէջ ապստամբութիւնը ճնշելու համար, եւ միւս երկուքը, Մոսկուայի նռնաձիգներուն զօրաբաժինը եւ Վոլկայի վրայ Սարաթովի 40րդ հետեւակ զօրաբաժինը՝ Կարսի բանակին համար: Այս երկու զօրաբաժիններուն փոխադրութիւնը բնականաբար երկար ժամանակի կը կարօտէր, քանի որ երկաթուղիով, շոգենաւով եւ հետիոտն հազարաւոր քիլոմէթր պարտաւոր էին կտրել:

Այսպէսով, վերջին փոխադրութիւնները Սեպտ.ի վերջերը Կարսի առջեւ հասան: Ասով Ռուսերը կրկնակ գերազանցութիւն ստացան: Մեծ-Դուքս Միխայիլ անձամբ ստանձնեց հրամանատարութիւնը, եւ անմիջապէս յարձակողականի սկսաւ Թուրքերուն դէմ, որոնք միշտ կը մնային Իւչ Թէփէ, Գըզըլ Թէփէ, Սուպաթան, մեծ ու փոքր Եանիքի գիծերուն մէջ, եւ ճիշդ դարձեալ անոնց ձախ թեւին դէմ, հակառակորդը Կարսէն փախցնելու կամ փախուստը կտրելու ռազմագիտօրէն միանգամայն ռազմավարօրէն ուղիղ մտածումով: Անգամ մըն ալ սակայն Ռուսերը ո եւ է մեծ յաջողութիւն չունեցան, որովհետեւ մինչ Հոկտ. 2ին մեծ Եանիքին միայն կարելի եղաւ գրաւել, բայց միւս յարձակող գունդերը յաղթահարուեցան. Մուխթար Փաշա յաջորդ օրերուն իր կողմէն ռուսական ձախ թեւին դէմ հզօր հարուած մը շեշտեց, որ իրաւ է թէ նպատակին չհասաւ, բայց Ռուսերը պարտաւորեց օգնութիւն փնտռելու իրենց ձախ թեւէն, ինչպէս նաեւ լքելու օր մը առաջ իրենց գրաւած մեծ Եանիքն, որուն պահակախումբը բոլորովին անջատուած էր ռուս բանակին մնացեալ մասէն եւ ջուրի պաշարէն զուրկ մնացած:

Իրաւ է որ Մուխթար փաշա այս կռիւներուն մէջ նպաստաւորուած կը մնար, բայց ասոնք աւելի կամ նուազ Պիւռոսեան յաղթութիւններ էին իրեն համար, քանի որ երկուստեք արտասովոր կորուստները —իւրա-

քանչիւրը երեք հազար հոգի, կ՚ըսուի— գէշ պիտի ազդէին մանաւորապէս իրեն:

Այդ միջոցին բոլորովին անսպասելին պատահեցաւ: Մուխթար փաշա իսկ եւ իսկ որոշեց մինչեւ այն ատեն յաղթողաբար պաշտպանած դիրքերը պարպել եւ իր զօրքերը համախմբել ետեւօք Ալաճա Տաղ —Ավլիար— Վիզինքէօյ գծին վրայ, պահելով միայն փոքր Եանին Աղեքսանդրօբօլ — Կարսի ճամբան դիտելու համար: Միաժամանակ հրամայեց Իսմայիլ Փաշային որ Երեւանի հարաւարեւմուտքէն Արփա Չայի ուղղութեամբ իր աջ թեւին աւելի մօտենայ: Հոկտ. 8էն 9ի գիշերը գործադրեց իր դիտաւորութիւնը, եւ Ռուսերը գրաւեցին իր թողած դիրքերը:

Մուխթար փաշայի յանկարծական կարգադրութիւնը փորձած են մինչեւ հիմա անով պարզաբանել, թէ որովհետեւ ձմեռը սաստիկ ձիւնով եւ խիստ ցուրտով կը յառաջանար, այս տարուան պատերազմը իբր վերջ գտած նկատեց եւ որոշեց որ իր բանակը ձմեռոցները քաշուի: Իմ կարծիքով այս տեսակ մը տղայական ենթադրութիւնը գոհացուցիչ չեմ համարեր, եւ հաւանական կը կարծեմ թէ Փաշան իր զօրքերը սաստկապէս խախտած եւ տկարացած համարեցաւ հակառակ բոլոր յաջողութիւններուն, որպէս զի կարենայ ապագային բռնել ընդարձակ դիրքերը, նկատի ունենալով հակառակորդին օրը օրին աճող գերակշռութիւնը, եւ որպէս զի ասով իր ուժերը կարենայ, որքան որ հնար է, հաւաքել Կարսի շուրջ աւելի փոքր ու աւելի նեղ շրջանակի մը մէջ: Մուխթար Փաշայի առաջին ակնարկով այս տարօրինակ որոշումը այս տեսակէտով կ՚երեւայ ինծի, մանաւանդ երբ տեղին վրայ աչքովս տեսայ իր մինչեւ հիմա բազմահերձ դիրքերը, որոնք արտասովոր կերպով ընդարձակ էին բաղդատմամբ իր ուժերուն: Այս կերպով կ՚արդարանայ այդ որոշումը, եւ մինչեւ իսկ անխուսափելի կը դառնայ, տեղական պայմաններուն համաձայն: Որովհետեւ եթէ թուով տկար պաշտպան-

ներ յաջողիլ կ՚ուզեն, պէտք չէ կոտորակուէին իրարմէ բաժնուելով, մանաւանդ թուով գերազանց յարձակողներու դէմ: Իրեն եւ հակառակորդին միջեւ աւելի տեղ ձգելու համար, թերեւս աղէկ կ՚ընէր մինչեւ Սօղանլը Տաղ եւ մինչեւ Սէվին եա երթալով, խարխուլ Էրզրում ընելով եւ Կարսը անգամ թողլով: Եթէ Մուխթար Փաշա սկիզբէն իսկ բոլորովին հրաժարէր Իսմայիլ փաշայի հետ արդէն իսկ խիստ տարակուսելի միացումէն, իր բանակին համար շարժելու բաւարար ազատութիւն պիտի շահէր. որովհետեւ կամ ա՛յն է որ Ռուսերը իրենց բոլոր ուժով նախ եւ առաջ Կարսը պիտի սեղմէին եւ գրաւէին, ինչ որ սակայն բաւական ժամանակի կը կարօտէր, կամ, ինչպէս Սէվինի ճակատամարտէն առաջ, անգամ մըն ալ մասերու պիտի բաժնուէին։

Դժուար է ըսել թէ Թուրք հրամանատարը ի՞նչ բանէ դրդուեցաւ վերջն ալ գամուած մնալու Կարսին. արդեօք արդէն իսկ ճամբայ ելլող Իսմայիլ փաշայի՞ն համար, թէ բերդաքաղաքին պաշտպանութեան միջոցներուն կացութիւնը նկատի առնելով, եւ կամ վերջապէս, եւ թերեւս գլխաւորաբար, նկատի առնելով իր զօրքերուն վիճակը: Դէպ ի Սօղանլը Տաղ եւ Սէվին եա երթալը ամէն պարագայի մէջ թշնամիէն հարիւր քիլօմէթր հեռի գործողութիւն մը կը նշանակէր օդին եւ ճամբաներուն աննպաստ պայմաններուն տակ: Իր զօրքերը այսքան ճամբան կտրելու ույժ ունէի՞ն, ասիկա աւելի քան խնդրական կը թուի ինծի: Տարակոյս չկայ որ Թուրք զինուորները արդէն սաստիկ յոգնած էին, Խազախ-



Սեւ ցուլ կռիւի դաշտին վրայ

ները ամէն կողմէ, նոյն իսկ Էրզրումի կողմէն նեղը կը ձգէին Թրքական դիրքերը, եւ փաշան լուսաբանուելու, տեղեկութիւններ քաղելու ո եւ է կարելիութիւն չունէր, քանի որ ասոր համար միջոցները կը պակսէին իրեն։ Պատահական տեղեկագրէ մը կը տեսնեմ որ Մուխթար փաշա այն միջոցին Ռուսերը շատ աւելի զօրաւոր, բազմաթիւ կը կարծէր — հարիւր հազար հոգի կը գնահատէր զանոնք - ինչ որ չկար իրականին մէջ:

Մուխթար փաշայի դէպ ի Ալաճա Տաղ յետախաղաց համախմբութեան համար շարժումներուն վրայ իմ վերեւ պարզած տեսութիւնս, այսինքն՝ իր զօրքերուն դեդեւումը եւ տկարութիւնը, յետագայ դէպքերէն տեսակ մը հաստատութիւն կը գտնէ:

Ինչպէս յայտնեցինք, Ռուսերը Թուրքերուն դիրքերը բռնեցին անյապաղ, եւ Մեծ-Դուքս Միխայիլ, որ այն ատեն իր կեդրոնը հաստատած էր իմ դիպուածով գտնուած Քարաեալ գիւղին մէջ՝ որոշեց իսկոյն յարձակողականը կրկնել եւ այս անգամ բոլոր միացեալ ուժերով՝ Իր տիրող մտածումն էր հակառակորդը զբաղեցնել ճակատին վրայ եւ ամուր բռնել, եւ միւս կողմէ բազմաձեռն գունդով մը, հեռուները տարածուելով, անոր աջ թեւը պաշարել, ասով միեւնոյն ժամանակ արեւելքէն արդէն ճամբայ ելած ըլլալը ծանուցուած Իսմայիլ Փաշայի զօրքերուն Թրքական կեդրոնի ուժերուն հետ միացումը խափանելու, եւ պաշարող գունդին թշնամիին ետեւը անցնելէն վերջ՝ ամէն կողմէ անոնց վրայ յարձակելու եւ փճացնելու համար: Այս նպատակով թշնամի ճակատին դէմ առաջ պիտի մըղուէին խիստ որոշ կարգադրութեան մը համաձայն աջ թեւին հրամատար զօրավար կոմս Կրապպէ, Փոքր Եանիքէն, կեդրոնի հրամատար զօրավար Հայման մեծ Եանիքէն եւ Սուպաթանէն, եւ ձախ թեւին հրամատար զօրավար Քուամինաքի Գըզըլ Թէփէէն, բազմաթիւ պահեստներ Քիւլվէրանի մէջ պիտի մնային, եւ զօրավար

Լազարէվ քան հազարէ աւելի մարդոցմով պաշտպանողական շարժումը պիտի գործադրէր:

Մեծ դուքսին կողմէ այսպիսի յատակագիծի մը մտածուիլը ինքնին ապացոյց մըն է անպայման գերակշռութեան իր զգացումին համար, ինչպէս նաեւ Թըրքական բանակին մէջ տիրող կացութեան ճշգրիտ ծանօթութեան համար: Բայց որովհետեւ Թուրք ուշիմ եւ գործունեայ հրամանատարին զօրքերուն ոյժը եւ կանոնաւորութիւնը տակաւին հնարաւորութիւն կուտար իրեն յարձակողականի մը, մեծ վտանգ մը կար որ Լազարէվի քանի մը օր տեւող պաշտպանողական շարժումի միջոցին եւ առոր իրապէս կատարուելէն առաջ, ամփոփէր իր ուժերը, Գըզըլ Թէփէի եւ Սուպաթանի վրայ յարձակման մղէր զանոնք, եւ ճեղքէր ռուսական դիրքը: Այն ատեն ծանր կացութեան մը կը մատնուէին Ռուսերը, եւ, ինչպէս ասանկ պարագաներու մէջ յաճախ կը պատահի, պաշտպանողը ինքնին պաշտպանուէր: Հետեւաբար ռուս վերին հրամանատարութեան անժխտելի արժանիքը կը կայանայ ո՛չ միայն պաշտպանումի աներկիւղ յատակագիծը յղանալուն եւ գործադրելուն մէջ, այլ նաեւ Թուրք զինուորին վիճակը ճշդիւ գնահատելուն մէջ, թէ ան տկարացած եւ իր ներքին դիրքին մէջ խախտած էր, թէեւ տեղւոյն վրայ կը կռուէր եւ կրնայ մեռնիլ, բայց այլ եւս շարժումներու կամ յարձակումի ընդունակ չէ(*): Այսպէս աստիճան մը կռիւի դաշտին վրայ

(*) Հոս կ'ուզեմ բաղդատաբար ակնարկել Լիաօեանի ճակատամարտին մէջ անցած դարձած դէպքերուն ռուսեւճապոնական պատերազմին ատեն: Այդ ճակատամարտին մէջ ռուս զինուորները սկիզբէն մինչեւ վերջը զարմանալիօրէն կռուեցան, հակառակ Քուրոբաթքինի վեհերոտ հրամանատարութեան: Այս վերջինը, քաջավարժ տեսականագէտ մը, որ քարտէսին վրայ խաղալով բանակները իրարու դէմ կը հանէր, բայց չէր ճանչնար անոնց ֆիզիքական կարողութիւնը, յաճախ խորիմաստ յատակագիծ մը կ'ունենար, բայց երբեք չէր կրնար գործադրել զայն, այլ կը յաջողէր միայն ա՛յն ատեն երբ խնդիրը նահանջելու վրայ ըլլար:

Լիաօեանի ճակատամարտին մէջ Քուրօքի իր ուժերուն մէկ մասովը սկսած էր Թայցիհօ գետին աջ եզերքէն միւս կողմը անցնիլ

*իսկ, եւ հակառակորդին բռնած ընդարձակ միջոցին մէջ կը տեսնենք ռազմագիտական պաշարողականի մը կատարումը, որուն նմանը, յաջողութիւնն ալ նկատի առնելով, ամբողջ պատերազմներու պատմութիւն մը քիչ անգամ կ'արձանագրէ: Այսու հանդերձ, յաջողութեան համար իրապէս ազդեց Լազարեւի կողմէ առաջնորդուած եւ զինուորական յառաջխաղացումի պէտքերուն համեմատ գործածուած դաշտային հեռագիրը, զոր Թուրքերը, եթէ նոյն իսկ այդ մասին բան մը գիտցած ըլլային, հեծելազօրքի պակասութեան պատճառաւ ի վիճակի չէին խզելու: Դաշտային հեռագիրը Մեծ-Դուքսը իրազեկ կ'ընէր Լազարեւի շարժումներուն, եւ վերջ ի վերջոյ բոլոր գունդերուն միահաղոյն ապահով յարձակումը կարելի ըրաւ ճիշդ ժամանակին, կատարեալ յաղթութիւն ձեռք բերելու համար:*

*Հոկտ.ի 9-10 գիշերը Լազարեւի գունդը Քարաճալէն յարձակեցաւ Անիի ուղղութեամբ, Իւչ Թէփէի արեւել-*

---

ռուսական տասներորդ զօրաբանակին ճակատին առջեւ ռուսական ձախ թեւին վրայ, զայն պաշարելու նպատակաւ։ Այս դժուարին եւ անհաւասալիօրէն յանդուգն գործողութիւնը երկու մասի կը բաժնէր արդէն բուն ինքեան տկար առաջին ճաբոնական բանակը եւ կրնար ենթարկել զայն գրեթէ ապահով պարտութեան մը, կամ ռուսական յարձակողականի մը անյաջողութեան պարագային՝ գոնէ արտասովոր վրդովումի մը, երբ Քուրօբաթքին — եւ ասոր համար առատօրէն միջոց ունէր — ուժգին առաջ քալէր ճաբոնական բանակին պարապ միջոցներուն մէջ։ Հակառակ ասոր ճաբոնցիները կրցան յղանալ այդ վտանգաւոր յատակագիծը եւ գործադրել իսկ զայն, որովհետեւ շատ ուղիղ կը գնահատէին ռուս վերին հրամանատարը եւ անոր վեհերոտութենէն կորովի յառաջխաղացում չէին կասկածեր։ Հոս ալ կար ռուս հրամանատարին հմտութիւնը, բայց ոչ, ինչպէս Կարսի առջեւ Ռուսերուն կողմէ, Թուրք զօրքերուն կացութեան ճշգրիտ ծանօթութիւնը։

Եւ յաջողութիւնը իրաւունք տուաւ ճաբոնցիներուն. կրկին ապացուցուց թէ վեհերոտ հրամանատարութեան մը դէմ ամէնէն անխորհուրդ եւ յանդուգն յարձակողականը անգամ կը յաջողի եւ յաղթութիւնը իրեն հետ կը բերէ։

քէն անցաւ այն միջոցին ջուրերը իջած Արփա Չայէն, քալեց դէպ ի հարաւ մինչեւ Քամպինաք. ուր Տէր Ղուկասովի զօրքերը եկան ստուարացուցին իր բանակը. եւ միշտ գիշերանց, ու ամենամեծ լռութեամբ շարժելով՝ շեշտակի դէպ ի աջ ուղղուեցաւ, անգամ մըն ալ անցաւ Արփա Չայէն, եւ հարաւէն Խամայիլ փաշայի սպառուած զօրքերուն դէմ ջոկատներ քալեցնելով, ինք դէպ արեւմուտք գնաց դէպ ի Տիկուր, ուր երեք գիշերուան սաստիկ ընթացքէ մը վերջ օր մը հանգիստ առաւ: Հոկտ. 14ին Լազարէվ ա՛լ աւելի հիւսիս արեւմուտք քալեց, Պազարճըքի առջեւ բաղխեցաւ Մուխթար փաշայի կողմէ արտորնօք հոն ղրկուած զօրքերուն, եւ մղեց զանոնք դէպ ի հիւսիս Վիզինքէօյի վրայ, եւ իրիկունը Օրլօք մտաւ: Այս կերպով պաշարողական շարժումը յատակագծին համեմատ ամբողջացած էր, եւ այս նպատակաւ նոր յաղթական կռիւէ մը վերջ Լազարէվ Թրքական ձախ թեւին ետեւը անցաւ: Թուրքերուն խաղը հիմակ արդէն անկանգնելի կերպով կորսուած էր, իրենց համար այլ եւս խնդիրը կը դառնար մահուան կամ անձնատուութեան շուրջ:

Հոկտ. 15ին առաւօտուան ժամը երկուքուկէսին Մեծ-Դուքսը իր գլխաւոր կեդրոնին եւ հիմակուան իմ գտնուած տեղիս՝ Քարաեալլի մէջ Լազարէվի մէկ հեռագիրը ստացաւ նախընթաց օրուան իր յաջողութեան վրայ, եւ արդէն պատրաստ պահուան գունդերուն հրամայեց անմիջապէս համախումբ յարձակումը սկսիլ Վիզինքէօյի եւ Ավլիարի բարձունքներուն վրայ, ինչպէս նաեւ Ալաճա Տաղի վրայ: Ինք ալ յառաջացաւ դէպ ի Հաճի Վէլի. եւ ես ալ հոն գացի. ռուսական յարձակումին ամբողջ դաշտը կը պարզուէր իմ առջեւս:

Արշալոյսին զօրավար Հէյման բոլոր գլխաւոր ուժերով քալեց Ավլիարի բարձունքներուն դէմ, Թրքական կեդրոնը ճեղքելու, աջակողմէն (դէպ ի արեւմուտք) կոմս Կրապպէ Փոքր Եանիէն դուրս խոյացաւ Վիզինքէօյի բարձունքներուն դէմ—բուն գիւղը չկրցայ ճանչ-

նալ, թերեւս մութին պատճառաւ—հարաւէն յարձակող Լազարեւի հետ միանալու, եւ ձախակողմէն (դէպի արեւելք), Գըզըլ Թէփէէն, որ այս պահուս առջեւս կը գտնուի, Քուռմինսքի յարձակեցաւ Ալաճա Տաղի դէմ: Ամէնուրեք Թուրքերը բարձունքներէն սկսեալ մինչեւ զառիթափերը փոսերու մէջ խրամատուած էին: Հէյմանի հրետանին սկսաւ գործել (կարծես աչքովս կը տեսնեմ) մինչեւ 1500 մէթր թշնամի դիրքերուն վրայ, մէկ գիծի ուղղութեամբ, եւ թրքական թաքստոցի խրամները դղրդեց հիանալիօրէն գործող ռումբերով. հետեւակազօրքը յառաջացաւ տափարակ եւ սակայն ըստ բաւականին պատսպարան ընծայող ձորակներուն մէջ—կարծես աչքովս կը տեսնէի անոնց դէպ առաջ շարժիլը—եւ կէս օրուան միջոցին յարձակեցաւ բարձունքներուն վրայ: Դիւցազնական եւ մահանախատ պաշտպանութենէ մը վերջ՝ ռուսական հրետանիէն տասանորդուած Թուրք պաշտպանները խուճապ փախուստով դարձան դէպի Վիզինքէօյ, զոր քիչ առաջ գրաւած էին հիւսիսէն կոմս Կրապպէ եւ հարաւէն Լազարեւ. Թուրքերուն կեդրոնը եւ ձախ թեւը պարտուած էին: Մնացածը կամ գերի բռնուեցաւ, կամ փախաւ դէպի բարձունքներէն ապահովուած Կարս: Խազախները սուսերամերկ խուժեցին եւ ջարդեցին:

Բայց տակաւին Թուրքերը բռնած էին Ալաճա Տաղի հիւսիսային եւ հիւսիս-արեւելեան զառիթափը: Միւս կողմէ Քուռմինսքի հիւսիսէն, Հէյմանի ետեւէն եւ Լազարեւ հիւսիս-արեւմուտքէն դէպի հոս կը քալէին, եւ Հէյմանի գունդերը Ավլիարի բլուրին եւ Ալաճա Տաղի արեւմտեան զառիթափին միջեւ գտնուած ճեղքուածքէն պարտաւոր էին անցնիլ: Հոս ալ Թուրքերը հիմակ այլ եւս չէին կրնար բռնել իրենց դիրքերը. փորձեցին դէպի արեւմուտք Վիզինքէօյ ճամբայ կտրել, բայց ճամբան Լազարեւի կողմէ խափանուած գտան եւ պարտաւորուեցան զէնընկէց ըլլալ, թէեւ եօթը հազար հոգի էին:

Այսպէս դիւցազնական ընդդիմութենէ մը վերջ ամբողջ Թրքական բանակը փճանալու աստիճան զարնուեցաւ, եւ այդ պահուն մութը սկսած էր կոխել։ Նոյն ինքն Մուխթար փաշա իրիկուան յառաջացած ժամերուն կորսնցուց իր ռազմական տեսակէտը Ալաճա Տաղի արեւմտեան զառիթափին վրայ. գրեթէ հրաշքով պրծաւ Հէյմանի եւ Լազարէվի ճակատէն Կարս, եւ անկէց յաջորդ օրը փոքրաձեռն գունդով Օլթիի հովիտը եւ վերջերն ալ Էրզրում։

Թուրքերէն չորս-հինգ հազար հոգի—անհամեմատաբար բարձր տոկոս մը հարիւրի հաշուով—կռուին մէջ ինկած, վիրաւորուած կամ փախչելու ատեն սուինահար եղած էին. գրեթէ իրենց ամբողջ թնդանօթները եւ ուտեստի եւ ռազմամթերքի առատ պարէնը Ռուսերուն ձեռքը ինկաւ, որոնք հազարհինգհարիւր հոգի միայն կորսնցուցած էին վեր ի վերոյ։

Ալաճա Տաղի ճակատամարտով վճռուած էր պատերազմը Հայաստանի մէջ, որովհետեւ արդէն մէկ ամիս վերջ Կարսն ալ գրաւուեցաւ տասնըեօթը հազար գերիներու, երեք հարիւրէ աւելի թնդանօթներու եւ հսկայական պատերազմական իրեղէններու յաղթական գնով մը բազմակորուստ յարձակումէ մը վերջ։

Իրաւ է որ վերջերը յաջողութեամբ եւ արիութեամբ պաշտպանուած Էրզրումի առջեւ նոր կռիւներ տեղի ունեցան, որոնք ուշադրութեան արժանի են, բայց Թուրքերուն կողմէ մահուան հետ պօտեմարտութեան մը վերջին ցնցումները միայն կրնան նկատուիլ։ Ասոնք Կարսի շուրջ մղուած կռիւներուն կարեւորութեան չեն հասնիր, որոնց առթիւ մենք իբրեւ զինուոր չենք կրնար մեր սքանչացումը զլանալ պաշտպանութեան եւ յարձակումի ատեն ցոյց տրուած յանդգնութեան եւ անձնուիրութեան, ներքին գիծերուն մէջ Մուխթար փաշայի գործողութեանց, Ալաճա Տաղի ճակատամարտէն առաջ Լազարէվի ընդարձակ պաշարողական շարժումին, ինչպէս նաեւ ամենակատարեալ յաղթութեան մա-

սին բոլոր գունդերուն միահաղոյն գործակցութեան համար:

Իմ ձեռքս հասած տեղեկագրութեանց համեմատ, Թուրք հրամանատարը Լազարեւի պաշարողական շարժումին վրայ ա՛յն ատեն միայն լուր առաւ, երբ անիկա արդէն իր կռնակը հասած էր, եւ ա՛յն ալ լրտեսներու միջոցաւ, որոնք հեծելազօրքի չգոյութենէն հետազօտութեան պաշտօն կը կատարէին, բայց Խազախներու նիզակներէն յաճախ ջարդուելու վտանգին ենթարկուած լրտեսներ: Քարաեալէն դէպ ի Անիի աւերակները ճամբուն վրայ ճշդիւ կրցայ հետեւիլ Լազարեւի ընթացքին առաջին մասին, եւ այցելեցի նաեւ Իւչ Թէփէի արեւելակողմը իմ ատենս ջուրերուն յորդումին հետեւանքով անանցանելի հունը, որուն մէջէն առաջին անգամ Ռուսերը Արփա Չային միւս կողմը անցան: Թէեւ, ինչպէս յիշատակեցինք, գնացքը գիշերները միայն տեղի կ՚ունենար, եւ, ասկէց զատ, բոլոր կարելի նախզգուշութիւնները ձեռք առնուած էին — ո՛չ խօսիլ կար, ոչ կրակ վառել, անիւները յարդով պատած էին, եւն., եւ վայրերուն ալեծուփ մեծ գիծերը թէեւ շատ յարմար են Կարսի բարձրադիր դաշտին դէմ պատսպարուելու համար — Ալաճա Տաղ ամէնուն վրայ կը նայի, եւ անտարակոյս Մուխթար փաշա հոն զինակոն պահակներ հաստատած էր:

Լազարեւ քսան հազարէ աւելի մարդ կ՚առաջնորդէր ութսուն թնդանօթներով եւ ի հարկէ ոչ աննշան կառախումբերով, ասկէց զատ առնուազն ութը օր հարկ էր ապահովել մարդոց եւ ձիերուն պարէնաւորումը. գունդերն ալ իրարմէ հեռի էին նկատի առնելով դէշ կամ բոլորովին թերի ճամբաները: Տակաւին չեմ կրնար խորհիլ որ Փաշան բոլորովին կարծեցեալ անիրազեկ մը ըլլար ամբողջ պաշարողական շարժումին մասին, մինչեւ որ Լազարեւ Ալաճա Տաղի հարաւային կողմէն իր ետեւը մտաւ: Կը հաւատամ թէ իրա՛ւ ճշգրիտ տեղեկութիւն մը չունէր, այլ ունէր ընդհանուր տեղեկութիւն մը,

բայց անոր դէմ բան մը ընելու կարող չէր, որովհետեւ ինք չէր կրնար ճակատին վրայ քայքայուիլ եւ իր զօրքերն ալ այլ եւս չէին կրնար շարժիլ մեծ ճակատամարտի մը համար: Մուխթար Փաշա Թուրք մըն էր. երբ աղէտքը հետզհետէ մօտեցած տեսաւ, «գըմէթ»ը զինքն ալ գրաւեց, այսինքն ճակատագիրը, որուն դէմ մարդուն ձեռքէն բան մը չիգար, եւ իւրաքանչիւր հաւատացեալի կրօնական պարտականութիւնն է կուրաբար անձնատուր ըլլալ անոր: Սակայն պատասխանատուութեան շքեղ զգացում մը եւ նաեւ յաղթութեան վստահութիւնը ոգեւորած էին Լազարեւը իր վճռական գործողութեան համար — այս զգացումը ունեցայ՝ Արփա Չայի վրայ կենալով: Մե՜ղք որ բուն կռիւներուն ատեն հոն չեմ եղած։

Ալաճա Տաղի ճակատամարտը եւ Կարսի յետագայ յարձակումով գրաւումը անթառամ հռչակի էջեր են Ռուս բանակին պատմութեան տարեգրութեանց մէջ: Ցոյց կուտան թէ կանխաւ պատրաստուած, խնամով յարդարուած եւ մեծ ուժով ի գործ դրուած յարձակում մը իր նպատակին կը յանգի նոյն իսկ արդի զէնքերուն ու ամրութիւններուն դէմ, եւ թէ յանդգնութեան եւ պաղարիւնի մէջ մեծ յաջողութիւնը կը կայանայ միայն, ինչպէս անհատին կեանքին՝ նոյնպէս ժողովուրդներուն կեանքին, եւ դարձեալ մանաւանդ պատերազմին համար:

Կարելի է հարցնել թէ Կարս բերդաքաղաքը ի՞նչ ազդեցութիւն ի գործ դրաւ դէպքերու ընթացքին վրայ, եւ թէ անոր գոյութիւնը ո՞ր աստիճան նպաստաւոր կամ աննպաստ հանդիսացաւ պատերազմին թրքական կողմին համար: Կ'ընդունիմ որ ան առաջին անգամ պատսպարեց եւ դիւրացուց Թուրքերուն դժուարին գնացքը, բայց թերեւս պատճառ եղաւ նաեւ որ անոնք շատ աւելի հեռուն համարձակեցան երթալ (Տե՛ս Բորթ Արթուրը Ռուսեւճաբոնական պատերազմին մէջ), թէ ան վերջերը Փաշային հայթայթեց Սէ՛նի յաջողու-

*թեան կարելիութիւնը, Ռուսերը պարտաւորուած ըլլալով իրենց ուժը բաժնել, ինչպէս նաեւ փաշային զօրքերուն ընծայեց ապահով թեւ մը եւ թանկագին օժանդակ մը, բայց թէ ան վերջ ի վերջոյ, միւս մեծ բերդաքաղաքներուն նման (Մէց) աղէտք մը եղաւ բուն իսկ բանակին: Կարս՝ փոխանակ ինքզինքը պաշտպանելու, եւ բաց դաշտին բանակը աւելի զօրաւոր ու աւելի ազատ ընելու եւ անոր կռուի ընդունակութիւնը բարձրացնելու, զայն միշտ իրեն քաշեց, հետզհետէ կաշկանդեց զայն, եւ արդելք եղաւ անոր ուժին արտացոլացումին, մինչեւ որ երկուքն ալ, բանակն ու բերդաքաղաքը, եւ մին միւսին պատճառաւ, կորան:*

*Ճակատամարտի դաշտին այցելութիւնս, վերջին ծայր նեղացուցիչ եղաւ, եւ նպատակիս գործադրութեան համար ամբողջ ուժերուս պէտք ունեցայ: Բայց եթէ այդ կերպով եւ յառաջիկայ նկարագրութիւններով յաջողած եմ օժանդակել վայրերուն եւ անոնց մէջ տեղի ունեցած դէպքերուն ծանօթութեան, եւ զինուորական երիտասարդութիւնը յորդորել Հայկական հողին վրայ գրէթէ մոռցուած պատերազմին ուսումնասիրութեանը, ատիկա ինծի համար կ'ըլլայ ամէնէն գեղեցիկ վարձատրութիւնը եւ կը մոռցնէ իմ բոլոր տաժանումներս:*

*«Մտիկ ըրէ՛ք, երիտասարդներ, մտիկ ըրէք,*
*Ինչ որ մենք ծերերս կը պատմենք ձեզի պատերազմին վրայ»:*





Անիի աւերակները: Բագրատունեաց արքայական պալատը

> **Օր պիտի գայ ատեն մը,**
> **որ սուրբ Իլիոն կործանի։**
> (Հոմերոս։ Իլիական Զ. 448.)

# 5. Աւերակներու քաղաքը Անի



Անի։ Դուռը դուրսի կողմէն

*Լոյսը դեռ չճեղքած՝ Քարաբալէն ճամբայ ելայ: Գրեթէ անհաստատ ճամբան ժամերով կը տանի հարաւ արեւելեան ուղղութեամբ, ճիշդ ինչպէս գտան զայն ու բանեցին Լազարեւի պաշարողական շարժումին գունդերը: Իմ առջեւս կը բարձրանան արիւնոտ օրերու ծանօթ վկաները. Իւչ Թէփէ աջէն, մօտիկը (դէպ ի արեւմուտք) Գըզըլ Թէփէ, անոր ետեւը (դէպ ի հարաւ) Ալաճա Տաղի ձիւնակատարը, եւ աւելի հեռուն աջէն (դէպ ի արեւմուտք) միւս կողմը բլրաձեւ մեծ ու փոքր Եաղնին: Ինքզինքս կը տեսնեմ Արփա Չայի վրայ, որ իր դեղին յորդաջուր հոսանքներուն անցք կը վարէ խորը երկրի թագաւորութեան, զոր իր ժամանակին*

Ռուսերը օգտագործեցին, հիմա անանցանելի հուն է, եւ կ'երթայ դէպի հիւսիս Իւչ Թէփէի շուրջ, եւ սոր ու Գըզըլ Թէփէի միջեւ: Զոյգ մը ողորմուկ Հայկական գիւղեր հաստատուած են ճամբուն վրայ. գիւղին ծերունիները կուգան խոնարհաբար ճամբուն մօտ, գդակնին կը հանեն եւ մինչեւ մէջքերնին կը խոնարհին յարգանքով: Երկինքը մթամած կը կամարանայ քարուտ, անծառ դաշտանկարին վրայ, սաստիկ քամի մը՝ Ալաճա Տաղէն փրթելով՝ կը խարազանէ սառնորակ բադիլներով ցրտակէզ դէմքերը, առանց շունչ առնել տալու: Եւ ահա անմիջապէս ալեկերպ, վէտվէտուն սափարակէն դուրս, կիսովի դէպ ի ձախ առաջօք, կը ցցուի արտառոց կերպարանքով, ուղտի մը կուզերուն նմանող Ակատավա Տաղ անուանեալ լեռ մը, եւ ճիշդ անոր առջեւ ու մօտը երկար, աշտարակաւոր պարիսպ մը շիկագորշ քարերէ, ետեւօք գմբէթներով եւ ատամնաձեւ որմածով: Կառքը կը ծռի կամարաւոր եւ քարէ դերբուկներով ծածկուած դրան ճամբէն ներս, եւ առջեւս կը գտնուի բերանաբաց աւերակներու քաղաքը Անին:

Տպաւորութիւնը բնաւ զուարթ չէ: Շքեղ սիւներ եւ աղեղնաձեւ թեթեւ կամարներ դէպ ի լուսաշող երկինք չեն բարձրանար, ինչպէս յունական եւ հռոմէական շինուածներուն, ինչպէս նաեւ Բալմիրի կամ Պաալպէքի մէջ. խուզարկու աշխատութիւնը աչքի առջեւ չի փորեր փլուզումներով խճողուած գետինը, ինչպէս Բաբելոնի եւ Ասուրի մէջ. երբեմնի հզօր, երկար ատենէ ի վեր հանգուցեալ քաղաքամայրի մը մեռելական զարմանալի դաշտը չորս կողմէն կը տարածուի ամայի ու լքուած, գորշ, դեղին, ու միշտ գորշ, աղօտ: Ուր երբեմն հարիւր հազար մարդիկ կ'ապրէին, Արուեստի եւ Գիտութեան մէջ ջանադիր եւ երկրագործութեան ու առեւտուրի մէջ ժրագլուխ, ու «հազար եկեղեցիներ»է զանգակներ կը ղօղանջէին, եւ աղօթողները կը հրաւիրէին խաչեալին պատկերին առջեւ, ահա՛ հիմա զոյգ մը գիւ-

ղացներ միայն կը բնակին, եւ թէ՛ իբրեւ պահապան անցեալին եւ թէ իբրեւ հսկող ներկային, պատկառելի ծերունի մը սպիտակ ծփուն մօրուքով. Հայ վանական մը: Արդէն շատ տարիներէ ի վեր հոս կ՚ապրի, անբնակելի, ցրտամած քարէ տաղաւարի մը մէջ: Ամէն շաբաթ, ձմեռ ժամանակ միայն, իր հաւատարիմ ընկերին՝ նոյնքան ծերացած իշուկին հետ՝ մօտակայ գիւղերը կ'երթայ եւ իր ուտեստը կը ճարէ: Իր բնակարանին դրան առջեւ բարի գալուստ մաղթեց ինծի, եւ հրամցուց պանիր, մեղր եւ չոր հաց. ինք բան մը չկերաւ, որովհետեւ պահոց օր է: Ես ալ պարտաւորուած էի երկար հանգիստ չընել. սրտատրոփ եռանդով, ճշմարիտ խանդավառութեամբ իր թանկագին գանձերուն ի տես փութացուց զիս, իր աւերակոյտ բնիկ վայր֊րուն:

Ուստի ճամբայ ելանք. նախ մօտակայ փոքրիկ մուզէոն մը, որուն մէջ սրտագեղ գործվանքով հաստատուած եւ դասաւորուած են ամէն տեսակ հանքի կտորներ—մատաններ, զարդի առարկաներ, սափորներ, արձանագրութիւններով քարեր եւ ուրիշ բաներ: Ամէնէն աւելի դիտելու արժանի է Հայ Բագրատունի Գագիկ Ա. Թագաւորին (1000 թուականին ատեն) փոքր ինչ անարուեստ աշխատուած այլ ազդու եւ նշանակալից արձանը, բարեպաշտ վեհապետին, որուն կը պարտի Անի իր եկեղեցիներուն մէկ մեծ մասը: Անխղճօրէն գերեզմաններ ալ բացուեր են, որոնց մէջ նախահայրերը հաւատացած էին իրենց մեռեալները ծածկել եւ պատսպարել խնամով մինչեւ յաւիտեան:

Արդէն կէս դար առաջ Ռուս կայսերական կառավարութիւնը ստանձնած է Անիի աւերակները, եւ հիմակ ալ, ինչպէս առաջնորդս պատմեց ինծի, քանի մը տարիէ ի վեր ամառնային ամիսներուն Բեթերսպուրկցի հնագէտ Բրօֆ. Մառ հոս կ'անցընէ, մեծ յաջողութեամբ կը խուզարկէ շէնքերուն մնացորդները, մանաւանդ արձանագրութիւնները: Ես ո՛չ գիտնական եմ ոչ գեղարուեստագէտ. հետեւաբար ինչ որ կուտամ յետագային

մէջ, յաւակնութիւն չունի գիտական հիմնաւորութեան, այլ պարզապէս պէտք է համարուի ականատեսի նկարագրութիւն մը ա՛յն գլխաւոր բաներուն, զորս տեսայ, եւ զորս իբրեւ անմամնագէտ պատկերացուցի առջեւս:

Անի, «հազար եկեղեցիներու քաղաքը», Արփա Չայի եւ Ալաճա Տաղի միջեւ կը գտնուի հիւսիսէն դէպ ի հարաւ ներցող քարաժայռերու վրայ, որոնք 30էն մինչեւ 60 մէթր խոր կիրճերով յիշեալ գետը կը պարփակեն եւ հիւսիսի պարսպաւոր կողմին վրայ միայն բաց են: Հովիտին փլխրուն քարէ գրեթէ ուղղահայեաց պատերուն մէջ երկայն շարքերով գետնափոր անձաւներ ծակուած են, ժամանակաւ աղքատ բնակիչներուն եւ վերջերը վանական ճգնաւորներուն բնակութիւնները: Կամարակապ կամուրջ մը մութ կարմիր ցից զառիթափէն կը տանի Արփա Չային վրայէն դէպ ի Խօշավանք, ուր նուիրականացած հողի մէջ կը հանգչին Բագրատունի թագաւորները, եւ ուր տակաւին լաւ պահուած որմածներուն ներսի կողմը կը մնան սրահները, որոնց մէջ գումարուեցան Անիի տօնական, հանդիսաւոր պետական եւ արքայական խորհուրդները եւ համախմբումները: Դժբախտաբար չկրցայ արդի Խօշավանքը այցելել, որովհետեւ կամուրջը մինչեւ վերի սիւները ջուրին մէջ մխրճուած է ջուրերուն յաւելուածէն տակաւին ճանաչելի յանդուգն կամարներովը, եւ տակը պտտուած ու սովորական ժամանակներու մէջ իսկ դժուարանցանելի հունը անանցանելի էր:

Յարաճուն հետաքրքրութեամբ հետեւեցայ առաջնորդիս յիշեալ մուտէն դուրս քարակոյտերու վրայէն եւ փշուտ թուփերու մէջէն դէպ ի արեւելք Ս. Գրիգոր Լուսաւորիչ Եկեղեցին: Կը բարձրանայ տակէն մռնչող խորաջուր Արփա Չայի պտտավէժ բարձր ափունքին վրայ, ամէնէն ազնիւ յատակագիծով եւ չափով, եւ ճշմարիտ գոհար մը Բիւզանդական-Հայկական ճարտարապետութեան: Նրբաւարդ սիւներէ բռնուած, դեղակամար գաւիթ մը կ'առաջնորդէ ընդարձակ ներ-



Ս. Փրկիչ եկեղեցի        Ս. Գրիգորի մատուռ



Մայր եկեղեցի

քին մասը, որ ճոխ եւ տակաւին լաւ պահուած՝ խաղաներկ նկարներով եւ միջին գմբէթին վրայ Ս. Կոյս Մարիամի հսկայական պատկերովը զարդարուած է։

Անկէց գրեթէ 250 մէթր դէպի հիւսիս արեւմուտք կը գտնուի աշտարակաձեւ Ս. Փրկիչ Եկեղեցին, 1000 թուականին ատենները շինուած եւ երբեմն իբրեւ իրեն մէջ պահած խաչափայտին մէկ կտորը իբրեւ թանկագին մասունք, եւ աւելի դէպի արեւմուտք, քաղաքին հիւսիսային լայն մասին մէջտեղը Անիի ամենամեծ եւ ամէնէն լաւ պահպանուած յիշատակարանը, Մայր Եկեղեցին։ Ս. Փրկիչ Եկեղեցիին չափ հին, եւ անոր նման հաւանաբար Գագիկ Ա. Թագաւորէն հիմնուած, հանդիսատեսին կը ներկայանայ իբրեւ ամէն ժամանակներու ճաշակի ուղղութեան վրայ վսեմաբերձ գեղարուեստական գործ մը յաղթապանծ գեղեցկութեամբ։ Հսկայ եւ մեծ մասամբ Գոթական գիծերով բռնուած խաչակամարը՝ որուն խարխուլ աշտարակը կը կրեն չորս ահագին սիւներ, մէկ ծայրէն անջրպետուած է կիսաբոլորաձեւ, կիսաբլուր գըմբէթարդ ժամատունով մը, հին քրիստոնէական ճարտարապետութեան դաս կոչուածը, ուր կը գտնուի խորանը եւ դպիրներուն



Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցին

կեցած տեղը: Յօժարակամ կ'ուզէի դեռ աւելի երկար մնալ Մայր եկեղեցիին ներսը, որ բոլոր պատառուածքներուն հակառակ դեռ կը պահէ զարմանալիօրէն ձայնական լսողական ներդաշնակութիւնը. բայց առաջնորդս ժամանակին ուշ ըլլալը յայտնեց ինծի, եւ փութացուց աչքէ անցընել տեսնելու արժանի ուրիշ շատ բաները: Եւ իրաւունք ունէր:

Փլած ութանկիւն աշտարակի մը վրայէն — թերեւս երբեմն մինարէ — եւ սիրուն զարդերով ու մոզայիք յատակով գեղեցիկ, եւ գմբէթին փլուզումէն մասամբ խախտած Առաքելոց եկեղեցիէն հասանք հիւսիս արեւմըտեան յետին անկիւնը բարձունքի մը վրայ հաստատուած արքայական պալատը, որուն հսկայ ներքին շինութիւնները կը սուզուին վար մինչեւ Ալաճա Հովիտին խորը, որ շէնքին գլխաւոր երեսին դարձած է: Պալատին վերի յարկէն պէտք է փառաւոր տեսարան մը պարզուած ըլլայ հովիտին կիրճին վրայ եւ տակը գեղապարոյր Ալաճատաղին վրայ, ինչպէս նաեւ քաղաքին եւ ընդարձակ վէտվէտուն դաշտին վրայ մինչեւ վերը Ալակէօզի ձիւնագագաթը:

Քիչ մը հեռու դէպ ի հարաւ, դարձեալ Ալաճա Ջայի հովտին եզերքը, հաստատուած է սիրուն աշտարականման Ս. Գրիգորի մատուռը իբրեւ համբաւաւոր վկայ այն ատեննուան ճարտարապետութեան, ներքին բոլորակին մէջ ութը խորաններով եւ կոնթարդ սանիքով մը, եւ տակը, քաղաքին տափարակ մասին ամէնէն նեղ տեղը, դէպի խորը մռնչող երկու գետերը գահաւանդող ապառաժներուն շարքին վրայ շնորհալի մինարէով մզկիթ մը: Արձանագրութիւն մը իբրեւ անոր շինողը կ'անուանէ առաջին Սելճուգեան իշխանը Մանուչար: Անոր վրայէն տակը կը տեսնուին հովիտին սուր ափերը փլած կամուրջին վրայ, եւ Արփա Ջայի ու Ալաճա Ջայի ժայռուտ կիրճերը:

Դէպ ի հարաւ երկրամասին կը բարձրանայ բլուր մը, որ պսակուած է միջնաբերդով: Անոր հիմի պատերը



Առաքելոց եկեղեցի։ Դուրսի մեծ դուռը

միայն գեռ գոյութիւնն ունին, եւ ներսն ալ շէնքի մը մնացորդները կուռ կամարաձեւ տաղաւարով մը, իր վիճակին նայելով թերեւս պահակներուն բնակութեան համար, եւ մատուռ մը։ Միջնաբերդէն տեսարանը կը տարածուի դէպի Հարաւ Ալաճա Չայի եւ Արփա Չայի միացման կէտին մօտ հետզհետէ նեղցած ապառաժներուն անկիւնին վրայ, որուն հարաւային ծայրը ընդարձակ բարձունքի մը վրայ դարձեալ պարիսպի մնացորդներ, եւ աշտարակներու փլատակներ, որոնք ակներեւ կը ճանչցուին, ինչպէս նաեւ դէպ ի հիւսիս քաղաքին ամբողջ աւերակոյտին վրայ։ Ասկէց սկսեալ քաղաքը կը ներկայանայ իբրեւ հարթ վէտվէտուն դաշտ մը, տեղ տեղ բլրաձեւ փլուրակներ, որոնց վրայ առատօրէն աճած է խոտը, եւ գերեզմանաձեւ փոսեր, աւելի մեծ շէնքերու աւերակներէն բարձրադիր, եւ անհամար քարակոյտեր ցանցնուած, զանազան գոյներով, մութ կարմիրէն սկսեալ մինչեւ թեթեւ մոխրագոյն։ Փողոցներն ու հրապարակները իրարմէ չեն զանազանուիր, եւ տունք ալ արդէն սահմանափակ չափով միայն գոյութիւն ունին, որովհետեւ քաղաքին շրջապատը չափաւոր է, եւ ասկէց զատ ստուար մէկ միջոցը բռնած են եկեղեցիներ եւ բերդի մասեր։ Հետեւաբար եթէ Անի իր ծաղկեալ ժամանակին մէջ հաշուած է իրօք հարիւր հազար բնակիչ, ինչպէս Հայ պատմագիրները կը հա-

ւատարմացնեն, պէտք է որ ժողովուրդը, նոյն իսկ երբ հազարաւորներ բնակուած ենթադրենք փապարաձեւ վայրերուն մէջ, արտասովոր կերպով իրարու վրայ խճողուած ըլլայ, քանի որ միւս կողմէ չենթադրուիր թէ այն յուզեալ ժամանակներուն մէջ բնակիչները պաշտպան պարիսպներէն դուրս արուարձաններ կազմած ըլլային:

Իմ գրէթէ հինգ ժամուան շրջագայութիւնս բաւականէն աւելի հմայած էր զարմացումով: Հիմա վերջացաւ, եւ վեր ելաւ հանդչելու: Հոգեվարքի միջոցին արեւը կրնար դեռ ամպերը ճեղքել. չիկորակ լոյսով տաքուկ կը պահէր մահուան ընդարմացումի մէջ լայնատարած դաշտանկարը: Ո՛չ մէկ շարժում, ո՛չ մէկ ձայն, ցորչափ մարդ կրնայ տեսնել եւ լսել: Եւ սակա՛յն: Ներկայիս բովանդակ սրտաճմլիկ լռութեան մէջ մեռեալներուն հրաշալի գործերը երկար ատենէ ի վեր անցած ժամանակներէն ասդին բարձրաբարբառ կը խօսին ինծի:

Որոշ յայտնի չէ թէ Անի ե՞րբ հիմնուեցաւ: Բայց պարտաւոր ենք ընդունիլ թէ շատ հին է, եւ արդէն իսկ հազար տարի մը գոյութիւն ունէր, երբ Ժ. եւ ԺԱ. դարուն Բագրատունեաց Հարստութեան ատեն (859-1045) Հայաստանի մայրաքաղաք եղաւ (961) եւ շատ փայլուն վեհապետական կեդրոն մը: Իր շքեղութիւնը սակայն կարճատեւ եղաւ: 1064ին Սէլճուգեան Սուլթան Ալփ Արսլան իր պարիսպներուն առջեւ երեւցաւ, քսանըհինգ օրուան պաշարումէ մը վերջ յարձակում գործեց հիւսիսային կողմէն, ուր ցից զառիթափերով պատսպարուած չէր եւ ամէնէն աւելի դիւրախոցելի էր, եւ բոցերու մատնեց զայն: Ինչ որ մնաց կամ կրկին կենդանացաւ, ան ալ կործանեցին լմնցուցին Հուլաղուի հրոսակները եւ վայրագութիւններովը անմահացած Թիմուրլէնկ, որուն առջեւ ժողովուրդներ եւ քաղաքներ փճանալով փոշիի տակ կը թաղուէին, եւ

վերջապէս 1319 տարւոյն սաստիկ երկրաշարժ մը բոլորովին հիմնայատակ ըրաւ զայն:

Ժամանակներուն բոլոր այս զարհուրելի փոթորիկներուն հրաշալիօրէն տոկացին Անիի մեզի մնացած շէնքերուն մասերը: Քիչ անգամ այցելուած եւ նորագոյն ժամանակի մէջ միայն խուզարկութեան առջեւ բացուած, անոնք անմռունչ սակայն պերճախօս վկաներ են Արեւելքի ամէնէն նշանաւոր մեծ քաղաքներէն մէկուն գոյութեան եւ անէութեան, եւ իրենց մեռած քարակոյտերով, թերեւս մագաղաթներու գլաններէ աւելի լաւ, ակնարկ մը կուտան մեզի ժամանակի մտաւոր կեանքէն, որուն կը պարտին այսօր անոնք իրենց ծագումը:

Վերջին ծանր աղէտք մըն ալ եկաւ Անիի գլխուն, երբ 1605ին Մեծն Շահաբաս տասներկու հազար ընտանիքներ Պարսկաստան տարագրութեան պարտաւորեց իր հոն նոր շինած Սպահան մայրաքաղաքին մէջ հաստատուելու համար: Այս ընթացքը, որուն հետեւանքով արդարեւ գաղթողներուն մէկ մեծ մասը կորաւ փճացաւ Պարսկաստանի անբնակ ցամաքին եւ աւազի ու աղի անապատներուն մէջէն ամիսներ տեւող թափառումներուն պատճառաւ, խիստ բուռն եղած է, ինչպէս գիտենք ասիկա այն միջոցին հայկական միւս նշանաւոր քաղաքներէն մին եղող Ջուղայէն(*), որ միեւնոյն ատենները նոյնօրինակ ճակատագրի մը սպառնալիքին ենթարկուեցաւ: Հոն գտնուած արձանագրութեան մը մէջ հետեւեալ հրամանը կը կարդանք. «Մտիկ ըրէ՛ք, դուք Ջուղայի բնակիչնե՛րդ: Մեծ թագաւորը Շահաբաս կը հրամայէ ձեզի իրեն հետեւիլ դէպ ի Պարսկաստան: Պատրաստութեան համար երեք օր ժամանակ ու-

(*) Ջուղա (Ճուլֆա) այսօր տխուր վայր մըն է աւերակներու ընդարձակ դաշտի մը մէջտեղը, Երեւանէն Թիֆլիզ երկաթուղիին իբրեւ առժամանակեայ վերջակէտ, ինչպէս նաեւ իբրեւ ռուսական սահմանագլխի կայան մը քիչ ջատ կարեւորութեամբ:

նիք։ Եթէ այս երեք օրէն վերջ հոս մէկու մը հանդիպինք, անիկա պիտի սպաննուի եւ իր ստացուածքը մեծ թագաւորին պիտի պատկանի։ Եթէ մէկը փախչի կամ ծածկուի, լուր տուողը պիտի ստանայ անոր ունեցածը, իսկ մեծ թագաւորն ալ անոր գլուխը»։

Հինէն ի վեր Անին կը կոչուէր «հազար եկեղեցիներու քաղաքը»։ Այս յորջորջումը կարեւոր մասով իրականութեան համապատասխան է. որովհետեւ այսօր ինչ որ մեր առջեւ կը տեսնենք, գրեթէ միմիայն եկեղեցական շէնքերու մնացորդներ են,—տարօրինակ երեւոյթ մը, որ սակայն իր բացատրութիւնը կը գտնէ պատմութեան մէջ։

Երբ ժամանակին Հայաստանի տարագիր թագաւորը Տրդատ եւ իր հայրենակից Գրիգոր երկարատեւ բացակայութենէ վերջ իրենց հայրենիքը վերադարձան, Գրիգորն էր որ բոցավառ եռանդով Քրիստոնէութիւնը քարոզեց, եւ 276ին յորդորեց իշխանն ու ժողովուրդն ընդունիլ Աւետարանը։ Այսպէս «Ս. Գրիգոր Լուսաւորիչ Հայաստանի առաքեալ եղաւ, Հայաստան ամբողջովին Քրիստոնէութեան դարձաւ եւ Պետական Եկեղեցիի վերածուեցաւ։

Անպատմելի հարստահարութիւնները եւ հալածանքները, զորս այնուհետեւ Հայերը իրենց հաւատքին համար կրեցին, ա՛լ աւելի սիրելի ըրին Քրիստոնէութիւնը անոնց։ Այսօր Հայաստան երեք Պետութեանց միջեւ բաժնուած է, եւ իր ժողովուրդը ամբողջ Արեւելքի մէջ ցրուած. սակայն հնագոյն եւ բարձրագոյն մշակոյթը, վերին չափով օժտեալ ժողովուրդին կենսական զարմանալի ոյժը, եւ հասարակաց հաւատքի հիման վրայ կռթնած համազգի ամբողջութիւնը անդրդուելի պահեց զայն ո եւ է ժողովրդային յարձակումներու եւ փոթորիկներու դէմ, եւ ոչ մէկ թշնամական բռնաւորութիւն կարողացաւ խորտակել անոր ամրութիւնը։

Ժողովուրդին բովանդակ կեանքը հետզհետէ ա՛յնքան եկեղեցական եղաւ, եւ Եկեղեցին կրկին ա՛յնքան



Մզկիթ մինարէով

ժողովրդական, որուն օրինակը աշխարհի մէջ ոեւ է տեղ չկայ, Ռուսիան ալ բացառութիւն չըլլալով։ Իրաւ է Հայոց պատմութիւնը, իրենց երկրին բնութեան եւ մահաբեր կռիւներով իրարու հետ գօտեմարտող Արեւելքին եւ Արեւմուտքին գրեթէ անընդհատ սահմանին վրայ իրենց հարկադրուած կացութեան պատճառաւ, ամէնէն աննպաստ պայմաններուն ենթարկուած է միշտ, բայց այդ պատմութիւնը իրապէս եւ յայտնապէս ազդուած է իրենց եկեղեցիէն եւ Քաղկեդոնի ժողովէն ի վեր այդ եկեղեցիին տարանջատ զարգացումէն։ Այս է պատճառը որ Հայկական աւերակ քաղաքներուն մէջ, եւ մանաւանդ Անի Մայրաքաղաքին աւերակներուն մէջ, ուր բնականաբար համախումբ ամփոփուած է կրօնական կեանքին բովանդակ մեծութիւնը եւ ներքին ոյժը, ամէնէն առաջ եւ գրեթէ միմիայն կը գտնենք ա՛յսպիսի շինուածքներու մնացորդներ, որոնք աղօթքի նուիրուած էին։

Ահա առջեւս կը պարզուին իրենց լքութեան եւ գեղեցկութեան մէջ, իրիկնամուտի ստուերները մեղմօրէն կը սողոսկին անոնց մէջ. Ժամանակն եկած է, եւ պէտք է յառաջանամ գիշերային գնացքիս մէջ։ Բայց չեմ կրնար բաժնուիլ, ինչպէս ուրիշ աւերակներէ, եւ

թո՛ղ ներուի ինծի ասիկա, որովհետեւ այսքան լուսալիր փարթամ անցեալի մը մօտ կը տեսնուի այսօր ներկային մթին թշուառութիւնը : Քարերը չէ որ պիտի կրնան յետահայեաց զննութեան մը տակ գունագեղ կեանք վերստանալ. անոնք սեւցած ու մեռած կը մնան, ազդարարելով թէ յաւիտենական օրէնքին համաձայն մեծութիւնն ու փառքն ալ աշխարհի վրայ անկումի պիտի ենթարկուին, եւ թէ «մնացածը կ'արժէ միայն որ ան ալ անդունդը երթայ . . . : »



Անի։ Դուռը դուրսի կողմէն



Էրզրում

Ի՞նչպէս գամ ես քու քովդ, սիրակա՛նս:
Այրակին եւ ջուրին վրայէ՞ն:

Քանե՛ ջուրը, մարե՛ կրակը,
Եւ եկո՛ւր, ա՛խ, եկո՛ւր իմ քովս:

(Հայ ժողովրդական երգ)

## 6. Կարս – Էրզրում



Հայուհի

Ապրիլ 29ին ժամը տա՛սնին կանուխ մեկնեցայ Կարսի հիւրընկալ կառավարչական շէնքէն: Ակնարկ մըն ալ դէպի ետեւ բարձրահայեաց միջնաբերդին վրայ, որուն դրօշը կը ծածանէր կարծես հրաժեշտի համար, եւ ահա լաւ ճամբէ մը փրփրայոյզ Կարս Ջայի վրայ, զով, արեւոտառտուն: Դարձեալ հիմա իմ անձիս տէրն էի ազատ շրջագայութեան պահուն, եւ բոլոր տեսածներէս եւ ապրածներէս գոհ, կռնակս տուի հաճոյքով, տարածուեցայ թղթատարութեան կող մէ ինծի համար նշանակուած «կառավարիչին կառք»ի-բազմոցին վրայ: Ճերմակ քառաձի կառքը կը սուրաց

շառաչելով խորտուբորտ սալարկներուն վրայ, որոնց առջեւէն կը թռչէին տուներ եւ խրճիթներ եւ բերանաբաց մարդիկ: Պաշտօնական Նէմչիքը (կառապան), որ ինծի պատիւ ըլլալու համար համազգեստ հագած էր, նստած տեղը կը գալարէր. «Այսօր, պարո՛ն, հիանալի է:»

Կարսէն մինչեւ ռուս սահմանագլխի կայարանը Գարաուրկան — 100 քիլոմէթր — կայ ընտիր խճուղի մը, հեռագրական ձողերով, եւ մինչեւ հոն չորս կայարան, հաւասար հեռաւորութեամբ իրարմէ: Ընդհանրապէս հարաւ արեւմտեան ուղղութեամբ կ'երթայ, նախ Կարս Ջայի վրայ վերօք բլրային երկրամասի մէջէն, որ երկու կողմէն ալ ակնարկը կը խափանէ: Պահ մը կարծեցի դէպ ի արեւելք գրեթէ մէկուկէս քիլոմէթր հեռի բերդ մը տեսնել տափարակ բարձունքի մը վրայ, թերեւս աչքի պատրանք մը: Յետոյ հովիտը կը փոխուի արգասաւոր, բարեշէն, վէտվէտուն հարթավայրի մը: Կառքը կեցնել կուտամ եւ յետախաղաց ակնարկ մը արձակելով մութ ժայռերու միջեւ ագուցուած Կարսին վրայ. անոր մէջ եղածէն աւելի, սա՛ տպաւորութիւնը կ'ունենամ թէ ամէնէն անհրաժեշտը եւ ուղիղն է 1877ին Ռուսերուն կողմէ ընտրուած յարձակումը հարկաւ արեւելեան ճակատին վրայ, միեւնոյն ատեն հարաւի գիծն ալ ճեղքելով: Ծիշդ իմ առջեւս կը ցցուէր Սողանլը Տաղի ձիւնաշղթան. ձախէն (դէպ ի արեւելք) կը տարածուէին նոյնպէս մինչեւ խորը ստորոտը ձիւնով ծածկուած Ալաճա Տաղի շուրքերը, աւերակներու քաղաքը Անին քօղարկելով: Եւ անտեսանելիօրէն անհուն ձիւնադաշտերուն վրայ աստուան արեւը կը կենար ջերմիկ. թեթեւ լուսեղր ամպիկներ փախստեայ ստուերներով արագ արագ կը սահէին անոնց վրայէն, մեղկ խաղերով կը միանային եւ մշուշի ու սղոխի կը վերածուէին թուլնալով: Այո՛, կառապանս իրաւունք ունէր, իրօք լաւ էր օդը:

Երիկմարդու պէս ձի նստող Քրդուհի մը մեր դէմը կ'ելլէ, եւ խրտչելով կ'ուզէ ծածկուիլ, ծանրադանդաղ



Ջիաւոր քրդուհի

արօրներ չորս եւ աւելի լուծքով հողը կը խարխալեն, որպէս զի պտուղ բերէ, զոյգ մը յոգնած թափառականներ կեղեւէ ոտնամաններով եւ գըլուխնին փաթթած կը հանգչին ճամբուն վրայ եւ խոընխոնարհութիւն կ'ընեն, թղթատարը խազախներով ու զինուորներով Սարը գամըշէն կ'անցնի մեր առջեւօք — եւ այնուհետեւ ոչինչ:

Անդադրում կ'երթայ գնացքը: Ամէն կողմ գետինը սեւ ու ծանր, ինչպէս հարաւային Ռուսիոյ բացաստաններուն մէջ եւ դաշտանկարը միակերպ. ո՛չ մէկ ծառ, ոչ մէկ կանանչ տերեւ, ո՛չ մէկ ամենապարզ խոտի շիւղ կը զովացնէ աչքը, Աստուծոյ ո՛չ մէկ արարածը կը վրդովէ առանձնութիւնը: Հեռագրաձողեր եւ մղոնաքարեր կը թռչտին մեր արագութենէն, ախորժ խոնջէնք մը կ'իյնայ անդամներուն վրայ եւ մեզ կ'օրօրէ:

Ամէն տեղէ աւելի Ռուսիոյ եւ Հայաստանի մէջ կը սիրեմ կառքով ճամբորդութիւնը, որովհետեւ ամէն տեղէ աւելի հոն երկար կը տեւէ: Ձիերը կը քրտնին, թեթեւ կոչէ մը քշուած, հեռաւորութիւնը կը մօտենայ, ձեւերը դուրս կուգան եւ կրկին ստուերի կը դառնան։ Փարախ փարախի կը յաջորդէ, եւ աճապարողին աչքին համար միշտ միեւնոյն պատկերը: Ըսէ՛ ինծի, ո՛վ դու ընդարձակածաւալ, ո՛վ դու սուրբդ Ռուսիա, ըսէ՛ ուրեմն, ինչո՞ւ քու անծայրածիր տափարակներդ միշտ սիրտս կը գրաւեն, քու տափարակ դաշտադետիններդ, որոնց վրայ արեւը հմայքով կը հանգչի, եւ սակայն չի

*կարողանար մելամաղձութեան եւ վիշտի շունչը ճեղքել: Ըսէ՛ ինծի, մինչեւ ո՞ւր տակաւին կ'ուզես ընդլայնուիլ եւ տարածուիլ: Կամ արդէն իսկ գտա՞ծ ես սահմաններդ: Ընդհանուր մարմինին վրայ քու անդամներդ պիտի զօրանա՞ն արդեօք հսկայական ուժով մը, կամ պիտի չորնա՞ն ու իյնա՞ն: Ի՞նչ կ'ուզես դուն, եւ ի՞նչ պիտի ըլլաս·*

*Եւ ահա կառքը կը ծռի գիւղի մը փողոցին մէջ: Կէս օր է: Աջ ու ձախ, ճակատնին դէպ ի առաջ, կը կենան մաքուր ճերմակ տնակներ, որոնցմէ մէն ճիշդ այս պահուն կը լուացուի նոր ի նորոյ օրիորդի մը կողմէ, ուրիշի մը առջեւ կը նստին գեղացիներ, նաեւ ծեր մայրիկ մը, որ ի զուր կը փորձէ գարնանային արեւուն մէջ ինքզինքը տաքցնել: Գիւղը, Կարսի վեհապետուհի Վլատիքարի պանծալի անունով, գաղթավայր մըն է ռուս աղանդաւորներու, որոնք Մօլօքան կամ կաթնակեր կը կոչուին, որովհետեւ պահոց օրերը կաթ կ'ուտեն: Կեցնել տուի կառքը եւ տուն մը մտայ, դիպուածաւ աղօթարանը: Մաքուր այս վայրին պատերուն վրայ կը կրթնին մի միայն փայտէ նստարաններ եւ փայտէ աթոռակներ. կը պակսին դաս, խորան եւ սուրբի պատկերներ: Կորովի սպասաւոր մը, բարձր կօշիկներով, գեղացիներու նման մազերը չորս կողմէն կտրած, եւ կարմիր շապիկը գօտիին տակէն մինչեւ սրունքները, բարի գալուստ կը մաղթէ ինծի խորին խոնարհութեամբ, հրամցնելով կաթ փայտէ սկաւառակի մէջ:*

*Մօլօքանները շատ տարածուած են ամբողջ հարաւային Կովկասի մէջ, եւ Պետական Եկեղեցիին կողմէ գաղթող Իսլամներուն տեղը դրկուեցան: Արդէն 1904ին Հայաստանի մէջէն իմ այն ատենուան ճամբորդութեանս միջոցին շատ գիւղերու մէջ հանդիպած էի անոնց եւ սիրով կանգ առած էի անոնց մէջ հանգչելու համար, պարզ, անկեղծ եւ աշխատասէր, իրենք իրենց մէջ հոգածու են դաստիարակութեան, բարոյականի եւ բարի համբաւի: Նուազ բազմաթիւ Տուխօպորներուն*



Հերկող գեղացիներ

(Հոգեմարտ) նման, որոնց հետնըմանութեան շատ կէտեր ունին, Մոլոքանները իրենց կրօնական գաղափարին իբրեւ միակ աղբիւր ունին Ս. Գիրքը, զոր իրենք իրենց մէջ նահապետական կերպով, առանց քահանայի եւ եկեղեցիի, կը կարդան եւ կը բացատրեն, տղաքը չեն մկրտեր, եւ ամուսնութիւնները առանց եկեղեցական արարողութեան հայրերուն կամ անոնց ներկայացուցիչներուն կողմէ իբրեւ օրինաւոր կը կատարուին: Երեւանի մէջ, Կէօքչա լճին մօտ, ժամանակաւ գտայ Մոլոքաններու գիւղ մը Թէրփէնի, Համբերութիւն, անունով, եւ իրաւցնէ Համբերութիւնը, ռուսեւարեւելեան իմաստով, իրենց փրկութիւնը եղած է, եւ դարերով տոկալ տուած է իրենց ամէն հալածանքներու եւ նեղութիւններու, աընթերակից մօտաւորութեամբ իրենց ցաւագին եւ ողորմելի գոյութիւնը կ'անցընեն ուրախութեամբ եւ համբերութեամբ յոյս դնելով իրենց Աստուծոյն վրայ:

Աղանդաւորութիւնը Ռուսական Եկեղեցիին ինքնայատուկ երեւոյթ մըն է: Աղանդաւորները (Ռասքօլնիքի) ծագում առին Ալեքսի Միխայլօվիչ Զարին ժամանակ, ԺԷ. դարուն կիսուն, Նիքօն Պատրիարքին ձեռքով Եկեղեցիին ընդհանուր յեղաշրջումին առթիւ, երբ այդ բարձրաստիճան եկեղեցականին կատարած փոփոխու-

թիւններէն դժգոհելով. հին հաւատքին բազմաթիւ հետեւողները (Շթարովերցու), ի սկզբան տիրող ներողամտութենէն օգտուելով. Ռուսական Եկեղեցիէն անջատուեցան, եւ առանձին ընկերակցութիւններ, աղանդներ կազմեցին: Այսպէս աղանդաւորութեան ծագումին եւ տարածումին մէջ — եւ իմ կարծիքով ասոր մէջ կը կայանայ նաեւ անոր քաղաքական խիստ շահեկան կարեւորութիւնը ներկային համար — քարացած անցեալը, Հին Ռուսութիւնը՝ մէն մի նորութեան եւ ամէն արտաքին ազդեցութեան դէմ ընդվզումով՝ ոյժ առած են, եւ Մեծն Պետրոսէն սկսեալ միշտ աւելի բուռն եւ թշնամական կերպով նոր Պետութեան եւ Եկեղեցիին հանդէպ վարուած են աղանդները, որոնցմէ մէկ քանին իրաւցնէ բարոյապէս խոտելի հաւատալիքները կը հանդուրժեն.— այս երեւոյթը պատճառ մըն է յաճախակի ճնշումներու եւ վրդովումներու:

Պէկլի Ահմէտ հայկական մեծ գիւղին եւ առաջին թղթատարական կայարանին ետեւը, ուր ինչպէս նաեւ յաջորդին մէջ ձիերն ու կառապանները փոխուեցան, միշտ Կարս Չային հետեւող խճուղին կը սկսի կամաց կամաց բարձրանալ: Քանի մը գիւղեր Յոյն, Ռուս, Հայ, Քիւրտ—կը գտնուին ճամբուն վրայ կամ կողմնակի զառիթափերու վրայ: Յետոյ հովիտը կը նեղնայ, կը դժուարանայ, կ'ամայանայ: Հսկայ արծիւ մը իմ վերեւ լայն շրջանակներ կը գծէ գլխու պտոյտ պատճառող բարձրութեան մէջ: Մերկ ապառաժներ կ'ամբարտակեն, եւ անոնց վրայ կ'երեւան, արդէն Սարը Գամըշի մօտ, կարծես ամչկոտ, եւ բնութեան մէկ հրաշքին նման, նախ ցանցառ եւ հետզհետէ պսակի մը թանձրութեամբ խտացած մութ եղեւիններ՝ ցարասիներու հետ խառնուած, երկար ատենէ ի վեր կրկին առաջին ծառերը, եւ միակ ծառերը Կարսի ամբողջ շրջանակին մէջ, ինչպէս ըսուեցաւ ինծի: Սաստիկ կ'այրի արեւը արշաւասոյր գնացքիս վրայ եւ անմիջապէս ճամբուն վրայ դարող ձիւնին վրայ: Արդէն ետեւ մնացին շա-



Մուրացկան մը որ ձիւն կ'ուտէ

տոնց բերդական կազմութիւնները, ճակատամարտի դաշտերը եւ աւերակները. բայց սրտապնդուած եմ եւ հանգիստ եմ, կարծես երիտասարդութեանս մէջ, ուր անհոգ սիրտը կը յուզուի յաճախ անմիտ եւ սակայն միշտ քաղցըր ըղձանքներով եւ յոյսերով:

Պէկլի Ահմէտէն սկսեալ կառապանս է Խարքովէն գաղթող փոքր Ռուս մը, Իվան: Բուն տիպարն է Նէմչիքի (պաշտօնական կառապանի), ինչպէս իր իսկ ինքնայատուկ դրօշմով, զոր Կօկօլ, Թուրկէնեւ եւ ուրիշներ սքանչելի կերպով պատկերացուցած են, կը գտնուի ամէնուրեք ընդարձակ Ռուսիոյ մէջ: Անընդհատ իր ձիերուն հետ կը խօսի, որոնք հիմա այլ եւս երեք հատ են, եւ հազիւ ժամանակ կը գտնէ հարցումներուս պատասխանելու: Ձիերուն միջինը կ'անուանէ «Երշիկագործ» (Քօլպասնիք, ինչ որ յաճախ ռուս ժողովուրդին մէջ ալ գերմանացիին իբրեւ տիտղոս կու տան), մնացեալ երկուքը, որոնք միշտ քառասմբակ կ'երթան, կ'անուանէ «Արքունի խորհրդական» եւ «Պետական խորհուրդի անդամ»: Այս տիտղոսները ո'ւրկէց կ'առնէր, չեմ գիտեր, թերեւս անոնց նշանակութիւնն ալ չէր գիտեր. բայց

տիտղոսի ընտրութիւնը դիպուածաւ բարեդէպ էր, որովհետեւ «Պետական խորհրդականը», այսինքն Ազնուաշուք մը, արդէն իսկ կը տատանէր, եւ դժուարաւ կը շարժէր տկար սրունքները: «Այնպէս չէ՞, Պետական Խորհրդակա՛ն, այսօր գործերնիս աղէկ կ՚երթայ կոր: Այո՛, ասիկա կոսքօտին մըն է, սուր նայէ՛: Իսկ դուն, ծերուկ երշիկագործ, դուն ալ կրնաս լաւ քալել: Ուտել կ՚ուզես դուն, սակայն չես աշխատիր, Բօ՛բ:»

Արդէն Մոլօքաններուն երկար Սելիպ գիւղին մէջէն արտորնօք անցանք, ինչպէս նաեւ նկարչագեղ Ջաղացքի մը առջեւ Կարս Ջային խորունկ մէկ հեղեղին վրայէն, եւ ահա յանկարծ կառքը կեցաւ: Իվան դէպ ի հեռուն ցոյց կուտայ մեռելական թափոր մը որ մեզի կուգայ, հաւատացեալ բարեպաշտ Ռուսի մը համար միշտ գէշ նախանշան: Առջեւէն միակերպ երգող Բօբ մը, ետեւէն չորս գեղացիներ, բոկոտն, յոգնած քալուածքով, փայտէ դագաղ մը ուսերնուն վրայ, յետոյ ուրիշ երկու-երեք հոգի եւ լալկան կին մը: Մտախոհ լրջութեամբ Իվան վար առաւ իր պաշտօնական գդակը, խաչակնքեց — սուրբ Ռուսիոյ մէջ բազմադիմի պատճառներու համապատասխան գործունէութիւն մը այս խաչակնքելը — խաչի նշան մըն ալ ըրաւ ծոծրակին վրայ, թքաւ, մեռելին կողմը նայելով ըսաւ. Չար սատանան տանի զինքը, եւ ձիերուն դառնալով. Ծ՛ն, յիմարնե՛ր. եւ կ՚երթային առաջ: Երկար ատեն դեռ լսեցի քահանային ողբերգը. «Տէ՛ր Աստուած, կ՚աղօթե՛նք: Տէ՛ր Աստուած, ողորմէ՛ մեզի:» Յանկարծ կրկին կեցաւ կառքը եւ մէկ անգամէն կողմնակի ծռեցաւ. աջ կողմի առջեւի անիւը ինկած էր: Յանցանքը ննջեցեալին էր: Իվան նստած տեղէն զգուշութեամբ ելաւ, անգամ մըն ալ գդակը հանեց, եւ խաչակնքեց մեռելական թափորին նայելով. «Գէ՛շ, պարո՛ն, շա՛տ գէշ»: Մտահոգութեամբ աչքովս դիտեցի վնասուածը, եւ իրաւցնէ ո՛չ թէ միայն անիւը տեղէն ելած էր, այլ նաեւ բան մըն ալ կորսուած էր: Ամենայն հանդարտութեամբ Իվան

գործը քննեց, իր շարժական խանութին մէջ երկար ատեն կտրիկ մը փայտ փնտռեց, անիւը տեղը դրաւ վերջապէս: Յետոյ ծածրակին վրայ կրկին խաչակնքեց, ըսելով. «Օրհնեա՛լ է Աստուած, լա՛ւ», չեմ գիտեր ի՛նչ պատճառաւ «Պետական խորհրդական»ին կողերուն մէջ մը փակցուց խարազանը, վճռականօրէն անգամ մըն ալ թքաւ դէպ ի մեռելին կողմը. «գրո՛ղը տանի» ըսելով ցատկեց նստարանին վրայ, եւ կառքը թռցուց որչափ կրնար: Բայց այնուհետեւ Իվան քիթը կախած, նեղսրտած էր, այլեւս չէր խօսեր: — Արդարեւ մեռելի մը գուժաբեր հանդիպումը բնականաբար նախապաշարում մըն է, սակայն դէպքը ինծի ալ խիստ տարօրինակ երեւցաւ:

Իրիկուան ժամը հինգին, 60 քիլոմէթրէ աւելի երթալէ վերջ, անցանք Կարս Չային մէկ լաւ կամուրջէն, եւ ծռեցանք անտառոտ բարձունքներու միջեւ խոռոչի մը մէջ գոգաւորուած Սարըղամըշ, ուր պարզուկ բնակարան մը գտայ:

Սարըղամըշ բաւական մեծկակ տեղ մըն է, թէեւ իրապէս միակ փողոցէ մը կը բաղկանայ, ուր կը վխտան գինետուններ, ամէն տեսակ վաճառատուններ եւ զինուորներ. ընդարձակ զօրանոցները կը գտնուին դէպ ի հիւսիս եղեւիններու թաւուտի մը ծայրը վերօք: Երբեմն հետեւակազօրքի կիսաբաժին մը կար արդէն, յետոյ ուրիշներ ալ աւելցեր են, ա՛յնպէս որ հիմա զօրաբաժին մը միացած է: Սարըղամըշ Կարսէն Էրզրում դէպի Սօղանլը Տաղի ոտքը յառաջացած ճամբուն վրայ եւ ասով



Իմ կառքս

իսկ շատ կարեւոր զօրակեդրոն մը կը կազմէ: Իմ այցելութեանս միջոցին երկաթուղիին վերջին կայարանը տակաւին Կարսն էր. բայց քիչ առաջ յիշատակուած լաւ խճուղիին հակառակ երկաթուղիի զինուորական վաշտ մը կ՚աշխատէր գիծը երկնցնելու դէպ ի Սարըղամըշ, եւ որպէս զի աւելի շուտ լմննայ, այս գործողութիւնը Կարսէն եւ Սարըղամըշէն միանգամայն կը կատարուի: Ուստի այս գիծը պիտի աւարտի. եւ ասով ո՛չ միայն Սարըղամըշի զինուորական կարեւորութիւնը պիտի աւելնայ, այլ նաեւ Ռուսիա Կարսի ամրութիւններէն եւ զինուորական պաշտպանութենէն զատ այս հաղորդակցութեան միջոցով իրական գերազանցութիւն մը ձեռք պիտի բերէ Թուրքիոյ վրայ, որ ամբողջ հիւսիսային եւ արեւելեան Փոքր Ասիոյ մէջ միակ գիծ մը անգամ չունի, բաց ի թերակատար հաղորդակցութեան ճամբաներէ:

Երկրորդ օրը կ՚ուզէի ռուսական սահմանին Քարաուրկան վայրին վրայէն դէպ ի թրքական Հայաստան յառաջանալ: Բայց տարօրինա՛կ բան, թէեւ սահմանագլուխը հազիւ 40 քիլոմէթր միայն հեռի է, ո՛չ ոք ճշգրիտ բան մը գիտէր թէ միւս կողմին վիճակը ի՛նչպէս է, նոյն իսկ քանի մը տարիներէ ի վեր Սարըղամըշ պահակ կեցող զինուորական շրջանակին պետը, որուն մօտ զիս յանձնարարած էր Կարսի կառավարիչը: Հետեւաբար դէշ աղէկ կը մնար ինծի Քարաուրկան հասնիլ, եւ անկէց անդին ընելիքս հոն որոշել:

Ուստի յաջորդ առտուն չորս ձիերով եւ ձիաւոր առաջնորդով մը ճամբայ ելայ, դարձեալ խիստ գեղեցիկ օդով: Քիչ ատենէն Սարըղամըշ ետեւս մնաց եւ միշտ լաւ ճամբուն վրայէն կը սուրայինք, եւ լայն, եղեւնուտ հովիտ մը մէջէն 3000 մէթր բարձրութեամբ Սօղանլը Տաղը դէմերնիս: Խորակապոյտ կը կամարանար երկինքը արեւաճաճանչ ձիւնադաշտերուն վրայ, ձմեռնական հազուագիւտ դաշտանկարով մը: 1828ին Բասքէվիչ Կարսի ռմբակոծութենէն վերջ հոս յառաջացաւ

*դէպ ի Էրզրում՝ եւ գրեթէ մինչեւ Տրապզոնի դրան առջեւ, հոս 1877ին մերթ առաջ եւ մերթ ետեւ կը շարժէին ռուսական եւ թրքական զօրագունդերը: Այսօր մինչեւ սահմանագլուխը զինուորական գործողութիւնները ո եւ է դժուարութեան պիտի չհանդիպին. բայց այն ատեն ճամբան ա՛յնքան գէշ էր որ յաճախ թընդանօթները եւ ամբողջ զինուորական փոխադրութեանց բեռները օրերով կ՛արգիլուէին ու կը մնային:*

*Մէկուկէս ժամէն վերջ հասայ ձիւներուն մէջէն կիրճին բարձունքը (2300 մէթր), եւ առանց կենալու մտանք երկարատեւ օձապտոյտ ճամբուն մէջ եւ յորդաջուր առուակի մը երկայնքէն Թրքական սահմանին վրայ: Արդէն ծառերը անհետ եղած էին եւ կրկին ամէն ինչ ամայի էր ու լերկ: Ճիշդ մեր առջեւ (դէպ ի հարաւ արեւմուտք) կը տարածուէր դէպ ի Կասպից ծով*



Տուն մը Սելիպի մէջ



Ռուսական Թղթատունի կայան

թափող Արասին (Արաքս) ընդարձակ հովիտը, Քսենոփոնի ժամանակաւ գոված Բասենի բնագաւառը: Կը սահմանաւորուի այն հարաւային լեռնաշղթային հոյակապ բարձունքներէն, որ կը բաժնէ հնութեան ամէնէն նշանաւոր գետերէն երկուքին, Արաքսի եւ Եփրատի, աղբերակունքը: Աջէն (դէպ ի հիւսիս) բարձրաբերձ կը կարկառի Շախար Տաղ. իր զառիթափերուն կողքին իրարու վրայ ինկած կը կառչին քարակոյտեր, եւ դժուարաւ միայն կը նշմարուին զոյգ մը յունաբնակ եւ թրքաբնակ գիւղեր:

Կէսօրին ատենները ձիս քշեցի ըստ երեւոյթին նորահաստատ գաղթականութեան մը մաքուր տնակներով եւ լայն գիւղին մէջ, Քարաուրկանն էր: Մէկ վայրկենի մէջ վերջ գտած էր կիրճի անցքին այլապէս ա՛յնքան դժուարին գործը: Փոխանակ իմ կասկածելիօրէն մեծածաւալ ծրարներս քննելու, մաքսի պաշտօնեան գաւաթ մը թէյ հրամցուց ինծի, եւ առանց կենալու նեղ խոտաւէտ հովիտէ մը ճամբաս շարունակեցի դէպ ի մօտակայ թրքական սահմանի գիւղը, Քէօտէք:

Սահմանը հոս ա՛յնպէս մը յարդարուած է որ Սօղանլը Տաղը եւ անկէց դուրս ելքը բոլորովին Ռուսերուն սեփականութիւն եղած է, պարագայ մը, որ ա՛լ աւելի կը զօրացնէ արդէն առանց այլ եւ այլի Թուրքերուն վրայ իրենց դիրքին գերազանցութիւնը:



Սօղանլը Տաղ

Ինչպէս Ռուս կայսերական, նոյնպէս Օսմանեան կայսերական կառավարութեան մեր արտաքին գործոց նախարարին միջոցաւ լուր տրուած էր ճամբորդութեանս ընթացքին եւ նպատակին վրայ, որպէսզի կարելի եղածին չափ օժանդակուի ինծի անոր գործադրութեանը համար։ Ուստի թէեւ Թուրք իշխանութեանց համակիր վերաբերմունքին կը սպասէի, բայց նախազգուշութեան համար Թիֆլիզէն գրած էի Էրզրումի կուսակալին թէ Կարսէն ուղղակի իր վիլայէթը պիտի մտնեմ։ Քարաուրկանի մէջ աշխարհը կարծես միջնորմներով եւ տախտակներով գամուած բաժնուած է մնացեալ մասէն. հոս ալ բան մը գիտցող չկար դուրսի ճամբաներուն կացութեան մասին, մանաւանդ տարւոյն ներկայ եղանակին։ Ուղղակի հաղորդակցութիւն գրեթէ գոյութիւն չունի, եւ նոյն իսկ հեռագրական հաղորդակցութիւնը ուղղակի չերթար, այլ անըմբռնելի կերպով հարիւր մղոնի անուղղակի ճամբայ մը կը կտրէ Կարսի, Պաթումի եւ Տրապզոնի վրայէն։ Այնքան մեծ անակնկալ մը ունեցայ երբ Քէօտէքի մօտենալուս պէս ինծի քաջածանօթ, քաջաճայն Թրքական փողերը հնչեցին եւ սահմանագլխի պահակները հանդիսաւոր շարքով զինուորական բարեւ տուին։

Հրամատար հազարապետը քանի մը քայլ առաւ դէպ ի իմ կողմը, եւ Թրքական սովորութեան համեմատ թեւս մտնելով առաջնորդեց ինծի, առանց ոտքս քարի մը դպցնելու, պահականոցը, ուր ամէն ինչ շքեղօրէն յարդարուած էր եւ արդէն պատրաստ էր թեթեւ սեղան մը: Իմ զարմացկոտ հարցումիս վրայ թէ ինչպէս կրնար իմ գալուստս իմացած ըլլալ, հազարապետը պատասխանեց ինծի թէ վալիէն խիստ հրաման եկած էր իրեն ուշադիր ըլլալ եւ պտհակ դնել: Այս պատճառաւ արդէն երկար ատենէ ի վեր գիշեր ցերեկ մարդ կը սպասցնէր, որ լուր տուին իրեն ժամ մը առաջ թէ օտարազգի Փաշան Քարարուրկան հասած էր: Իրաւցնէ մարդ ասկէց աւելին չի կրնար փափաքիլ:

Հիմա կը մնար մեր ճամբան շարունակել դէպ առաջ: Ոմանք կ՚ըսէին թէ կառք պէտք է նստիլ, ուրիշներ կ՚ըսէին թէ ատիկա անկարելի է. բայց հեծնելու ձի չէր գտնուեր, եւ նոյն իսկ բեռան ձի: Հին Թրքական պազարին մէջ երկար բանակցութիւններէ ետքը, վերջապէս Հայ մը պատրաստակամութիւն յայտնեց արտասովոր բարձր գնով մը, քառասունըհինգ րուպլիով, մինչեւ Էրզրում քառաձի կառք մը տրամադրել. սա՛ անմիջապէս ընդունուած պայմանով թէ հազարապետը եւս իր սեփական բեռան ձին, ուժով ճերմակ մը, մինչեւ Քէօբրիւ քէօյ մէկտեղ ղրկէ, որովհետեւ մինչեւ հոն ճամբան շատ գէշ է եղեր, ինչ որ ճիշդ ելաւ վերջը:

Քէօտէք յորդաջուր վտակի մը վրայ խորը կը գտնուի: Այդ վտակը, խիստ յորդած ատեն մաքսատունէն եւ պահականոցէն գիւղ տանող կամուրջը քշած տարած էր, դէպք մը, որուն բնաւ մեծ կարեւորութիւն տալու չէ, քանի որ մարդերն ու անասունները ալ պարզապէս վարժուեր են ջուրին մէջէն անցնելու, ո՛րքան ատեն որ հարկ ըլլար: Բայց իմ անձս նկատի առնելով զոյգ մը երկայն, կասկածելիօրէն երերուն գերաններ



Թուրք մը ճամբու վրայ

դրեր էին, որոնց վրայէն ես երկու չուաններու մէջտեղ, եւ միշտ հազարապետն ալ ձեռքէս բռնած զգուշութեան համար, անցայ միւս կողմը: Այս առթիւ թեւ թեւ մտնելը իրօք քիչ շատ իր արդարացումը ունէր:

Այսպէս ո՛չ ճամբայ կար, ո՛չ գիծ, այլ սեւ քարուտ հող, որուն վրայէն կ'երթայինք սառուար բարձունքի բաւական ցից զառիվերէն, դահաւանդներով լեցուն: Բնականաբար ասանկ գնացքի մը ընելիք չկար, սա՛ ըսեմ միայն որ հակառակ չորս ընտիր ձիերուն ամէնքս ալ, ընկերացող զինուորներն ու ժանտարմները եւս, պարտաւորուած էինք կառքը հրել եւ անոր կրթնիլ որպէս զի առաջ երթայ եւ վար չսահի: Ի՛նչ մ՜ծ տարբերութիւն ռուսական եւ թրքական կողմերուն վրայ կառքի ճամբաներուն միջեւ: Օդն ալ նուազ նպաստաւոր էր. ծանր ամպերէն կը տեղար սառուցիկ անձրեւ, եւ անոնց ծակերէն կը խայթէր արեւը: Զոյգ մը եզներու լուծք, որոնք խիստ մեծ դժուարութեամբ ելլելով իջնելով Քէօտէք կ'երթային, Մօլլա մը եւ իր էշը, թուրք ընտանիք մը խեղճ ողորմելի տան վերաբերեալ առարկաներով, — ասոնցմէ դուրս ո՛չ մէկ շարժում, ո՛չինչ շնչաւոր, ամէն բան կարծես մեռած: Եւ միշտ զառիվեր է գնացքը. այլ եւս անճանաչելի ճամբան խորունկ եւ ճախճախուտ կ'ըլլայ, ձիերը մինչեւ ծունկերնին ցեխին մէջ կը մխրճուին: Գէշ կապուած բեռը հազարապետին յատուկ ձիուն վրայէն վար կը թափի ցեխերուն մէջ: Կառքն ալ մտահոգութիւն կը պատ-

ճամբ կ'ընէ, կը ճանչէ, կը հանդայ — կասկածելի նշաններ, որոնք սպառնաններով եւ ազդեցութեամբ արդէն բաւական ծանօթ են ինծի Արեւելքի մէջ ասկէց առաջ ճամբորդութիւններուս ատեն: Ասանկ ողորմելի կառքեր չեն կրնար մինչեւ վերջը դիմանալ ո՛չ կենդանի էակի մը եւ ոչ իսկ կտոր մը չոր փայտի:

Կէս օրէ վերջ ժամը չորսին ատենները, երկու ծանրակիր ժամերէ վերջ, դէպ առաջ աջակողմէն կ'երեւի Զօրում գիւղակը: Արդէն իսկ կը սկսիմ խորհիլ թէ արդեօք խոհեմութիւն չէ՞ հոն մնալ եւ գիշերը անցընել, բայց ահա — երկինքը կը բացուի եւ երկրամասը աւելի ազատ եւ տափարակ կ'ըլլայ: Ուստի կը շարունակենք, եւ դէպ ի հարաւ Սէվինի սարահարթին մօտ, ուր Մուխթար փաշա 1877 Յունիս 25ին ամրացեալ դիրքի մէջ Ռուսերուն յարձակումը յաղթողաբար ետ մղեց, քարուտ դաշտագետինի մը վրայ, եւ յետոյ խորափիտ կաւէ ճամբու մը վրայէն կը հասնինք ջրաղող հովտի մը մէջ հաստատուած խեղճուկ հայկական գիւղ մը, Սանցաք՝ Քանի՛ քանի անգամ տխուր ըոպէներ ունեցանք փրփրայոյզ յորդաջուր գետակին մէջէն եւ երկար ատեն ճախճախուտ մարգերուն մէջէն անցած ատեն, որոնց ցեխերուն մէջ կը հանգչին էշերու կրկին կարաւաններ, եւ սակայն առաջօք մխիթարութիւն մը, որովհետեւ գոնէ դարձեալ կենդանի արարածներ կան:

Արդէն կը մթննար, երբ ես, միշտ ճահիճին եւ ջուրերուն մէջէն, իրիկուան ժամը եօթնին հասայ կէս մը գետնափոր Թրքական եւ քրդական Ազապ փոքր գիւղը:

Իբրեւ հանգիստի վայր բան մը հոգացուած չէր եւ ոչինչ նախապատրաստուած, սակայն տակաւին 20 քիլոմէթր հեռի Քէօբրիւ Քէօյ ճամբորդութիւնն ալ անկարելի. հոն հարկ էր գիշերել: Երկարատեւ բանակցութիւններէ վերջ պատսպարան գտայ առնական կոռովի եւ գեղեցկութեան սքանչելի տիպար եղող Թուրքի մը հիւղակին մէջ, որ բաւական բարձր եւ միւս բնա-



Սահմանագլուխի Թուրք պահակներ Բէօտէք

կուլթիւններէն հեռի տեղ մը հաստատուած էր: Բայց մօտէն դիտուելով ասիկանուազ հրապուրիչ կ՚ըլլար. նեղ, առանց պատուհանի, օդամուտ ծակ մը, դէպի Պաղտատ ճամբորդութեանս ատեն ժամանակին հանդիպած պանդոկիս նման: Ճամբու անկողինս շալեցի, պտուկը կրակին վրայ գործի սկսաւ սովորական հաւը եփելու համար, ո՛րքան որ կարելի կ՚ընէին ասիկա հաւուն հաւանաբար հասուն տարիքը եւ թարգմանիս կասկածելի արուեստը: Մինչեւ հաւուն պատրաստութեան ատեն ես ալ, գաւազանով ու վեցհարուածեանով զինուած եւ երկու զինուորներու ընկերակցութեամբ, պտոյտի մը ելայ գիւղին մէջ, թէեւ մարդիկս կը զգուշացնէին զիս եւ մինչեւ իսկ տանտէրս թախանձագին խոհեմութեան կը յորդորէր զիս:

Երկինքը մարը մտնող արեւուն կարմիր դեղին երեւոյթէն հրաշալիօրէն լուսաւորուած, հիմա բոլորովին բացուած էր: Կրակոտ կարմիրը արեւմուտքին կողմէ ինք իրեն մէջ սուզուած էր, իրիկուան ստուերները մեղմօրէն կը քաշուէին հեռուէն դէպի մօտը, բնութիւնը տօն կը բռնէր: Նեղ աղտոտ փողոցիկներուն մէջ սակայն ոգեւորուած կեանք կը տիրապետէր. կովեր, ոչխարներ, այծեր ցնցոտազգեաց եւ գէշ երեւոյթով մարդիկներէ դէպի ներս կը քշուէին: Բարձրահասակ, նրբաւարտ կիներ քարէ փարչերով ջուր կը կրէին դէպի

հիւղակները, որոնց մէջէն մուխի բարակ թելեր կը բարձրանային. հետաքրքիր կայծկլտուն աչքեր կը նետէին ինծի անծածկոյթ կամ սեւ քօղին տակէն, բայց իրարմէ կը բաժնուէին մօտենալուս պէս: Եւ ահա ամէն կողմերէ, գետնին եւ քարերու ծակերէն դուրս, ինչպէս նաեւ հիւրամերժ բնակարաններուն ներսերէն, կատաղաբար վրաս թափեցան խածան Քուրդի շուներ, ա՛յնպէս որ շատ մեծ դժուարութեամբ յաջողեցայ պաշտպանել զիս իրենց աւելի մօտ շփումէն:

Քուրդերուն վրայ արդէն ուրիշ տեղ յաճախակի խօսած եմ (Տե՛ս Գահիրէ-Պաղտատ-Կ.Պոլիս գործս): Կըրնայ ըլլալ որ անոնք, ինչպէս գիտունները կ՚ուզեն, Մեդացիներէն (Մար) սերած ըլլան: Ամէն պարագայի մէջ յանդուգն, հպարտ, կռուասէր ցեղ մըն են, որ Քսենոփոնի ժամանակներէն ի վեր (Քարտուկները, տե՛ս այս հատորին մէջ վերջերը) իր անընտել վարքը եւ աւելի կամ նուազ իր անկախութիւնը պահած է Յոյներուն, Հռոմայեցիներուն, Պարթեւներուն, Պարսիկներուն եւ Թուրքերուն ներքեւ: Խոժոր հուժկու մարդիկ են, իրենց հայրենիքին պէս բիրտ, որ իրենց նկարագիրը շինած է, եւ զոր իրենք ամէն բանէ վեր կը սիրեն. եթէ նոյն իսկ անբերրի եւ քարուտ ըլլայ,— այրերը՝ մեծ մասամբ սուր, կտրուկ երեսներով, արծուեռունգն, սեւ աչքերով եւ ծակ այտերով. արծաթազարդ պճնուած եւ մեծ մասով, թէեւ ոչ միշտ եւ ոչ ամէնուրեք, քօղարկուած կիները իրենց երիտասարդութեան մէջ յաճախ հիանալի գեղեցկութեամբ: Ըլլան հաստատաբնակ կամ թափառաշրջիկ,— խնամութիւնը, արենակցութիւնը, ցեղակցութիւնը իրենց վարչութեան հիմը կը կազմէ, վաղեմի սովորութիւնը օրէնք է. հիւրին իրաւունքը նուիրական եւ արեան վրէժխնդրութիւնը իր ոյժը բնաւ չի կորսընցըներ մինչեւ երրորդ եւ չորրորդ սերունդին մէջ: Ասիկա անշուշտ արհամարհելի բան է եւ զօրաւոր կազմ ունեցող պետութեան մը գաղափարին հետ անհաշտ, այլ սակայն կը շարունակէ ըլլալ տեսակ մը իրաւացի

զգացում եւ իրաւունքի գիտակցութեան ա՛յն երկիրներուն մէջ, ուր դարերէ ի վեր ոչինչ կ'արժէ անձի եւ ինչքի ապահովութիւնը եւ ապօրինութիւնն է միակ օրէնքը: Անոնց մէջէն հարուստները, մասնաւորապէս ցեղապետները կը սիրեն նկարչագեղ եւ գունագեղ հագուիլ եւ կարելի եղածին չափ շատ զէնք կրել, եւ խնդիրը ա՛յն չէ թէ ատոնք քանի մը օգտակարութիւն ունի՞ն եւ կամ առա՞ջ կ'երթան սանձարձակ թէ միշտ ետ, այլ կը բաւէ որ շէնքերնին շնորհքնին տեղն է եւ փառաւոր կերպարանք մը ցոյց կուտան: Խելացութիւն չէ Քուրդին հետ կապուիլ, եւ անոր հետ մերձաւոր ծանօթութիւն մը արդարեւ հաճելի վախճաններու չի տանիր, մանաւանդ երբ, ինչպէս ներքին մասերուն մէջ ճամբորդութիւններու ատեն յաճախ կը պատահի, մարդ իր վրայ մեծկակ գումարներ ունենայ եւ անզգուշութիւնը ունենայ տեսցնելու զանոնք, որովհետեւ Քուրդերը դժնեայ են բարքով. եւ դաշոյնին համար հարկ չէ վստահիլ անոնց.—բայց ես անոնց մասին լաւ փորձառութիւններ ունեցած եմ անապատին մէջ, վրանի տակ, խրճիթի մէջ եւ ճամբաներու վրայ եւ մանաւանդ անապատական գիշերները, զոր անցուցի իրենց մէջտեղ, Արեւելքի կարաւա-



Հազարապետի բեռան ձին Բէօտէքի մէջ

նական կեանքին վրայ ամենէնագեղեցիկ յիշատակներուս կարգը կը դասեմ։

Երբ այն խրխլուան նիհար ճաշէն վերջ — հաւը իր նախամայրերուն կարգը անցած էր եւ ուտուելիք բան չէր — դեռ անօթի, ասով ալ սակայն առանց մարսողական նեղութեան, փռուեցայ ճամբու անկողինիս վրայ, մուխէն սեւցած տանիքին ի վար պառկած տեղիս ճիշդ քովէն ջուրի ծանր կաթիլներ կ'իյնային կաւոտ գետնին



Եզներու կարաւան Քէօտէքի մէջ

վրայ, որ չէր կշտանար Դանայեան կարասի պէս, քիչ ետքը մուկերը սկսան իրենց գիշերային ճիւաղութիւնները առաջ քշել, վնվնկալ եւ սրնգել, եւ պարտաւորուեցայ հարցնել ինքնիրենս։ Ի՞նչ գործ ունիս որ տասը տարիէ ի վեր ամէն տարի ասանկ աշխարհի մէջ ինքզինքդ կը քաշքշես։ Միշտ աւելի եւ միշտ աւելի անհանգստաւէտ այս անմարդաբնակ երկրամասերը եւ



Խրճիթ Ագապի մէջ

մենաւոր արահետները, ուր խելք ունեցող մարդը իրազատկամքովը ո՛չ կը բնակի եւ ոչ կըշրջագայի, այցելութեան ի՞նչ հրապոյր կու-տան քեզի։

Ինչո՞ւ դուն այսպէս կ'ընես, եւ ա՛ս ալ այնպիսի տարիքի մը մէջ, ուր երիտասարդութիւնը ետ կը քաշուի, եւ մարմինը չի յօժարիր մեծ զրկումներու եւ ճիգերու։ Ինչո՞ւ։ Այո՛, եթէ գիտնայի ասիկա։ Չկրցայ քննել հասկնալ, նոյն իսկ հոգիիս ամէնէն ներքին անկիւնին մէջ թէ տարիքոտ մարդը ե՞րբ կ'անջատուի աշխարհէն, ե՞րբ իրեն համար առանձնութիւն կը հայթայթէ, եւ իր սրբութիւն սրբոցը հաղորդակցութեան մէջ կ'ըլլայ անձին հետ առանձին։ Կը հնչէր իմ մէջս պատուիրանը. Պարտաւո՛ր ես։ Եւ հետեւեցայ պատուիրանին, պարտաւորութե-



Քուրտ ցեղապետ մը

ցայ հետեւիլ, նոյն իսկ եթէ գիտցած ըլլայի առով դէպ ի կորուստ գլորիլ: Ուստի աշխարհը տեսայ, եւ սիրով կ'ուզեմ տեսածս ալ նկարագրել յօգուտ եւ ի շինութիւն ընթերցողին, որքան թոյլ տայ ինծի իմ ոյժս: Սակայն գործը դժուարին է ամէն կերպով, որովհետեւ իմ տեսակէս պատմիչ մը պէտք է ամէն բանի վրայ խօսի եւ ախորժ ընդարմացում մը պատճառէ: Ուստի պատմած նոր բաներուն հաճելի խօսքի ընթացք մը պէտք է տայ, եւ պէտք է որ սովրեցնէ ալ, բայց, քա՛ւ լիցի, ո՛չ շատ բան: Եթէ ո՛չ՝ մարդ անոր գիրքը մէկ կողմ կը դնէ կամ բնաւ ձեռքը չառներ: Եւ ասիկա ցաւ պիտի պատճառէր ինծի եւ թերեւս պիտի վնասէր:

Ճամբորդութեան փոքրագոյն մասը ետեւս կը մնար, բայց առջեւս մեծագոյնը, գեղեցկագոյնը. ո՞ր տեղուանքը քալեց Քսենոփոն: Մարդիկ կան, որոնց հետ շատ լաւ կ'ապրուի, որոնք ամէն բանի կը մասնակցին, կը յարին եւ լաւ ալ կը խօսին, սակայն իրենց ամբողջ արարքին խորը տեսակ մը նպատակ կայ, որ դուրսէն չերեւիր, իրենց մէջ անընդհատ աշխատող մտածում մը, կրնամ ըսել՝ սեւեռուն գաղափար մը: Այս մարդոց կը վերաբերէի ես ալ: Կարսէն ճամբայ ելլելէս ի վեր տեսայ, լսեցի եւ խօսեցայ, ինչպէս կ'ընէի առաջները. սակայն մէ՛կ բանի վրայ միայն կրնայի մտածել. Ցոյները Հայկական լեռնադաշտէն ի՞նչպէս Տրապզոն հասան. եւ ծովը ո՞ւր տեսան: Այս մտածումը վայրկեան մը իսկ չլքեց զիս. անոր պատճառաւ յօժարակամ համբերեցի անօթութեան, ծարաւի, փուշերու, քարերու, մութ ծակերու, վերէն վար կաթկթող ջուրերու, վնվնկացող մուկերու: Զբաղեցուց զիս գիշեր ցերեկ: Երազիս մէջ զինեալ գունդերով կ'անցնէի լեռնէ լեռ, հովիտէ հովիտ, կը զարնուէի վայրագ թուխ, մօրուսաւոր մարդոց, ձիւներուն մէջ ճամբաս կը կորսնցնէի — եւ կ'արթննայի: Արեւու ցանցառ թել մը կը սահէր պառկած տեղիս վրայ եւ օրը կը բռնկցնէր:



Քրդուհի

Ցօգնութենէս քունս տարած էր, ինչպէս բնականաբար իմ մարդոցս ալ. չէի կրնար ասոր համար պարսաւել զիրենք: Բայց անհամբերելու էր հիմա, որովհետեւ «արդէն ուշ էր եւ ճամբան երկար տակաւին»: Կարճ միջոցի մէջ ամէն ինչ պատրաստուեցաւ ճամբու համար: Դժբախտաբար թէյ չկար, հիւրընկալս փայտէ ամանս չունէր, թող որ չէի ուզեր սպասել անիքան, մինչեւ որ չոր քակորով եւ թաց տաշեղով ջուրը եռացուէր: Ուստի կաթիլ մը օղին բերուեցաւ մէջտեղ, ամէն կերպով առաւօտեան ընտիր պարգեւ մը, հոգիի մխիթարութիւն մը տարիքոտ մարդոց համար:

Այսօր Մայիսի առաջին օրն էր: Երբ բնակարանէն դուրս ելայ, բարեպաշտօրէն ձեռքերս իրարու կցեցի. Իմ շուրջս փայլի եւ լոյսի օր մը. տէ՛ր Աստուած, գեղեցիկ էր: Երէկ իրիկուընէ բոլորովին տարբեր, ուր լոյս կը պակսէր, եւ սաստիկ յոգնած զգայարանները իրենց պաշտօնը չէին կատարեր: Վեհ եւ պերճ կը կենայ արդէն արեւը երկինքին միգասպատ, ճերմակ կապոյտ միջոցին մէջ, ճառագայթում եւ յաղթական ծագած բարձրացած է, ինչպէս «ճամբան սրարշաւ առնելու պատրաստ դիւցազուն մը»: Գիւղէն մերթ ընդ մերթ առանձին ձայներ կը հնչեն, շուները կը հաջեն, կը մայեն ոչխարները, ախոռներէն դուրս հանուած կենդանիներուն վիզի զանգակները իրարու հետ զարնուելով կը ղօղանջեն, եւ խրճիթներուն վերեւ կը գանգուրուի թեթեւ ծուխ մը ուժով կծու օդին մէջ:

Առջեւս — դէպ արեւմուտք — եւ աջ ու ձախ կը ցցուին մերթ աւելի մօտ, մերթ աւելի հեռու բարձր լեռնաշղթաներ, գլուխնին սուր եւ ձիւնով ճերմկցած։ Անոնց միջեւ կը տարածուի Արասի ընդարձակ հովիտը բազմամասն գնացքին շողշողուն արծաթեայ երիզովը, խորունկ տեղերը լուսաշուրթն, արեւայեղձ մշուշ մը կը դարի։ Մարմանդներու վրայ կը մարգրտանայ սառը, մէն մի ցօղուն ցնծագին կը կմկդնի ձիգ, դէպ ի արեւը խանդակաթ։ Արդարեւ հոյակապ է արարչութիւնը ո՛ւր որ մարդ կը շօշափէ զայն, եւ երանի՜ ա՛յն մարդուն որուն շնորհուած է բաց աչքով եւ զօրաւոր զգածմունքով անոր հրաշալիքը դիտել եւ օրը օրին վիշտերէն դուրս վերանա՛լ անոր։—Ճամբայ ելլելէ առաջ յաջողեցայ, բայց շնորհիւ միայն պատկառելի երեւոյթիս, երկար համոզումներէ վերջ եւ առատ «պախշիշ»ի օգնութեամբ քօտաքիս առջեւ բերել սիրուն Քրդուհի մը, քօղազերծ, եւ բնականաբար իր ամուսինին ներկայութեամբ եւ հաւանութեամբը։ Իրաւ որ աւելի գեղեցիկներ եւ աւելի մատաղատիներ կան, բայց մասնաւոր հոգ տարած էին զանոնք ինծի ցոյց չտալու համար։

Ճամբան, գրեթէ երէկի նոյնօրինակ հանգամանքներով, կ'երթար մերթ զառիվեր. մերթ զառիվայր. ամէնէն գէշն էին բազմաթիւ խոտորկտուր ջուրի հոսանքները, որոնց մէջէն անցնելու ատեն մարդ պարտաւոր է աճպարարի արուեստ ի գործ դնել, շաչող, ճռնչող կառքին մէջ ինքզինքը եւ բեռները տեղաւորելու համար։ Դժուարագնաց ժամէ մը վերջ իջանք Արասէն վար, եւ հիմա անոր երկայնքէն կ'երթայինք իր ձախ (հիւսիսային) ափունքին վրայ, մերթ ամայի քարուտներու եւ մերթ ճահիճի ու ջուրի մէջէն։ Խեղճ, կիսավեր ջրահեղձ գիւղ մը, մանրաքայլ տրոփող իշուկ մը, որուն գլուխն ու ոտքերը միայն կը տեսնուէին բեռան տակ. զոյգ մը աղաւնի եւ ջրային թռչուններ,— ուրիշ ոչինչ։ Մարդ մելամաղձոտ կ'ըլլար, եթէ արեւն ալ չըլլար — եւ լոյսը։

*Վերջապէս, երեք ժամուան գնացքէ մը վերջ հասանք Քէօբրիւ Քէօյ, ուր երէկ իրիկուընէ իսկ պէտք էր որ գիշերէի: Գայմագամը դիմաւորեց զիս, ողջունեց Վալիին անունով, ցաւ յայտնեց որ երէկ չեկայ, եւ ըսաւ թէ մինչեւ ուշ ատեն ինծի սպասուած էր, թէ Հայու մը տունը տեղ եւ ճաշ պատրաստուած էր ինծի համար: Բաւական մեծ, եւ Քիւրդերէ ու Հայերէ բնակուած գիւղը սիրուն տպաւորութիւն մը կ'ընէ: Հաստատուած է Քալէ Ջայի բերանը հարաւէն եկող Արասի մէջ, եւ որուն վրայէն դէպ ի Պայազիտ կը տանի հինէն մնացած, բաւական լաւ պահուած քարէ կամուրջ մը (ասկէց առած է Քէօբրիւ Քէօյ անունը) եւ այսպէս դէպ ի Էրզրում Կարսի եւ Պայազիտի ճամբաներուն զինուորականօրէն կարեւոր կէտն է: Մուխթար փաշա դիտաւորութիւն ունեցաւ Ալաճա Տաղի կորսուած ճակատամարտէն վերջ առաջ խուժող Ռուսերուն դէմ ընդդիմութիւն ընել, բայց պարտաւորուեցաւ թողուլ իր ծրագիրը եւ Էրզրում քաշուիլ, որովհետեւ իր զինուորները քալելու կարողութիւն իսկ չունէին: Սակայն ինծի համար այս գիւղը աւելի մեծ նշանակութիւն ունէր, որովհետեւ իմ տեսութեամբ ես հոս ոտք կոխած էի Քսենոփոնի ճամբուն վրայ եւ անոր կը հետեւէի հիմա դէպ ի արեւմուտք, կարծիք մը որ հետզհետէ զօրացաւ մէջերս, եւ վերջապէս համոզում եղաւ: Ժամը տասնը-*



**Թաթար ուղտապան**

մէկի տունները կարճ հանգիստէ մը վերջ ճամբայ ելայ Քէօբրիւ Քէօյէն. եւ Արասի կամուրջը ձախ թողլով յառաջացայ Քալէ Ջայի ձախ (հիւսիսային) ափունքին վրայ: Բեռան ձին Քէօտէք ետ ղրկուեցաւ բարեսիրտ հազարապետին, որովհետեւ այնուհետեւ ճամբանիս աւելի լաւ պէտք էր ըլլար: Եւ ալ եղաւ: Երկրամասը աւելի տափարակ եւ աւելի պըտղաբեր դարձաւ, ամէնուրեք դաշտերուն վրայ կ'աշխատէին խումբ խումբ գիւղացիներ, եւ արեւը շլացիկ կը դարէր աջէն ձախէն մերձակայ ձիւնաշղթաներուն վրայ: Ճամբան եւս հաղորդակցութեան աւելի ընդունակ էր. բազմաթիւ ուղտի եւ իշու կարաւաններ կ'ելլէին մեր դէմ կամ կը հանգչէին ճամբան, կը հանդիպէի հետիոտն եւ ձիաւոր շրջիկներու, ի մէջ այլոց պարսիկ Տէրվիշ մը ճշմարիտ Քրիստոսի մը գլուխով: Նեղացուցիչ եղան միմիայն երեք խորունկ ջրալից գետակներ, Քալէ Ջայի հիւսիսային հատանքները, որոնց վրայէն դէշ աղէկ անցանք:

Երկու ժամ վերջ հասանք անուանեալ խճուղիին վրայ, որ երկար տարիներէ ի վեր Էրզրումէն սկսեր է եղեր շինուիլ, բայց մինչեւ հոս բերուեր կեցեր է դրամական նեղութեան պատճառաւ, (*) եւ կէս ժամ վերջն ալ Հասանքալէ: Արդէն հեռուէն կ'որոշուի հովիտին սարահարթին մէջ դուրս ցցուած հրաբղխային ցից քամակէն տարածուող պարիսպի մը հարաւային ծայրը կլոր ու անկիւնաւոր աշտարակներով: Ասոնք Սարակինոսներուն հին ամրութեանց աւերակներն են, կամ աւելի հաւանաբար Ճենովացիներուն, որոնք իրենց ծաղկեալ ժամանակին մէջ, դէպ ի Հնդկաստան ծովային ճամբուն գիւտէն առաջ, Տրապիզոնէն Պարսկաստան տանող բոլոր հաղորդակցական ճամբաներուն տիրեցին եւ ներսերը բազմաթիւ յենակէտներ շինեցին: Այսպիսի մի-

(*) Ոչ թէ, ինչպէս Լինչի քարտէսին վրայ ցոյց տրուած է, մինչեւ Թրքական սահմանագլուխը:

Ջոյներով այդ իշխող առեւտրականները ի հարկէ ամէն կողմ ամենահին ժամանակներէ ի վեր մինչեւ այսօր Էրզրումի, Բասենի եւ Ալաշկերտի դաշտագետիններուն վրայէն դէպ ի արեւմտեան արեւելք տանող կարաւանական ճամբան ձեռք անցուցին, որուն Քսենէփոն ալ հետեւեցաւ: Թրքական սովորութեան եւ հիւրասիրութեան համեմատ մուտքիս առջեւ դարձեալ կը սպասէր Գայմագամը տեղական երեւելիի մը ընկերակցութեամբ, ամէնքն ալ ձիաւոր, եւ հանդիսաւորապէս առաջնորդեց զիս դէպ ի Գօնաք առատ եւ ինծի համար շատ հեշտ նախաճաշի մը, ուր, սակայն մի միայն ինծի համար, ֆրանսական գօնեաք ալ չէր պակսեր: Արդարեւ ամէնուրեք Էրզրումի Վալիին սրտագին հոգածութիւն ցոյց տուած էր ինծի համար:

Հասանքալէ, հին Բասենին երբեմնի կարեւոր կեդրոնը, այսօր իրաւ է որ ինկած մեծութիւն մը ունի, բայց դարձեալ յոյժ նշանակալից քաղաք մըն է ո՛չ միայն նեղ, սալայատ փողոցներուն, անսովոր կերպով ոգեւորուած սպազարին եւ հին Թրքական ճարտարապետութեամբ շատ մը տուներուն պատճառաւ, այլ նաեւ երկաթախառն եւ ծծմբաւոր ջերմուկներուն պատճառաւ, որոնք կազի զօրաւոր արտաբերումով հանդերձ, փոքր ցայտքերով կը բղխին եւ կը գործածուին իբրեւ կ'ազդուրիչ բաղնիքներ։ Պազարին մէջ նստած էր սիրուն, այլ բոլորովին ցնցոտիներ հագած կին մը։ Քովը հաստատուեցայ եւ թարգմանին նշան ըրի, պատկերը քաշել: Բայց շուտով չպատրաստուեցաւ. դրացուհիս սոսկաց ըլլալիքին վրայ, ծածկուեցաւ եւ միւս կողմը դարձաւ, այնպէս որ իմ պատկերս միայն մնաց քօղաքին մէջ (ինչպէս կ'երեւայ:)

Վերին աստիճանով հիանալի է տեսարանը բերդին դժուարելանելի բարձունքէն դէպ ի Բասենի ընդարձակ դաշտավայրը եւ զայն պարուրող ձիւնապատ լեռնաշղթաները: Ասոնք հեռուն դէպ ի արեւելք քաշուած են, ուրկէց եկայ եւ ուր կը տարածուի Արասի հովիտը,



Պարսիկ տէրվիշ

*եւ Էրզրումի ուղղութեամբ դէպի արեւմուտք յայտնապէս թամբաձեւութիւն մը ցոյց կուտան, որոշակի եւ ուղիղ տեսութեամբս Տէվէ Պօյունի կիրճը: Հիւսիսէն 3000 մէթր բարձր են: Նեղկուկ ճամբայ մը միայն կը տանի հոն ձմեռ ատեն անանցանելի կիրճի մը (2600 մէթր) վրայէն, Օլթի հովիտի մէջէն, ինչպէս Գայմագամը եւ ուրիշ բնակիչներ հաստատեցին ինծի: Երբ Հասանքալէի բարձունքին վրայ կեցած կը դիտէի, բոլորովին անհաւանական կ'երեւնար ինծի շատերուն ա'յն ենթադրութիւնը թէ Քսենոփոն, որ հարաւէն Խնուսի վրայ կը քալէր, եւ որ ծով հասնիլ կ'ուզէր, դէպ ի հիւսիս այս նեղ ճամբան բռնած ըլլայ ձմրան խորը եւ հետն ալ բանակով մը: Աւելի հաւանական կ'երեւար ինծի որ Քսենոփոն, արեւելքի հովիտը գալով, պարզապէս իր ընթացքը շարունակեց դէպ ի արեւմուտք Էրզրումի դաշտը, ուր ինքն ալ կ'ուզէր արդէն, այսինքն դէպ ի ծով:*

*Հիմակ այլ եւս լաւ խճուղին Հասանքալէի մէջ կ'անցնի Քալէ Ջային վրայէն, եւ տեղական պայմաններուն պատճառաւ դիւրաւ պաշտպանուելիք այս վայրը վերջին պատերազմին մէջ բաւական մեծ կարեւորութիւն շահեցաւ իբրեւ յենակէտ Թուրքերուն եւ Ռուսերուն: Այսօր Բասէնի ամբողջ դաշտը մինչեւ իր արեւմըտեան ծայրը, Տէվէ Պօյում, ռուսական արշաւանքի*

մը առջեւ բաց կը մնայ, եթէ մինչեւ իսկ ըստ բաւականին ամրացուած ալ ըլլայ: Հասանքալէի ձորամէջի ճամբաները կարելի է բռնել մի միայն ա՛յնպիսի զօրքերու կողմէ որոնց խարիսխը Էրզրումն է, հեռաւորութիւնը եւ երկիրը աչքի առջեւ բերելով (40 քիլոմէթր եւ Տէվէ Պօյունն ալ կռնակը), դժուարին միջոց մը, որովհետեւ Ռուսք Օլթիի ուղղութեամբ իրենց յառաջխաղաց ընթացքով կրնան դիւրաւ կողէն եւ կռնակէն ճնշել զանոնք եւ այսպէս դէպի հարաւ քշել:

Քալէ Ջայ ա՛յն միջոցին բաւական առատ ջուր ունէր, բայց միտքէս չէի անցըներ թէ այս ըստ երեւոյթին անվնաս գետը քանի մը շաբաթ վերջ ձիւնհալին եւ անսովոր տեղատարափներուն հետեւանքով յորդաջուր հոսանք մը պիտի դառնայ, եւ իր ափունքներէն դուրս խուժելով, Հասանքալէի մէկ մեծ մասը պիտի կրնայ աւերել եւ առնել տանիլ:

Արդէն հին ժամանակները իր արգասաւորութեամբ ծանօթ Բասենի լեռնադաշտին (1800 մէթր) ժողովուրդը ամենամեծ մասամբ կը բաղկանայ Քիւրտերէ եւ Թուրքերէ, երբեմնի բազմաթիւ Հայերը պատերազմներուն եւ զանգուածային ջարդերու հետեւանքով ռուսական սահմանը գաղթած եւ հիմա փոքրամասնութեամբ միայն գոյութիւն ունին հոս: 1878 Յուլիս 13ի Պերլինի Դաշնադրութեան մէկ յօդուածին մէջ Թուրքիա պարտաւորութիւն ստանձնած էր «Հայաբնակ գաւառներուն մէջ բարենորոգումներ ներմուծել», եւ լիազօրները իրենց երկիրները վերաբարձան այս արդիւնքը ձեռք բերելէ վերջ, իրենց եւ իրենց կատարած գործին վրայ գոհ եւ ուրախ: Այս «բարենորոգումներ»ուն գործադրութեան համար սակայն ո՛չ ոք հոգածու եղաւ, ո՛չ Թուրքիոյ մէջ ոչ այլուր, մինչեւ որ վերջապէս անցեալ դարուն իննսունական տարիներուն մէջտեղ ահռելի ջարդերը եկան, որոնցմով Բասենի դաշտին, ինչպէս նաեւ Փոքր Ասիոյ մօտակայ եւ կեդրոնական մա-

սերուն մէջ բնակող հազարաւոր Հայեր մորթուեցան, կամ իրենց ունեցածը չունեցածը յափշտակուեցաւ, քշուեցան իրենց տուներէն ու օջախէն : Ստոյգ է որ գըլխաւոր յանցանքը կը ծանրաբեռնուի Համիտական կառավարութեան վրայ, բայց այդ յանցանքին մէկ մասն ալ Դաշնադրութեան յօդուածին՝ «Հայաբնակ գաւառներուն մէջ» անիմաստ նշանակութեան վրայ, որովհետեւ այսպիսի յօդուած մը ամէն վերին հսկողութիւն դուրս կը ձգէր: Որովհետեւ իրաւ է թէ Հայերը կը բնակին գլխաւորաբար իրենց հայրենաւանդ երկիրը, բայց բազմաթիւ են նաեւ ուրիշ գաւառներու մէջ եւ ցրուած են ամբողջ Փոքր Ասիոյ ամէն կողմերը : Գործածուած բացատրութեան համեմատ («Հայաբնակ գաւառներուն հարկ կ'ըլլար Թուրքիոյ աւելի կամ նուազ ամբողջ Փոքր Ասիական տարածուածքը : Տարակոյս չկայ թէ ասիկա չէր քալեր, եւ չքալեց : Միւս կողմէ ո՞վ պիտի պարտաւորէր ի պահանջել հարկին այդ անուանեալ «բարեկարգութիւններուն գործադրութիւնը: Վերոյիշեալ դաշնադրութեան մէջ բնաւ խօսք եղած չէր ոեւէ ձեւով երաշխաւորութեան մը վրայ (Տես այս մասին



Հասանքալէ։ Հեղինակը պազարին մէջ

իմ խօսակցութիւնս Էջմիածնի կաթողիկոսին հետ «Հարաւէն եւ Արեւելքէն» գործիս մէջ եւ յայտարարութիւններս «Գահիրէ—Պաղտատ—Կ. Պոլիս» գործիս մէջ:)

Օրը արդէն շատ առաջացած էր, երբ յոգնեցուցիչ զննութիւններէ վերջ, եւ կրկին հանդիսաւոր առաջնորդութեամբ քաղաքէն մեկնեցայ: Ճամբան հիմա լաւ մէջ») հսկողութեան եւ խնամակալութեան տակ անել էր եւ յաջողութեամբ առաջ կ'երթայինք: Ամբողջ ժամէ մը վերջ անցանք մեծ եւ բարեկեցիկ Քուրուճուք գիւղէն, որուն ետեւը ճամբան սկսաւ կամաց կամաց բարձրանալ: Մինչ երկու կողմի լեռներուն մէջտեղ հովիտը երթալով կը նեղնայ, գրեթէ բոլորովին գոցուած կ'երեւի Տէվէ Պօյունի առջեւ, որ Արասի եւ Արեւմըտեան Եփրատի միջեւ ջուրերուն բաժանման կէտը կը կազմէ, ծայրատուած լերան մը կողքին վրայ շեղակի հաստատուած: Մօտը երթալէ վերջ միայն կը տեսնուի որ ճամբան երկար օղակներով օձապտոյտ կը դառնայ հիւսիսային եւ հարաւային նախաբարձունքներու միջեւ, գոգցես ընդարձակ ամփիթատրոնի մը մը ձեւով դէպ ի Տէվէ Պօյունի կիրճը, որ լերան պատին խորը մխրճուած է: Ասիկա 2000 մէթր բարձր է ծովէն, դաշտագետինէն գրեթէ 200 մէթր վեր, բարձրաբերձ ձիւնաշղթաներէ սեղմուած, որոնք կիրճին հարաւային կողմը կը ձեւացնեն շատ աւելի բարձր Բալանտէօք եւ Էյէրլի լեռները (3200-3000 մէթր բարձր):

Տէվէ Պօյունի ստորոտը ընդարձակ քարվանսէրայի մը մէջ բաւական երկար հանգիստ մը առի, գետիններուն ձեւերը ճշդիւ զննելու եւ դրոշմելու համար, եւ յետոյ սկսայ բուն իսկ վերելքը. որ տարաւ զիս կիրճին բարձունքը երեք քառորդ ժամէն ձիւնադաշտերու կանանչ մարգերու մէջէն: Ցուրտ ձիւնաբեր անձրեւ մը վրայ եկաւ եւ Բալանտէօք Տաղի սառած տափարակներէն փոթորկանման սուր քամի մը կը փչէր:

Կիրճը անկէց, արեւելքէն սկսեալ մինչեւ գրեթէ տասը քիլօմէթր հեռուն եղող Էրզրումին բանալին կը

ձեւացնէ: Այս պատճառաւ Մուխթար Փաշա իրեն մօտ տակաւին գտնուող տասնըութը հազար մարդոցմով եւ վաթսուն թնդանօթներով բռնեց զայն վերջին պատերազմին մէջ, երբ Թուրքերը Ալաճա Տաղի ճակատամարտէն վերջ Էրզրումի վրայ կը քաշուէին, զօրավար Հայմանի բանակին հետապնդումին առջեւ: Մուխթար փաշայի սպայակոյտին պետը Ֆէյզի փաշա, երկար ատենէ ի վեր Թրքական ծառայութեան մէջ գտնուող ծագումով Մաճառ մը, կանխաւ աճապարելով յաջողութեամբ դիրք մը գտած եւ զօրացուցած էր հոն: Առջեւէն տեսնուելով շատ զօրաւոր կ'երեւի, սակայն, ինչպէս զօրաւոր անուանուած դիրքերու համար յաճախ կը պատահի, իր կարեւորութիւնը կը կորսնցնէ ո՛րչափ դէպի ներս երթաս, եւ մանաւանդ երբ մէջը գտնուիս: Արդէն կը տեսնուի որ բարձունքներէն հրետանին շատ լաւ կրնայ գործել, բայց հետեւակազօրքը խորտ ու բորտ զառիթափերուն վրայ պաշտպանուելու սահմանափակ միջոց մը միայն ունի, եւ թէ դիրքին գլխաւոր տկարութիւնը կը կայանայ երկու կողմերէն կամարացած ցից անտառախիտ բարձունքներուն մէջ, որոնք կ'իշխեն մինչեւ Քուրուճուք ճամբաներուն վրայ: Եթէ բուն դիրքին մէջ քաշուիս — ինչ որ սխալ գործ է յառաջացած կայանները նկատի առնելով — շատ կ'ընդարձակուի եւ կտոր կտոր մասերու կը բաժնուի, եւ պաշտպանութեան համար ստուար ուժերու կը կարօտի, բարձունքներն ալ գրաւուած չըլլալով՝ յարձակողը կրնայ մօտենալ եւ հետզհետէ տարածուիլ թաքստոցներու տակ, եւ իր հրետանիին համար ալ ընտիր դիրքեր կունենայ այդ բարձունքներուն վրայ, ինչ որ ամենէն գէշն է:

Զօրավար Հայման 1877 Նոյ. 2ին Քուրուճուքի առջեւ միացած էր Տէր Ղուկասովի զօրքերուն ստուար մասին հետ, եւ որոշեց առանց ժամանակ կորսնցնելու յարձակիլ Տէվէ Պօյունի Թրքական դիրքերուն վրայ.



Պազար Հասան Քալէի մէջ

օգտուելով իր յայտնի, մանաւանդ հրետանիի կողմէ իր կրկնապատիկ գերազանցութենէն:

Հիմա ճիշդ տեղն է տեղը առջեւս կը պարզուի յաջորդ Նոյ. 4ի կռուի դաշտը, որքան որ տրամադրութեանս տակ գտնուած ցանցառ նիւթերը թոյլ կուտային: Մուխթար Փաշա իր հրետանին տեղաւորեց Տէվէ Պօյունի վրայ, կամ թերեւս քիչ մը վերօք, եւ հետեւակազօրքը զառիթափին եւ նաեւ վերոյիշեալ բարձունքներուն վրայ, որոնց ամբողջական գրաւումին համար սակայն չէին կրնար իր ուժերը բաւել: Ռուսերը ցոյցեր ըրին ճակատին վրայ եւ բռնեցին, աջէն հետազօտիչ ստուար գունդ մը ղրկելով, հակառակորդին ձախ թեւը, պատելով զայն հիւսիսէն, որով գլխաւոր դիրքն ալ: Մուխթար փաշա անոնց դէմ արձակեց Տէվէ Պօյունի վրայ իր պահեստիները. բայց ասոնք թիւով ու կռուական ուժով խիստ տկար էին: Այսպէս Թուրքերը յամառ ընդդիմութենէ մը վերջ կրկին յաղթահարուեցան հազար մեռեալներու եւ վիրաւորներու, չորս հարիւր գերիներու, դիրքին մէջ հաստատուած ռազմամթերքներուն եւ իրենց հրետանիին ամենամեծ մասին կորուստով:

Եթէ Փաշան իր հետեւակազօրքը Տէվէ Պօյունի զառիթափին վրայ բերած դրած էր, եւ նախաբարձունքներն ալ կարելի եղածին չափ իր դիրքին շրջանակին մէջ առած էր. ասիկա, ինչպէս ըսինք, աննպաստ էր,

*եւ մանաւանդ պարտութեան մը պարագային անապաստ պիտի ըլլար. բայց ուրիշ հնարաւորութիւն չէր մնար իրենց, այլ երկու չարիքներէն փոքրագոյնը ընտրել, եւ այսպէս իմ տեսութեամբս կացութեան համապատասխան ռազմավարօրէն ուղիղ եղանակը այս էր: Ռուսերը նմանապէս պարտաւորուած էին, հակառակորդին միշտ զօրաւոր ճակատը նկատի առնելով, իրենց ծանրութեան կեդրոնը զետեղել մէկ թեւի, այսինքն գետիններու կազմութեան նայելով՝ աջ թեւին վրայ, քանի որ Բալանտէօքէն եւ Էյէրլի Տաղէն ցից լեռները բազմաձեւ գունդերու գործածութիւնը կը խափանէին: Ռուսերը, անշուշտ անգիտակցաբար. միեւնոյն կերպով վարուեցան, ինչպէս երբեմն Քսենոփոն, որ կ'ենթադրեմ սառուգիւ թէ հոս եկաւ, եւ թշնամիները բարձունքները քշեց պաշարելով անոնց մէկ թեւը, անտարակոյս անոնց ձախ թեւը:*

*Կիրճին բարձունքին միւս կողմը լեռ լերան վրայ կ'ամբարտակէ: Երկար ատեն կ'երթաս տեսակ մը փորուածքի մէջէն, եւ կը հասնիս, միշտ վեր ելլելով, երկրորդ եւ մեծամուր լեռնակողքի մը, որուն վրայէն անցք մը կայ. Տէվէ Պօյունի կիրճին չափ բարձր կամ աւելի բարձր: Ասիկա հիմա ամէն պարագայի մէջ ամրացուցուած պէտք է ըլլայ, թէեւ չկրցայ տեսնել, թերեւս լոյսի եւ օդի աննպաստ հանգամանքներուն պատճառաւ. բայց 1877-78ին ամրացուցուած չէր, այլ Էրզրումի արեւելեան ամրոցները կը գտնուէին վերոյիշեալ երկրորդ յետսակողմեան բարձունքին վրայ, ուր այսօր ալ տակաւին կը մնան, ամէն պարագայի մէջ մեծ մասամբ:*

*Նոյմ. 4ին Տէվէ Պօյունի կռուէն վերջ Թուրքերը փախան իրենց ամրոցներու գօտիին ներսերը եւ հետապնդող Ռուսերը գրաւեցին Տէվէ Պօյուն՝ կիրճը: Զօրավար Հայման իր յաղթութեան խանդավառութեան մէջ ուզեց Նոյմ. 9ին գիշերային յարձակում մը ձեռնարկել արեւելեան ամրոցներուն շարքին վրայ, եւ, ճիշդ նա-*

խորդ կռուներուն մէջ եղածին նման, ցոյցեր ըրաւ ճակատին առջեւ, իսկ բուն յարձակողական գունդերը հիւսիսէն ուղղեց աջակողմէն դարձնելով հովիտներուն մէջէն հոն հաստատուած երեք ամրոցներուն դէմ: Յարձակողական գունդերուն բոլոր պիտոյքները խնամով հոգացուած էին, ամէն հնարաւոր նախազգուշական միջոցները ձեռք առնուած—ի մէջ այլոց, գիշերային գնացքին ատեն զինուորները Թրքական ֆէս կը կրէին խաբելու համար—սակայն մութին մէջ եւ գետիններուն ճեղքուած, փոսցած մասերուն մէջ ռուս գունդերը մոլորեցան, եւ հազիւ միայն տիրեցին Էրզրումի ճիշդ արեւելեան կողմը գտնուած Ապտիւլ Ազիզ կամ Ազիզիէ փոքրիկ ամրոցին, ուր հինգ հարիւր գերի բռնեցին: Լոյսը ճեղքուելուն՝ տեսնուեցաւ որ այս ամրոցին վրայ բացարձակապէս կ'իշխէր աւելի բարձր հաստատուած եւ ամրացուցուած Մէճիտիէ ամրոցը, հետեւաբար Ազիզիէին դիրքը վտանգաւոր էր: Ռուսներուն ուրիշ բան չէր մնար եթէ ոչ կրկին պարպել զայն, գրաւուած քան թնդանօթները գամելէ վերջ, որպէս զի անգործածելի ըլլան:

Երբ Նոյմ. 12ի գիշերուան երկրորդ յարձակումն ալ ո եւ է յաջողութիւն չունեցաւ, զօրավար Հայման որոշեց հանգիստ կենալ եւ օժանդակ զօրքերու սպասել, մանաւանդ որ անսովոր խստութեամբ ձմեռը փոթորիկներով եւ ձիւնաբուքերով գրեթէ անկարելի կը դարձնէր ո եւ է նոր գործողութիւն: Ստոյգ է որ Կարսէն Էրզրումի վրայ ճամբայ հանուած էին նոր ռուսական ուժեր, եւ 1878 Յունիս 12ին Էրզրումի հաղորդակցութիւնը բոլորովին խզուած էր Տրապզոնի հետ: Սակայն շատ քիչ քանակութեամբ միայն կարելի էր պաշարման իրեղէններ փոխադրել դժուարուտ կիրճերուն մէջէն, եւ սառած ու խոր ձիւներով ծածկուած գետիններուն վրայ հաստատել զանոնք: Այսպէս մնաց մինչեւ 1878 Յունուար 31ի զինադադարը, որուն հետեւանքով իրա՛ւ է թէ Թուրքերը պարպեցին Էրզրումը, բայց յետադայ

*հաշտութեան հետեւանքով կրկին իրենց յանձնուեցաւ: Մուխթար փաշա Դեկտ.ի վերջերը արդէն Կ. Պոլիս կանչուած էր:*

*Եաեւի երկրորդ բարձունքին վրայ, որ ճամբուն երկու կողմէն—վերօք դէպ ի աջ Մէճիտիէ ամրոցը— ամրութիւններով պաշտպանուած է, հեծելազօրքի ջոկատ մը խնծի կը սպասէր, եւ զատ զատ կառքի մէջ Վիլայէթին առաջին թարգմանը իբրեւ ներկայացուցիչ ճէլալ Վալիին, Էրզրումի զինուորական հրամատարը եւ տեղական սովորութեան համաձայն հիւրամեծարս Նիւսրէթ պէյ, երեւելի Թուրք մը, որուն Գօնաքը պիտի իջեւանէի: Արագ արագ իջանք 250 մէթր դէպ ի վար երեք քառորդ ժամ տեւող, երեկոյեան ցուրտին, միշտ բարձունքներու միջեւ, որոնք քուլիսներու նման իրարու ետեւ կը փոխանցուէին մինչեւ ճամբուն վրայ:*

*Շքեղ Թափորս իրիկուան ժամը 7ին առեններբը —ես Վալիին առաջին կառքին մէջ նստած էի— մտաւ արեւելեան կամ Թէպրիզի դուռը: Նշանափողերը հնչեցին, արտաքին եւ ներքին դրան պահակները բարեւի կեցան, մէկ կարգի վրայ շարուած հեծելազօրքի ջոկատը դիրք փոխեց, եւ հրացանները զիստի վրայ գլուխը անցաւ, եւ սուր գնացքով ձիերը սկսան արշաւել անմշակ ընդարձակ դաշտերու եւ Թափուր հրապարակներու, նեղ փողոցներու եւ մարդաշատ պազարներու մէջէն, ապ շահար մարդոց, խրտչող շուներու, իշու եւ ուղտի կարաւաններու քովէն, թեթեւվերելք մըն*



Խրճիթներ ճամբուն վրայ

*ալ, եւ ահա ոստումով մը կեցանք շքեղ Գոնաքի մը առջեւ, որ ինծի յատկացուած բնակարանն էր: Անտարակոյս այս մասին մարզուած Ջոկատը մէկէն ի մէկ դիրք փոխեց եւ բարեւի կեցաւ, տանուտէրը թեւս մտնելով առաջնորդեց զիս իմ յարկաբաժինս, պարսկական շքեղ գորգերով եւ բազմոցներով կահաւորուած սրահ մը, ճաշասենեակ մը, ուր ընտիր կերակուր պատրաստուած էր արդէն Թրքական ճաշակով, եւ ննջարան մը դեղին մետաքսէ անկողինով. Էրզրումի մէջ էի:*



Քնացող Թուրք ճամբուն վրայ

**Հայելիի պէս փայլիլ ուզող ջուրը պէտք չէ մռնչէ:**

**Ծառին ոյժը արմատին մէջն է:**

(Թրքական առածներ)

## 7. Էրզրում



Էրզրումի մէջ ներկայութիւնս երեք օր միայն տեւեց, ըստ ինքեան կարճ ժամանակ մը եւ սակայն բաւարար, քանի որ առտուն կանուխէն մինչեւ իրիկունը ուշ ատեն ոտքի վրայ էի եւ իշխանութիւններուն կողմէ ամէն հնարաւոր դիւրութեանց կը հանդիպէի, ներկայութիւնս նպատակիս օգտակար եւ նաեւ կարելի եղածին չափ հաճելի ընծայելու համար: Այսպէս ամէնէն գեղեցիկ յիշատակներուս կը պատկանի այս պարագան: Կուսակալը, Ճէլալ, համակրելի մարդ մը,

իմ պատկառելի, կորովի դիմագիծերով եւ ամէն կերպով արդիական ուղղութեամբ, որ ժամանակին Պօնի մէջ առած է ուսումը եւ Գերմանականութեան մեծ յարգող մըն է, արտասովոր բարեացակամութեամբ ընդունեց զիս եւ ներկայութեանս ամբողջ միջոցին տրամադրութեանս տակ դրաւ Վիլայէթին առաջին թարգմանը եւ իր կառքը ուղեկիցներով միասին: Թուրքիոյ մէջ ամէնուրեք իմ գտած սքանչելի ընդունելութեանս համար միշտ երախտագէտ զգացումներ ունիմ, բայց երբեք եւ ո՛չ մէկտեղ ա՛յնքան շատ որքան աշխարհէն բաժնուած Էրզրումին մէջ, ուր ա՛յնպիսի ընդունելութիւն եւ մինչեւ ամենափոքր մանրամասնութիւններու յանգող հիւրասիրութիւն մը ցոյց տրուեցաւ ինծի որ գրեթէ դժուարութիւն կը կրէի ինքզինքս ծայրայեղութեան դէմ պաշտպանելու:

Թուրքերուն, ինչպէս նաեւ Հայերուն ընդհանուր դատողութեան համաձայն, Վալին ամէն բարի կամեցողութեամբ ոգեւորուած, անսովոր կերպով ընտիր պաշտօնատարներէն մէկն է. ասկէց առաջ ուսուցչական ասպարէզին մէջ, այդ պոեն հազիւ տասը ամիս տեւող պաշտօնավարութեան միջոցին յաջողած էր բոլոր գործերուն մէջ կարգ կանոն եւ անձի ու ինչքի ապահովութիւն առաջ բերել, ինչպէս նաեւ մանաւանդ խաղաղ պահել անհանդարտ Քիւրտերը եւ աշխատութեան յորդորել: Վալին քանիցս շատ գոհունակութեամբ խօսեցաւ ինծի իր վիլայէթին բնակիչներուն վրայ, թէ իր ջանքերը վստահութիւն եւ համերաշխութիւն ներշնչած են անոնց եւ մասնաւորապէս առջեւս շատ գովեց Քիւրտերը, իրա՛ւ, ըսաւ, անընտել, բիրտ եւ ամբարտաւան են, այլ նաեւ, երբ անոնց հետ ուղիղ վարուիս, աշխատասէր, քաջ եւ հուժկու մարդիկ են, եւ այսպիսիներուն պէտք ունէր ինքը, որովհետեւ շատ բարւոքումներ կային ընելիք կամ նոր ի նորոյ կարգադրելիք: Ամենէն առաջ սրտին մօտիկն էր ճամբաներու շինութիւնը, եւ անկէց զատ շաքարի մեծ գոր-

ծարանի մը հաստատութիւնը, որուն ի մօտոյ իրականացման համար յոյս յայտնեց, որպէս զի կարելի ըլլայ ընիկ շաքարը ներածել Էրզրումի, Վանի եւ Պիթլիսի նահանգները, ինչպէս նաեւ, Պարսկաստանի սահմանակից գաւառները, որոնք այսօր ֆրանսական շաքար կը ներածեն: Հողը շատ նպաստաւոր է եւ հակառակ աշխատութեան նախնական եղանակին եւ անբաւական աղբին, որ դժբախտաբար իբրեւ կրակ կը գործածեն եղեր, յարմարագոյն է այդ գործարանին հաստատութեան, քանի որ գործաւորութեան վարձքն ալ աժան է, եւ շաքարաբեր ճակնդեղին մշակութիւնն ալ արտաքոյ կարգի կը յաջողի: Ոչ շատ հեռուները ածուխի առատ հանքեր ալ կան եղեր, եւ հարկ է ստիպողական գործին վախճան տալ, մանաւանդ որ կրակի ուրիշ միջոցներ կը պակսին, եւ հեռուներէն ձիու բեռներով բերուած փայտը խիստ սուղի կը նստի բնակիչներուն համար: Երկար ժամանակէ ի վեր բոլոր վաճառականութիւնը Անգլիացիներուն եւ Ֆրանսացիներուն ձեռքն է, ասիկա ցաւալի է, ըսաւ, բայց առ այժմ բան մը կարելի չէ ընել, որովհետեւ Էրզրումի մէջ աւստրիական հիւպատոսութիւն մը հաստատելու համար Տրապիզոնի աւստրիական հիւպատոսին փորձը չէր կրցած իրականութիւն գտնել, հարկ եղած կորովով գործին մղում չտրուելուն պատճառաւ:

Բոլոր Թուրքերուն եւ Հայոց պէս, որոնց հետ խօսեցայ, Վալին մեծապէս վստահ կը թուի ապագային վրայ եւ կը պարծի դարեր տեւող անլուր ճնշումէն վերջ ձեռք բերուած ազատութեամբ: Թերեւս իր խանդավառութիւնը չափազանց լաւատեսութենէն է, բայց հիմէն առնելով՝ իրաւունք ունի, որովհետեւ իրօք անտանելի դարձած էին գերութիւնը եւ ա՛լ աւելի գաղտնի հսկողութիւնը՝ Ապտիւլ Համիտեան անիծապարտ դրութեան բոլոր անկիւններու մէջ հաստատած լրտեսութեան պատճառաւ: Ծիծաղելի անվստահութիւն մը կը խեղդէր ամէն շարժում: Այսպէս, Վիլայէթին կրթական

քննիչը պատմեց ինծի թէ առաջները եօթը տարի Պէյրութ կեցած է, եւ գիտական հետաքրքրութեամբ քանիցս թոյլտուութիւն խնդրած էր մօտակայ Պալպէքի աւերակները այցելել, բայց ամէն անգամ մերժուած էր իր խնդիրքը, եւ Թէզքերէն (ներսերը երթալու այն ատեն անհրաժեշտ անցագիրը) զլացուած: Վալին ըսաւ թէ մինչեւ հիմա գերիներէն աւելի վատթար էր իրենց վիճակը, որովհետեւ մարդ գտնէ իր շահուն համար հող կը տանի գերիներուն. դեռ հիմա միայն իրօք մարդու կարգ անցած են: Իրաւցնէ կ'ուզէին գործ տեսնել եւ յաջողցնել, եթէ իրենց ժամանակ տրուէր եւ ո՛չ թէ մէկ անգամէն ամէն բան պահանջուէր իրենցմէ, ինչ որ խելացի խօսք մը կը թուի ինծի: «Հայելիի պէս փայլիլ ուզող ջուրը պէտք չէ մռնչէ:»

Մարդ ինքզինքը սփոփուած կը գտնէ այսօրուան Թուրքիոյ մէջ, մանաւանդ երբ Ռուսիայէն կուգայ այս անցագրական եւ ոստիկանական դրութեան հին ծուղակը, հիմա հոս ո՛րքան ազատ է եւ անարգել, որուն նմանը չկայ աշխարհի ուրիշ ո եւ է երկրի մէջ:



Էրզրում: Դօնաքս

Վալիէն վերջ ինծի համար ամէնէն շահեկան անձնաւորութիւններ Էրզրումի մէջ կեցող եօթներորդ զօրաբաժնին փոխ հրամատարը Էմին փաշա: Վալիին նման սահուն կեր-



Էրզրում։ Մուրացկանուհիներ

պով գերմաններէն կը խօսէր, եւ հըպարտութեամբ պատմեց ինծի թէ 1890էն մինչեւ 1894 ծառայած էր հայրենիքին՝ Քարլսրուհէի մէջ Պատէնի Տրակոնեան առաջին զօրագունդին մէջ Թիւ 20, եւ հանգուցեալ Մեծ Դուքսին կողմէ ալ քանիցս ընդունուած։ Իմ հոն գտնուած ատենս հազարապետ էր եւ հրամատար հեծելազօրքի զօրաբաժնին չորրորդ բանակին, որուն սպայակոյտը Երզնկա կը մնայ։

Ցերեկները բոլորովին ազատ էի եւ մանրամասն կերպով կը գննէի քաղաքն ու միջնաբերդը. բայց կրկին եւ կրկին ինծի առաջարկուած եւ նոյն իսկ թախանձագին խնդրուած ամրոցներուն այցելութիւնը մերժեցի, իմ մասիս տարբեր կասկած չարթնցնելու եւ քաղաքական անպատեհութիւններ չպատճառելու համար։ Ամէն իրիկուն ժամը եօթնին վալիին, հրամատարին եւ հիւրամեծարիս մօտ տեղի կ՚ունենային հանդիսաւոր հացկերոյթներ համազգեստով եւ պաշտօնական ճառերով, եւ ինծի համար թանկարժէք կերպով ամէն նիւթերու վրայ կը խօսէինք բացէն եւ անվերապահ։ Բնականաբար տիկիններ կը պակսէին, բայց շամբանիան հեղեղի պէս կը հոսէր, որովհետեւ գինին (խամրը) եւ դինովութիւնը միայն արգիլուած են Գուրանին մէջ։

Էրզրում Հին Հայկական Կարինն է, որ արեւելեան հռոմէական Թէոդոս Բ. կայսեր օրով (408-450 Քրիստոսէ վերջ) սահմանագլխի կարեւոր բերդաքաղաքի մը վերածուեցաւ եւ ի պատիւ այդ կայսեր Թէոդոսիա յորջորջուեցաւ։ Ցուստինիանոսէն աւելի ամրացուելով,

երկար դարեր Բիւզանդական կայսրութեան ամէնէն կարեւոր պատուարը կազմեց Արեւելքի մէջ. քանիցս Պարսիկներուն եւ Արաբներուն ձեռքը ինկաւ. ԺԳ. դարուն Մոնկոլներէն յարձակում կրելով թալանի տրուեցաւ, յետոյ Սելճուգեանց իշխանութեան անցաւ եւ վերջ ի վերջոյ Թուրքերուն, որոնք Էրզրում անունը տուին անոր եւ մինչեւ այսօր կը պահեն, թէեւ Ռուսերը երկու անգամ գրաւեցին զայն (Բասքեւիչ 1829ին) եւ հաշտութեան բանակցութիւններու ատեն իբրեւ պատանդ (1878):

Քաղաքը իսկապէս չի գտնուիր համանուն լեռնադաշտին վրայ, ուրկէց մօտը արեւմտեան Եփրատ իր ծագումը կ'առնէ, այլ անոր դէպ ի լեռները բարձրացող հարաւարեւելեան անկիւնին մէջ: Սեւ ծովէն մինչեւ Պարսկաստան (հին անունով Ճենովակտն անցքը) ինչպէս նաեւ Անդրկովկասէն մինչեւ Փոքր Ասիոյ կեդրոնական երկրամասերը ճամբաներուն բաժանման կէտին վրայ իր նպաստաւոր դիրքը հինէն ի վեր հաղորդակցութեանց բանուկ երթեւեկ մը հայթայթած է իրեն. արդէն Միջին Դարու մէջ Էրզրում մեծ ու հարուստ էր: Սակայն դէպ ի Հնդկաստան՝ ծովային ճամբուն գիւտին հետեւանքով եւ վերջերս ալ Անդրկովկասեան գիծերուն շինութեան պատճառաւ վաճառականութեան մասնակի տեղափոխութիւնը, թրքական տիրապետութեան տակ ծանրածանր ճնշումները եւ ճակատագրական հարուածները, եւ վերջապէս, Բալանտէօքէն եւ Էյէրլի Տաղին հրաբղխային վտանգաւոր մօտաւորութեան եւ երկրաշարժներու ամբողջ շարքի մը հետեւանքով, որոնցմէ վերջինը եւ ամենէն սաստիկը 1859ին գրեթէ կործանեց ամբողջ քաղաքը, հետզհետէ ետ տարին զայն, ա՛յնպէս որ հիմա, բազմաթիւ պահակազօրքերը չհաշուելով, յիսուն հազարէն աւելի բնակիչ չունի, մեծ մասամբ Թուրք, եւ հազիւ հազ կը լեցնէ 1855ի եւ 1877ի վերջին երկու պատերազմներուն միջեւ շինուած պարիսպին քառորդ մասը: Ի մասնաւորի 1828-

29ի Թուրքեւռուս պատերազմէն վերջ հազարաւոր Հայեր Ռուսիա գաղթեցին, ուր սակայն ակամայ ընդունուեցան, եւ անցեալ դարու յիսունական տարիներուն ալ յաջորդեցին Հայկական սարսափելի ջարդերը ո՛չ թէ, ինչպէս արդարութիւնը պարտք կը դնէ ըսել, Իսլամ ժողովուրդին ինքնածին մէկ շարժումին պատճառաւ, այլ դուրսէն եկած լաւ կազմակերպուած սպաննող, թալանող Քուրդ հրոսակներուն միջոցաւ: Էրզրում այսօր ալ նմանապէս Թրքական Հայաստանին ամենակարեւոր բերդաքաղաքն է, եւ արդարեւ թէ՛ իր վաճառականութեան նկատմամբ — ամէն տարի մի միայն յիսուն հազար ուղտեր քաղաքէն կ'անցնին, հակառակ Պարսկաստանի հետ երկար ատենէ ի վեր տեւող վրդովումներուն, որոնք փոխադրութեանց արգելք կ'ըլլան Պարսկական ներքին շփոթութեանց պատճառաւ — եւ թէ՛ իր զինուորական կարեւորութեան տեսակէտով:

Բուն Էրզրում առատ ջուր ունի լեռներէն իջնող վտակներուն միջոցաւ, բայց իր շէնքերուն մութ քարերուն եւ ծառի գրեթէ բացարձակ չգոյութեան պատճառաւ տխուր, լերկ տպաւորութիւն մը կը ձգէ: Իր հրապոյրն ու գեղեցկութիւնը կը կայանայ իր շրջանակին հոյակապ շինութեանց եւ դէպ ի արեւմուտք քաշուած լեռնաշղթաներուն նկարչագեղ կազմուածքին մէջ: Գրեթէ 1900 մէթր բարձրութեան համապատասխան եղող օդը չոր եւ մաքուր է, կլիման առողջ, այլ խիստ, ցուրտ ձմեռը խիստ երկար եւ ամառը կարճ ու տաք:

Ժամանակի բոլոր փոթորիկներէն եւ տարբերու դղրդումներէն ամբողջ պահուած սակաւաթիւ շինուածքները եւ տեսնելու արժանի գլխաւոր վայրերը ամփոփ տեղ մը կը գտնուին իրարու մօտ. ասոնք են միջնաբերդը, Չիֆթ Մինարէ, Ուլու Ճամի մեծ մզկիթը եւ դամբարան մը:

Բիւզանդական ժամանակէն սերող միջնաբերդը, որուն դժուարաւ մագլցելի աշտարակէն փառաւոր տե-



Միջնաբերդին մուտքը

սարան մը կը պարզուի Էրզրումի բարձրադիր ձիւնալեռան եւ լայնատարր դաշտագետնին վրայ, քաղաքին ամենէնբարձր կէտին վրայ կը գտնուի, եւ ժամանակաւ Ենիչերիներուն կեդրոնն էր, եւ Էրզրումի բուն տէրը եղող անոնց պետին բնակավայրը։

Կառավարական փաշաները հոն ոեւէ մուտք չունէին, եւ անոնց կտրուած գլուխները միայն մերթ ընդ մերթ հոն կը տարուէին։ Այսօր ամրոցական կարեւորութիւն չունի, սակայն կը պարփակէ զօրանոցներ, սպայի բնակարաններ եւ ամէն տեսակ զինուորական գործարաններ, ուր կ՚աշխատին եռանդով: Հրամանատարին գործի սենեակին մէջ ինծի ցոյց տուին Էրզրումի եւ անոր ամրութիւններուն խնամով պատրաստուած մէկ քարտէսը, եւ բացատրութիւններ տուին այն ճամբուն վրայ, ուրկէց ժամանակաւ եկած էին Ռուսերը, գիշեր ատեն եւ յարձակում գործած էին Ազիզիէի եւ Մէճիտիէ ամրոցներուն դէմ: Այդ ճամբան հիմա անյարձակելի ամրութիւններով պաշտպանուած է:

Միջնաբերդին հարթավայրին վրայ նորահաւաքները մարզանք կը կատարէին, ճիշդ մեր մէջ եղածին պէս: Երբ երկար ատեն դիտելէ վերջ վարիչ սպային ըսի թէ իր մարդոց ընթացքը լաւ էր եւ յոյժ խոստ-

մնալից, իմ դատաստանս հաղորդեց իր մարդոց, որոնք ակներեւ ուրախութեամբ ընդունեցին զայն: «Ինչ որ ենք եւ կրնանք, պատասխանեց, կը պարտինք Գերմաններուն, ամէնէն առաջ անոնց սպաներուն. Թո՛ղ Ձեր Վսեմութիւնը ժամանակ տայ մեզի, ա՛լ աւելին եւ գերազանցը կ'ընենք:» Տեղւոյն վրայ իմ յայտնած շնորհակալութիւնս պարագային համեմատ պահանջ մը չէր, այլ կը համապատասխանէր իրական զգացումներուս, որովհետեւ մարդիկը հոս, ինչպէս քանիցս ուրիշ տեղ, իրենց գործը սիրողի եւ հիանալի տպաւորութիւն կը ձգէին: Թուրքիոյ մէջ միշտ գերմանասէր տրամադրութեան հանդիպած եմ, — կը հաւատամ որ Թուրքերը մեր լաւագոյն, եթէ ոչ միակ բարեկամներն են — բայց երբեք ա՛յն աստիճան ինչպէս այս ճամբորդութեանս միջոցին, եւ աւելորդ կը համարիմ հոս երկարել, ինչ որ արդէն Կ. Պոլիս հրատարակուող «Օսմանիշէր Լոյտ»ի թղթակցին առջեւ ըսի, որ Էրզրումի մէջ ինծի այցելեց, թէ Թուրքիոյ զինուորական յառաջդիմութիւնները իր ասիական երկրամասերուն մէջ ալ վերջին տարիներուն անուրանալի են:

Միջնաբերդին մէջ կը գտնուի, փայտէ վանդակափեղկով մը բաժնուած, պետական բանտը, որ այդ միջոցին քանի մը «րէաքսիոնէր»ներ կը պարունակէր: Թեթեւ ոտնակապեր եւ ձեռակապեր կը կրէին, բայց այլապէս իրենց բանտային կեանքին մէջ լաւ երեւոյթ ցոյց կուտային, որովհետեւ սուրճ կը խմէին եւ սիկար կը ծխէին իրենց օդաւէտ սենեակին մէջ, ուր կը գտնուէին անոնց մաքուր պահուած անկողիններն ալ: Երբ անոնցմէ մէկուն հարցնել տուի թէ ինչո՛ւ համար նորութեան չեն ուզեր համակերպիլ, որ արդէն հինէն հազար անգամ լաւ է, ուսերը թոթուեց եւ անկեղծօրէն պատասխանեց «Ապուշ էի»:

Էրզրումի մէջ տեսնելու ամէնէն արժանի շինուածքը Չիֆթ Մինարէն է, ԺԳ. դարէն կամ, ինչպէս ուրիշներ արձանագրութենէ մը կ'ենթադրեն, Ժ. դարէն մնա-

ցած հոյակապ շէնք մը ։ Ժամանակաւ մզկիթ եղած է Մէտրէսէով . հիմա ռազմամթերքի կեդրոն եղած է, ուր բնականաբար չի կրնար օտարական մը մուտք գտնել ։ Նեղ փողոցներու մէջ հաստատուած , Չիֆթ Մինարէ դուրսէն իսկ պատկառելի տպաւորութիւն մը կ'ընէ իր գեղազարդ դուռով , տպաւորութիւնը ա՛լ աւելի կը շեշտուի երբ մարդ ներս մտնէ եւ դիտէ Արաբական գեղարուեստի ճարտարապետական հրաշակերտ երեսները ։

Շատ գեղեցիկ են նաեւ «մեծ զօրանոց»ին բակին Մինարէն եւ Դամբարանը ։ Զօրանոցին մէջ ոգեւորուած կեանք մը կը տիրէ ։

Չիֆթ Մինարէէն քանի մը քայլ անդին կը հանիս Ուլու Ճամի մեծ եւ Ժ.Բ. դարուն կարծեցեալ շինուած մզկիթը, այսօր փլատակ մը միայն հաստաբեստ կամարակապներով, եւ յետոյ ընդարձակ երկ յարկանի պետական վարժարանը։ Դրան առջեւ ընդունեց զիս կրթական քննիչը տնօրէնին հետ եւ բանախօսութեանց սրահը առաջնորդեց որուն պատերէն կախուած են աշակերտներուն ձեռքով պատրաստուած Մէտինէի, Մէքքէի, Քապայէին, եւ—տարօրինակ կը թուի—Ժընէվի լճին վրայ Շիյեօնի դղեակին, Կիյեօմ Թէլի մատուռին եւ Գօմէր լճին իւղանկարները։ Այն միջոցին դպրոցին մէջ կային չորս հարիւր քսանի չափ աշակերտ, Թուրք, Հայ, Պարսիկ եւ Յոյն. եւ քսանըհինգ ուսուցիչ գործի վրայ էին։ Դպրոցին շէնքին ամէն կողմերը կատարած պտոյտս անսովոր զարմանք պատճառեց ինծի։ Կէս օրէ առաջ ժամը տասն էր, ամէն կողմ դաս կը տրուէր, թէեւ աշակերտներուն մէկ մեծ մասը բացակայ էր Հայոց զատկական տօնին պատճառաւ։ Ո՛ր դասարանը որ մտնէի, անմիջապէս ոտքի կ'ելլէին ճամբուն վրայ ֆէսաւոր պատանիներ եւ զինուորական բարեւ կուտային։ Կ'աւանդուէր թուաբանութիւն (հոս սպայ մը հիւանդ ուսուցիչին կը փոխանորդէր), իմաստասիրութիւն (Մօլլայի մը կողմէ), պատմութիւն, աշխարհագրութիւն, եւ ճիշդ Տարսոն-Մերսին-Ատանա երկրամասը, որ կաւիճով

գծուած էր սեւ տախտակին վրայ, կրօնք (Մօլլայի մը կողմէ), ինչպէս նաեւ Թուրքերէն լեզու եւ քերականութիւն. աջ ու ձախ պատանիներ ուղղագրութիւն կ'ընէին: Յետոյ առաջնորդուեցայ բնագիտական եւ քիմիական աշխատանոցը, Տնօրէնութեան սենեակը սովորական սուրճին եւ սիկարէթին համար, հիւանդարանը, սիրուն սենեակ մը զոյգ մը հիւանդներով, որոնք տենդ ունէին, շատ ընդարձակ արեւոտ ննջարանը քառասուն մահճակալներով նոյնքան գիշերօթիկներու համար, եւ վերջապէս փոքրիկ մզկիթը, ուր ուսուցիչներ եւ աշակերտներ կանոնաւորապէս կը հաւաքուին աղօթքին համար: Ուսուցիչները իրենց յատուկ հաւաքման սենեակը ունին, եւ իրենց յատուկ պարտէզը շատրուաններով եւ ճեմելիքներով. աշակերտներուն պարտէզէն անջատ։ Ամբողջութեան մասին արդարեւ անակնկալօրէն նպաստաւոր տպաւորութիւն մը ունեցայ, մանաւանդ երբ ասկէց առաջուանին հետ բաղդատութեան դրուի։

Ինչպէս արդէն յիշատակուեցաւ, Էրզրում խիստ աղքատ է ծառի կողմէ: Սակայն տեղ մը հող տարուած է պուրակ մը պուրակ մը տնկագործելու։ Իրա՛ւ է որ ծառերը նուրբ են եւ բոլորովին լերկ, սակայն ասիկա իսկ պարծանքի առարկայ մը դարձած է: «Ամառնային պարտէզ» անուանեալն է այս, հանրային զբօսարան մը: Մէկ ծայրը կը գտնուի Քէօշք մը, խեղճուկ յարդարուած, պատերուն վրայ զարհուրելիօրէն գէշ զոյգ մը պատկերները, եւ ուր ամրան իրիկունները հարուստներն վերը եւ վարը աղքատները իրենց թէյը կը խմեն:

Արեւելքի մէջ մարդիկ յաւակնութիւն չունին ընկերային զբօսանքներու մասին, որոնց էապէս հակառակ է Իսլամը, եւ իսկապէս տաղտկալի եւ անհրապոյր է կեանքը Թրքական քաղաքի մը մէջ, եւրոպական ըմբռնումի տեսակէտով: Օրը սանկ նանկ կ'անցնի, պտըտելով. եւ ասիկա առտուն խիստ կանուխէն սկսեալ, բաց երկինքին տակ, ինչպէս նաեւ արե-

ւէն պատսպարուած պազարներուն մէջ. բայց իրիկուն ըլլալուն մօտ, կը մեռնի ամէն երթեւեկ, պազարները կը գոցուին, եւ նեղ, ծուռումուռ, անյարդարօրէն հոս ու հոն երկարող փողոցներուն եւ փողոցիկներուն մէջ մեռելական լռութիւն կը տիրէ. լոյսի եւ արեւու երկիրներուն մէջ գիշերը խաղաղասէր մարդոց թշնամին է: Բայց հոս ու հոն յետամնաց շրջիկ մը, որ անշշուկ կը սահի կը սպրդի ողորմելի լապտերով մը, տակաւաթիւ եւ եղածն ալ մեծ մասամբ վանդակապատ պատուհաններուն տակէն մերթ ընդ մերթ լոյս մը, գիշերապահի մը եղջերափողը, Մուէզզինին միակերպ աղօթքի կոչը. «Աստուած մեծ է: Աղօթքի եկէք, փրկութեան եկէք: Աստուծմէն զատ Աստուած չկայ», — այլապէս՝ ոչ մէկ խօսք, ո՛չ մէկ ծիծաղ, ոչ մէկ երգ, եւ ոչինչ:



Փողոց Էրզրումի մէջ

Ժողովրդական կեանքը Արեւելքի մէջ միշտ հետաքրքրական կը մնայ. ո՛ւր որ ալ հանդիպիս անոր, մանաւանդ Երզրումի մէջ, որովհետեւ այս քաղաքը տակաւին զուտ ասիական է: Ասիկա գլխաւորաբար կը հասկցուի նաեւ կիներուն խստապահ քօղարկումէն: Երիկմարդուն առջեւ կնոջ քօղարկուիլը ամենահին Սեմական-Արեւելեան սովորութիւն մըն է, զոր ապա Իսլամը առանձնեց, եւ Գուրանին մէջ ա՛յնչափ մը միայն հաստատուած է որ կնոջ կ'արգիլուի իր մազերը ցուցնել ճակտին վրայ, մի՛ գուցէ — ասիկա սակայն բացէն ըսուած չէ, այլ կը հետեւցուի միայն — զգայական տուփ արթնցնէ իր գեղեցկութեամբը օտարին մէջ: Յետոյ Իսլամական կրօնաւոր դասակարգը, արեւելեան զգայամոլութեան իր ծանօթութեան վրայ հիմնուելով, Մարգարէին ըստ ինքեան չափաւոր պատուիրանը ամբողջական ծածկաւորումի տաղտկալի եւ գայթակղեցուցիչ ձեւին յանգեցուց:

Ի մասնաւորի անմխիթար է կնոջ դրութիւնը: Արդէն շատ կանուխէն քօղարկուելով, աղջնակը առանց իր յանկուցումին եւ գլխաւորաբար պառաւներու միջնորդութեամբ իրեն բոլորովին անծանօթ մարդուն հետ կ'ամուսնանայ, յարկէ յարկ փոխադրուելով: Ո՛չ մէկ օտարականի ոտք կրնայ կոխել հարէմին մէջ, նոյն իսկ եթէ անիկա իր ամբողջ կեանքը Արեւելքի մէջ անցուցած ըլլայ եւ էրիկ մարդուն հետ ամենամտերիմ բարեկամութեամբ կապուած ըլլայ: Եւ կինը անկէց զատ ուրիշ կերպ չի ճանչնար կեանքը իր ամուսնին նախապաշարումները եւ գաղափարները կը բաժնէ սովորութեամբ եւ խորհելակերպով: Սխալ է ասոր վրայ ցաւիլ մեր տեսակէտին համաձայն . . . . . . . . . .

. . . . . . . . . . . . . . . . . . . . .

Իսլամութիւնը Թուրքիոյ մէջ պետական կրօնքն է եւ պէտք է ըլլայ: Խալիֆաներու կայսրութեան մէջ իր տիրական դիրքը չի կրնար թողուլ առանց ինքզինքը մեռցնելու: Անպայման մեծ վտանգ մըն է իրեն համար

*բոլոր կրօնքներուն հաւասարութեան վրայ հիմնուած արդի պետութեանց ձեւով բոլորանուէր զարգացումը:*

. . . . . . . . . . . . . . . . . . . . .

*Կրօնքի հետ սերտ առնչութիւն ունի նաեւ ազգայնութեան հարցը, որ ամէն զարգացումի ճամբուն վրայ արգելք կը յարուցանէ: Հին ժամանակներէն մինչեւ հիմա Թուրքերը տիրող ժողովուրդը կը կազմեն, ո՛չ այնքան իրենց թիւին որքան իրենց ուժին եւ միութեան պատճառաւ: Բայց ծանրաշարժ եւ անմատչելի ըլլալով, կուլտուրապէս շատ ետ կը մնան Հայերէն եւ Յոյներէն, մինչեւ իսկ Արաբներէն, որոնք անոնց հետ միմիայն հաւատքի նոյնութեամբ կապուած են, այլապէս սակայն ամէն բանի մէջ հակադիր են:*

*Մարդկային կեանքին ամբողջական ըմբռնումը իսկապէս հիմնովին տարբեր է Արեւելքի եւ Արեւմուտքի մէջ: Այս պատճառաւ ժէօն-Թիւրքերը ահագին աշխատութեան տակ մտած են երկուքը իրարու մօտեցնելու փորձին համար, շատ գովելի, բայց շատ ալ դժուարին, ամէնէն աւելի դժուարին քան չի կրնար ըլլալ: Տակաւին—եւ այս մասին պէտք չէ պատրանքի ենթարկուիլ—անցեալին անէծքը կը ծանրանայ ամէնուրեք ներկային վրայ. դարերու աւերակներէն կարելի չէ որ մէկ գիշերուան մէջ թարմ կեանք բողբոջի: Ժողովուրդը մեծ զանգուածին մէջ նոր կարգին հանդէպ կարծես օտար մարմինի մը հանդէպ կեցած է, եւ դժուարաւ միայն կրնայ երկարատեւ ստրկութեան թմրութենէն դուրս խայտալ յանկարծ իր բաղձացած ինքնօգնութեան եւ ինքնագործունէութեան դէմ: Միշտ ու միշտ մղիչ յառաջդիմութիւն անհրաժեշտ է քարացած, հին սկզբունքներուն առջեւ կանգ առնելու, եւ մէկ կողմ դնելու համար Արեւելքցիի խորարմատ անվստահութիւնը բոլոր այն նորութեանց դէմ, որոնք յաճախ հին դաւանանքին իբրեւ կործանումը կը նկատուին: Արդարութեան եւ անիրաւութեան զգացումը նախ եւ առաջ պէտք է զօրացնել երկրի մը մէջ, ուր մարդ կանու-*

խէն ի վեր այդ զգացումը կը գործածէր միմիայն իրաւունքը իրեն պահելու եւ անիրաւութենէն օգտուելու, եւ ուր ո՛վ որ հնարաւորութիւն ունէր՝ անվրդով ու առանց այլ եւ այլի իրեն վերապահուած կը յաւակնէր ընդհանուրին ունեցածը եւ օտարին սեփականութիւնը:

Ինչպէս ուրիշ տեղ ասկէց առաջ (Տե՛ս Գահիրէ—Պաղտատ—Կ. Պոլիս») յայտարարած եմ, «Թէ Պետական կեանքին՝ բոլոր կողմերը մաքրուելու, նորոգուելու, ամրապնդուելու եւ միաբանելու համար պէտք ունին բաւականաչափ ինքնավարութեան եւ անջատ զարգացումի, եւ թէ այս ամէնը համերաշխաբար, նպատակի գիտակցութեամբ, առանց խնայելու եւ սակայն դարձեալ խնայելով առաջ պէտք է բերուի, ճիշդ եւ ուղիղ կերպով աչքի առջեւ ունենալով թէ ի՞նչ բան կարելի է իրականացնել երկրին սեփական ուժին եւ ուրիշներուն գործունէութեան շրջանակին համեմատ», այսօր ալ նոյնը միայն կը կրկնեմ: Արմատը առողջութեան կը կարօտի, որովհետեւ «ծառին ուժը արմատին մէջ է», վերջերն է որ կը հասուննայ անոր պտուղը, արեւուն, փոթորիկին եւ անձրեւին մէջ եփուելով: Այսօր Թուրքիա ճամբորդողը կրնայ, երբ պատուաւոր է, զարմանքով խոստովանիլ թէ կառավարութիւնը եւ ժողովրդային ներկայայացուցիչները քիչ ժամանակի մէջ իրենց գործունէութիւնը արդէն ցոյց տուած են, եւ ասիկա՝ վերի մասին թերի միութեան եւ տակի մասին աղէտաբեր սխալներուն հակառակ: Գործը դանդաղ առաջ կ՚երթայ, եւ իրականին մէջ երեւցածէն աւելի դանդաղ: Բայց այսպէս պէտք է ըլլայ եւ ասիկա աղէկ է, որովհետեւ վ՚երիվայր շրջում մը ամէնէն աւելի վտանգաւորն է, — առողջութեան միջոցը հիւանդութենէն աւելի գէշ պիտի ըլլայ այլապէս: Տակաւին դժգոհներու ընդարձակ խաւ մը կայ, եւ մանաւանդ վտանգաւոր է իշխանութեանց մութ անկիւններէն դուրս քշուող ա՛յն բազմաթիւ խաժամուժը, որ պաշտօնի եւ պատրաստ հացի համար

մնծցած ըլլալով հետզհետէ միայն կարելի է ճարտարարուեստի եւ առուտուրի վարժեցնել :

Հողին հարուստ գանձերը բանալ ճամբաներու միջոցաւ, երկաթուղիներ եւ ռռոգումի հաստատութիւններ, ճարտարարուեստի եւ վաճառականութեան խրախոյս, ժողովրդային կրթութեան, բարեկարգութեան, մաքրութեան եւ ամէն տեսակ առողջական միջոցներու համար հոգածութիւն, դրամական փտած դրութեան եւ անբանաւոր ժամաչափութեան կանոնաւորութիւն, — տշխատութեան ի՛նչ դաշտ ներկային եւ ապագային համար : Շատ մեծ գործ տեսնուած չէ մինչեւ հիմա, բայց գոնէ ամէնուրեք անուրանալի բարեացակամութեամբ եւ լուրջ ջանքերով բարւոքումի մը համար նիւթերը պատրաստ են : Արդարեւ պէտք չէ զարմանալ, եթէ Ապտիւլ Համիտեան լուծէն ազատագրութեան յանակնկալս բարեդէպ գործադրութիւնը յաճախ իրականութեան ուղիղ չափը կորսնցնելուն պատճառ եղաւ, եւ ա՛յնպիսի լաւատեսութիւն մը առաջ բերաւ. որ նպատակէն շատ հեռուն գնաց, մինչեւ իսկ վերացական ծայրայեղութեան մը տարաւ : Երբ Էրզրումէն Ցրապզոն ճամբորդութեանս միջոցին ինծի ընկերացող երիտասարդ-սալային ու-



Էրզրում: Պազարը ալիւր գնող

շադրութիւնը կը հրաւիրէի թէ այս խճուղիին շինութեանը համար պէտք էր ֆրանսացի ճարտարագէտ մը կանչուէր, առանց խորհելու եւ բացէ ի բաց պատասխանեց. «Այո՛, Վսեմաշո՛ւք, ատեն մը ասիկա անհրաժեշտ էր, բայց հիմա մենք մինակ պիտի շինենք ամէն բան. հիմա մեր տասը տարեկանները աւելի ուշիմ են քան երբեմնի քառասունոցները»: Այս տեսակ մեծ մեծ ջարդերը «կ'ուզենք հետեւաբար կըրնանք»ի տղայական հիւանդութիւնը կը թուի ինծի: Ասիկա բնականաբար հաւնուելիք բան չէ, որովհետեւ թիւով շատ եւ միանգամայն անփորձ խոհարարներ կերակուրը կ'աւրեն, եւ սակայն ես կը փափաքիմ այս մտօք արտայայտուած ջանքերուն եւ յառաջդիմական աճապարանքին մէջ աւելի բարի դիտաւորութիւն տեսնել քան յոռի հետեւանք, նկատի առնելով ասկէց առաջ տիրող անպգայութիւնը:

Մշակոյթի բարձրացումը պէտքերու բարձրացումը կը նշանակէ: Անտարակոյս Թուրքիոյ մէջ կ'ընծայուի, եւ ա՛լ աւելի ո՛րքան շատ բացուի, — եւ այս մասին Պաղտատի երկաթուղին իր մեծ օգուտը ունեցած է, — ահագին շահաստան մը, բայց պէտք է գիտնալ թէ մինչեւ այն ատեն դեռ շատ ժամանակ պիտի անցնի եւ պէտքը հետզհետէ միայն ինքզինքը զգալի պիտի ընէ: Հապա ի՞նչ ըսենք, երբ վերջերս լրագրի մը մէջ ամենայն լրջութեամբ կարդացուեցաւ թէ մարդ գլուխ հաշուելով քանի՛ քանի միլիոնաւոր թաշկինակներ կարելի պիտի ըլլայ այսուհետեւ ներածել հոն: Տարօրինակ գործառնութի՛ւն: Արեւելքը ճանչցողը գիտէ թէ առաջները թաշկինակը բոլորովին աւելորդ պերճանք մը կը նկատուէր հոն: Այս կարծիքը տակաւին տասնեակ մը տարիներ առաջ նոյնն էր. այո՛, երբ կը տեսնուի որ մարդ ի՞նչպէս պարզ կերպով կրնայ իր գործը տեսնել առանց նեղութիւն պատճառող միջոցներու, պէտք է զգուշանայ որ հոն ինքն ալ Արեւելքցի չդառնայ: Իմ տեսութեամբս կացութիւնը Թուրքիոյ մէջ կա-



Քաղաքական բանտարկեալներ (րէաքսիոնէր)

մայական տիրապետութեան բարձումով ստուգիւ շատ բարւոքուած, եւրոպականացած է, զբօսաշրջիկներուն եւ երկրախոյզներուն համար սակայն կորսնցուցած է իր միսթիք հրապոյրներուն, իր հազարեւմէկ գիշերներուն հմայքին մէկ մեծ մասը, կրնամ ըսել նոյն իսկ իր փայլը: Մինչեւ հիմա արեւուն երկիրներուն այցելութիւն կը տրուէր գլխաւորաբար անցեալին եւ տարօրինակին պատճառաւ. Էրզրումի վալիին հետ, Թուրքիոյ մէջ սկսուած մեծ շարժումին յառաջխաղաց քայլը նկատի առնելով, ես ալ կը յուսամ՝ որ ոչ շատ հեռաւոր ժամանակի մէջ Արեւելք պիտի ճամբորդուի ո՛չ թէ միայն աւերակներ, այլ ա՛լ աւելի ներկային ստեղծիչ գործունէութիւնը ճանչնալ սորվելու համար:

Ոչ ոք կրնայ յաւակնիլ թէ նոր Թուրքիոյ անհոգ, անփոյթ երիտասարդութիւն մը վիճակուած է: Ընդարձակ երկրամասեր իրենց մարմինէն անջատուած են, ծանրակշիռ շփոթութիւններ կը սպառնան դուրսէն, եւ ներսն ալ կ՚եփի, կարծես կախարդի կաթսայի մը պէս: Եթէ ուշադրութեամբ նկատի առնուի մինչեւ ուղ եւ ծուծը փտած, բորբոսած օսմանեան պետութիւնը այսօր իսկ, այո՛, եթէ նոյն իսկ տակաւին կ՚ապրի, կը պարտի զայն միմիայն Բանակին: Անոր մէջ իրօք մեծ ու ակներեւ է յառաջդիմութիւնը եռանդի, վճարումի եւ

պարենաւորումի, սպառազինութեան եւ հանդերձանքի, բոլոր կարգերուն եւ աստիճաններուն մէջ ծառայութեան սիրոյն եւ հրամատարութեան ու մարզանքի առթիւ բանաւոր մէթոտի տեսակէտով: Եւ ի՛նչ գործեր չի կրնար տեսներ ասիկա: Ան բերաւ նոր ժամանակը անձնուիրութեամբ, անկէց ի վեր շարունակ զօրքերուն եւ վարիչներուն համար անվերջանալի, դժուարին, ապերախտ կռիւներ կը մղէ կեղեքիչ, դժուարըմբռնելի հակառակորդներու հետ երկրին բոլոր անկիւնները եւ ծայրերը, Մակեդոնիոյ, Սուրիոյ եւ Ալպանիոյ մէջ, եւ



Էրզրում: Չիֆթ Մինարէ



Չիֆթ Մինարէ։ Ներքին մասը

ի՛նչ որ ալ ըլլայ, վճռական զօրութեամբ մը ընկճեց Արաբական ապըստամբութիւնը Եէմէնի մէջ, գոնէ իր գլխաւոր մասին մէջ: Աս եղաւ անոր ամենամեծ եւ ամենակարեւոր գործը. որովհետեւ խնդիրը այն չէ որ կռուաձէր Պէտէվիներուն դէմ պաշտպանուի երկրամաս մը, որ երբեք կատարելապէսգրաւուած չէ արդէն, որոնց գնդակները, ինչպէս Թուրքերը շատ լաւ գիտեն, ամենամեծ մասամբ արտասահմանի մէջ կը ձուլուին, կամ որպէս զի միաձոյլ տիրապետութիւնը պաշտպանուի Արաբիոյ մէջ Անգլիոյ կողմէ իր համաշխարհիկ ճամբաներուն ապահովութեան համար կատարուած կոտրակումի վտանգին դէմ, այլ աւելի խնդիրը ա՛յն է որ երաշխաւորուի Թուրքիոյ եւ Սուլթան-խալիֆային գերակշռութիւնը բովանդակ Իսլամութեան մէջ, խնդիրը այս կերպով կեանքի եւ մահուան շուրջ կը դառնայ:

Մէկ օրինակ միայն առնելով, ի՛նչ զարմանալի արագութեամբ 1911 Մայիսին Անատոլուի ըէտիֆներու զօրաբաժինը Էնկիւրիի մէջ շարժման մէջ դրուեցաւ, եւ ռազմամթերքով, բեռներով եւ գրաստներով Ալպանիա փոխադրուեցաւ երկաթուղիով ու շոգենաւով, եւ մեծ

*բարեկարգութեամբ եւ զինուորական խստապահանջ մարզանքով ։ Ասիկա հինին դէմ աշագին փոփոխութիւն մը կը նշանակէ եւ պարզապէս հիացում կը պատճառէ ։*

*Բանակը հիմա առաջին տեղին վրայ է, ամէն բանի մէջ առաջին գիծքին վրայ ։ Ազգային առողջ գիտակցութեան մը բորբոքումով ամէն բանի կը հետաքրքրուի, ասիկա — եթէ նոյն իսկ զարմանալի թուի — նոյն իսկ քրիստոնէական շրջանակներուն մէջ կը սիրուի։ Եւ լաւ է այսպէս, եւ այսպէս պէտք է մնայ ։ Եթէ սահմանադրական օսմանեան պետութեան միակ ոյժը այսօր սուրին մէջ կը կայանայ, պէտք է այսուհետեւ սակայն ամէն բան ի գործ դնել՝ ամուր բռնելու համար զայն, այսինքն՝ ա՛լ աւելի կազմակերպել բանակն ու նաւատորմիղը, ինչպէս նաեւ անոնց յենակէտ եղող ամրութիւնները ։*

*Եւ ահա Էրզրում բերդաքաղաքը առանձնայատուկ նշանակութիւն ունի իբրեւ բանալին Թրքական Հայաստանին ։ Բոլոր հաղորդակցութիւնները հոն կ՚երթան կը միանան. ասիկա բոլորովին պարզաբանելով չանցնիր, այլ ուղղակի ։ Եթէ Ռուսիա Էրզրումը գրաւէ, լաւ ցից*



Էրզրում Մեծ զօրանոցին բակը Սէլճուգեան յիշատակարանով

մը վարսած կ'ըլլայ Թրքական երկրամասին մէջ. այնուհետեւ կը տիրապետէ Հայաստանի լեռնադաշտերուն, եւ ասով տէր կ'ըլլայ դէպի Սեւ Ծով, ինչպէս նաեւ դէպի կեդրոնական Փոքր Ասիա անցքին :

Արեւելքէն եւ հարաւէն պէտք է Էրզրում պատըսպարուի լեռներուն մէջէն, նաեւ դէպի հիւսիս 15 քիլոմէթր լայն դաշտին միւս կողմը : Անկոխ, ամայի Տիւմլիւ Տաղին 3000 մէթր բարձր գօտիին մէջէն հոն կը յանգի միայն Կիւրճի Պօղազի արդի բերդերով (ինչպէս կ'ըսուի) գոցուած նեղ կիրճը, դէպի Օլթիի հովիտը վերօք սուր կորուածքով, որ իր բոլոր բնութեան եւ դիրքին նայելով չի կրնար կարեւորութիւն ունենալ զինուորական մեծ գործողութիւններու համար: Էրզրումի տկարութիւնը, անոր վիրաւորելի կողմը իմ կարծիքով կը գտնուի արեւմտեան կողմը, ուր դաշտը 30 քիլօմէթր լայնութեամբ կը բացուի :

Ինչպէս յիշատակեցի, հակառակ իմ շատ փափաքելուս, դիտմամբ չայցելեցի արտաքին ամրութիւններուն: Ըսին ինծի թէ վերջին պատերազմէն ի վեր իրապէս կատարելագործուած են անոնք, եւ կ'ուզեմ հաւատալ.



Էրզրում: Պազար

բայց կը կարծեմ թէ Թուրքիա այս բերդաքաղաքին վերջին պաշտպանութեան համար բաւական բան չկրնար ընել, նոյն իսկ անընդհատ զօրացնելով ամրութիւնները, այլ պէտք է աւելի լաւագոյն հաղորդակցութիւններ ստեղծէ դէպ ի ծովը եւ դէպ ի ներսերը: Ասոր համար ամէնուէն շատ երկաթուղիներու պէտք ունի: Ամէն ուղղութեամբ իրաւ է թէ հիմա երկաթուղիներու ամբողջ ծրագիր մը որոշ հանգամանք ստացած է, բայց այս մասին ինծի կը թուի թէ ամէնուէն աւելի արագ ձեռնարկութեան պէտք կայ. մանաւանդ երկաթուղի մը դէպ ի Սեւ ծով, մինչեւ իսկ դէպ ի Տրապզոն Բլաթանայի վրայէն կամ նոյն իսկ դէպ ի Ռիզէ, ուր կը տանի աւելի կարճ, բայց ռուսական սահմանին մօտաւորութեան պատճառաւ աւելի վտանգաւոր գիծը: Դէպ ի Սեւ ծով երկաթուղիի մը գլխաւորական արժէքին համար անհրաժեշտ է նաեւ որ Թուրքիա ծովուն վրայ տիրէ կամ ծովային զօրաւոր տէրութեան մը հետ դաշնակցի. հակառակ պարագային երկաթուղիի այսպիսի հաղորդակցութիւն մը աւելի Ռուսերուն գործին պիտի գայ արեւմուտքէն Էրզրումի դէմ գործողութեան մը համար՝ Օտէսա-Սէվաստաբոլ խարիսխին վրայ: Անտարակոյս Պոնտոսեան լեռնաշղթան մէկ կողմէն միւսը կտրելու համար շինութեան դժուարութիւնները մեծ են, որոնց յաղթահարելու համար դրամական ստուար զոհողութիւններ կը պահանջուին. բայց անհրաժեշտաբար պէտք է մտնել այս զոհողութիւններուն տակ, որովհետեւ Էրզրումի պաշտպանութեան մէջ կը կայանայ Թրքական տիրապետութեան գոյութիւնը Փոքր Ասիոյ բնագաւառին համար: Անշուշտ առեւտրական տեսակէտով ալ բարձր նշանակութիւն ունի դէպ ի Սեւ ծով երկաթուղիի հաղորդակցութիւնը. ասով ինք գերակշիռ պիտի ըլլայ դէպ ի Պարսկաստան եւ դէպ ի Թըրքական ներքնաշխարհը կարաւանական հաղորդակցութեան մէջ, եւ դէպ ի Պարսկաստանի ազատ անցքի եւ

հնդկական գիծերուն հետ կցումի պարագային լոկ ժամանակի խնդիր պիտի ըլլայ:

Այսօր մեծ պատերազմները դաշնակիցէ դաշնակից պաղարիւն հաշիւներու արդիւնք չեն այլեւս. եթէ տեղի կ'ունենան, տեղի ունեցած կ'ըլլան գլխաւորաբար ժողովուրդներու աւելի կամ նուազ հակառակամարտ դիւրազգածութեան հետեւանքով, անդիմադրելի ուժգնութեամբ եւ յանկարծակի: Ուզուած տեղը եւ արագօրէն տրամադրելի ըլլալու կարելիութեան եւ լայն միջոցներու տեսակէտով, Ռուսերը այսօր Հայաստանի մէջ անտարակոյս Թուրքերուն բաղդատմամբ գերազանց են իրենց ուժերուն ամբողջ հանդերձանքին, ինչպէս նաեւ ճամբաներու եւ երկաթեայ գիծերու շնորհիւ: Որովհետեւ Օսմանեան Կայսրութիւնը տարւոյն ամէնէն լաւ եղանակին ատեն իսկ պարտաւոր է սաստիկ ճիգեր եւ ոյժեր սպառել ճամբայէ զուրկ ընդարձակ երկրամասերու մէջ հետխսան ստուար զօրքեր համախմբելու համար հարկ եղած ռազմամթերքներով եւ պարէնաւորումներով — ո՛ւր մնաց հայկական երկրին ձմրան ձիւնին եւ սառոյցին մէջ:

Էրզրում զօրացած, դէպի ամէն կողմ լաւ հաղորդակցութիւններ, եւ Սեւ Ծովու մէջ տիրող նաւատորմիղ մը. այս պարագային շատ ու շատ ժամանակի կը կարօտի, կացութիւնը այսօրուան զինուորական համեմատութեամբ դիտելով, մինչեւ որ Թրքական-ասիական կայսրութեան այդ հզօր պատուարը ռուսական յարձակումով մը խորտակուի: Երբ հպարտ համոզումով մը վստահացուցին զիս Էրզրումի մէջ թէ հիմա անկարելի է բերդաքաղաքին գրաւումը, առարկութիւն ընելու համար ինքզինքիս իրաւունք չտուի, բայց իմ կարծիքով իմ առջեւս արտայայտուած այս տեսութիւնն ալ իր արմատը ունի Թրքական ներկային քանիցս արդէն ծայրայեղօրէն շեշտուած լաւատեսութեան մէջ: Ամէն պա-

րագայի մէջ ծանրութեան կէտը պիտի կայանայ բանակին գործողութեանց ընդունակութեան եւ հնարաւորութեան մէջ. աշխարհի մէջ անառիկ ոեւէ բերդաքաղաք չկայ, եւ մանաւանդ գինուորներուն համար «անկարելի» բառը պէտք չէ գոյութիւն ունենայ:



Էրզրում։ Խումբ մը մարդիկ Պազարին մէջ

**Երկիրը լեցուն է Տիրոջը բարիքներով։**

(Սաղմոս)

**Թալաթթա՛, Թալաթթա՛, ծո՛վ, ծո՛վ։**

(Քսենոփոն)

## 8. Էրզրում – Ճէվիզլիք



Ձիաւոր Թուրք մը

Էրզրումի եւ Տրապիզոնի միջեւ հեռաւորութիւնը ուղիղ գծով հազիւ 180 քիլոմէթր է, բայց գետային գնացքները եւ Կոփ Տաղի, Վաւուք Տաղի եւ Զիկանա Տաղի երեք կիրճերը նկատի առնելով, ճամբան աւելի կ'երկարի դէպի արեւմուտք եւ 100 քիլոմէթր կ'աւելնայ վերոյիշեալ 180ին վրայ։ Բնութենէն կանխաւ նշանակուած է ուղղութիւնը։ Կարաւաններու ամենաշէն ճամբան է Սեւ Ծովէն դէպ ի Հայաստան եւ Իրան. Պարսիկները, Յոյները, Հռոմա-

յեցիները եւ Ճենովացիները, Արաբները, Թաթարները եւ Թիւրքմէնները այդ ճամբէն յառաջացան: Անցեալ դարուն եօթանասունական տարիներուն Ֆրանսացի ճարտարապետներ այս ճամբան ընտիր խճուղիի մը վերածեցին մեծ ծախքով զինուորական նպատակներու համար: Բնականաբար եղածին պէս անանկ մնաց, հետեւաբար հետզհետէ աւրուեցաւ, եւ հիմա մանաւանդ ցից զառիթափերուն եւ կիրճերուն բարձունքներուն վրայ ա՛յն աստիճան քայքայուած է որ մարդ կառքով չի կրնար յառաջանալ եւ ամէն վայրկեան մազ կը մնայ որ անդունդը գլորի:

Որովհետեւ այս ճամբորդութեան համար ճիշդ տարուոյն ամէնէն գէշ եղանակը ունէինք, կիրճերը տակաւին թոյլ ձիւնով ծածկուած էին եւ ճամբաները ալ աննպաստ վիճակի մէջ կը գտնուէին սկսող ձիւնհալին հետեւանքով, ուստի խոհեմութիւն համարուած էր հետերնիս առնել փոխադրութեան սովորական միջոցները, ձի կամ ջորի: Չկրցայ սակայն յարմար գրաստներ բաւական չափով ձեռք բերել, եւ զինուորական ձիեր հայթայթելու բարեացակամ առաջարկութիւնը չուզեցի ընդունիլ զանազան պատճառներով: Ուստի ուրիշ բան չմնաց ինծ ընել եթէ ոչ՝ ամէն վտանգի հակառակ եւ քանըհինգ անգլ. ոսկիի անհամեմատ բարձր գնով երկու կառք վարձել Տրապիզոնի համար. օտարազգի փաշա մը ուզածնուն պէս սօլթնելու պատեհութիւնը շահագործեցին շնորհալի վարպետութեամբ եւ ուշիմութեամբ:

Ցուրտ գիշերէ մը վերջ Մայիս 6ին առտուան ժամը ութին ճամբայ ելայ ընկերակցութեամբ միեւնոյն պաշտօնատարներուն եւ նոյն ուղեկիցներով, ինչպէս քաղաք մտած ատենս: Ձիւն եւ փոթորիկ կար, «հրաժեշտի յատուկ օդ»: Դարձեալ քաղաքէն դուրս, բայց տակաւին պարիսպին ներքին մասին մէջ, անցանք ընդարձակ հրապարակներէ եւ անմշակ դաշտերէ մինչեւ Տրապիզոնի դուռը, որուն միւս կողմը, ո՛վ զարմանք, ինծի կը սպա-



Թուրք պատանի մը

սէրպատուակալ գունդ մը հանդիսական դիրքով, հրամատարով եւ աջ թեւին վրայ նուագախումբով: Վար իջայ եւ զինուորներուն առջեւէն անցայ, բազմաթիւ ականատես ամբոխի մը համար արդարեւ քիչ անգամ տեսնուած յուզիչ տեսարան մը: Բայց գործը փափաքուածին համեմատ չեղաւ: Որովհետեւ յանկարծ ա՛յնքան սաստիկ փոթորիկ մը սկսաւ որ դրօշակները պատռելու աստիճան տատանող դրօշին հետ մէկտեղ թեւէն դէպի առաջ քշուեցայ. մինչ իմ սպիտակ գլխանոցս, զոր ճիշդ բարեւելու համար վար առած էի, ճամբուն մօտ գտնուող ջրակոյտի մը մէջ թռաւ, եւ, ամէն հրապոյրէ զուրկ, շատերու օգնութեամբ հազիւ եղաւ ճահիճէն արտակիտել զայն —դէպք մը որ դժբախտաբար հանդիսաւորութիւնը աղարտեց, եւ նոյնիսկ Թուրքերուն լուրջ դէմքերը խնդացուց:

Քիչ վերջը ճամբան լաւացաւ եւ բաւական ոգեւորուեցաւ: Դաշտերուն մէջ շատ մարդիկ կ'աշխատէին ծանր, եզնաձիգ փայտէ արօրներով, եւ արեւը խիստ փորձեր կ'ընէր մութ ամպերը ճեղքելու, որոնք մինչեւ

խորը ստորոտը եւ չարաշուք կերպով կախուած էին լեռներուն վրայ։

Թուրքեւհայկական բարեկեցիկ գիւղի մը՝ Իլիճայի առջեւ ընդունեց զիս Միւտիրը եւ պարտաւորեց զիս իր բարեկամական պաշտօնատան մէջ պատրաստ նախաճաշ մը ընել։ Յետոյ առաջնորդեց զիս փոքր մզկիթ մը, որուն մօտը կը ցայտէին հանքային տաք ակեր, Հասան-քալէի մէջ եղածներուն նման։ Թէոդոս Բ. կայսեր ատեն անոնք բաղնիքի կը գործածուէին եղեր։

Երկու ճամբաներ Իլիճայէն կ'երթան խոշոր լերան վարէն, որ արեւմաեան Եփրատի (Ֆրատ Սու) եւ Սեւ Ծով թափող Ջօրօք Սուի բաժանման կէտը կը կազմէ — հարաւայինը, անուանեալ խճուղին, Կոփ Տաղի 2000 մէթր բարձր կիրճին վերեւ, եւ Եէհէն Տաղի 200 մէթր ա՛լ աւելի բարձր կիրճին վերեւ հիւսիսայինը։ Վերջինը ամրան տաք ամիսներուն միայն անցանելի է, ուստի պարտաւորուեցայ հարաւայինը բռնել։

Դժբախտաբար օդը միշտ կ'աւրուէր. հովը մրրիկի սաստկութիւն առած էր. Ձախ կողմի (դէպի հարաւ) ձիւնալեռներուն վրայ կը մռնչէր սոսկալի փոթորիկ մը, որ յարձակեցաւ վերջապէս իմ ճամբուս ուղղութեան ալ վրայ եւ ամէն ինչ ծածկեց յորձանապտոյտ անձրեւի մը մէջ։ Հովիտը երթալով կը նեղնար. եւ ճամբան կը սկսէր խորնալ։ Ցուրտէն ակռաներս իրար զարնելով եւ մինչեւ մորթս խխուռ եղած, հասանք դէպի Աշքալէ փոքր սիրուն քաղաքը, գրեթէ ութը ժամ վերջ Եփրատի պարզ մէկ կամուրջին վրայէն անցնելով։ Միւտիրը դարձեալ ողջունեց զիս Վալիին առաջ եւ հրաւիրեց բարեդէպ թեթեւ ճաշի մը։ Կայանին ժանտարմները զինուորական բարեւ տուին, եւ ամբողջ գիւղը ոտքի վրայ էր։ Իլիճայէն մինչեւ հոս ճամբան հանդիպած էինք միայն երկու առանձին խաներու, եւ յետոյ ուղղակի այլեւս բռնած էինք ջրառատ եւ բաւական մեծ Ֆրատ Սուն։ Ասիկա Եփրատի հիւսիսային բազուկն է, որ Խարբերդի արեւմտեան կողմը Թուրք-պարսկական

սահմանագլխի լեռներէն եկող Մուրատ Սուի հետ բուն Եփրատին կը միանայ:

Սիրելի բարեկամի մը պէս ողջունեցի նուիրական այս գետը: Երկու տարիներ անցած էին յորմէհետէ դժուարին ճամբորդութեամբ մը քանի մը հարիւր քիլոմէթր տեղ անոր հետեւեցայ, բայց դարձեալ նոյն կախարդանքը կ՚ազդէր վրաս, ինչպէս այն ատեն երբ իր առնական ուժերուն մէջ էր, թէեւ հիմա իր մանկութեան մէջ: Եփրատ տակաւին «մեծ ջուրն» է հին կտակարանին, մին այն գետերէն, որոնք արարչագործութեան աւանդավէպին նայելով կը պատէին մարդկութեան դրախտը, եւ որուն վրայէն Պէտէվիներու նահապետը Աբրահամ՝ Բաբելոնէն Քանան իր պանդխտութեան ատեն, անցաւ, երթալու ատեն դէպ ի իրեն եւ իր սերունդին խոստացուած երկիրը, «Եգիպտոսի ջուրէն մինչեւ Եփրատ մեծ ջուրը» գալով, ուր Հրեաները գերի նստան, եւ լացին իրենց կործանուած եւ կորսուած հայրենիքին վրայ, Եւ որուն վրայ եւս, Յովհաննու Յայտնութեան համաձայն «եօթներորդ հրեշտակը իր



Գնչուի աղջիկներ

սկաւառակը պարպեց, որուն հետեւանքով ջուրը ցամքեցաւ, եւ ճամբան բացուեցաւ Թագաւորներուն առջեւ արեւուն ելքէն:»

Հզօր կայսրութիւններու ծնունդը եւ անհետացումը տեսաւ ան: Իր ափունքներուն վրայ կռուեցան Ասորեստանցիք եւ Եգիպտացիք, Յոյները ու Պարսիկները, Հռոմայեցիներն ու Պարթեւները, եւ տակաւին անցեալ դարուն Եգիպտացի Իպրահիմ փաշան Թուրքերուն դէմ: Ան կը պատմէ մեզի արեւելեան հռոմէական զինուոր կայսեր Հերակլի շքեղ գործերը (575-641), ինչպէս նաեւ Հարուն էլ Րաշիտ Խալիֆային օրով Արաբներուն արշաւանքները դէպ ի Կիլիկիա եւ դէպ ի Կիլիկեան Տաւրոս: Իր աղբերակունքը, ա՛յն է՝ արեւելեան Եփրատի, Մուրատ Սուի, աղբերակունքը կը գտնուին Արարատի վրայ, եւ իր ալիքները թրջեցին երբեմն Բաբելոնը, աշտարակաշինութեան վայրը, համաշխարհիկ պետութեան մը մայրաքաղաքը եւ Մեծն Աղեքսանդրի գերեզմանը: Դարերով Հռոմէական Պետութեան արեւելեան սահմանը կազմեց. երկու անգամ միայն—Մ. Լիկինիոս Կրասոս Եռապետին օրով Քրիստոսէ առաջ 53ին Պարթեւաց դէմ, եւ Յուլիանոս կայսեր օրով Քրիստոսէ վերջ 363ին Պարսից դէմ—անոր վրայէն անցան հռոմէական բանակները, երկու անգամուն ալ իր ջուրերուն իջած ատեն: Ի՛նչ գետ եւ ի՛նչ պատմութիւն:

Կէս օրէ վերջ ժամը հինգին ատենները արդէն կրկին ինքզինքս գտայ դէպ առաջ ճամբուս վրայ, բազմամեան Եփրատին անմիջական աջակողմը (դէպ ի հիւսիս): Տակաւին օդը հողմային էր եւ խիստ, բայց արեւը կ'երեւնար, եւ ահա լերան շուրջ սկսանք դառնալ: Քիչ ատենէն փառաւոր ձիաւոր մը քառասմբակ առջեւս ելաւ. ինքզինքը ներկայացուց մօտակայ Բիրնաքաբան գիւղին իբրեւ միւտիրը եւ խնդրեց իրմէ որ իրեն հիւր ըլլամ:

Բիրնաքաբան թրքական գիւղակ մըն է: Հազիւ իր եօթանասուն հիւղակներով կը գտնուի կիրճը տանող



Բաբերդ. Հին բերդեր

*մուտքին առջեւ, սիրուն մարգագետնի մը անկիւնը։ Ժայռուտ լեռներ վրան կը նային, որոնք գոգցես հոն կը մնան՝ առաջին պատեհութեամբ այս փոքրիկ բոյնը կործանելու համար։ Երբ ինծի համար պատրաստուած մաքուր վայրին դրան առջեւ եւ ներսը բնակիչները հաւաքուեցան — կիները բնականաբար չեն տեսնուիր — մինչեւ իրիկնամուտ եղած միջոցին օգտուեցայ կիրճին շուրջ պտոյտ մը ընելու համար։ Մինչեւ գիւղին կէս ճամբան ինծ ընկերացաւ հիւրընկալս եւ իր զաւակը Մահմուտ, գեղեցկութեան պատկեր, անսովոր արթուն պատանի մը տասնըհինգ տարեկան, որ իր հօրը ամբողջ պարծանքն էր յայտնապէս, ինչպէս արդէն անոր վրայ*

յառած էին իր թուխ, նշաձեւ աչքերը ճշմարիտ յարգանքով: Երբ հարցուցի իրեն, թէ ի՞նչ ըլլալ կ՚ուզէր, հպարտութեամբ եւ առանց իսկ խորհելու պատասխանեց. «Բիրնաքաբանի Միւտիր:»

Մութը պիտի կոխէր: Արեւը արդէն վարդ մանիշակ մշուշի մը մէջ սուզած էր, իրիկուան մութ ստուերները կը սպրդէին շիկագոյն հորիզոնէն վար տարածուած ձիւնադաշտերուն վրայ եւ անոնց վրայ կը նկարէին չքնաղ պատկերներ, կաղնիներուն ոստերուն միջեւ կը սողոսկէր թափանցիկ թեթեւ մէգը, եւ երթալով կը կառչէր ու կը ծրարուէր բուներուն վրայ խիտ առ խիտ. բայց փոշենման ամպերուն մէջէն մերթ կը կայծէր երկինքին ջինջ կապոյտը գեղունի եւ ուշիմ աչքի մը պէս: Ետ դարձող կենդանիներուն բոժոժները կը դանչէին, հողի հոտ մը կը տոգորէր օդը, իրիկնամուտը մթնշաղի դարձաւ, եւ անշամանդաղ այերքին վրայ կը թափառէր հինաւուրց ուխտաւորը, լուսինը, մենաւոր, խորշոմած դէմքով, բոլորածիր, մեծ ու կարմիր: Ա՛յս էր Բիրնաքաբանի մէջ իմ իրիկունս:

Հետեւեալ օրը հարկ էր Կոփ Տաղէն անցնիլ: Այս պատճառաւ արդէն ժամը վեցէն առաջ մեկնեցայ բնակարանէս եւ սիրուն գիւղէն: Ինչպէս միշտ, առջեւէս երկու հրացանակիր ժանտարմներ կ՚երթային ձիաւոր, եւ իմ հիւրընկալս եւ բաւական թուով գիւղացիներ,—ամենքն ալ նկարչագեղ հզօր դէմքեր,—բաւական երկար ճամբայ մը ուղեկցեցան ինծի թէ՛ պատիւ ըլլալու եւ թէ ճահճային վայրերէ կառքին անցնելուն օժանդակելու համար: Իբրեւ հրաժեշտ իմ քովէս գոյնզգոյն տարազով ընթացող Մահմուտին արծաթ դրամ մը տուի իբրեւ յիշատակ եւ խոստացայ իրեն կրկին գալ երբ Միւտիր ըլլար, եւ ես ալ շատ ծեր չըլլայի: Ասոր վրայ երերցուց փաթթոցաւոր գլուխը եւ հասկցուց թէ ո՛չ թէ Բիրնաքաբանի Միւտիր ըլլալ կը փափաքի, այլ ինծի պէս Փաշա՛: Ո՛վ երիտասարդութիւն, ո՞ւր կը մնայ յոյսերուդ եւ երազներուդ կատարումը: Անսահման կա՛յ

առջեւդ ապագան, բարձրադիր լեռներէն դուրս դաշտանկարի մը նման: Ո՛վ փոքրիկդ Մահմուտ, արդեօք քու հայրենի գիւղիդ քարոտ գերեզմանին մէջ յաւիտենական հանգիստը պիտի գտնե՞ս քու ընկերներուդ նման ծանրաշխատ կեանքէ մը վերջ: Պիտի ըլլա՞ս Միւտիր մը կամ նոյն իսկ Փաշա մը: Կամ արդեօք Ալլահը նախասահմանա՞ծ է որ դուն անդունդ գլորիս, թերեւս ճամբուն վրայ, աղքատութեան եւ դժբախտութեան մէջ եւ մարդիկ խուսափին քեզմէ: Ո՛վ կրնայ գիտնալ: Մեղք պիտի ըլլայ ասիկա, եւ շատ պիտի ցաւիմ եթէ ես քու մանկական սրտիդ մէջ բաղձալի փառասիրութիւնը խեղդած ըլլայի եւ սահմանափակած ըլլայի անոր գոհացումը:

Մթնշաղը դեռ կը դարէր հովտին գոգը, երբ ես երէկ իրիկուան պէս կիրճէն վեր կը բարձրանայի: Մշուշի շղարշներ կը քաշուէին մարմանդին վերեւ, երկինքը հետզհետէ կ՚աղօտանար, եւ իր մանրամաղ թօնընկէցներէն մին կը տեղար: Օդին պարագաները ընաւ նպաստաւոր չէին: Բայց բախտին վրայ յոյս դրած էի եւ գոհ ու զուարթ էի, մանաւանդ որ փորձով գիտէի թէ ընդհանրապէս արեւափայլ օրերը չէին որ ամէնէն աւելի կը պարզուէին ընութեան եւ կեանքին մէջ: Եւ ասիկա այսօր ալ պիտի ճշմարտուէր:

Ցորդաջուր վտակէ մը մռնչող վիհը ո՛րքան կը նեղնար, կը վայրենանար, կը շքեղանար, նոյնքան ճամբան կը վատթարանար: Ահա ամէնուրեք դարձեալ ձիւն կը դարի զառիթափերուն վրայ, բայց գարունը եռանդով կքած է անոնց վրայ, եւ երկիրը կ՚ուրախանայ ցորչափ ազատագրութիւնը կը մօտենայ: Եւ ահա ապառաժուտները ետ ետ կը քաշուին, թեթեւ կանխաժամ կարմիր մը կը խուժէ հովիտին մէջ, կը պայծառանայ, առջեւս կը տարածուի ձիւնապատ քամակ մը, ճամբան երկար զիկզակներով բարձունքներն ի վեր կը մագլցի, եւ վերերը արդարեւ կը հանգչի արեւը: Լուսաշո՛ղ օր մըն է:

Արդէն երկար ատեն հետիոտն կ՚երթամ Տրապզոն

գացող Գնչուներու խումբի մը մէջէն, եւ հանդարտ սրտով այսպէս կ'ընեմ: Որովհետեւ կառքէն դուրս ելլելէ առաջ ծրարները ա՛յնքան ամուր պարաններով կառքին ետեւը կապել տուած էի որ ամենամեծ մասնագէտ գողը անգամ դժուար պիտի կրնար քակել: Այրեր, կիներ եւ տղաքներ, ձիեր, էշեր, ոչխարներ եւ այծեր — ամէն ինչ գունագեղ իրարու մէջ անցած կը քալէր: Ի՛նչ տարօրինակ մարդիկ են սա՛ Գնչուները: Դարբին, կաթսայագործ, ձիապան, երաժիշտ եւ գող — ընդհանրապէս ամէն կողմ միեւնոյնը, ո՛ւր որ անոնց հանդիպեցայ, մեր մէջ, Մաճառստանի, Ռումանիոյ, հարաւային Ռուսիոյ եւ Փոքր Ասիոյ մէջ: Միայն թէ Փոքր Ասիոյ մէջ անոնք ինծի աւելի զուարթ եւ աւելի գոհ կ'երեւնային, ասոր պատճառը թերեւս ա՛յն է որ իրենց շրջակայքէն նուազ հեռացած են, թերեւս նաեւ որ իրենց բո՛ւն հայրենիքին աւելի մօտ են: Իմ քովս կը քալեն, ծերուկ, եւ զարհուրելիօրէն տգեղ կին մը, թիկնացուպը ձեռքը, կորացած քամակին վրայ կասկածելի պարկ մը, եւ երկու աղուոր աղջիկներ, գրեթէ տղայ: Ծերութիւնն ու երիտասարդութի՛ւնը: Առջեւէս կ'երթայ փառաւոր զոյգ մը: Այրուն հուժկու, ջղուտ, թուխ մանչ մը կապոյտ սեւ մազերով եւ պատառատուն տրեխներով, էգը ծաղկատի կին մը օղերով, ճարմանդներով զարդարուած: «Արդարութիւն եւ օրէնք արժէք չունին անոնց համար». ազատ սէրը միացուցած է զիրենք, «քահանան ալ կարգած»:

Կոփ Տաղին տակը առջեւս ելաւ ուղտերու հսկայ կարաւան մը, հազարի չափ ուղտ, եօթնուէն տասը հատ իրարու կապուած, եւ ամէն խումբի առջեւէն ալ իշուկ մը մանրաքայլ կ'երթայ, որուն վրայ, սրունքները մարմինին կապած, կը նստի թաթար ուղտապանը, եւ առանց անոր առաջնորդութեան իրենց կեցած տեղէն չեն շարժիր կասկածոտ ուղտերը: Արդէն հեռուէն կը լսուին գրաստներուն աղօտ մերթ պայծառ զանգակները, երբեմն ալ ուղտապանին աղաղակը, Երկար ձմեռէն վերջ

առաջին անգամ ըլլալով կառաւանը Տրապիզոնէն Էրզրում եւ Պարսկաստան կ'երթայ: Լեռներուն մէջ ամէն կողմ թափառկոտ բոժոժները հնչուն արձագանգ կ'արթնցնեն:

Սառուցիկ հով մը կը փչէ: Մօտ ու հեռուն կը բարձրանան բլուր, մթին ապառաժներ, որոնք ըմբոստ իրենց վրայէն թափած են ձիւնը, եւ սուր ու պայծառ երկնակապոյտին մէջ կը կորսուին: Կառքս, որուն բեռը կարելի եղածին չափ թեթեւ առնուած է, ձիւնաջուրով թաթախուած ճամբուն վրայէն ա՛յնչափ միայն կրնայ առաջ երթալ որքան, եթէ կարելի է այսպէս



Ապառաժուտ ճոլխոր Կիւմիւշխանէի մօտ

ըսել, ուղտերը շատ մօտէն երթան անոր: Լեռնադաշտերու մէջ առնք զարմանալի կերպով ապահով կը քալեն, բայց, ինչպէս դժբախտաբար գրաստները, միշտ անդունդին ծայրագոյն եզերքին վրայ: Արդէն Չինաստանի, Կովկասի եւ Պարսկական Էլպուր լեռնաշղթային մէջ, հեռուն իրենց բոցավառ անապատական հայրենիքէն հեռու, հանդիպած էի անոնց սառի եւ ձիւնի մէջ. Կ՚ըսէին ինծի թէ ձիւնը նուազագոյն դժուարութիւններ կը պատճառէ անոնց քան միւս կենդանիներուն, որովհետեւ իրենց լայն եւ կաշացած ներբաններուն վրայ, զորս յամրաբար եւ նախզգուշութեամբ կը զետեղեն, քիչ խորունկ միայն կը կոխեն:

Վերջապէս, ժամը իննէն վերջ, մագլցած անցած էինք կիրճին բարձունքը: Ճիշդ առջեւնիս կը պարզուէր Կոփ Տաղին ձիւնակամարը, եւ լերան բովանդակ կատարին վրայ կը պարզուէր դաշտանկարը, հոյակապ, մենաւոր եւ լուռ: Խորքէն հնչեց հովուական սրինգի մը արձագանգը, արեւը կ՚այրէր ջերմակիծ, եւ ոչ մէկ շունչ այլեւս կը տատանէր օդը: Դեռ բարձունքները խայթող օդը անխ;իրա կը թողու եղեւինները:

Որովհետեւ ժամանումս ամէնէն կանուխը մէկ ժամ վերջ տեղի կրնար ունենալ, առատ ժամանակ ունէի կիրճին բարձունքը հաստատուած ոստիկանական փոքր կայանէն սողոսկ բարձրանալ մօտակայ բլուրի մը վրայ: Հոն կեցայ ձիւնին մէջ: Իմ տակս կը պալարէր թեթեւ մշուշ մը, հեռակայքը ոլորտին մէջ կը կարկամէր. բոլորովին մինակ էի: Լեռնաշխարհին հոյակապութիւնը վրաս կը ճնշէր խորունկ ծանրութեամբ մը: "Ո՞ւրկէց կուգաս հոս, օտարակա՛ն: Ի՞նչ կը փնտռես դուն, անցաւո՛ր, անանցին մօտ: Չե՞ս գիտեր, քանինե՛ր ձիւնի փոթորիկներուն մէջ գլորած, կորած են: Բոլորտիքդ նայէ': Հոս կրնաս դուն անյայտանալ, եւ քար մը իսկ չի գլորիր: Քու նմաններուդ քով դարձի՛ր, եւ մի՛ պրպտեր, որովհետեւ մշտնջենաւոր են ուժերը,

որոնք անոր մէջ կը գործեն մշանջենաւոր օրէնքներու համաձայն :

Վայրէջքը վերելքէն աւելի եւ շատ դժուարին եղաւ: Բարձր ապառաժներու եւ առապար վիհերու միջեւ լպիրծ ճամբան յաճախ կէսէն աւելի քայքայուած էր, ա՛յնպէս որ հարկ եղաւ կառքերը պարաններով բռնել, որպէս զի անդունդը չի գլորին : Գործը աւելի վատթարացաւ եւ լուրջ արգելքի մը փոխուեցաւ, երբ յանկարծ մեր դէմը ելաւ ճամբուն մէկ շեղ անկիւնը ամենամեծ նեղութեամբ եզներու երկար կարաւան մը սայլերով ծանրաբեռնուած, դէպի ուղղակի իմ կառքիս վրայ : Ամէն ինչ անօգուտ էր հիմա : Պարտաւորուեցայ սպասել, մինչեւ որ վերը կէս ճամբան գտնուած ոստիկանական կայանէն բոլոր մարդիկը կանչուեցան, եւ մէկ ժամ աշխատութենէ վերջ միայն կարելի եղաւ կառքերը ազատել :

Կարաւանի կենդանիները Արեւելքի մէջ եւ մանաւանդ անոր գրեթէ անուղի լեռնադաւաններուն վրայ



Զիկանա

անտանելի գոյութիւն մը ունին: Պիտի ծնին, պիտի կրեն եւ պիտի մեռնին կարաւաններու մէջ: Կարաւանը անոնց հայրենիքն է: Երբ այլ եւս քայլ մը իսկ առնելու կարողութիւն չունենան—զանգակին ձայնին կը հետեւին, շարքին մէջ կը մնան, կաղացած, ապուշ աչքերով, գլխահակ եւ անմիտ մարմինով, մինչեւ որ հասնին, լմնան: Ա՛յն ատեն միայն բեռը իրենց վրայէն կ'առնուի, բայց յոռեգոյնը այնուհետեւ կը սկսի: Եթէ մեռնելով փրկուելու չափ բարեբախտ չեն, պարզապէս կը մնան այն վիճակին մէջ եւ վերջին հարուած մը վախճան չի տար անոնց տառապանքին, որովհետեւ Գուրանին մէջ արգիլուած է ուտելու նպատակէ տարբեր նպատակով կենդանի մը մեռցնելը: Մարգարէին նպատակը անշուշտ բարի եղած է եւ ուզած է անօգուտ անգթութեան առաջքը առնել, բայց բնիկները պահանջուած բարեսրտութիւնը հակառակ իմաստով առած են: Սոսկում կ'ազդէ տեսնելը թէ ի՛նչպէս սատկելու մօտ կենդանիներ, արդէն անգղերուն ճարակ, տակաւին օրերով ճամբուն վրայ կը ձգուին, որուն ուղղութիւնը յաճախ անոնց կմախքէն կը հասկցուի, եւ քովէն անցնող մը բնաւ ո եւ է կարեւորութիւն չի տար, գոնէ հարուածով մը անոնց վերջին շնորհք մը չըներ, մոլեռանդ հաւատակիցներու վտանգաւոր ատելութիւնը իրեն վրայ չհրաւիրելու համար:

Կէս օրին հասայ 600 մէթր խորը հաստատուած Կոփ խան: Իսկապէս օրը առատ զբաղումով անցուած էր, եւ պէտք էր որ հոն մնայի, եթէ պանդոկը հրապուրիչ ոչինչ ալ ունենար. սակայն Քսենոփոնի արշաւանքին շուրջ զիս մղող մտահոգութիւնը եւ հայրենաբաղձութիւնը, որ, ինչպէս բոլոր ճամբորդութիւններուս ատեն, վարակած էին զիս դարձեալ, կը քշէին զիս դէպ առաջ: Տարիքին անհանգստութիւնը ազդարարեց ինծի աճապարել, որովհետեւ «ճամբան դեռ ընդարձակ էր»:

Ուստի կէս օրէ վերջ ժամը երկուքին ատենները յառաջացայ դէպ ի հովիտը: Երկար ատեն մնացինք փապարներով եւ դետնաորերով ամայի, վայրի ապառաժուտ ձորի մը մէջէն, կարծես յատկապէս աւազակաբարոյ խուժանի մը համար ստեղծուած, որ արդէն դեռ մինչեւ վերջերս հոն իր շահատակութիւնները ի գործ դրեր է. յետոյ ձիւնադաշտերը հետզհետէ ետ կ'եր-



Վարզահան: Հայուհի

թան, ջուրի խողովակներով ագուցուած բլուրները կը ցածնան, երկրամասը աւելի բաց կ'ըլլայ: Փոքրիկ ագարակի մը ետեւէն, Մատէն Խան կոչուած, կամուրջ մը կ'անցընէ մեզ 60 մէթր լայն Խորօք գետին վրայէն,— Քոճոփանի Հարպասսը—եւ անոր աջ (հիւսիսային) եզերքին վրայ կը դառնայ կանանչ զառիթափերու միջեւ դէպ ի սիրուն հովիտ մը որ Բաբերդ կը տանի: Սո-

վորականի կերպով քաղաքին առջեւ դիմաւորուելով Գայմագամէն, որուն կ'ընկերանար երեւելի Թուրք մը, որուն տունը պիտի բնակէի, եւ ձիաւոր ժանտարմներու ջոկատ մը, ժամը 6ին իրիկունը ներս մտայ:

Բաբերդ, Քսենոփոնի Գիմնիասը, բաւական մեծ, կարեւոր Թրքական քաղաք մըն է, Խօրօխ Սուի մէկ ձորակին մէջ գեղեցկադիր, եւ հաստատուած ցից քարաժայռերու բարձունքին տակ, որուն վրայ կը տարածուին Հայկական, Ճենովական եւ Սէլճուգեան ժամանակներէ մնացած ամրութիւնները: Երկար ատենէ ի վեր խորտակուած են, բայց ատամնաձեւ պարիսպները եւ աշտարակները տակաւին դուրս կը բարձրանան դեղին քարերէն վեր:

Տասներկու ժամէն աւելի ճամբու մը բազմադիմի նեղութիւններուն պատճառաւ վերջին ծայր յոգնած էի. կը փափաքէի փոքր անցք մը կատարել փողոցներուն եւ պազարներուն մէջէն եւ այնուհետեւ հանգչիլ: Բայց փոխանակ ասոր՝ պարտաւորուեցայ շուտով մը հագուիլ շքուիլ հանդիսաւոր հացկերոյթի մը համար, որուն իմ՝ հիւրամեծարս հրաւիրած էր Գայմագամը եւ քաղաքին երեւելիները. ո՛րքան ալ ծանր ըլլար ինծի համար պարտաւորուած էի տաժանելի պարտականութեան ճամբէն չշեղիլ. պատիւը անգամ՝ իր սուսերոտ կողմը ունի: Մնաց որ չզղջացի, որովհետեւ սեղանակիցներս համարձակ արտայայտուեցան տեղական պայմաններուն վրայ, Թուրքերուն համար հազուադէպ լեզուանիութեամբ: Անոնց մէջ ալ, ինչպէս այլուր, գտայ ազատութեան գոռոզ, թէեւ չափազանցուած զգացում մը, եւ ապագային վրայ ժայռի պէս հաստատուն, մինչեւ ինքնագովութեան դպչող ծայրայեղ վստահութիւն մը:

Երկրորդ օրը արեւածագին ելայ, եւ հարկ էր, ինչպէս երէկ Կոփ Տաղը, այսօր ալ Վավուք Տաղը անցնիլ: Անսովոր կերպով մաքուր եւ ոգեւորուած փողոցներուն մէջէն Խօրօխ Սուի անցքը—Արեւելքի մէջ կանուխ կ'ար-



Թափառական Թուրք մը զաւկին հետ

թննան — Նոր զօրանոցներուն մօտէն, իմ առջեւս Պոնտոսական լեռնաշղթային լուսաճաճանչ ձիւնադաշտերը, եւ ետեւս ալ վերօք հին դղեակը, հիանալի էր. ճամբան լաւ, օդը փառաւոր:

Երկուքուկէս ժամէն վերջ հասանք Վարդահան գիւղը պտղաբեր հովտին դաշտավայրին մէջ: Անկէց խճուղիէն կը բաժնուի ճամբայ մը դէպի հիւսիս, որ քիչ վերջը կը նեղնայ, եւ անմիջապէս Քիթօվա Տաղին վրայէն կ'երթայ դէպի Տրապզոն: Քանի որ Քսենոփոն շատ մը ապացոյցներու համեմատ այս ճամբան բռնած ըլլալու է, ուստի իմ դիտաւորութիւնս էր կառքը մէկ երկու օր Վարդահան թողուլ, եւ գրաստներով փորձել Քիթօվա Տաղի վերելքը: Իսկոյն տեղական պաշտօնէին դիմեցի: Բայց տեղւոյն կանչուած գիւղացիներուն հետ խորհրդակցութենէ վերջ բացէ ի բաց յայտարարեց թէ ձմեռ ատեն մեծ դժուարութեամբ միայն կարելի էր Քիթօվա Տաղ երթալ, իսկ տարւոյն այս եղանակին բոլորովին անկարելի, որովհետեւ հետքը քանի մը ձիաւորներու միայն անցանելի է: Ուստի պարտաւորուեցայ հրաժարիլ առաջադրութենէս:

Վարդահան հնուց ի վեր զուտ հայկական գիւղ մըն է: Անիկա ցոյց կուտան հայկական ճարտարապետու-

թեան մէկէ աւելի աւերակները, ի մէջ այլոց կարեւոր մայր եկեղեցի մը, ուր համիլ աշխատեցայ դժուարանցք բանալով թուփերու եւ ջրալից փոսերու մէջէն: Արտաքին պարիսպին մէկ մեծ մասը սկզբնական ուղղանկիւնի հիմնագիծով կը մնայ տակաւին, տանիքը եւ ներքին մասերը փլած են: Ամբողջութեամբ ցոյց կուտայ Անիի շինութեանց հետ մեծ նմանութիւն մը եւ պէտք է անոնց նման Հայկական Գեղարուեստին ծաղկեալ ժամանակին գոյութիւն առած ըլլայ: Երբ ներքին մասէն դուրս կուգայի, զոյգ մը կոկիկ սպատանիներ տեսայ, որոնք պատգարակով չորցած աղբ կը տանէին իրենց մօրը տունը կրակ վառելու իբրեւ նիւթ, մայրերնին ալ քարէ սափորով մը դրան առջեւ կեցած էր: Աքաղաղ մը, ինչպէս միշտ մեծ համազգեստով, մեծաքայլ եւ բոսոր, եւ բազմաժանի պսակով առասպելական թագաւորի մը նման, իր հաւերուն մէջտեղը կը կենար, եւ կոկծալի կարկաչներով կ'ողբար իր սիրած բնավայրերուն կործանումը: Արեւուն փայլին տակ յարմարութեան սիրուն պատկեր մը:

Վարզահանի արեւմտեան կողմը քանի մը ժամ անդին խճուղին կ'անցնի Խորոք Սուի հարաւէն եկող յորդ⋯ջուր մէկ վտակին վրայէն, եւ Հատրաք գիւղակէն անդին կը սկսի բարձրանալ դէպի Վավուք կիրճը: Այս կիրճը Էրզրում եւ Տրապզոն Վիլայէթներուն սահմանը կը կազմէ եւ հեռուէն արդէն իսկ տեսանելի քամակ մը Վավուք Տաղին բարձրաբերձ ձիւնազօտիին մէջ, որ Խորոք Սուի հովիտը կը բաժնէ դէպի հիւսիս Սեւ Ծով փութացող բազմաթիւ հոսանքներէն. 2000 մէթր բարձր է, բայց Հատրաքի վրայ 3000 մէթր միայն, այնպէս որ ասկէց, արեւելքէն անոր վերելքը առանց դժուարութեան կը կատարուի: Անտարակոյս Քսենոփոն դէպի հոս քալեց:

Հատրաքէն դուրս չորս ժամ վերջ, ընդհուպ կոկին հեռարձակ ձիւնադաշտերու մէջէն, հասայ կիրճին բարձունքը: Ճամբան ըստ ինքեան գէշ չէր, սակայն

քոլորովին անփոյթ անուած, խորափիտ, եւ մերթ նեղ, մերթ լայն: Արեւը շողաձիգ կը տատանէր լուրթ երկինքին մէջ եւ շլացիկ կը դարէր ձիւնի եւ սառի դաշտագետիններու վրայ. պարտաւորուած ես աչքերդ պահպանել: Օդը ասկէց աւելի գեղեցիկ չէր կրնար ըլլալ, բայց այս պատճառաւ վրդովում պատճառեց ինծի, որովհետեւ Տրապզոնի մէջ երկար ատենէ ի վեր սպասող կարաւանապետը շարժած էր՝ իր անասուններովը դէպի ներսերը ճամբայ ելլելու: Ուստի անդադար շարքերով ինծի կը հանդիպէին կարաւաններ, որոնց միշտ հարկ է ճամբուն վրայ տեղ տալ եւ շեղիլ: Ասիկա մասնաւորապէս կը դժուարանար եւ ժամանակի կորուստ կը պատճառէր, երբ խնդիրը եզներով փոխադրութեան վրայ ըլլար, որոնց սայլերուն անիւները շատ դժուարաւ կրնան հակիլ:

Երեք ժամէն աւելի տեւող վայրէջքը երկար զիկզակներով կը տանի նախ բարձր փրփրակուտակ Խարշուտ Սուի վրայ լերկ ամայի ժայռուտ վիհերու մէջէն, որոնց վերեւ անգղեր կը տատանին, ծուղակ լարելու ինկող կենդանիներուն համար, եւ յետոյ սիրուն մարգագետնի մը մէջ 600 մէթր ետեւօք, դէպ ի Մուրատ Խան, դալար թուփերու եւ սօսիներու միջեւ հաստատուած, ուր կը բաղձայի գիշերը անցընել: Հոս մտայ



Թուրք ժանտարմ

ճամբան դէմս ելլող ուղտերու կարաւանի մը հետ, որուն առջեւէն կը քալէր տեսակ մը զարդով պճնուած ջորի մը։ Այս զարդի՛ն անունը տուին ինծի, զոր մինչեւ այն ատեն տեսած չէի, եւ որ ճամբուն համար իբրեւ երջանկաբեր՝ տեսակ մը կրօնական յարգանք կը վայելէ, "Բէրշանքի": Բնականաբար ուզեցի քօտաքս գործածել, բայց երկարապատում բանակցութիւններէ վերջ միայն յաջողեցայ ամոքել կարաւանապետին երկիւղը չար աչքէ եւ ապագայ չարիքէ, եւ պատկերը քաշեցի։ Արդարեւ քիչ անգամ շնորհուած արտօնութիւն մը։

Վավուք կիրճերուն այս կողմին ու այն կողմին միջեւ ի՜նչ տարբերութիւն կայ բնութեան եւ մարդոց. հոն դեռ ձմեռ, ամեն ինչ ամայի եւ անծառ, հոս գարուն. դալար թաւուտներ եւ սօսեաց անտառներ, հոն Հայեր եւ Թուրքեր. հոս դրեթէ միմիայն Յոյներ երփնազեղ զգեստներով։

Կրկին կ'արթնցնէ զիս արեւը ճամբան շարունակելու։ Օդը զով եւ խիստ, խոտերուն վրայ կը շողայ եղեամը, զառիթափերէն կը ցայտին աղբերակեր եւ առուներ։ Ընդհուպ հովիտը վիհի մը նեղութիւնը կ'առնէ, որուն աջ կողմը (դէպ ի հիւսիս) Թէքքէ գիւղակը կը կառչի ցից ժայռերու վրայ։ Ջորի ուղիղ ճամբայ մը կը կազմէ եւ կ'երեւի թէ կանուխէն ամրութիւններ ունեցած է։ Ինչպէս Վարզահանէն նոյնպէս Թէքքէէն աւելի կարճ ճամբայ մը լերան վրայէն Տրապիզոն կը տանի, եւ քանի մը երկրախոյզերու կարծիքը ա՛յն է թէ Յոյները այս ճամբէն դացին։ Բայց քանի որ այս ճամբան խիստ դժուար եւ ձմրան ու գարնան մանաւանդ ձիաւորներու համար իսկ դրեթէ իբրեւ անանցանելի կընկարագրուի, ուստի Փետրուարի սկիզբը Քսենոփոն պիտի չուզէր հովիտին հանդարտ ճամբան թողուլ, իր բանակովը լեռն ի վեր մագլցելու համար։ Այս վերջինը կը շարունակուի դէպ առաջ միշտ բարձր, լերկ ապառաժ-

*ներեւ միջեւ եւ ստուերախիտ ծառերու տակէն մինչեւ Կիւմիւշխանէ, ուր հանգիստ առնուեցաւ:*

*Հին ժամանակները եւ Միջին դարու մէջ եւս (Մարքօ Բօլօ) իր այժմ անկարեւոր թողուած արծաթի հանքերով նշանաւոր քաղաքը, որուն մինչեւ առջեւը եկան Ռուսերը Էրզրումէն Բասքեւիչի հրամանատարութեամբ 1828-29ի պատերազմին մէջ. իր գորշ տուներով ու խըրճիթներով կը տարածուի լերան զառիթափին վրայ. բայց նաեւ ճամբուն երկայնքը ագարակ ագարակի վրայ շարուած է, գիւղի վրայ գիւղ, ամէնքն ալ Կիւմիւշխանէի վերաբերեալ եւ անոր անունը կրող: Ծիծաղկոտ երկրամաս մը եւ սքանչելի գարնանային գնացք մը: Նշենիներ, կեռասենիներ եւ տանձենիներ սպիտակ ու վարդերանգ փոշիներով կը ծաղկին լիալիր, մէջտեղերը լեռնավարդեր, մասրենիներ տմոյն, կարմիր, եւ հսկայ պտերներ, եւ այս ամէն շքեղութիւնը հարաւային արեւուն շողովը քօղարկուած:*

*Ժամը երկուքին ատենները մտայ Արտաղա, քաղաքակրթութենէն յայտյանդիման շօշափուած յունաբնակ աւան մը, պարտէզներու մէջտեղ հաստատուած եւ*



Մատէն Խանի մէջ տուն մը

բարձր ապառաժներու վրայ երբեմնի դղեակի մը աւերակներուն ներքեւ, հաւանաբար ճենովական ծագումով։ Արտազայի ետեւը լաւ շինուած բայց դժբախտաբար կէս առ կէս աւրուած խճուղին կը թողու Խարսութի հովիտը եւ կը դառնայ, մեծ մասամբ ապառաժներէ պաշարուած եւ բերանաբաց վիհերու վրայ, երրորդ եւ վերջին կիրճին, Ջիկանիա կիրճին կողմը։

Դաշտանկարը հիմա աւելի հոյակապ կ՚ըլլայ. մայրիներ, կաղնիներ եւ բարձրաբերձ եղեւիններ կ՚եզերեն եւ կը պսակեն բարձունքները, խորը կը մնչէ ամայի վտակ մը, եւ առջեւս կը կանգնին — երիկուան ժամը եօթը — ուղղահայեաց ապառաժի մը ստորոտը՝ իրարու ետեւէ կարծես մէկ լարի վրայ շարուած մաքուր, եւ տախտակամած տանիքներով սնակներ, օսմանեան Ալպեանց Ջիկանիա գիւղակը։ Քիչ ատենէն կը հաւաքուին բոլոր գիւղացիները. այրերը՝ հուժկու կերպարանքներ ազդու դիմագիծերով, եւ խոր քօղարկումին տակ հետաքրքիր իմ կողմս կը խուժեն կիներուն աչքերը։

Յաջորդ առտուն թէյի պատրաստութեան համար ժամանակ չկար։ Ժամը հինգին արդէն իսկ ճամբայ ելլելու էի. եթէ կ՚ուզէի նոյն օրը անցնիլ Ջիկանիա կիրճը (2000 մէթր) եւ Ճէվիզլիք հասնիլ։ Ուստի պակսած նախաճաշին յաջորդեց դարձեալ ուժով առաւօտեան օղի մը, եւ անոր պակասը յայտնի չըրաւ·

Ջիկանիային ետեւը անմիջապէս կը սկսի վերելքը։ Այգածին մշուշը կը դարի հովտին մէջ, սակայն, եւ տակաւին երազներով շուրջ պատուած երկինքէն աղօտ լոյս մը կը մաղուի վար ժեռուտ բլուրներուն մէջէն, ճամբան մենաւոր է։ Թափառկոտ մուրիկ մը, ծանրադանդաղ իշուկով մը, ամէն նեղութեան եւ կարօտութեան մէջ իր հաւատարիմ ընկերը, զոյգ մը գրաստ իրենց թամթար ձիապաններով, գիշակեր հաւ մը գլխուպտոյտ պատճառող բարձրութեան մը մէջ, մերթ ան-



Վարզահան։ Մայր եկեղեցի

շարժ, մերթ ընդարձակ մանուածներով խոյանալով ու իջնելով — այլապէս ո՛չ մէկ կենդանի էութիւն։

Մատէն Քէօյ փոքր ագարակէն վար ճամբան աւելի լեռնային կ'ըլլայ։ Ընդհուպ քանի մը մայրիներ եւ կաղնիներ միայն կը տեսնուին, որոնք փոթորիկին դէմ պայքարին համար լայնասփիւռ արմատներով բռնած են սակաւիկ մը հողը ժայռերուն վրայ. յետոյ մէն մի ծառաճուղ կը դադրի։ Ճաղատ ու ցից կը կարկառուին շիկորակ ժայռերը խոր կապոյտ եւ արեւայեղց երկինքին դէմ։ Եւ ահա կը մտնեմ միգածովի մը մէջ—այսօր առաջ երկթալուն խօսքը ընել չարժեր—եւ ժամը ութըկէսին ատենները կրկին արեւուն մէջ դարող կիրճին բարձունքը։ Թոյլ ձիւնին մէջէն կը շտապեմ առաջ, որովհետեւ մէկ գաղափար միայն կը յուզէ զիս. կարելի՞ է ծովը տեսնել։ Հոսկէց պէտք է քալած ըլլան Յոյները, հոսկէց տեսած ըլլալու են ծովը եւ աղաղակած Թալաթթա՛, Թալաթթա՛, եթէ տեսնուեցաւ։ Բայց ամէն կողմերս ի զուր կը նայիմ պարայած, անանկ բան չկայ, դէպ ի հիւսիս կը ցցուի լայն, մութ քամակ մը եւ տեսութիւնը կը խափանէ։

Վերը կիրճին վրայ հաստատուած է փոքրիկ Թէյարան մը, ժամտարմի կայանի նման, կարծես ձիւնադդակ մը մինչեւ ականջներուն խորը քաշած: Խրճիթին մէջ մահամերձ մարդ մը պառկած է,՝ «ստամոքսը պաղեցուցած է»: Զխանդարելու համար դրան առջեւ կեցայ քրտնաթաթախ, սաստիկ ցուրտին, եւ կը սոսկայի վախէս թէ ուղեւորութեանս գլխաւոր նպատակը ի դերեւ ելած է։ Միշտ աւելի վստահ, միշտ աւելի ուրախ, ճամբաս շարունակած էի ա՛յն գիտակցութեամբ թէ բուն տեղերը այցելած եւ գտած եմ: Բայց հիմա՛: Պէ՞տք է արդեօք աւելի առաջ երթամ. կամ Բաբերդ վերադառնամ եւ անկէ ուրիշ ուղղութիւն մը բռնեմ: Ի՞նչ ընելու էի, ի՞նչ ընէի: Ամբողջ ձմեռը վերը պահակ կեցող եւ ամէն ծակուծուկ գիտցող ժամտարմներէն մին այն պահուն ըսաւ ինծի թէ ամբողջ շղթային վրայ երկայնքէն ու լայնքէն միակ վայր մը կա՛յ միայն, ուրկէ պայծառ օդին – եւ այսօր ալ պայծառ էր—կարելի է ծովը տեսնել․ Գրեթէ հիւսիս արեւելեան ուղղութեամբ բարձունք մըն է եղեր եւ մեր ճամբուն աջ կողմը։ Սառէն եւ ձիւնէն շատ ողորմելի եւ դժուար նեղ հետք մը դէպ ի այդ բարձունքը կը տանի, բայց կը կարծէ որ երեք քառորդ ժամէն կարելի է երթալ, եթէ կ՚ուզեմ, պիտի ցուցնէ ինքը:

Իր մատնացոյց ըրած ձիւնադաշտերուն վրայ, ակնարկը քաջալերական չէր, մանաւանդ որ ներսս կ՚այրէր եւ շատ յոգնած էի: Բայց երբ ամէն ինչ կշիռքին մէջ կը տատանէր, տարբեր ընտրութիւն չէր կրնար ըլլալ: Ձիերը առնուազն երկու ժամ պիտի հանգչէին: Այնուհետեւ ճամբայ ելանք Աստուծոյ անունովը:

Դժուարութեամբ կ՚ելլէինք ես, առաջնորդող ժամտարմը եւ ինծի յատկացուած երկու ժամտարմները ձիւնէն, եւ ամբողջ կէս ժամէ վերջ հասանք բարձունքի մը վրայ. բայց անիկա փնտռուածը չէր: Յետոյ ճամբան կը շարունակուէր խորափիտէ մը, դէպի երկրորդ աւելի լայն եւ ընդարձակ բարձունք մը: Առաջ-

Նորդը մեզ կանխեց, ձեռքը աչքերուն վրայ բռնած, պոռաց դէպի մեզ. «Տէրիա տըր», ահա ծովը:

Վայրկենաբար ամէն յոգնութիւն անհետացաւ. զոյգ մը ոստում, եւ ահա կանգնած էի վերը: Սառուցիկ քամի, շլացիկ ձիւն, վերեւս սպիտակ երկինքը, տակս գալարող մշուշը եւ դէպի հիւսիս բարակ կապոյտ գիծ մը: Խոշորացոյցը շուտով ձեռք առի, բոլոր բարի կամեցողութեամբս սակայն այդ բարակ գիծէն տարբեր բան չեմ կրնար որոշել, բայց ժանտարմները մասնանիշ կ'ընէին միշտ դէպի հոս եւ կը կրկնէին. «Ծովն է, ծովն է»:

Բացէն խօսելով, ես գրեթէ յուսախաբ եղած էի, ես գործս բոլորովին տարբեր կերպով երեւակայած էի եւ անըմբռնելի կերպով բանի տեղ չդնելով հեռաւորութիւնը — մինչեւ ծով ուղիղ գծով ասկէց 50 քիլոմէթր կայ, եւ այնչափ ալ աւելի, Քսենոփոնի ասկէց վերջը գնացքը նկատի առնելով — կը սպասէի բոլորովին ակներեւ առջեւս գտնել ջուրի մակարդակ մը, արեւուն տակ պսպղուն եւ շոգենաւերէ ու առագաստներէ ոգեւորուած: Բայց ահա բարակ գիծ մը, ակօս մը միայն եւ ոչ ուրիշ բան: Բայց ծովը, ըսի ինքնիրենս, իրօք ասկէց տարբեր կերպով չի կրնար տեսնուիլ: Ճիշդ հոդ պէտք է ըլլայ, մարդիկը գիտեն, բազէի աչք ունին եւ իրենց ըսածին վրայ վստահ են։ Այո՛, իրաւունք ունին. ծովն է, ծովը միայն կրնայ ըլլալ: Դէպի ձախ


Վարզահան։ Աղբակիր Հայ պատանիներ

(արեւմուտք) ետեւօք կ'երկարին դէպի վար ճամբուն զիկզակները. եւ թերեւս բանբերը յոյները բերաւ հոս այս հետքին վրայ, ուր ես կը գտնուիմ, հոս կեցան ու տեսան, զիրար գրկելով, իրենց տառապանքներուն փրկութիւնը, ծովը, «Թալաթթա՛, Թալաթթա՛»: Հոս ուրեմն վերջին ումպը առին իրենց թիթեղէ ջրամանէն եւ նետեցին զայն զոհ աստուածներուն. արդէն երկար ատենէ ի վեր ապիկար եղած էր, եւ իր ծառայութիւնը մատուցած: Այլեւս անոր պէտք չունէին:

Բայց զարմանալի՜: Երբ տակաւին վերը ժամանակ կ'անցընէինք, թանձր մշուշի ամպ մը ծածկեց մեզ յանկարծ եւ ա՛յնքան բացարձակ որ չէինք կրնար գտնել նահանջի ճամբան: Ամբողջ կէս ժամ բան մը տեսած չէի: Թեթեւ ձիւն մը կը կաթկթէր, վայրէջքի միջոցին ինկայ, ոտքս սահեցաւ, ձեռքս ճմլեցաւ, վերարկուս պատռեցաւ, տենդը կը դողացնէր ջերմահար մարմինս, — բայց այսչափ միայն: Շահել ուզողը պէտք է կարենայ կորսնցնել, եւ ահա՛ շահս, շահը իմս էր, նպատակիս հասած էի: Բախտախնդիր մը եղած էի եւ բախտս գտած. արեւը օգնեց ինծի: Մթամած մշուշին մէջէն խայտալով իր լոյսը ինծի հետ հովիտը տարի:

Երբ խրճիթ վերադարձայ, հիւանդը մեռած էր: Գործը շուտով վերջացուցած էր: Դեռ այս առտու վարերէն վեր ելած էր, եւ արդէն «Աստուծոյ ողորմութիւնը հասած էր իրեն»: Թերեւս դրախտին մէջ է հիմա, որ խոստացուած է իրեն: Կարգը որո՛ւն որ գայ, ճակատագրին հետ չի կռուիր, չողբար չի կսկծար, մինչեւ իսկ չի զարմանար, կը պառկի պարզապէս եւ կը մեռնի: Այո՛, Արեւելքի մէջ մարդիկ վեհօրէն կը մեռնին:

Բայց հիմա վար իջնե՛նք. վերը այլ ե՛ւս փնտռելիք բան մը չունէի: Խիտ բարդիներով կը տեղար ձիւնը. ճամբան դէպ ի հովիտ կ'իջնէր ընդարձակ լպիրծ շաւիղով մը: Ձախ կողմը (արեւմուտք) իմ տակս դարավէժ կը մռնչէր ջուր մը. ասիկա Մաչքով վտակն է, ուր Ցոյ-

ները հասան երկրորդ օրը, եւ որուն վրայէն անցան անոր արեւմտեան ոչ թէ արեւելեան կողմէն:

Հետզհետէ օդը կը տաքնար: Գարնանային շունչ մը կը տոգորէ օդը եւ կը հալի ձիւնաբլուրներուն, որոնք դեռ վերը կը ծածկեն ապառաժները: Արդէն մշուշը ետ կը քաշուի. արեւը կ'այրէ: Մութ կաղնիներ եւ եղեւիններ, դալարագուարճ մարգեր, ամէնուրեք յագեցած դեղին, կարմիր եւ կապոյտ ծաղիկներով եւ կկուի ճիչերով: Հողմածածան դրօշներու նման լեռնային առուները կ'իյնան շիկորակ ապառաժներու փէշերէն վար, որոնց կառչած են ճերմակ սնակներ, կարծես գամուած: Կարաւաններ կը յաջորդեն կարաւաններու, խան խանի, գիւղ գիւղի: Երփնազգեստ մարդիկ ամէն կողմ տունի եւ դաշտի մէջ:


Բէրչանքի

Անտառուտ հովիտէ մը դուրս մտայ ծաղկափթիթ դաշտանկարի մը մէջ: Յունական խոշոր գիւղը՝ Համզի Քէօյ ընդարձակ միջոցի մը վրայ տարածուած է զառիթափերու միջեւ: Եկեղեցիին առջեւ գացինք կեցանք:

Հովիտը միշտ աւելի գեղեցիկ կը պարզուի: Ցիրուցան տուներուն եւ խրճիթներուն փայտէ տանիքները կը շողան արեւուն մէջ, պտղաբեր ծառերը քօղարկուած են կարմիր ճերմակ շղարշով: Ծաղիկներու ինչ շքեղութիւն: Ուրեմն որքան փառաւոր, որքան անսպառելիօրէն հարուստ է աշխարհը, եւ գարունը որքան հրաշագեղ:

Ճամբան յամրօրէն կը գիջանի դէպ ի յորդաջուր վտակը Մաչքա, սարբեւ: Ձախ կողմը մահմէտական գերեզման մը, մթաստուեր երկնալացիկ նոճիներէ հովանացած, արեւը կը սուզուի արեւմտեան բարձունքներուն ետեւ, եւ լաւ փայտէ կամուրջին վրայէն Սումէլա վանքէն եկող Մէրիաման վտակէն անցնելով կը մտնենք Ճէվիզլիք:

Ճէվիզլիք, հին Քարիդիա, նկարէն կը կանգնի Մաչքա եւ Մէրիաման վտակներուն միացման կէտին վրայ, որոնք երկուքն ալ հոս կը միանան Տէյիրմէն Տէրէի, հիներէն գովաբանուած Պիւքսիտէսի, կարճ գնացքով մը դէպ ի ծով երթալու համար: Իրիկուան ժամը եօթն էր. աշխատութիւնս առատօրէն կատարուած էր: Ասկէց կ'ուզէի շեղում մը ընել դէպ ի Սումէլա վանքը: Գիշերը ուշ ատեն շատ ճարպիկ Միւտիրին, որ Յոյն մըն էր, աջակցութեամբ ձիապանի մը հետ սակարկութեան, եւ երկրորդ օրը գիշերուան բազմապխի ցաւալի դէպքերէ վերջ ժամը ինն էն առաջ կանուխ լմնցուցի երթուդարձը ինը ժամ տեւող ճամբան, կարելի եղածին չափ իրիկունը Տրապիզոն հասնելու համար: Ճէվիզլիքի մէջ երկրորդ գիշեր մը անցընելը բնաւ հրապոյր չէր ընծայեր ինծի:



Թուրք մը զաւկին հետ



Յառա՛ջ դէպ ի դարման ծիծաղկոտ տունը
Երջանիկ թռչնիկին երգէն անոյշ կը թնդայ ան,
Պերամայբուր կը շնչէ բուրումնաւէտ:

(Վակնէր)

Առաքինութիւնը կ՚ամախք մ՚ըն է,
Յանցանքը կլոր կուրծքով աղայ մ՚ը,
Յանցանքը կը համբուրենք հրճուալից,
Բայց առաքինութեան առջեւ կը սարսռայ
մեր շրթունքը:

(Հաֆըզ)

## 9. Ժայռերուն մէջ Սումէլա վանքը

Ճեվիզլիքի հարաւային ելքէն, հոն ուր լեռնուղին կը յանգի արեւմուտքէն, քարոտ արահետ մը կը տանի դէպ ի հարաւ Մերիամանա վտակին անտառաձորը. որուն վրայ կը կանգնի Սումէլա վանքը: Գրաստներս կարծես տօնի մը համար զարդարուած էին, ձիապանները՝ կո-րովի թուրք երկու եղբայրներ, որոնցմէ մին դեռ նոր աւարտած էր զինուորական ծառայութիւնը եւ վերա-դարձած էր Եէմէնէն, «հաւատացեալներու գերեզ-մանէն»էն, կը պատմէր թէ ինչպէս Հօտէյտայէն մին-չեւ Սանաա գնացքին. ամեն տառապած էին տաքէն ու ծարաւէն, թէ ինչպէս վերջն ալ ամիսներով անապա-տին մէջ ովասիսէ ովասիս քշուած էին՝ յարատեւ պա-տերազմական վիճակի մէջ վխտացող Պետեվիներուն

դէմ, եւ թէ ինչպէս իր ընկերներուն ամենամեծ մասը հոն աւազներուն տակ թաղուած կը մնային: Լուսնալու վրայ է հետզհետէ: Բարձունքներուն վրայ դանդաղօրէն եւ վարանոտ միայն կը սողոսկի պայծառութիւնը, եւ կանխայարոյցները, թռչունները, հաղիւ հազ դուրս կը սահին իրենց թաքստոցներէն: Բայց ճամբան շէն է արդէն. բազմաթիւ գիւղացիներ իրենց պտուղները շուկայ կը տանին, եւ ամբողջ յոյն ուխտաւոր ընտանիքներ, այրերը ոտքով, կիները ասպետօրէն ձի նստած պզտիկներուն հետ, ինծի հետ միեւնոյն նպատակին կ'երթան: Ճգնաւորի խուցի մը առջեւ, որ ապառաժի մը ցած փոսին ծակուած է եւ լոյս առնելու համար ալ ճեղքուածքներ ունի, ճամբան ամբողջ մէկ ժամ վերջ վտակէն կ'անցնի, եւ յետոյ ասիկա ձախ թողլով կը բարձրանայ ցից: Խուցը պարապ է. ներկային անհաւատութիւնը սէր չունի այսպիսի աշխարհանջատ ապաշխարութիւններու: Երթալով լեռները իրարու կը կցուին, հովիտը վիհ կ'ըլլայ: Գարնանային զով քամի մը կը փչէ երեսիս. արեւը կը պաշարէ բարձունքները, եւ անոնց շուրջ շողշողուն պսակներ կը հիւսէ, խոտերուն եւ ծաղիկներուն վրայ կը կախուին մարգարիտ շաղի պսպղուն շիթեր: Լոյս է:

Եւ դաշտանկարը հրաշագան կ'ըլլայ: Արահետը, մերթ ժայռերուն մէջէն, մերթ սաղարթախիտ ծառերու տակէն կը գալարի զառիթափին վրայ. Ճիշդ արեւուն դէմ, Խորէն Մէրիաման իր ճամբան կը յարդարէ գիտակից ուժով եւ նեղցած գահաւանդներուն մէջէն մռնչելով:

Եօթանասուն տարի եւ աւելի առաջ այս իմ ճամբուս վրայ թափառեցաւ դէպի Սումէլա իբրեւ մին առաջին երկրախոյզներէն երբեմն հովիւ պատանի, եւ ապա մեծ գիտնական եւ նաեւ տաքարիւն մարդ մը, Եագօպ Ֆալմէրէյէր: Իր հայրենիքն էր Թիրօլ, եւ հաւատարիմ կը կառչէր անոր գեղեցիկ լեռներուն: Բայց ան ալ ինծի պէս սուզուեցաւ այս նեղ հովիտին մէջ, եւ Պոն-

տօսի անտառախիտ լեռը իրեն առջեւ բացուեցաւ իր բովանդակ շռայլութեամբ եւ գունագեղութեամբ, այնպէս որ գոչեց հիացկոտ. Դրա՛խտ մը: Եւ իրօք դրախտ մըն է: Կրնան գտնուիլ աւելի շքեղ հովիտներ, նոյնիսկ աւելի սիրուն, սակայն շքեղ եւ սիրուն, երկուքը միացած, ասոր նմանը չկայ: Բնութիւնը հոս զարմանալիօրէն կը վատնէ իր համօրէն փարթամութիւնը փոքրիկ վայր մը պճնազարդելու համար, աւելի մեծի մը հանդէպ նոյնքան կծծի ըլլալով, ճիշդ ինչպէս ճակատագիրը իր շնորհները կը կուտակէ սակաւաթիւ մարդոց վրայ միայն, բայց ստուար զանգուածը կը թողու որ տուայտի եւ մինակ ապրի, հաւատքի յոյսով անդենականին մէջ առատութեան վրայ: Սեպաձեւ կանաչազարդ բլրակի մը վրայ հանգչեցայ: Ամէն կողմ անտառ արեւայեղց, բնութեան ցանկութեան մէկ պարտէզը եւ միեւնոյն ատեն գերեզման մը հոն մեռած տունկերուն համար: Ծառարգօ մասրե-



Սումէլա վանքին սանդուխը

նիններ եւ դափնեվարդեր կը ծաղկին, բոսոր հովանեակներով, բազմազբաղ կը սուրան մողէզներ, շատ մանր, կափ կանաչ, սունկերուն մէջէն, մեղուներ կը բզզան, բոռ մը շուրջանակի կը խոյանայ, եւ թռչունները ա՛յնպիսի տեսարան մը կը ձեւացնեն որ կարծես խենթեցած են ուրախութենէն: Տղու չարութիւններէն եւ որսորդին ցանկութենէն աներկիւղ, եւ անհոգ կ՛ոստոստեն. գիտեն արդարեւ թէ չեն կրնար իյնալ, որովհետեւ թռիչ ունին: Թերեւս արդէն իսկ փորձառու ամոլներ են, թերեւս նաեւ նոր բոյնին մէջ ամուսնութեան անդրանիկները: Ինծի ի՞նչ պատմել կ՛ուզես, «երջանիկ թռչնիկի ե՛րգ»: Ես չեմ կրնար քու լեզուդ հասկնալ, որովհետեւ ես Զիկֆրիտ չեմ, եւ վիշապի արիւնով սրսկուած չեմ:

Բնութեան մէջ շքեղութիւնը եւ կեանքի մէջ մեծութիւնը չեն նկարագրուիր, այլ կը զգացուին միայն: Ասիկա ես շատ աղէկ գիտեմ: Եւ սակայն դարձեալ միշտ կը պարտաւորուիմ դրուատել արարչութեան սքանչելիքը· Շատերը պիտի ըսեն. այո՛, շատ գեղեցիկ է, բայց չափը կ՛անցընէ: Կրնայ գիրքս ցնցոտիներու սենեակը թափառիլ, ասոր դէմ բան մը չեմ կրնար ընել: Ինչպէս իմաստալից առասպելին համեմատ Անտէոս հսկան միշտ նոր ոյժ կը շահէր իր մօրը՝ հողին հետ շփումէն, այսպէս ալ մեր՝ մարդոցս մէջ հանգչող ուժերը սահմանարձակ կ՛ըլլան բնութեան հետ ժուռ եկած ատեն, վայելքի խանդը կը սաստկանայ եւ զգայական դիւրազգածութիւնը կը զօրանայ նայելու, ստեղծելու, գովելու, գնահատելու եւ կեանքին վրայ հրճուելու:

Անընդհատ կը բարձրանայ արահետը: Մասնաւորապէս նեղ տեղ մը սահեցայ— արդէն երկար ատենէ ի վեր հետիոտն կ՛երթամ—եւ գլորեցայ մինչեւ գրեթէ դահավէժ անդունդին եզրը: Արդարեւ յուզիչ միջադէպ մը պիտի ըլլար ասիկա դիւրազգած ընթերցողին համար, եւ իմ գիրքիս վաճառումին համար ալ մեծապէս պիտի օգնէր, եթէ վար ինկած եւ վնասուած ըլլայի, եւ զիս Սումէլա տարած եւ հոն դարմանած ըլլային.

բայց դժբախտաբար էրիկ մարդոց վանք է միայն, ուր մինչեւ իսկ հաւ չկայ, եւ հետեւաբար նախամեծար կը համարիմ չիյնալ՝ հակառակ անկումին քերթողական հրապոյրին:

Երկուքուկէս ժամ վերջ ճամբան կրկին կը շարունակուէր միւս կողմին վրայ ցից ու դժուար մինչեւ վարը Մերիամանէ: Հրէշային գոռումով կ'աղմկէ դէպ առաջ, եւ ձմեռնային փոթորիկներէն արմատախիլ եղած ծառերը լուցկիներու պէս իրարու վրայ կը նետէ: Ճամբուն վրայ կայ մատաղ կաղնի մը, մահուան վիճակուած է, բայց տակաւին իր բաւարար ոյժը ողնածուծին մէջ կը կանգնէ յաղաղկոտ ծլարձուկումի մը համար, ծիլերը միաձեւ են, թեփերով պատած եւ վարդագոյն թերթիկներով:

Արդէն չորս ժամ է որ ճամբու վրայ եմ եւ սաղարթախիտ ու կռահիւս անտառին սահմանին մօտերը՝ եւ ահա, երբ թփաստանէն դուրս կուգայի, յանկարծ ոսկի լոյսի հեղեղ մը կը ծորի երեսս ի վեր, եւ հովիտին ամէնէն խորը իմ առջեւս կը տեսնեմ մենաւոր տնակ մը, որ թէեւ յայտնապէս նորակառոյց, սակայն արդէն իսկ պատրաստ կողմնակի կքելու, եւ վրան գոց փայտէ կամուրջի մը միւս կողմը, ահագին ցից ապառաժի մը հարթ փապարին մէջ խորամուխ, զուարթ շէնք մը. — ժայռին մէջ սուզուած Սումէլայի Բանայիային (Ս. Կոյսին) վանքը (Տե՛ս պատկերը գիրքին սկիզբը:) Կ'երեւակայեմ թէ միշտ ա՛յս կերպով երեւցած պէտք է ըլլայ առասպելի իշխանին այն կախարդական դղեակը, ուր կը գտնուէր փշուտ վարդիկը փրկութեան ոսկեգէս գանգուրով:

Անտառները վարը կը մնան, զիկզակ ճամբայ մը դէպի վեր կը տանի 250 մէթր: Երբ ես վաստակաբեկ կը մագլցիմ վեր ցից սանդուխէն, ճիշդ երկնաքերձ ելանելիք մը եւ դուռը կը բաղխեմ, կը պարտաւորուիմ երկար սպասել, մինչեւ որ դռնապանը փոքրիկ ծակ մը բացաւ երկաթապատ կաղնեդռուռին մէջ, եւ հարցուց

անուշս ու բաղձանքս : Եւ ասիկա քառորդ ժամ մը տեւեց , մինչեւ որ իմացայ բանալիներուն ճարճատիւնը եւ դուռը բացուեցաւ : Մինչ այս մինչ այն , սանդուխին եզերքէն կը նայէի փառայեղ դաշտանկարին վրայ : Դիմացը արեւոտ շողերու մէջ պուրակախառն լեռներ քուլիսի ձեւով իրարու ետեւ կը մղեն զիրար , դէպի աջ (հարաւ) կը պարզուի վիհը վերօք դէպի ձիւնապատ Քիթօվա Տաղ , եւ դէպի ձախ (հիւսիս) անծայրածիր կը լայննայ բարձունքներու բաւիղ մը , մինչեւ որ ամէն ինչ կ'ընկլուզուի կապոյտ այերքին մէջ : Զարմանալի հնարամտութեամբ մը , որ սկիզբէն ի վեր Եկեղեցիին յատուկ է , հազարեակ մը տարի առաջ աշխարհի մեղապարտ ձգտումներէն անջատուած բարեկրօն հայրեր քաշուեր են երկրին այս մոգական անկիւնը , եւ թերեւս մարդ միտքէ անցընէ թէ հոս անոնցմէ իւրաքանչիւրը անտենչ անյոյզ ապրեր է , բայց այսպէս չէ , որովհետեւ մարդս , ի՛նչ կերպով որ ստեղծուած է , յաւէտ կը կարօտի բնութեան , եթէ իր մեղքերուն ցանկութիւնը զսպելու համար առատօրէն իսկ կազմուած, հանդերձուած ըլլայ : Ասիկա արդէն գիտենք Դրախտէն :

Երկու համակրելի, բարեմիտ վանականներ կ'ընդունին զիս, մին ռուսերէն լեզուով ի դիմաց աբբահայրին բարի գալուստ մաղթեց ինձ, խեղճը դժբաղդաբար յօդացաւէ կը տառապի , եւ ներողութիւն խնդրեց զիս սպասցնելուն համար. հայր սուրբերը ճիշդ այդ միջոցին աղօթքի գացած էին , եւ կարելի չէր վրդովել զիրենք : Զանգակահարութեամբ , որ ի պատիւ բարձրաստիճան հիւրերու միայն տեղի կ'ունենայ, մտցուցին զիս փոքրիկ բակ մը , յետոյ վրան գոց փայտէ սանդուխէ մը վար իջանք , եւ առջեւս տարածուեցաւ ճիշդ փապարի մը մէջ փոքրիկ հինաւուրց , մաշած իւղաներկերով նկարուած եկեղեցին Բանայիայի , Ս. Կոյսին , որուն նուիրուած է վանքը : Զարմանք կը պատճառէ սա՛ պարագան թէ ի՛նչպէս այսքան նեղ տեղ մը ամփոփուեր են իրարու վրայ քարէ եւ փայտէ շինութիւն-

ները, որոնք սանդուխներով եւ կամուրջներով իրարու հետ կապուած են:

Փոքրիկ եկեղեցիին գրեթէ մութ ներքնամասը կը լուսաւորուի վար կախուած արծաթեայ լամբարներով: Խնկամած պատերը անճանաչ նկարներով ծածկուած են: Իբրեւ ամէնէն նշանաւոր պատկերը կը համարուի նոյն ինքն Ղուկաս Աւետարանչին կողմէ կարծեցեալ շինուած Բանայիային պատկերը արծաթազօծ շրջանակի մէջ: Յայտնի կ'երեւի որ սուրբը արուեստագէտ չէ եղեր այլ խիստ աշխատասէր, որովհետեւ Բանայիային եօթանասուն պատկերը նկարեր է եղեր որոնցմէ ցաւալի է որ երեք հատը միայն մնացեր են. մին Յունաստանի մէջ (Մօրէա), ուրիշ մը Կիպրոսի մէջ եւ երրորդը աս, որ Ղուկասին ամէնէն սիրածն է եղեր եւ շարունակ իրեն հետ կը պտտցնէր: Պատկերը հրաշագործ ալ է մարմինին եւ հոգիին ամէնական ցաւերուն դէմ, եւ դարերէ ի վեր ամբողջ Փոքր Ասիայէն ուխտաւորներ կուգան ուխտի եւ երկրպագութեան եւ — ինչ որ էական է վանքին համար — նուէրներ կը բերեն: Դժբախտաբար, ըստ առաջնորդս, նոր ժամանակներս անհաւատութիւնն ու անաստուածութիւնը աւելցած են, բայց բարեգործութիւնը պակսած, այծերը շատցած եւ ոչխարները քիչցած են: Երբ պատասխանեցի թէ վանքը սակայն հարուստ կալուածներ ունի, խաչակնքեց. «Աստուած մեղքերնիս երեսնիս չտայ. ասկէց առաջ այդպէս էր, հիմակ սակայն վատթարացած է մեր գործը:» Ասով անգթօրէն կը ստէր, սուտ մը՝ զոր յօգուտ եւ ի շինութիւն եկեղեցւոյ իրեն կրնար ներել իր ուղղափառ վանականի խիղճը իր դիմացը գտնուող անուղղափառի մը հանդէպ: Այս պատճառաւ խոհեմութիւն համարեցի, այս ակնարկութեան վրայ ինձ առաջարկուած հաստ մոմ մը նուիրել, եւ առաջնորդիս գրեթէ քթիս երկընցուցած ձեռքին մէջ արծաթ դրամ մը դրի եւ այս աստուածահաճոյ ընթացքով իր գէշ տրամադրութիւնը մէկէն ի մէկ յայտնապէս փոխուեցաւ զուարթութեան:

Պատկերին պատմութիւնը վանքին պատմութեան հետ սերտիւ աճած է: Աւանդութեան նայելով հրեշտակներ իր առաջին բնակավայրէն Աթէնքի Ակրոբոլը տարեր են զայն ծովուն վրայէն: Երկու բարեպաշտ Աթենացիներ, Սոփրոնիոս եւ Բառնաբաս իրենց երազին մէջ տեսան Ս. Կոյսը որ յայտնեց իրենց իր պատկերին գտնուած տեղը եւ հրամայեց փնտռել գտնել զայն: Պոնտական Անտառին մէջտեղը գտան զայն ապառաժուտ քարայրի մը առջեւ, զոր ընդարձակեցին եւ մէջը մատուռ մը շինեցին: Այս կերպով ծագում առաւ Բանայիային վանքը. որ ի սկզբան փոքրիկ ուխտատեղի մը եղաւ միայն, իսկ ԺԴ. դարուն կէսին բարեպաշտօն Տրապիզոնեան կայսր Աղեքսիոս Գ.ի օրով ստացաւ մեծ եւ բազմապատիկ արտօնութիւններ, եւ քիչ ատենէն նշանաւոր եղաւ մեծութեան եւ հարստութեան կողմէ:

Վանքն ու հրաշագործ պատկերը միշտ կրցան փոխադարձաբար զիրար պատսպարել եւ պաշտպանել: Երբ ԺԲ. Դարուն վայրագ Թիւրքմէն հրոսակներ Հայաստանի վրայ յարձակեցան, Մէրիամանէի հովիտն ալ գացին, եւ վանքը գտնելով ռմբակոծեցին զայն իր ամուր դիրքին հակառակ եւ ուզեցին այրել: Բայց չի յաջողեցան. կրակը չէր բռնկեր, որովհետեւ վանքը պէտք չէր թոյլատու ըլլար որ իրմէ պահպանուած պատկերը անյարկ մնայ: Ասոր վրայ Թիւրքմէնները պատէն վար քաշեցին զայն եւ բզքտելով նետեցին Մէրիամանէի մէջ: Բայց մռնչաձայն վտակը չառաւ չտարաւ զայն, այլ ամուր բռնեց. կտորները փակցուց, եւ յետոյ բարեպաշտ հայրերը դարձեալ դուրս հանեցին զայն, եւ իր հին տեղը տարին: Այս դէպքին վրայ անոր հրաշագործ ոյժը աւելի շատցաւ: ԺԷ. դարուն կիսուն հզօրն Սուլթան Մուրատ Դ. Տրապիզոնէն ճամբայ ելաւ Պաղտատը գրաւելու (Տե՛ս Գահիրէ—Պաղտատ—Կ. Պոլիս): Երբ իր արքայապահ գունդով Մէրիամանէի ձորէն վեր կը բարձրանար — բանակը մեծ ճամբուն կը հետեւէր — տեսաւ վանքը կիրճին միւս կողմէ, հրաման

ըրաւ որ անձնատուր ըլլայ, եւ երբ մերժեց, միւս կողմի զառիթափէն սկսան թնդանօթի ռմբել զայն: Բայց այս անգամ ալ պատկերը գործի սկսաւ վանքին համար: Գնդակները պատերուն չէին համներ, այլ, սուրբ շունչէն տկարացած, առջեւի վիհին մէջ կ'իյնային, — եւ ասիկա, եթէ իրօք աւանդութեան մէջ ճշմարիտ կորիզ մը կայ, շատ բնական էր, որովհետեւ այն ատենուան թնդանօթներուն համար հեռաւորութիւնը շատ մեծ էր: Բայց Սուլթանը գործը այս կերպով չըմբռնեց, խոնարհեցաւ հրաշքին առջեւ, եւ ո՛չ միայն ետ կեցաւ կործանումէն, այլ խոստացաւ յաղթական վերադարձէն ետքը ճոխ արծաթեայ անօթներ նուիրել վանքին: Եւ իրաւ ալ անօթներ նուիրեց, բայց ո՛չ արծաթէ, այլ պղնձէ, ի մեծ ցաւ վանականներուն եւ ի զարմանս պատկերին: Ամէն պարագայի մէջ վանքը անկէց ի վեր մնաց, թէեւ անհաւատութեան զօրանալուն վրայ այլ եւս մեծ հրաշքներուն զօրանալուն խօսքը չըլլար, Օսմանեան վեհապետներուն մասնաւոր պաշտպանութեան տակ եւ իր կալուածներուն եւ իրաւունքներուն ժառանգութեան մէջ:

Փոքրիկ եկեղեցին կը պարունակէ տեսնելու արժանի ուրիշ բաներ ալ: Արծաթեայ պահարանի մը մէջ կը գտնուի Կոմնենեան Մանուէլ Գ.էն (1390-1420) հաստատուած խաչ մը՝ որուն մէջ, բայց չեն գիտեր ճշդիւ թէ ո՛ւր, Քրիստոսի խաչափայտին մէկ կտորիկը ագուցուած է. Նաեւ մասնաւորապէս ուշադրութիւնս հրաւիրեցին պատարագի արծաթ ափսէին վրայ, բայց խոհեմութիւն սեպեցի երկար բարակ չդիտել այդ գեղարուեստական գործը: Յետոյ ինծի ցոյց տուին արկղիկի մը մէջ առաջին անգամ հոս բնակող մարդոց (Սոփրոնիոս եւ Բառնաբաս) գանկն ու ձեռքը, Սուլթան Սէլիմ Ա.ի նուիրած գեղակերտ ջահերը, Ս. Կոյսին պատկերը եւ հազար տարուան հնութիւն ունեցող ասեղնագործութեամբ դրօշ մը: Այս կերպով վերջացած էր եկեղեցական գանձարանին զննութիւնը, եւ վերջանալուն

շատ գոհ եղայ, որովհետեւ դուրսի փայլող արեւուն հակառակ եկեղեցիին մէջ ա՛յնպիսի ցուրտ մը կար որ ուրախութեամբ բաց օդին մէջ նստեցի ինքզինքս:

Եկեղեցիին դրան դէմ կը բարձրանայ փոքր զանգակատուն մը եւ տարին զիս նեղ քայլուածքով մութ ծակի մը առջեւ: Վանականը ըսաւ ինծի թէ դարերով եւ դեռ մինչեւ մօտ ատեններս անոր մէջ բնակեցան ճգնաւորներ, սուրբ մարդիկ,—եւ այս միջոցիս խաչակնքեց—ապաշխարելու եւ առաքինութեան համար սատանային հետ կռուելու: Երբ մոմով մը ներսը լուսաւորեց, եւ տեսայ ջրակայլակ պատերն ու լպիրծ յատակը, սոսկացի այդպիսի մեղսաքաւիչ առաքինութիւնէն եւ աղօթասացութիւնէն: Արդարեւ նախամեծար կը համարիմ կեանքին լուսաւոր, զուարթ զգայական աշխարհը, մարդկօրէն մեղքերով եւ տկարութիւններով բռնուած, քան հոն ներսը առաքինութեան մէջ մեռեալ մը մաքուր եւ կենդանի: Այս արդիւնքին հետզհետէ ուրիշներ ալ կ'երեւի եկած հասած են, որովհետեւ բաւական երկար ատենէ ի վեր վանքը թափուր կը մնայ: Իմ առաջնորդիս, որ սկսած էր անվստահութեամբ դիտել զիս, տուած բացատրութեան համեմատ, այսօր ալ հոն ներսը կեցողներ կ'ըլլան, այլ մէկ գիշերուան համար, եւ առաւօտուն, ինչպէս նախզգուշօրէն արտայայտուեցաւ, եթէ ոչ ամէն՝ բայց շատ պարագաներու մէջ բուժուած եւ մեղքերնին սրբուած կրկին կը յանձնուին իրենց ազգականներուն:

Այս պահուս վանքը կը պարունակէ մէկ իգումէնի մը (վանահայր) հսկողութեան տակ առանձին խուցերու մէջ տասնըհինգ վանական, որոնք աղօթանուէր կեանք մը կը վարեն: Նոյն իսկ, ինչպէս յիշատակեցինք, Սուլթաններէն նպաստաւորուած վանքին եկամուտները շատ մեծ պէտք է ըլլան, բայց առաջնորդս, թերեւս իմ բարեգործութիւնս հրահրելու համար, կրկին ու կրկին ցաւ յայտնեց աղքատութեան եւ վատթար ժամանակներու վրայ: Ինք ալ, ըսաւ, տասներկու տարի առաջ

Աթոս վանքէն հոս եկած է, եւ կրնայ ուզած ատեն մեկնիլ, բայց չուզեր, որովհետեւ, աւելցուց ժպտելով, իրա՛ւ հոս գէշ է, բայց ամէն պարագայի մէջ ուրիշ տեղէ լաւագոյն:

Ասոր վրայ աչքէ անցուցի վանականներու խուցերը: Ամէն կողմ պայծառ բնակարաններ գրեթէ առանց աթոռի, բայց այս պատճառաւ իսկ աւելի բազմոցներով եւ մասամբ խիստ սիրուն ծածկոցներով, — բարեպաշտ ուխտաւորներու նուէրները, — որպէս զի Հայր Սուրբերը ճգնողական հանգիստ վայելեն, եւ ճգնաւոր ըլլալու վաղանցիկ մարմաջ մը եկաւ վրաս: Խուցերէն մէկուն մէջ համակրելի վանական հրամցուց բնականաբար անմաքուր գաւաթ մը պայծառ հեղուկով, նախեւառաջ ջուր կարծեցի, եւ շնորհակալութեամբ մերժեցի: Բայց որովհետեւ պնդեց, ճշմարիտ զզուանքով մը բե-



Սումէլա վանք: Վանականի՝ խուցեր

րանս առի, «գէշ ջուր» չէր ըսաւ, այլ «աստուածա-ջուր», այսինքն սոսկալիօրէն բարկ օղի: Ըստ երեւոյ-թին մարդ հոն, վանական կանոնին համեմատ, «մարմ-նական զգացումներուն եղծանելի կողմերուն վրայ կը խորհրդածէ», բայց մութին մէջ կեանքի վայելքին դէմ բոլորովին ընդվզող չէ: Ուրիշ վանական մը տեսայ որ կը զբաղէր պատուհանին առջեւ փայտէ երկայն արկղի մը մէջ դրած ծաղիկները ջրելու: Երբ կը հիանայի տունկերուն եւ ծաղիկներուն բազմազանութեան վրայ, պարկի մը մէջէն ափ մը սերմ հանեց եւ ըսաւ թէ այս հատիկներէն, որոնք ամէնքն ալ իրարու կը նմանին եւ գիտմամբ իրար խառնուած է, կը ծնին բոլոր այլազան ծաղիկները: Մէն մի հատիկ արդէն կը պարունակէ ապագայ տունկերը սաղմէն մինչեւ ծաղիկը մինչեւ մանր մասին մէջ.. ասիկա իսկ հրա՛շք է: Այո՛, իմաս-տասէ՛րդ դու սքեմաւոր, իրաւունք ունիս, ասիկա իսկ հրաշք է, եւ արարչութեան ամենամեծ հրաշքներէն մին:

Ուխտաւորի կամ օտարականի թաղ կոչուածը դեռ վերջերս շինուեր է: Շքեղ տեսարանով տեսակ մը պա-տշգամէ ցոյց տուին ինծի հանդիպակայ ուղղահայեաց ապառաժին վրայ այն տեղը, ուրկէց—բացարձակ ան-հնարութիւն մը—Սուլթան Մուրատի թնդանօթները ռմբակոծեցին վանքին պատերը, եւ ապահովաբար պիտի խորտակէին, եթէ Ս. Կոյսին շնորհիւ վառօդին ոյժը տկարացած չըլլար:

Վերջապէս օտարականներու թաղին մէկ պատու-հանով սենեակին մէջ թեթեւ ճաշ մը հրամցուեցաւ ինծի, որուն երկար ատենէ ի վեր կը սպասէի անձկա-նօք, որովհետեւ իրօք տկարացած էր ստամոքսս: Մէկէ աւելի փորձառութեամբ հիմա անվստահ եմ վանական կերակուրներուն դէմ, մանաւանդ անոնց դէմ, որոնք ընդհանրապէս այցելուներուն առջեւ կը բերուին բա-րեպաշտական զրկումները հաւտացնելու համար. սա-կայն հակառակ ակնկալութեանս այս անգամ պատրաս-տութիւնը շատ լաւ էր: Ճաշած միջոցիս, բաց ի վանա-

հայրէն, որ իր յօդացաւէն դէմ ազօթքով կը կռուէր, բոլոր վանականները հետզհետէ հաւաքուեցան: Ճաշէն սակաւութեան մասին ներողութիւն խնդրեցին: Առաջները այսպէս չէր, ըսին, որովհետեւ լաւագոյն բաներ կ'ունենային: Երբեմն երբեմն փոփոխակի էշերով ճէվիզլիք կ'երթային, եւ անկէց կը բերէին հարկ եղած ուտեստեղէնները: Բայց արդի վանահայրը, յոյժ խըստակրօն մարդ մը, իրենց հոգեկան փրկութեան հետ անհաշտ կը համարի հեռուները ուտելիքի երթալը, եւ հիմակ այլ եւս չի թողուր: Հետեւաբար հիմա գիւղացիներուն եւ բարեսիրտ ուխտաւորներու նուէրներուն կապուած են, եւ ասոնք ալ երթալով նուազ պատահական կ'ըլլան:

Ասոր վրայ մեծանձնութեամբ մը ամէնուն աչքին առջեւ սեղանին վրայ դրի երկու մէճիտիէ եւ ժամը հինգին ատենները դուրս ելայ: Վանահայրը իր հիւանդանկողինէն սրուակ մը օղի ղրկեց ինչպէս նաեւ իր օրհնութիւնները եւ վերջին ծայր վստահելի վանականները ամէնքը միասին առաջնորդեցին զիս վանքին դուռը: Հոն կեցած էր դռնապանը. մաղթանքներով անցք տուաւ ինծի եւ շատ մը խօսքեր զրուցելով ձեռքս սեղմեց, որուն նշանակութիւնը չհասկնալ անկարելի էր: Այցելութիւնս վերջացած էր, դուռը գոցուեցաւ. դարերէ ի վեր ո՛չ մէկ խորհուրդ մտած է հոն ներսը:

Ցուրտով սանդուխէն վար իջայ եւ ցից արահետէն ելայ հետիոտն ձիապաններու գլխու շարժումներուն հակառակ: Վերը ապառաժներու վրայ արեւը ոսկեկայծ կը կառչէր, վարը անտառը շեղակի լուսաւորուած էր, բայց խորը արդէն իսկ ստուերներու մէջ էր:

Կը քալէի աշխոյժ: Նայուածք մը ետիս վանական բերդին վրայ իր եկեղեցիով ու ապաշխարանքի ծովով —Աստուած պահէ զիս այդ տեսակ առաքինութենէ— իր հայր սուրբերէն եւ մարդակիրպ սուրբերէն, — եւ այժմ օ՛ն յառաջ: Այն տեղը ուր առտուն կեցած մտիկ կ'ընէի թռչուններուն ձայնին, բերել տուի վանականին

սրուակը, խմեցի մէջէն եւ տակինը սրուակով մէկտեղ նետեցի վիհը, ինչպէս ատենօք Թուլէի Թագաւորը գաւաթին հետ միասին մոլորեցաւ ծովուն վրայ, բայց տխուր չէի, եւ այլ եւս անգամ մըն ալ բերանս ոգելից ըմպելի չդնելու դիտաւորութեամբ ալ չէր:

Հետզհետէ լռեց թռչունին երգը, իրիկուան մութին միջ թաթաւեցաւ, ծառերը իրարու մէջ գոյուեցան սեւ զանգուածներով. Համօրէն լուռ էր:

Ժամը իննին ատենները Ճէվիզլիք հասայ եւ անիծեալ յիշատակով «պանդոկ»ը: Ինծի սպասող կառապանը հասկցուց թէ արդէն իսկ ժամանակը ուշ է դէպի Տրապզոն երկուքուկէս ժամ տեւող ճամբորդութեան համար: Բայց անօգուտ էր: «Եւ եթէ աշխարհը սատանաներով ալ լեցուն ըլլար» —Ճէվիզլիքի մէջ երկրորդ գիշեր մը երբեք, ի՛նչ գնով ալ որ ըլլայ:



Գնչուհի մը

Արեւը կը խօսի Թուփին,
Արեւը կը խօսի աղբիւրին.
Ի՞նչ կը դանդաղիք տակաւին.
արթնցէ՛ք, արթնցէ՛ք,
Եկեր է գարունը,
Ահա՛ գարունը:

(Հայ ժողովրդական երգ)

## 10. Ճեվիզլիք – Տրապզոն – Կիրասոն



Տրապզոն։ Նաւահանգստին վրայ մուրացկան

Դէպի Տրապզոն ճամբան շատ լաւ է: Տէյիրմէն Տէրէի, Պիւքսիւտէսի հովիտը, որ հնուց ի վեր նշանաւոր է իր արգասաւորութեան պատճառաւ, ուղղահայեաց կը կտրէ մէջտեղէն Պոնտական անտառալերան ամէնէն հիւսիսային բարձրագօտին: Անընդհատ ծուղակով կ'իջնէ վար դէպի ծովը: Ապառաժի պատերէն դէպի վար կը հոսին մռնչելով լեռնային ջուրեր. ծաղկալից ծառերու բուրումնաւէտ շունչը կը լեցնէ գիշերային զով օդը:

Լուսինը անտես է, բայց աստղերը կը շողան կրկնակի վճիտ՝ երկինքին խորքէն: Ճերմակ գիւղական տուներ կը նշողեն բերկրալից խաղաղ թաւուտներէն դուրս, բազմաթիւ գիւղեր եւ ագարակներ, արջնաթոյր նոճիներով ազգողական գերեզմաններ, մեծ քարվանսէրաններ կը թռչտին մեր առջեւէն: Յապաղած ժամուն ճամբան բանուկ է ուղեւորներով —այրերը, Յոյն, գունագեղ տարազով, կիները կարճ կարմիր շրջազգեստով, գլուխնին երփներանգ պաստառներով պատած— եւ կարաւաններով: Տաք օդէն հանգչեր են, եւ հիմա քալելու համար կ'օգտուին զովութենէն: Սքանչելի պիտի ըլլայ ուղեւորութիւնը ցերեկ ատեն արեւուն մէջ, բայց գիշերն ալ գեղեցիկ է: Ձիերը կ'ընթանան որքան կրնան. մօտաւոր նպատակին կը վրնջեն:

Երկու ժամէն քիչ աւելի վերջ կը ծռինք ցած եւ շեղ բլուրի մը քամակը: Անթիւ լոյսեր կը կայծեն ընդարձակ միջոցի մը մէջ եւ մութ մակերեսի վրայ. Տրապզոն ենք ծովուն վրայ: Գերմանական հիւրանոցի մը մէջ բնակութիւն կը գտնեմ: Անպարսաւելի մաքրութիւն, գերմանացի տանտիրուհի, գերմանական ուտելիք եւ սրուակ մը շամպանիա, — յետոյ կը թաղուիմ կակուղ անկողինին մէջ մահահանգոյն քունի մը համար:

Տրապզոն, հիներուն եւ Քսենոփոնին Տրապէզոսը, Քրիստոսէ առաջ եօթներորդ կամ ութերորդ դարուն Սինոպի Միլէթական գաղթականութենէն հիմնուած, կամ աւելի ճիշդ, յոյն գաղթականներէ բնակուած: Հոս հանգչեցաւ Քսենոփոն: Երբ Լուկուլլոսի եւ Պոմպէոսի լէգէոնները խորտակեցին Պոնտական մեծ թագաւորին՝ Միհրդատի տիրապետութիւնը՝ որուն կեդրոնն էր Սինոպ, (73-63 Քրիստոսէ առաջ), ճիշդ Բալմիրայի նման՝ իր անկախութիւնը պահելով հանդերձ՝ ինկաւ Հռոմի գերիշխանութեան տակ, եւ քիչ ժամանակ վերջ մեծ ու հարուստ քաղաք մը եղաւ: Տրայիանոս կայսրը (98—117 Քրիստոսէ վերջ) Ադրիանոս կայսրը

(117—138 Քրիստոսէ վերջ) եւ մանաւանդ Յուստինիանոս կայսրը (483—655 Քրիստոսէ վերջ) շատ բաներ ըրին զայն գեղեցկացնելու համար. սակայն հետզհետէ նաեւ ճնշելով վերածեցին զայն հռոմէական քաղաքի մը եւ իրենց կայսրութեան սահմանագլխի բերդի մը։ Ատեն մը ինկաւ Գոթացիներուն ձեռքը, երբ ասոնք Վաղերիանոս կայսեր ժամանակ (253-260 Քրիստոսէ վերջ) Հարաւային Ռուսիայէն հովին եւ օդին դէմ մէկ յարկով միայն պաշտպանուած նաւերով հոս եկան, թալլեցին եւ բոլորովին կործանեցին։

Չորրորդ Խաչակրութեան խաչակիրներուն ձեռքով Բիւզանդիոնի գրաւումէն վերջ, մի ոմն Ալեքսիոս՝ Կոմնենեանց սերունդէն՝ Տրապզոն փախաւ իր մօրը Թամարի եւ խումբ մը բախտախնդիրներու հետ, Մեծ Կոմնենոս տիտղոսը տուաւ իրեն, եւ նոր Պետութիւն մը հիմնեց Բիւզանդական կաղապարով։ Անկէ կը սկսի Տրապզոնի փայլուն շրջանը։ Առեւտրական բանուկ գործունէութիւն, մանաւանդ Ճենովացիներուն եւ Վենետիկցիներուն հետ, որոնք այդ միջոցին գլխաւոր դերը կը կատարէին Կոմնենեանց քաղաքին մէջ, շռայլ արքունիք մը, հոյակապ շինուածքներ եւ անոր փառաւոր դիրքը հռչակաւոր ըրին զայն, եւ ընծայեցին անոր «Եւքսինեան Պոնտոսի Թագուհի» մակդիրը։

«Տրապզոնի կայսրութիւնը» սահմանափակուեցաւ շրջակայ յոյժ արգասաբեր եւ բազմամարդ ծովեզերեայ մասին վրայ. այսպէս դոյզն էր իր իշխանութիւնը եւ երբեք պատմութեան մէջ չնկրտեցաւ բացառիկ նշանակութեան մը. այսու հանդերձ կարողացաւ երկուքուկէս դար տեւել շնորհիւ գրեթէ անմատչելի լերան՝ որ բարեդէպօրէն կը փակէր իր մուտքը դէպի հարաւ, մինչեւ որ 1461ին քաղաքը ռմբակոծուեցաւ երկամսեայ բազմակորուստ պաշարումէ մը վերջ Սուլթան Մէհմէտ Բ.ի կողմէ։ Յամառ ընդդիմութենէն դառնացած յաղթականը համառօտ եւ կտրուկ վարուեցաւ։ Հարուստներն ու երեւելիները Բիւզանդիոն տարագրուեցան եւ

վերջէն Մեծ Կոմնենոսը Ադրիանուպոլիս աքսորուեցաւ, քաղաքացիները իբրեւ գերի բաշխուեցան, եւ ամէնէն աղքատներն ու անկարեւորները միայն ձգուեցան քաղաքին մէջ: Այս կերպով իր վախճանին հասաւ Տրապիզոնի կայսրութեան պատմութիւնը ջնջուեցաւ. Պետութեանց շարքէն:

Իմ հոն բնակութեանս կարճառօտ ժամանակը ընկերային յանձնառութիւններով սահմանափակուած՝ չտեսնելու համար, Վալիին չիմացուցի գալուստս: Բայց կ'երեւի թէ արդէն այս մասին ականջը բան մը ինկած էր, որովհետեւ իսկոյն ղրկեց իր առաջին Թարգմանը, բարի գալուստ մաղթելու եւ ո եւ է փափաք մը ունենալս իմանալու համար, յայտնելով թէ անմիջապէս լի ու լի պիտի կատարուի, միայն թէ ներողամիտ պէտք էի ըլլալ իրեն որ չէր կրնար արժանավայել պատիւներով ընդունել զիս անձամբ, քանի որ երկար ատենէ ի վեր հիւանդ է եւ անկողինի կը ծառայէ:

Գերման կայսրութիւնը Տրապիզոնի մէջ առեւտրական աննշան շահեր ունի միայն եւ ներկայացուցիչ ալ չունի: Հետեւաբար երկրորդ օրը այցելեցի աւստրեւմաճառ ընդհանուր հիւպատոսին, մի ոմն Հէռ ֆօն Մօրից, որ երկար ատենէ ի վեր հոն է: Մեծ սիրով ընդունեց զիս իր տան մէջ, մնացեալ բոլոր օրերուն համար իր Թարգմանը տրամադրութեանս տակ դրաւ եւ ի պատիւ ինծի հանդիսաւոր ճաշ մը տուաւ, որուն հրաւիրուեցան տեղւոյն քաղաքային եւ զինուորական պաշտօնէութեան գլխաւորները: Այս վերջինները շատ կարեւոր էին ինծի համար, որովհետեւ ազատ խօսակցութեամբ առիթ կ'ունենայի իմանալ այս տեղի ալ տիրող տրամադրութիւնը, զոր կատարելապէս համաձայն գտայ Էրզրումի մէջ տեսածներուս:

Հինէն ի վեր Տրապիզոն իր այժմու յիսուն հազար բնակիչներով, որոնց կէսը Թուրք, Էրզրումի վրայէն դէպ ի Դավրէժ կարաւանական մեծ ճամբուն սկզբնակէտը կը կազմէ: Այս ճամբան, ինչպէս տեսանք, այսօր

*իսկ շատ բանուկ է, թէեւ պարսկական հաղորդակցութեան մէկ մեծ մասը իրեն քաշած է Բօթի-Պաթում գացող անդրկովկասեան երկաթուղին: Իր դիրքը հրաշալի է: Բազմածոց, խոր կապուտակ ծովէն սկսեալ սիրուն զառիթափերու երկայնքէն կը տարածուի մինչեւ բարձունքները, որ նախապահնորդներն են Պոնտական անտառալեռան հզօր գօտիին: Փառայեղ պատկերին ամբողջ շրջագիծը, ապառաժի ցից առաջքներուն եւ հովտաձեւ փեռեկտումներուն միջեւ փոփոխ դիրքը, առաջ իսկ լոյսի եւ ստուերի բաշխումը եւ գրեթէ արեւադարձային բուսական աշխարհը անմոռանալի տպաւորութիւն կը գործեն իւրաքանչիւր դիտողի վրայ, նոյն իսկ եթէ ան մեր հոյակապ մոլորակին վրայ արդէն շատ բան տեսած ըլլայ:*

*Իրարմէ 3-400 մէթր հեռացած երկու խոր հեղեղատներու միջեւ պարփակուած է նեղ ապառաժուտ հարթավայր մը: Դէպի հարաւ ընթացող, հաւասարոտն եռանկիւնի մը կերպարանքը ունի, սեղանաձեւ է եւ եռակի աստիճաններով կը խոնարհի դէպի ծով: Այս*



Տրապզոն : Հին ամրութիւններ

սեղանաձեւ մակերեսին վրայ հաստատուած է քաղաքին ամենահին մասը, եւ անկէց առաջ եկած է Տրապէզոն կամ տրապէզ քաղաք անունը: Երկու նախայիշատակուած հեղեղատներէն գետահոս կ'ընթանան վտակներ, մրտենիի եւ դափնիի թփաստաններ կ'աճին խիտ առ խիտ, որոնցմէ դուրս կը ցցուին սեւ նոճիներ եւ հաստաբուն թզենիներ: Ինչպէս համաձեւ Անիին մէջ՝ Արփա Չայի եւ Կարս Չայի հեղեղատները, հոս ալ անոնք, ամուր պարիսպներով պաշտպանուած, ժամանակին կոմնենեան քաղաքին համար բնական պատուար մը կը կազմէին, գրեթէ անբռնաբարելի հին ժամանակներու պատերազմական գործիքներէն: Դղեկաձեւ հին քաղաքին արեւելակողմը կը տարածուին պազարները եւ Ֆրանկաթաղ անուանուած մասին հետ յունաբնակ քաղաքամասը, խորը հաստատուած, ծովուն երկայնքը եւ ընդարձակ Նոր նաւահանգիստին շուրջ:

Տրապիզոնի ամէնէն գեղեցիկ տեսարանը կը պահէ քաղաքին հարաւային կողմը հաստատուած Պօզ Թէփէ բլուրը, ուր կը գտնուին «Տաղաւար Աստուծոյ Ս. Կոյս» մայրապետներուն վանքը եւ Տէրվիշներուն մզկիթը, սակայն դժբախտաբար կանոնաւոր ճամբայ չկայ: Այդ բլուրին վերէն մարդ ճիշդ իր առջեւը կը տեսնէ բազմաթիւ նաւերով բանուկ նաւահանգիստը, քիչ մը հեռուն ձախակողմ՝ (դէպի արեւմուտք) հրուանդանի մը վրայ յունական մայր եկեղեցին, եւ յետոյ հին նաւահանգիստէն դէպի հարաւ բարձրացող հին քաղաքը: Նոր նաւահանգիստը մինչեւ Պօզ Թէփէի ստորոտը փորուած է, մօտը կը բարձրանայ հին ճենովական ամրութեանց պարիսպը, որոնք հիմա զօրանոցի եւ նաւարանի կը գործածուին: Երբ անոնց այցելեցի, նաւահանգստին վրայ հաստատուած բերդական թնդանօթներով ռազմախորձեր կը կատարուէին, ճիշդ գերմանական դրութեամբ: Մարզանքը վարող երիտասարդ սպան խիստ քովս եկաւ: Խնդրեց որ քիչ մը զգուշանամ: Արդէն իւրաքանչիւրը լաւ կը կատարէր իր գործը, բայց ամբող-

ջութեան մէջ ուղիղ չէր։ Եթէ կը փափաքէի բերդը տեսնել, ըսաւ, պատրաստ է առաջնորդելու զիս, իր գործը արդէն լմնցած է։ Շնորհակալութեամբ մերժեցի միեւնոյն պատճառներով ինչպէս այլուր. բայց պարագաները Թուրքիոյ մէջ այսօր ո՛րքան տարբեր են հինէն, երբ զօրանոցին կամ բերդին օտարականի մը մերձեցումը կասկած կ'արթնցնէր եւ ամբողջ ոստիկանական ջոկատ մը շարժման մէջ կը դնէր։

Շքեղ նորակերտ յունական մայր եկեղեցիին կից կը սկսին լայնարձակ պազարները մինչեւ հին նաւահանգիստը վարօք, ուր հին քաղաքաբաժնին նեղ հիւսիսային կողմը կը կազմէ։ Արեւելեան սովորութեան համեմատ փողոց առ փողոց բաժնուած, կը պարունակեն զանազան ձեռագործներ, գնումի եւ սպառումի առարկաներ, ի մէջ այլոց ոսկի եւ արծաթ սիրուն նիւթեր, բայց արդէն իսկ եւրոպական շպարով, եւ Թիֆլիզէն ու Էրզրումէն եկողի մը համար նուազ հրապոյր ունին։ Աւելի հաճելի է պտոյտ մը հին ձկնարանին շուրջ, ուր այլազան եւ զարմանազան մակոյկներ եւ փոքր առագաստանաւեր կը շարժին եւ ժողովրդային կեանքը իր բովանդակ սկզբնականութեան մէջ կը պարզուի հանդիսատեսին։ Նաւահանգիստի մը մէջ եռուզեռը միշտ եւ ամէն կողմ ինծի համար մասնաւոր հմայք մը ունի, բայց մանաւանդ Հարաւի կամ Արեւելքի նաւահանգիստի մը մէջ, ուր մէն մի գործունէութիւն աղմկալից կ'արտայայտուի, եւ գոյները այլանդակ լոյսով կը շողան, մեր մէջ ե-



Տրապզոն։ Տէրվիշներուն մզկիթը

*դաժէն տարբեր: Մարդ հոն կը գտնէ բոլորովին փառաւոր ժողովրդային տիպարներ մակուկավարներուն, վաճառորդներուն, մուրացկաններուն, գործաւորներուն, եւ մանաւանդ Թուրք բեռնակիրներուն մէջ. այս վերջինները իրենց կորովի կազմով, Թուխ, սուր դիմագիծերով եւ ծանրածանր աշխատութեան տոկացող, մերկօրէն խաղացող մկանունքներով :*

*Միմիայն Թուրքերէն բնակուած հին քաղաքը Նաւահանգիստէն վեր կը բարձրանայ երեք դարատափերով. միջինին վրայ կը կանգնին Սարայը եւ Օրթա Հիսար էլ ճամի մեծ մզկիթը : Այս վերջինը Յուստինիանոսի օրով ի սկզբան իբրեւ եկեղեցի շինուած էր, եւ նուիրուած Ոսկեգլուխ Աստուածամօր: Վերջերը մզկիթի դարձաւ, իւղաներկերը եղծուեցան պատկերամարտ Իսլամին կողմէ, եւ Բիւզանդական մաշած զանգակատան տեղ անցաւ արաբական նրբաւարտ Մինարէն : Գեղեցիկ աւազ դուռը կը հովանանայ պերճ սօսիներէ, ներսն ալ ճարտարապետօրէն շատ սիրուն է. սակայն դժբախտաբար ամբողջ շէնքը այն աստիճան սեղմուած է տուներու միջեւ որ հազիւ հազ հիմա կը տեսնուի:*

*Ամէնէն վերի դարատափը կը պարփակէ Կոմնենեանց դղեակն ու բերդը: Նեղ, ցից, խորտուբորդ փողոցներէ վեր կը մագլցուի եւ մարդ ինքզինքը քիչ ատենէն կը գտնէ Տրապիզոնի երբեմնի արքունի ամրոցին լայն եւ մացառաղօղ աւերակներուն միջեւ, Տրապիզոնի Ակրոպոլիսը, ուր բնակիչները կ՚ապաստանէին թշնամիին յարձակումներուն առեն, եւ ուր հիմա հին պալատներուն տեղը ամէնէն աղքատ մարդիկը կը բնակին, սերունդները անոնց՝ զոր Մէհմէտ Բ. քաղաքին մէջ թողած էր: Ակրոպոլիսը արեւելքէն եւ արեւմուտքէն պաշտպանուած էր հեղեղատներէն, դէպ ի հիւսիս միջին դարատափին կողմը ամրութիւններով եւ բարձունքներով, թէ՛ թշնամիին եւ թէ սեփական ժողովուրդին առջեւ, որովհետեւ արեւելեան բռնապետութիւնը միշտ իբրեւ իր ամենամօտ հակառակորդը նկատած է ժողովուրդը:*

Դէպ ի Հարաւ պարիսպներէն դուրս կը բարձրանայ գետինը աւելի հեռուն մինչեւ լեռը, ժամանակին թատրոնով եւ ձիարձակարանով ։ Հոս կը գտնուի Ակրոպոլիսին տկար կողմը, եւ ասոր դէմ ուղղուած են Գոթացիներուն, Վրացիներուն, Սելճուքներուն (Իկոնիոյ Քայքօպատ Ալայէտտինը), Թիւրքմէններուն եւ վերջապէս Սուլթան Մէհմէտ Բ.ի բոլոր յարձակումները։ Ահագին քանակութեամբ քար վերցուած է այս կողմէն եւ ուրիշ շինութիւններու գործածուած, բայց մնացածն ալ կը բաւէ վկայելու երբեմնի մեծութեան եւ պերճանքին ։ Թուխ պարիսպին բարձրադիր արեւմտեան անկիւնը, մրտենիներու, դափնիներու, ոճիներու եւ նռնենիներու մէջեւ կայ տակաւին չորեքանկիւնի աշտարակ մը, որուն պատուհանի կամարները անկործան մնացած են, թէեւ խարխուլ եւ այս պատճառաւ մուտքը գոցուած պատերով։ Վերօք աշտարակին առջեւ, արեւմտեան հեղեղատին խորքին վրայ 100 մէթր բարձր ելայ, եւ դիտեցի դէպ ի վար դղեակին, բերդին, քաղաքին եւ ծովուն վրայ, ամենքն ալ մառնամուտ արեւուն ճառագայթներէն հրահոսան ։ Ձիւն ծաղիկներ ամենուրեք կը խուժեն աւերներու եւ դալարասքօղ ժայռերուն մէջեւ, ճերմակ առագաստներուն անդրադարձը



Տրապզոն։ Հին Նաւահանգստին վրայ

կը տատանի կոհակներուն խաղին մէջ. բազմաձայն զանգակներ կը լսուին քաղաքէն վեր. անոնք ինծի համար գարունը կ'աղաղակեն:

Դղեակը երբեմն փայլուն արքունիքի մը կեդրոնն էր, կայսերական սրահին աղեղնաձեւ պատուհաններէն կայսերազուն իշխանուհիները կ'այգորէին իրենց առջեւ տարածուող շքեղ դաշտանկարը: Անոնք նշանաւոր էին իրենց գեղեցկութեան կողմէ եւ իրենց ձեռքը կը խնդրուէր ամէնուրեք, անոնց ուխտի եւ դարպասումի կուգային. առասպելներու մէջ եղածին նման, արեւելքի վեհապետներն ու իշխանները, Բիւզանդական, Պարսկական, Մոնկոլ եւ Թիւրքմէն: Հոս վերը կը գտնուէր հարսանեկան սենեակը Կատարինա իշխանուհիին, որ իր շնաշխարհիկ գեղեցկութեան համբաւով ամբողջ Արեւելքը բոցավառեց, եւ վերջ ի վերջոյ սիրային զարմանալի արկածէ մը վերջ իբրեւ Տէսբինա Խաթուն Պարսկաստանի գահը բարձրացաւ: Այս պարիսպները հազար տարիէ ի վեր ի՜նչեր ապրեցան խաղաղաւէտ մթնոլորտի մէջ եւ փոթորիկներու եւ բռնութիւններու մէջ, ինչե՜ր տեսան եւ լսեցին արեւուն ճառագայթներուն տակ եւ հեշտագրգիռ լուսնկային:

Պօղ Թէփէ բլուրը հեթանոսական շրջանին Միթրայի պաշտամունքին գլխաւոր կեդրոնը կը կազմէր, արեւուն եւ լոյսին Իրանեան աստուածին առջեւ բագոսական գինարբուքը յիշեցնող հանդէսներու: Բարձրադիր կէտի մը վրայ կոթող մը կանգնուած էր անոր: Երբ Դիոկղետիանոս կայսեր օրով (284—305) հեթանոսութեան հակազդեցութիւնը ընդհանուր արիւնաշատ հալածանք մը առաջ բերաւ Պետութեան համար վտանգաւոր նկատուած քրիստոնէական նորածարծ աղանդին դէմ, Եւգինէոս անունով Տրապիզոնցի քաղաքացի մը, որ գաղտնի հաւատացող մըն էր Քրիստոնէութեան, որոշեց գիշեր ատեն խորտակել Միթրայի կոթողը: Բռնուեցաւ, եւ իր երկու ընկերներուն հետ քարկոծումով սպաննուեցաւ, եւ վերջերը Սուրբերու կարգը դասուե-

ցաւ իբրեւ Սուրբն Եւգինէոս ։ Այդ հանգամանքով կարողացաւ պատերազմի եւ պատերազմական նեղութիւններու մէջ շատ օգտակար ըլլալ իր հայրենիքին, եւ հետզհետէ ազգային սուրբի վերածուեցաւ ։ Իր վկայական մահուան ենթադրեալ տեղւոյն վրայ բարեպաշտօն Կոմնենեանք կանգնեցին Ս. Եւգինէոս եկեղեցին, զոր վերջերը Օսմանցիք Նէնի Ճամի մզկիթին փոխարկեցին ։ Դափնիի թուփերու եւ թզենիներու մինչեւ կանգառուած, զուտ բիւզանդական ոճ ցոյց կուտայ իր գեղեցիկ, լուսաթափանց գմբէթովը ։

Տրապզոնէն գրեթէ 15 քիլօմէթր դէպի արեւմուտք կը գտնուի խաղաղիկ, հաճելի յունական նաւահանգիստը, Բլաթանա, «լայնատերեւ սօսեաց քաղաքը» ։ Ծովային հանգարտ գնացքը ծառախիտ եւ պարտիզուտ ափունքէ մը հոն կը տանի սիրուն Գէօշքի մը առջեւ, որ յիշատակարան մըն է Համիտեան շրջանին սպաննուած զօրավարի մը, յետոյ ազգողական գերեզմանատունը պերճ նոճիներով, որոնք պահակներու պէս կը կենան դամբաններուն վրայ, զօրանոցներ եւ մարգարաններ եւ ի վերջոյ Այա Սօֆիա ։ Տրապզոնի այս ամենահին եկեղեցին ԺԳ. դարուն շինուեցաւ Բիւզանդիոնի իր համանուն քրոջ կաղապարին համեմատ Կոմնենեան Մանուէլ Ա.ի օրով, յետոյ փոխուեցաւ մզկիթի, որ սակայն հիմա իր խարխուլ վիճակին համար անգործածելի է, Այա Սօֆիա մըզկիթը, եւ վերջին ռուսեւթըրքական պատերազմին ատեն եւ յետոյ իբրեւ զինուորական մթերանոց գործածուեցաւ ։ Քանիցս վերականգնուելով, անպայման կը կազմէ բիւզանդական գեղարուեստին ամենա-



Մուրացկան աղջիկ

գեղեցիկ յիշատակարաններէն մին: Մուտքին առջեւ պատ քաշուած է, վանքը լքուած, բայց հիմնին պատերը տակաւին բացայայտ ցոյց կուտան սկզբնական շրջագիծը եւ սիւներուն ձեւերը: Անկէց գրեթէ 30 մեթր հեռի, եւ ծովափին մօտ պահականոցի մը նման կարկառած, կը բարձրանայ քառանկիւնի զանգակատուն մը, որուն մուտքն ի վեր մագլցեցի խարխուլ քարէ սանդուխէ մը առաջնորդիս եւ հոն խաղացող գիւղացի պատանիներուն օգնութեամբ: Ներսը դէպի գագաթը տանող դարձդարձիկ սանդուխը անելանելի էր, անկէց վար տեսարանը շատ գովեցին, բայց բոլորովին քանդուած է այդ սանդուխը:



Տրապզոն: Դամբարան

Բլաթանա աւանը կը գտնուի նկարչագեղ գետաձորի մը, Կալամինա Տէրէի բերանը, ծովուն եւ ուռուցիկ անտառներու բարձունքին միջեւ, չորս կողմը ծաղկազարդ պարտէզներ եւ հսկայ կաստենիներ: Ինծի ըսուեցաւ թէ Տրապզոնի առջեւ ցամաք ելլելու դժուարութիւններուն պատճառաւ կը մտածուի դէպի Էրզրում շինուելիք երկաթուղիին նաւահանգիստ ընել Բլաթանան, ինչ



Տրապզոն: Այա Սօֆիա

որ ճիշդ է, քանի որ այս նաւահանգիստը պաշտպանուած է եւ դիւրին է ընդարձակել եւ շինել զայն:

Մայիս 17ի իրիկունը մեկնեցայ Տրապզոնի նաւահանգիստէն: Բաժանումը ծանր էր ինծ համար: Գիշերը կապոյտ ու սեւ կը կամարի մթաստուեր լեռներուն վրայ, քաղաքը գեղանշոյլ փայլումով կը պարզուի ծովեզերքին երկայնքը եւ բարձունքներն ի վեր, ծովը յամրօրէն կը շնչէ խոր տուրեւառով, երկինքին ջահերը կը մարգրտին եւ կ'ոստոստին եւ կը խաղան պսպղուն ալիքներուն վրայ: Թեթեւ մը կը դողդղայ ահագին շոգենաւը ջրասուզակ պտուտակին ճնշումին տակ. կը շողան ընկրկող ջուրերը, եւ փողփողուն քղանցք մը կը քաշուի ետեւէն: Լեռնէն կը փչէ անտառներուն զովն ու ծաղիկներուն բոյրը:

Օր մըն ալ անցուցի կեռասներու քաղաքը Կիրասոն (Քէրասոս, Փառնակիա): Իր երիցագոյն քրոջ՝ Տրապզոնի նման Սինօպական գաղթավայր մը, անոնց պէս ինքն ալ գոգաւորուած անտառախիտ բարձունքներու միջեւ: Փափկաճաշակն Լուկուլլոս Քրիստոսէ առաջ 73 թուականին Կիրասոնէն Եւրոպա բերաւ կեռասը: Մօտիկը առջեւօք եւ հազիւ հազ նաւահանգիստէն դուրս ծովուն հայելիին վրայ կը բարձրանայ փոքրիկ ապառաժուտ կղզին, Կիրասոն Ատասը (Արետիաս), զարմանալիօրէն միակ կղզին Սեւ Ծովուն մէջ: Մակոյկ մը զիս հոն տա-

*րաւ : Այս լքեալ վայրին մէջ ցրուած են բիւզանդական դղեակի մը փլատակները, թերեւս հնութեան մէջ նշանաւոր Արէսի Ամազոնական մեհեանին հիմերուն վրայ : Ըստ աւանդելին՝ Արգոնաւորդները հոս իրենց դարձին եզերք քաշեցին իրենց նաւերը եւ կռուեցան մարդակեր «Սոխմփալեան թռչուններ»ուն դէմ :*

*Քաղաքին ետեւի բլուրին վրայ ելայ : Բիւզանդական խորտակեալ ամրութիւններ ամրակուռ պարիսպներով եւ ներքսամուտ քառանկիւնի աշտարակներով կը պսակեն ծայրատուած բարձունքները եւ կ'երթան կը յանգին վարը մինչեւ ծով : Հրաշալի է տեսարանը : Ժամանակին հոս բարձունքի մը վրայ կանգնեցաւ Պոնտացի Թագաւոր Միհրդատի մէկ հզօր բերդը, անոր մէջ պահած էր իր գանձերը, կիներն ու քոյրերը, որոնք իրենց յօժար կամքով բոցերու մէջ նետուեցան ու մեռան, Լուկուլլոսի եւ անոր լէգէոններուն ձեռքը չիյնալու համար :*



Կիրասոն

## ՎԵՐՋԱԲԱՆ

Եւ օ՜ն ուրեմն դէպի հայրենիք։ Հազիւ վեց շաբթուան մէջ կտրեցի անցայ ընդարձակ երկիր մը, տեսայ ճակատամարտի դաշտեր եւ աւերակներ եւ վանքեր եւ հետեւեցայ Քսենեփոնի հետքերուն։

Ատենօք, առասպելական ժամանակի մէջ, յանդուգն ծովագնացներ, Արգոնաւորդները, յառաջացան Կողքիսական երկիրը Ոսկեգեղ մը ձեռք անցընելու համար։ Ես ալ հոն մխուեցայ եւ ոսկի գեղ մը գտայ, ամուր բռնեցի զայն եւ հայրենիք կը տանիմ, ա՛յն է Յոյներուն Թալաթթա՜ն, Թալաթթա՜ն, եւ Պոնտական Անտառին կախարդիչ գիշերներուն, ծաղկաշունչ բոյրերուն եւ գարնանազայր պերճանքին յիշատակը։

Աճապարէ՛, նա՛ւդ իմ բարի, աճապարէ՛, «որովհետեւ երեկոյացա՜ծ է օրը եւ դեռ երկա՛ր է ճանապարհը»։



# ՔՍԵՆՈՓՈՆԻ ԱՐՇԱՒԱՆՔԸ
# ՄԻՆՉԵՒ ՍԵՒ ԾՈՎ

(ԶԻՆՈՒՈՐԱԿԱՆ-ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ)

**Քաջ մարդուն երգը բարձր կը հնչէ:**

Կ. Ա. Պիւրկէր

## *ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ*

*Երբ ես 1908ի գարնան Դամասկոսէն, Բալմիրայի վրայէն դէպի Եփրատի ստորոտը եւ դէպի Պաղտատ կատարած անապատային ճամբորդութեանս սկսայ, Քսենեփոնը գրպանս ունէի եւ ճամբու ընթացքին, խանին կամ վրանին մէջ բազմաթիւ ժամեր զբաղեցայ երկուքուկէս հազարամեակ առաջ ձեռք բերուած այս փորձառութիւններով: Եփրատի հակառակ եզերքին վրայ, մինչեւ 600 քիլոմէթր անդինիր հետքերը հետապնդելով Բաբելոնէ քիչ վեր անցայ գետը եւ պտտեցայ Քունաքսայի ճակատամարտի դաշտին վրայ ուր Քրիստոսէ 401 տարի առաջ պատերազմի մէջ ինկած երիտասարդ Կիւրոսի բանակը, հակառակ Յոյներու մասնակի մէկ յաջողութեան Արքայից Արքայ Արտաշէս Բ.էն պարտուեցաւ:*

*Իմ ճամբորդութիւնս միօրինակ էր եւ զրկանքերով լեցուն: Բայց երբ պահ մը անդրադարձայ, հոգիիս մէջ սկսան պտուտկիլ բոլոր հնամենի պատկերները արեւուն փայլող ճառադայթներուն տակ եւ աւազին վրայ:*

*Մեծ յուզում կ'առթէր ինծի այդ պարագան եւ ամէն օր ալ աւելի կը հետաքրքրուէի այս համաշխարհային պատմութեան վերաբերեալ գործով:*

*Այսպէս ուղղուեցայ ես իմ որոշումներուս մէջ եւ փոխանակ ծովէն Արաբիայի վրայով գալու Պաղտատէն Փոքր Ասիայի մէջով ետ ճամբորդեցի, անցնելով Տիգրիսի աջ կողմը գտնուող հայկական բարձրաւանդակէն եւ Էրզրումէն դէպի Սեւ ծով, վայրի եւ կոշտ բնութեան տեսարաններով պարուրուած, անսովոր բաներու փորձառութիւնը վաստկելով, եւ նամանաւանդ Քսենոփոնի արշաւանքը հետապնդելու, զինուորական տեսակէտով կարելի եղածին չափ այս մասին լուսաբանուելու նպատակաւ, ի մասնաւորի վերջին մասին, այսինքն հայկական բարձրաւանդակէն դէպի Տրապեզոս (Տրապզոն) վայրէջքին շուրջ:*

*Յոյները Բաբելաստանէն Տիգրիսի արեւելեան, այսինքն ձախ եզերքին վրայով քալեցին դէպի հիւսիս: Ես սակայն գետին միւս եզերքը ընտրեցի, որովհետեւ հոդ շատ քիչ մարդ գացած ըլլալով անծանօթ մնացած էր: Ես կ'ուզէի Քալաթշէրկաթի գերման պեղումներէն երեւան բերուած ասորական աւերակային հնութիւնները այցելել:*

*Դժբախտաբար Մուսուլէն անդին շատ չկրցայ հետապնդել Քսենոփոնի ճամբան, որովհետեւ այնպիսի տեղեր կան հոդ, որոնք մեծամեծ դժուարութիւններ կը ներկայացնեն, անոնց դէմ մաքառիլ ուզողներուն եւ աւելի վերջը դէպի հիւսիսակողմի հայկական բարձրաւանդակը կատարուելիք հետազօտութեան մը կրնային վնասել: Ես ուրիշ կարելիութիւն չունէի, եթէ ոչ մինչեւ Սեւ Ծով ուղղուելիք երկրամասին վրայ դէպի արեւմուտք ուղղուիլ: Եփրատը եւ Մոնս Ամանոսը ես անցայ Քսենոփոնէն քիչ մը աւելի դէպի հիւսիս ուղղելով քայլերս եւ իր հետքերուն վերստին հանդիպեցայ առաջին անգամ Կիլիկեան դաշտին մէջ, բայց յարակից գնացքին առեն Տարսոնի վրայէն եւ Ցարսոնի Կիլիկեան դուռնէն մինչեւ Իկոնիոն (Գոնիա) հարկ էր նահանջելու:*

*Յոյներու մինչեւ Բաբելաստան յառաջանալը եւ յետոյ մինչեւ քրդական լեռները նահանջելը մենք բաւա-*

կանխին գտենք արդէն։ Ասկէ մինչեւ Սեւ Ծով երկարող ճամբուն մասին Քսենոփոնի ցուցմունքները կան թէեւ, բայց անոնք արդէն ապահով կարելի չէ նկատել եւ երկար ատենէ ի վեր գիտուններուն եւ ճամբորդներուն հետազօտութեանց առարկայ եղած է։

Յայտնի է թէ բաւական մը յառաջանալէն վերջ յոյն առաջնորդները՝ բաւարար տեղեկութիւններ ստանալու եւ կազմակերպութիւն մը ունենալու ժամանակ չունեցան։ Անոնք ձմեռ ատեն սառի եւ ձիւնի մէջ կը հալածուէին թշնամիներէն։ Այնպէս որ այդ աճապարանքի ընթացքին գրաւոր կերպով կարելի չէ եղած հեռաւորութիւնները, վայրերը եւ պատահած դէպքերը ճշդել, բոլոր անոնք իրարու հետ շփոթուած են։ Մինակ վերջիններուն մէկը կայ, որ իր վրայ ազդած է եւ որ ընդարձակ կերպով եւ մասնաւորաբար պերճախօս ճառերով նկարագրուած է, մինչ ուրիշ դէպքերու մասին բոլորովին կը լռէ։ Ժամանակի եւ տարածութեան հոլովումովն ու տարբերութեամբը բոլոր անոնք կորսուած են, հակառակ անոր որ շատ կարեւոր եւ յիշատակելի ըլլային այդ պարագաները։ «Գահիրէ-Պաղտատ-Կ. Պոլիս», իմ այն ատենուան ճամբորդութիւնս գրելէս ի վեր միշտ միտքս կուգար այն պարագան թէ կարելի չէ՞ արդեօք Յոյներուն Մուսուլէ անդին կատարած ճամբորդութեան հետեւիլ։ Անմիջապէս թարմ եռանդով մը շուտով փորձեցի Քսենեփոնեան գրականութիւնը ուսումնասիրելու։ Ասոր վրայ տեսայ որ ամէնէն լաւը բոլոր այդ գրուածները աչքով տեսնալ եւ անգամ մը եւս այդ ճամբաները անձամբ պտտիլն էր։ Այս անգամ ես որոշեցի, նոր ճամբով մը Կարսի ռուսական կառավարչութենէն անցնելով Թրքահայաստան մտնել, եւ անկէ Քսենոփոնի ճամբան վերստին բռնել ու զինուորական տեսակէտով քննել սա պարագան թէ յունական կարաւանը ի՞նչպէս ձմրան ընթացքին Տիգրիսի վրայով մինչեւ Սեւ Ծով հասնիլ յաջողած է

քանի որ չինական արշաւանքի առթիւ կազմակերպուած զինուորական գործողութիւններէն գիտեմ որ առանց ճամբայ ունենալու լեռներու ու ձորերու մէջէն անցնիլ ի՞նչ կ'արժէ: Եւ ասիկէ կ'ուզեմ հետեւցնել թէ յունական կարաւանը ձմեռ առեն Տիգրիսի վրայէն ի՞նչպէս Սեւ ծով հասաւ:

Այս ճամբորդութիւնը կատարելովս ես հիմա կը պատկանիմ հետախոյզներու այն դասակարգին որոնք Բիւրուց Արշաւանքը աւելի լաւ հետապնդած են, որովհետեւ իմ անձնական տեսակէտովս ինծի կը պակսին միմիայն արշաւանքին սկզբնական մասը եւ Նահանջին Մուսուլէ (Մեսպիլա. Նինուէ) մինչեւ Գասին երկարող մասը: Այսու համդերձ Փոքր Ասիոյ եւ Հայաստանի բարձրաբերձ լեռներուն միաձեւութենէն կրնամ հետեւցնել թէ ինծի անձնապէս անծանօթ մնացած հողամասին բնութիւնը իմ ճամբորդած մասերուս յատկութեանց էապէս կը համապատասխանէ: Ես իմ նախորդ ճամբորդութիւններէս ի վեր Հայաստանի երկիրն ու ժողովուրդը լաւ կը ճանչնամ եւ կը կարծեմ թէ չտեսած մասիս համար ալ նմանօրինակ կարծիք մը կրնամ ունենալ: Ու ատով կը հաշուեմ թէ ատանկ բանակի մը համար ձմրան ընթացքին ինչ կարգադրութիւններ կարելի էին, եւ թէ գործնականապէս զինուորական արշաւանք մը ի՞նչպէս պէտք է տնօրինուի:

Այս տեսակ նկատում մը թերեւս շատ կենսականութիւն տայ եւ շատ մեծ լոյս սփռէ մինչեւ ցարդ մութ մնացած խնդիրներուն շուրջ:

Քսենոփոնի եւ իւրայիններուն հիանալի ճարտարութիւնն ու բանակավարութիւնը սակայն ասով երբեք բան մը չեն կորսնցներ իրենց մեծ նշանակութենէն:

Իմ տեսակէտովս մենք շատ բան կրնանք սորվիլ հին աշխարհէն եւ ի մասնաւորի Քսենոփոնի Նահանջ Բիւրուցէն, եթէ մենք պատմական պարագաներուն արտաքին կամ երեւութային ընթացքը լուրջ հիմերու վրայ եւ իր

Ներքին կեանքին մէջ ուսումնասիրենք եւ նկարագրուած ժամանակագրական պարագաները ներկայի համապատասխան պարագաներուն եւ հաստատութիւններուն հետ բաղդատելով փնտռել թէ այսօր այն ատենէն ինչ տարբերութիւն կայ, եւ ինչ տեսակ տարբերութիւն է անիկա, ինչո՞ւ համար: Քսենոփոնի այս տեսակ ընթերցումը թերեւս դպրոցականները ալ աւելի ուրախութեամբ պարապեցնել կրնայ իրենց դասական պարտականութիւններով, քան այն ինչ որ մենք պարապած ենք ժամանակին: Նամանաւանդ որ այս կերպով դպրոցական գրասեղանին վրայէն իսկ գործնական կեանքի տեսակէտով մնայուն պաշար մը ամբարած կ՚ըլլան:

Յոյներուն արշաւանքին եւ անոնց մինչեւ Սեւ Ծով կատարած նահանջին մէկ ընդհանուր պատկերը տալով հանդերձ չեմ կրնար ըսել թէ որքան փորձառու եւ լեզուագէտ զինուորներ էին անոնք: Հոն է որ ահա միակողմանի յայտարարութիւններու դէմ տարբերութեան կէտ մը կը դրուի: Բնականաբար աշխարհագրականօրէն ճամբու ուղեգիծները իմ աչքովս իսկ տեսնելով վճռականութեամբ գծած եմ զանոնք հետեւելով Քսենոփոնի ոտքի քայլերուն:

Քրիստոսէ 404 տարի առաջ Բաբելոնի մէջ վախճանող Պարսկաստանի Արքայից Արքան Դարեհ Բ. երկու զաւակ ունէր, Արտաքսերքսէս (Արտաշէս) եւ Կիւրոս, կոչեցեալն Կրտսեր(*): Այս արտակարգ ձիրքերով օժտուած եւ իր մօր՝ Պարիզատեսի պաշտպանութիւնը վայելող իշխանը հազիւ թէ 17 տարեկան էր երբ Դարեհին Փոքր Ասիոյ ընդարձակ երկիրներէն Լիւդիան, Մեծն-Փռիւգիան եւ Կապադովկիան գրաւեց: Մայրը արդէն զինքը կը նախընտրէր իր միւս զաւկէն՝ Արտաքսերքսէսէն: Ինքը հոն գտնուող բանակներուն վերին հրամանատարութեան այսինքն թէ մեր կարծեացը հա-

(*) Կիւրոս Մեծէն տարբերելու համար։ Կիւրոս Մեծ Պարսից մեծ կայսրութեան հիմնադիրն է եւ ասիական մեծ վեհապետ մը (Քսենոփոնէն 150 տարի առաջ):

մեմատ, Կովկասի Փոխարքային նման ընդհանուր կուսակալի մը դիրքը ստացաւ որ իր վրայ կը նոյնացնէր նաեւ հրամանատար զօրավարի դիրքն ու աստիճանը:

Երբ սա իր հօրը մահուան անկողնոյն մօտ կանչուեցաւ եւ երբ իր մեծ եղբայրը Արտաքսերքսէս Բ.ը գահ կը բազմէր, Կիւրոսի դէմ իրաւացի թէ անիրաւ դաւաճանական ընթացքներ վերագրուեցան եւ ինքը մահուան դատապարտուեցաւ: Իր մօրը բարեխօսութեանը վրայ սակայն ոչ միայն ներուեցաւ, այլ իր այն ժամանակի դիրքին վրայ հաստատուեցաւ: Եւ սակայն իր անցուցած վտանգին յիշատակը, նաեւ իր անցուցած հիւանդութիւնը փառասէր իշխանը չկրցան հանդարտեցնել: Ան որոշեց իր ընդարձակածաւալ սատրապութեան զօրութիւնները հաւաքելով գահընկէց ընել Արքայից Արքան եւ անոր տեղը անցնիլ:

Իր քաղաքական ձեռնարկներուն եւ իր զինուորական պատրաստութիւններուն պատճառն ու նպատակը ասով միայն կը բացատրուի:

Իշխանին քաղաքական նպատակն էր, իր մօր գաղտնի աջակցութեամբ Թագաւորին շուրջը «պալատական կուսակցութիւն» մը կազմել, Պելոպոնէսեան պատերազմէն վերջ տիրապետող Սպարտային կրցածին չափ շատ հաճոյակատարութիւն ցուցնել, նշանաւոր օտարականները նուէրներով եւ հիւրամեծարութեամբ շահիլ եւ ի վերջոյ իր սատրապութեան սահմանագլուխին վրայ կռուախնձորներ ստեղծել եւ կամ թէ գոյութիւն ունեցողներէն օգտուիլ միջամտելու եւ այսպէսով իր զինուորական պատրաստութիւններուն նպատակը դիւրութեամբ մը քօղարկելու համար:

Իր զինուորական պատրաստութիւնները կը բաղկանային հետեւեալներէն: Կիւրոս նախ իր մեծ թիւով բնիկ զինուորները, «Բարբարոսաց բանակը» իր անձին կը վերապահէր եւ պատերազմական կրթութեանը հոգ կը տանէր, նաեւ ժամանակին լաւագոյն զինուորներէն համարուող բազմաթիւ Յոյներ իր ծառայութեան մէջ

կ՚առնէր, վարձկան զինուորներու փոխարէն առաջնորդներ, զինուորական կոչում ունեցող մարդիկ կը գտնէր եւ անոնց իբրեւ առաջնորդ կամ իբրեւ ռազմագէտ դրամ կու տար որպէս զի իբրեւ զինուորագիր սպաներ յոյն քաղաքացիներ բերելով իրենց հայրենիքէն, զանոնք բանակին ծառայութեան մէջ առնէ։ Այդ ժամանակները, այսինքն Պելոպոնէսեան պատերազմին վերջանալէն քիչ վերջ, այդ կարգի վարձկան զինուորներով հարուստ էր աղքատացած Յունաստանը։ Անսուաղ մնացած զինուոր-էակներ էին անոնք, արկածախնդիրներ։

Ատոնց մէջ կային նոյն իսկ քիչ մը կարողութեան տէր մարդիկ որոնք Կիւրոսի ծառայութեան տակ դիրքի եւ հարստութեան յուսալով կ՚ակնկալէին, նաեւ փախստականներ։

Անդամագրութիւնը եւ հրամանատարութեան վերաբերեալ յայտարարութիւնները կախում կ՚ունենան զինուորագրութեան տեսակէն։ Առաջնորդները կը գըտնուէին զիրենք վարձատրողին այսինքն Կիւրոսի հրամանին տակ, վարձկան զինուորներն ալ զիրենք վարձող առաջնորդներուն կը հպատակէին, որոնցմէ վերջ կուգային զինուորագրող սպաներն իրենց մարդոցմով։ Այդ առանձին առանձին գործող առաջնորդներուն միջեւ ընդհանուր առմամբ աստիճանաւորում մը չկար, միայն երբեմն երբեմն Կիւրոսի դատողութեան համաձայն այդպիսի բան մը տեղի կ՚ունենար։ Անոնք ինքնագլուխ կը հրամայէին իրենց բանակին մարդոցը վրայ եւ իրենց զինուորները մասամբ հոն ալ կը փոխադրէին իրենց հայրենիքին մէջ ունեցած յուզումնալից կացութիւնն ու յարաբերութիւնները, որոնք երբեմն մինչեւ իսկ յայտնի թշնամութեան դէպքերու տեղի կու տային ի վնաս ամէնուն։

Շատ մը տեսակէտներէ մղեալ այն յունական վարձկան հետեւակները կարելի է նմանցնել Միջին դարու վերջերը գոյութիւն ունեցող երկրապահներուն։ Իմ կարծիքովս սակայն այս երկուքին միջեւ էական տար-

բերութիւն մը կայ: Այն է թէ՝ երկրապահները խիստ եւ կարգապահական կազմակերպութիւն մը ունէին եւ իրենց ծագումը զգայուած պէտքի մը կը պարտէին , որ էր գերման կայսրութեան կողմէ ցրուած Զուիցերիացիներուն տեղ բնիկներէն կարող հետեւակագունդ մը կազմել , մինչդեռ Յոյները իբրեւ օտար կը կռուէին օտարներուն դէմ , նաեւ՝ յունական պառակտումին եւ հակառակութեանց միջոցին Յոյներուն դէմ կը կռուէին: Աւելի լաւ պիտի ըլլար Կիւրոսի յոյն զինուորները անուանել երկրապահներու նմանող օտար լեգէոն մը :

Իրենց կացութիւնը ռամկավարական էր : Իւրաքանչիւր վարձկան զինուոր ինքզինքը ազատ կը զգար եւ իրմէ բարձր աստիճան ունեցողներուն քիչ կամ շատ հաւասար իրաւունքներու տէր կը դաւանէր ինչ որ վարձատրութիւններու թեթեւ տարբերութիւններէն իսկ յայտնի կ՚ըլլար : Հասարակ զինուորներուն ամսաթոշակն էր մէկ Դարեհական (հին դրամ մը) , մինչ հազարապետինը եւ առաջնորդինը միայն այդ գումարին կրկինը եւ կամ առ առաւելն չորեքպատիկն էր: Մարդիկը հոն կրնային հագուիլ, զինուիլ եւ բարեկամ երկրի մէջ սնանիլ, այն աստիճան որ այն ատենուան դրամական քանակը հիմակուանին չորեքպատիկը կամ հնգապատիկը ըլլալէն զատ, զինուորները աւարառութիւններէ ձեռք բերուելիք դրամին վրայ դրած էին իրենց յոյսը նաեւ այն ապագայ վարձատրութիւններուն վրայ , որոնք նախապէս իրենց խոստացուած էին :

Այն ատենի յոյները պարսիկներէն շատ բարձր էին, ոչ միայն բարոյապէս , այլ նաեւ մարմնովին եւ զինաժութեան մէջ ալ իրենց զինուորական դասաւանդութեամբ եւ թաքթիքով : Այս առաւելութիւնները ծանօթ էին Կիւրոսի , եւ անգամ մը Բաբելոնի մէջ կատարուած յոյն սպաներու գիշերային ցուցահանդէսի միջոցին անիկա չզգուշացաւ հրապարակաւ «իր ընկերները» անուանելու զանոնք : «Բնիկ զօրքեր չէի՞ն որ ինծի կը պակսէին» ըսաւ հոն , ես ձեզի կանչեցի իբրեւ կռիւի

ընկեր, որովհետեւ ձեզի շատ մը բարբարոսներէ աւելի ընտիր եւ կարող կը դաւանիմ: Դուք արժանի կը թուիք այն ազատութեան, որուն տէրն էք եւ որուն համար ես ձեզ ուրախութեամբ կը գովաբանեմ եւ կ'ապահովցնեմ ձեզի թէ ես ձեզ իմ բազմաթիւ եւ բազմատեսակ ստացուածքներէս պիտի նախապատուեմ:» Երկու ու կէս հազարամեակ առաջ պարսիկ արքայազնի մը բերնէն ելած այս խօսքերը, եթէ նոյն իսկ Քսենոփոնի կողմէ գեղեցկացած ձեւով ներկայացուած ալ ըլլան, դարձեալ մասնաւոր նկատառման արժանի են, որովհետեւ ուրիշ դէպքերու հետ կապակցութիւն ունին:

Կիւրոս ինքն իսկ կը ներկայանար իր յոյն վարձկան զինուորներուն առջեւ, որոնք իրենց կողմէ վստահութիւն ունէին անոր վրայ եւ սիրով կը ծառայէին անոր:

Յայտնի է թէ փոխադարձ յարաբերութիւնները զուտ անձնական էին: Ատիկա կը հիմնուէր վարձակալութեան դաշնագիրի մը վրայ որուն մէջ երկու կողմերուն, վարձատրողին եւ վարձկան զինուորին իրաւունքներն ու պարտականութիւնները ճշդուած էին: Անորոշութեանց մուտք գործելուն եւ մէկ կամ միւս կողմին դաշնագրին անթերի գործադրութեան չհսկելու պարագային, այդ դաշնագիրը դադրած կ'ըլլար եւ հարկ էր տեղ տալ նոր կարգադրութեան մը:

Այդ տեսակէտով ահա սկիզբները կարգապահութիւնը, «մեծերու հանդէպ հնազանդութեան» հարկը շատ տկար եղաւ: Այս ցաւալի կացութիւնը Բաբելաստանէն մինչեւ Սեւ ծով տեղի ունեցած երկար նահանջի միջոցին աւելի սաստկացաւ եւ հետեւանքը այն եղաւ որ կարգապահութեան պակասը ի վերջոյ վերածուեցաւ բոլորովին անկարգապահութեան: Անտարակոյս այս զինուորները բոլորովին կը կորսուէին եթէ երբեք «մարդոց պարկեշտութիւնը բանակի մը ընդհանուր գիծերէն մին եւ յաջողութեան ալ նախապայմանը չըլլար»: Այս սկզբունքն է որ առաջնորդները եւ Քսենոփոն ըմբռնեցին եւ անհաւատալի համբերատարութեամբ

մը, նաեւ բոլոր երեւակայելի դրդապատճառներու օգնութեամբը ազգային հպարտութենէ մղեալ ճամբէն շեղածները դարձեալ դէպ ի իրենց ճամբան ուղղեցին:

Յոյն լեգէոններուն միջուկն եւ ստուար մեծամասնութիւնը, Հոպլիտները՝ այսինքն թէ ծանր զէնքեր կրողներն են: Ասոնք ուժեղ մարմինով, պատերազմի փորձառութիւն եւ զինուորական կրթութիւն ստացած Յոյներ էին որոնք կ՚ուրախանային իրենց մեծ երեւոյթին համար բաղդատմամբ Թեթեւազէններուն (նետաձիգներ եւ աղեղնաւորներ) որ մեծամասնութեամբ Թրակիացիներուն, Կրետացիներուն եւ Հռոդոսցիներուն նման օգնական ազգերէ կը բաղկանային:

Յոյներուն կռուող ուժի չափին գալով, երբ ընդհանուր կերպով Բիւրուց Նահանջի մը խօսքը կ՚ըլլայ բնական է որ ատիկա անշուշտ կը վերաբերի Սարդիկէէն յառաջանալով տարի մը վերջ Սեւ Ծով ժամանողներուն: Քէլայնայի մէջ կատարուած երկու զօրանցքներու միջոցին նաեւ Քունաքսի ճակատամարտէն առաջ լեգէոնին քանակը չափազանց բարձրացաւ:

Այս կողմերէն անցաւ ահա կարաւանը եւ ես գրեթէ մօտէն կրցայ հետեւիլ անոր: Շատ մը վիճաբանութիւններու եւ հրապարակախօսութիւններու մէջ դիտել տուած էի թէ. կարաւանը շատ գէշ կազմակերպուած ըլլալու էր անոր համար որ առաջնորդները հոս ու հոն յարձակումներու կը պատրաստուէին: Անոնք որոշեալ տեղեր կը կենային, որպէս զի կարաւանը իրենց մէջ առաջ անցնի եւ իրենց աւելորդ առարկաները կը նետէին: Յայտնի է թէ երբէք օրինակելի կարգապահութիւն չեն ունեցած, բայց եւ այնպէս շատ քննադատելու տեղի չկայ երբ նկատի առնենք ճամբուն արտակարգ մեծութիւնը եւ դժուարութիւնները:

Շատերը տեղացի մանչեր ունէին իրենց հետ, որոնք կը կրէին ծանր զէնքերը եւ կը պաշտպանէին բանակետղն ու վրանները: Բեռան կենդանիները եւ սայլերը

կը կրէին զէնքերու ուրիշ մաս մը, նաեւ կարասիներ ու պատերազմիկ զինուորներուն եւ նոյնինքն կարաւանին համար անհրաժեշտ եղող պաշարը: Յետոյ կուգային ցորենի եւ գինիի վաճառականները, որոնք կատարեալ շրջիկ շուկայի մը նման կը հետեւէին «բարբարոսներու բանակին» երեւոյթը պատկերացնող այս մարդոց: Ատոնք գրեթէ այլեւս կարաւանին կը վերաբերէին, որովհետեւ զինուորները կը կերակրէին, նաեւ կարելիութիւնը կ'ընծայէին անոնց աւարները արժեցնելու կամ թէ ապրուստի նիւթերու հետ փոխանակելու: Յոյները բարոյական ալ շատ կարեւորութիւն չէին տար, մենք գիտենք թէ ասոնք իրենց հետ կը տանէին նաեւ պչրուհիներու բազմութիւն մը եւ ինչպէս այն ժամանակի ականատեսները կ'ըսեն այս աղջիկները ոչ միայն անոնց կիրքերուն եւ զգայական հաճոյքներուն կը ծառայէին, այլ նաեւ տագնապալից վայրկեաններու մէջ գործիչի դեր ստանձնելով պատերազմի աղաղակներով զինուորները կը հրահրէին:

Յայտնի է թէ այն ատենի զինուորը հիմակուանէն շատ աւելի բաւականացող եւ սակաւակեաց էր, այլ սակայն պէտք էր ապրիլ եւ ստամոքսը լեցնել: Կենդանիներուն համար ալ Կիւրոսի ժամանակ պէտք էին նոյն այն սնունդները, որոնք այսօր ալ նոյնն են: Ուրեմն սխալած չենք ըլլար եթէ ընդունինք թէ Լէգէոնին կարաւանը շատ աւելի մեծ ու ընդարձակ շրջանակային տարածութիւն մը ունէր քան նոյնինքն պատերազմիկ զինուորները: Հիմա ինչ կը տեսնենք: Կարաւանը միշտ հոն է, ան կուգայ կոխոտելով քարաստանն ու անապատը սառն ու ձիւնը եւ ամէն տեղ կ'արգիլէ զինուորներուն շարժումի ազատութիւնը թէպէտեւ աւելի սահմանափակուած չափով: Հազուադէպ կերպով մենք կը կարդանք կամ թէ տեղի ունեցող իրադարձութիւններէն կը մակաբերենք թէ հրամայուած ժամանակամիջոցէն շատ աւելի ուշացած է ինչ որ գրեթէ չպատահի եւ իրաւամբ կ'ըսենք «խոշոր բեռնաւորում մը կամ սպարկութիւն մը:»

Եթէ երբէք առարկուի թէ առաջնորդները հոն ու հոս աշխատած են փոքրել կարաւանը, իմ կարծիքովս սխալմունք մը պատահած կ՚ըլլայ: Իւրաքանչիւր փորձառու տարեց սպայ գիտէ թէ ներկայ զօրափորձերուն միջոցին որքան դժուար է բեռները եւ կառախումբերը, որոնք կարաւանին ճշմարտապէս ցաւ առթող զուակներն են, կարգի բերել եւ ուղղել: Որովհետեւ հարկ է զինուորները որոշ ատենին որոշեալ տեղը հասցնել: Շատ անգամ բարձրաստիճան հրամանատարները կը ձգեն որ բեռները անցնին եւ իրենց չվերաբերող ու կարաւանը խճողող նիւթերը նետել կուտան: Որովհետեւ հիմա բեռներու կացութիւնն է որ բովանդակ կարգապահութեան գործին վրայ դատաւորի վճիռը արձակելու կոչուած է: Քանի մարդ պաշարներու մասին լաւ նկատողութիւն ըրած ըլլայ, այնչափ լաւ կրնայ հասկնալ արշաւող զինուորներու կացութիւնը:

Գանք հիմա Պատերազմին: 1870–71ի պատերազմի միջոցին գունդին ամէնէն երիտասարդ սպաներէն մէկն էի եւ ի մեծ ցաւ ինծի երկար ատեն բեռներուն եւ առարկեներուն վրայ հսկեցի: Հիմա միայն կը հասկնամ թէ ինչ տեսակ փորձառութիւն մը ունեցեր եմ եւ թէ ինչեր են պատահած: Եւ ասիկա երկաթեայ կարգապահութիւն, աշխարհի ամենալաւ ճամբաներն եւ ուղիները ունեցող երկրի մը մէջ, Սեպտեմբերի եւ Հոկտեմբերի նման ընտիր եղանակի մը ընթացքին: Երկրապահները իրենց բեռներուն համար ունէին «հուրիի դռնապանը» եւ Բումօր-մայսթէրը: Ցոյները որոնք երկրապահներուն լաւ կազմակերպութիւնը չունէին, կ՚երեւի թէ չունէին այդ կարգի պաշտօնակալներ կամ թէ գէթ անոնց յիշատակութիւնը չկայ:

Լեգէոնը շաբաթներով ամիսներով կը քալէր կիզիչ անապատներու մէջէն, վայրի, կարծր եւ անանցանելի երկիրներէն կ՚անցնէր ձմեռ ժամանակ երբ ձիւնը ու սառնամանիքը կը տիրէր հոն, հակառակ անոր որ չէին վարժուած այդ կլիմաներուն: Ցասքայէն շատ աւելի բարձր

կիրճերէ կ՚անցնէին անոնք: Ես Փետրուարի կիսուն Զինաստանի Խիլի եւ Կանզի գաւառները իրարմէ բաժնող սահմանագլուխի լեռներուն վրայ համեմատաբար շատ փոքր արշաւանք մը կատարած ունիմ: Քանի մը օրուան մէջ տեղի ունենալիք նոյն յառաջխաղացութիւնը չափազանց դժուար եղաւ եւ մենք շատ նեղութիւններ կրեցինք, որոնց դէմ պայքարեցան իմ կանոնաւորապէս կազմակերպուած եւ խիստ կարգապահութեան մը ենթակայ գրաստներու կարաւանս: Նոյնպէս եղաւ նաեւ դէպի Պաղտատ եւ վերադարձին Ամանոս եւ Տաւրոս լեռներուն վրայէն (տես Գահիրէ–Պաղտատ—Կ. Պոլիս) ինչպէս նաեւ հիմա հայկական բարձրաւանդակէն մինչեւ Սեւ Ծով կատարած ճամբորդութեանցս միջոցին: Ես այնպէս կը կարծեմ թէ Բիւրուց արշաւանքին կատարումը մեզի հիացում կ՚առթէ, մենք կամ ես այս մասին աւելի ըսելիք բան մը չունինք հիանալու համար այն կարաւանին վրայ, որուն Յոյն Քսենոփոնը (միայն բնիկ ժողովուրդ մը կար հոն) միջոցը չունէր դարման տանելու, երբ ինք ատանիկ երկիրներէ, ատանիկ ճամբաներէ կուգար իր նահանգին մէջ հանապազօրեայ կերպով հալածուելով թշնամիէն:

Առողջապահական վարչութիւնը բնականաբար մեր մտածածին պէս կազմակերպուած չէր, թէպէտ եւ բժիշկներ, այսինքն թէ վիրաբոյժներ նշանակելի թիւ մը կը կազմէին եւ կը գործէին ուր եւ երբ որ պէտքը զգացուէր, որովհետեւ մենք կը կարդանք թէ քրդական լեռներուն առջեւ կատարուած կորստաբեր ընդհարումէ մը վերջ գիւղերը տարուած վիրաւորները ութը վիրաբոյժներ դարմաներ են:

Ապաստանարանի եւ բնակութեան խնդրին գալով, Յոյները իրենց յառաջխաղացումի ընթացքին եւ մանաւանդ իրենց նահանջի առաջին մասին մէջ հետերնին վրաններ տարին, որոնք զիրենք հաւասարապէս կը պաշտպանէին ցորեկուան կիզիչ արեւին եւ գիշերուան ցուրտին ու խոնաւութեան դէմ: Բնականաբար անոնք քա-

ղաքներէ եւ գիւղերէ հեռու գտնուելու միջոցին գործածուեցան, մինչդեռ քաղաքներու եւ գիւղերու մէջ անոնք ի վիճակի էին իրենց պիտոյքը ամբողջացնելու: Անոնք այսօր իսկ մեր մէջ գործածական եղող հետեւեալ կանոնին հետեւեցան «գէշ բանակատեղի մը աւելի լաւ է քան լաւ պիվուաք մը (բաց դաշտի վրայ վրան), ինչ որ ընդհակառակն էր Կեսարի՝ այս մասին ձեռք բերած փորձառութեան, որ մենք սորված ենք Նոյնինքն Կեսարէն: Ասոնք միշտ բնակութիւններէ դուրս կը գտնուէին եւ բանակատեղիէ հեռուն, որուն շինութեանը եւ ամրացումին համար պատնէշներ պէտք էին, ինչ որ տեւական կերպով պատերազմական պատրաստութեան համար միայն անհրաժեշտ է:

Ապաստանարանի խնդրին վերադառնալով, անոնք միշտ յառաջ չէին երթար, այլ նաեւ երբեմն կը կենային, ինչպէս Քսենոփոն կը պատմէ եւ ինչպէս որ մեր մէջ գործածական է, գիւղերու մէջ եւ ճամբաներու ընթացքին՝ այնպէս որ յոգնածներուն հաւաքուելուն արգելք մը կը տրուէր եւ ճամբուն շարունակումը շարունակումը կ՚ապահովուէր:

Ինքնին կը հասկցուի որ ասոնք ընդարձակ տարածութեան մը վրայ, այս պատճառաւ դժուարանցանելի երկիրներու եւ ճամբաներու մէջ պաշարի եւ պարէնի գործը մեծ նշանակութիւն ունի: Ամէն ժամանակ ճշմարիտ է սա պարագան թէ անօթի զինուորը քիչ կը ծառայէ եւ իր գործունէութիւնը ուղղակի կը յատկացնէ իր ստամոքսը լեցնելու: Այս պատճառով մենք կը տեսնենք բնակատեղիներու մէջ, մանաւանդ մեծ քաղաքներու մէջ ի մասնաւորի դէպ ի անապատները եւ լեռնային ճամբաները ճամբորդելէ առաջ կանգ առնելու պէտքը որպէսզի ապրուստի միջոցները եւ պաշարը ամբողջացուի: Այդ պարէնը բարեկամ երկիրներէ կը գնուի եւ հազուագիւտ չէ որ այս մասին բարձր գիներ տրամադրուին: Մենք սակայն «գրաւում»ի սիսթէմով մեծ կարգապահութեամբ կը հետեւինք «պատերազմը պատերազմը կը սնուցանէ»ի սկզբունքին:

Մնունդի ամենակարեւոր նիւթին, հացին գալով, կարծեմ թէ Յոյները առիկա միեւնոյն եղանակով կը պատրաստէին, որ տակաւին այսօր իսկ Արեւելքի մէջ գործածական է: Ֆոն Մօլթքէ այդ եղանակը հետեւեալ կերպով կը նկարագրէ. «Մայիզը նեղ փայտերու եւ երկաթէ տախտակիկներու (սաճ) միջեւ կ'աղան, եւ խոհանոցի ամանի մէջ դնելով կ'եփեն այնչափ արագ որքան օմլէթ մը կը շինուի»: Անապատներու մէջ հոն ուր փայտ կը պակսի եւ կարելի չըլլար անկէ օգտուիլ կրակ յառաջ բերելու համար խորովուած իւղ եւ այլն կը գործածուի:

Սնունդին հետ մէկտեղ կարեւոր է նաեւ ջուրը, «որ իւրաքանչիւր արարած կ'ապրեցնէ» (Քուրան)—եւ հոս պարզ կերպով «բարբարոսներու բանակ»ին մասին չէ որ կը խօսիմ, — բանակին համար ջուր եւ շատ ջուր պէտք է:

Այս պարագան վճռական նշանակութիւն ունի մանաւանդ երբ դէպ ի անապատային երկիրները ճամբայ ելլել հարկ կ'ըլլայ: Այս ճամբորդութեանց ընթացքին Քսենոփոնի պատմածին նայելով գետին ընթացքին հետեւիլ եւ ջուրի աղբիւրներու կապուիլ հարկ է:

Յառաջխաղացման ապահովութիւնը եւ լրաբերի ծառայութիւնը շատ թերի է եւ լքուած, նոյն իսկ յայտնի կերպով թշնամիին անմիջապէս մօտը գտնուելու ժամանակ: Այս տեսակ կարեւոր ծառայութեան մը ուշադրութենէ վրիպումը եզական եւ անբացատրելի երեւոյթ մըն է, որուն վրայ ես պիտի անդրադառնամ վերջէն, որովհետեւ Կիւրոս Քունաքսայի ճակատամարտէն առաջ մէկ կողմէն գէշ կերպով հալածուած, զինուորներու պատերազմի պատրաստութենէն յոգնելուն ու պարտասելուն ի տես, անխոհեմութիւնը գործեց յառաջխաղացումը շարունակելու, որով յանկարծակիի եկաւ խնդրոյն մասին լաւ տեղեկութիւն ստացող Արքայից Արքայէն: Ահա այստեղ մենք նշանակալի

տարբերութիւն մը կը տեսնենք այն ժամանակի յոյներուն, օրինակի համար՝ Կիւրոսի ատենուան ռազմավարութեան եւ վերջէն Հռոմայեցւոց գործադրած ռազմավարութեան միջեւ: Հելվետացիները հետապնդելու միջոցին, Կեսար առաւ իր բոլոր հեծելազունդը, չորս հազար ձի ձգեց ճակատը, թշնամիին հետ անընդհատ յարաբերութեան մէջ գտնուելու համար եւ ուրիշ կողմէ մը ուղարկեց իր բոլոր հեծեալները:

Ցոյները, վերջէն երբ մինակ մնացին, նոյնինքն Քսենոփոնի բառերով հետեւեալ կերպով կազմեցին իրենց շարքերը: Ցորեկ ատեն տեղւոյն համեմատ ծանր կամ թեթեւ հետեւակազօրքը կուգար ամէնէն առաջ, յետոյ կուգար հեծելագունդը, մինչդեռ գիշերը ամէնէն առաջ յամրընթաց զինուորները կ'երթային, գունդերու իրարու զարնուիլը արգիլելու համար: Անոր ետեւը կը գտնուէին քիչ թուով հեծեալներ, որոնք ետ կը մնային եւ ի հարկին կը գործէին: Մենք կատարելապէս նմանօրինակ սկզբունքներ ունինք այսօր եւս եւ միայն հեծելագունդի խնդրին մէջ տարբերութիւն մը յառաջ եկած է: Ձինուորագրուած նորագիրները մեծ թիւով կը քալեն առջեւէն կամ ետեւէն, պէտք չէ զիրենք հետեւակազօրքի միջեւ խառնել: Աստանկ բան մը չըլլար որովհետեւ շատ քալելու եւ շարունակ կենալու տեւողութեան միջոցին շատ յոգնութիւններ կրնան պատահիլ:

Հրամաններու զեկուցումը երբեմն անմիջական կերպով, երբեմն պատգամաբերի կողմէ, հիանալի կերպով արագ եւ լաւ էր, նոյնիսկ երբ հրամանները շատ հեռու տեղէ եկած ըլլային, որ առնչութիւն մը չունի հոս ու հոն պատահած կարգապահութեան պակասին հետ (Կլէարկոս, Քունաքսայի ճակատամարտին մէջ):

Ձեռնարկին համար հարկ եղած բոլոր պատրաստութիւնները Կիւրոսի կողմէ բարձրագոյն պատճառներով գաղտնի պահուեցան. նա որքան որ կրնար կը հետապնդէր Բիզիտացիները ընաջնջելու քաղաքականութիւնը: Այս Բիզիտացիները աւազակային եւ կատարե-

լապէս չզսպուած լեռնային ժողովուրդ մըն էին որոնք իր Սատրապութեան հարաւակողմը Տաւրոսի մէջ կը գտնուէին, որոնց նմանօրինակ ցեղ մը, Միսերացիները կային Տաւրոսի հիւսիսակողմը: Ասոր հետեւեալ յոյներու զինուորագրութիւնը այս պատերազմին մէջ:

Ռազմային պատրաստութիւնները գաղտնի կը պահուէին, տարբեր նպատակներով որոնք շատ հասկնալի պատճառներէ կը բղխէին: Որովհետեւ պարսիկ իշխանը գիտէր թէ ինչպէս պէտք է վարուիլ բռնաւորութեամբ կառավարուող սեւական կեանքի մէջ, երբ չորս կողմը լրտեսներ շրջապատուած են:

Ինք գիտեր թէ Կարիայի Սատրապը Տիսափեռնէս, — արդէն իսկ սկսած էր կասկած յայտնել — հինգ հարիւր հեծեալ զինուորներով վազեց Արքայից Արքային ճամբուն վրայ եւ տեղեկութիւն տուաւ անոր որպէսզի կանխազգուշական միջոցներ ձեռք առնէ:

Տիսափեռնէսի մէջ կը տեսնանք բնորոշիչ պատկերը կեղծաւոր, դաւադրող եւ վրէժխնդիր Արեւելքցիի մը: Նախապէս Կիւրոսի իշխանապետութեան տակ էր: Կիւրոս արքայական իշխանը նեղեց զինքը, այն աստիճան որ ինքը միմիայն Կարիոյ պզտիկ, թէեւ շատ կարեւոր սատրապութեան մէջ մնաց: Ասով ինքը ամենածանր թշնամին եղաւ Կիւրոսի, առանց սակայն իր այս փոփոխուած զգացումները շուտով հրապարակելու: Ինքը կ'ընկերանար իշխանին միշտ բարեկամութեան դիմակին տակ եւ պարզապէս իր ծրագիրները յաջողցնելու համար: Դարեհ Բ.ի մահուան անկողնին մօտ, քսութիւններ եւ մատնութիւններ ըրաւ Արտաշէս Բ.ին եւ կրցածը ըրաւ որպէս զի զայն սպաննել տայ:

Կիւրոս իշխանական բնաւորութիւն մըն էր, ինքնաբուխ նկարագիր մը ունէր եւ մեծահոգի էր: Հազիւ տակաւին երիտասարդ եւ նոր բացուած մարդ մըն էր ինքը, երբ արդէն իսկ իր նպատակին համար զարմանալի հեռատեսութեամբ մը միջոցներ ձեռք կ'առնէր, անիկա որոշած էր իր անձնական մտադրութեան գաղտնիքը

ամէն կերպով ապահովել, այնպէս որ գործողութիւններու սկսելէն վերջ տակաւին երկար ատեն ոչ ոք բան մը չէր գիտեր բացի իր մասնաւոր վստահութեանը առարկայ եղող Կլէարկոսէն:

Այս մարդը իր հայրենիքէն վտարուած Լակեդեմոնացի մըն էր որ միեւնոյն ատեն յունական լեգէոնին ամենանշանաւոր զինուորն էր: Ճշմարիտ սարսափ մը եղած էր տարիներէ ի վեր, որ միշտ քաջ մնաց եւ ի վերջոյ Կիւրոսի ծառայութեան մէջ մտաւ: Քսենոփոն զայն կը նկարագրէ իբրեւ նշանաւոր առաջնորդ մը ոչ միայն ճակատամարտի մէջ, այլ նաեւ իր զինուորներուն հանդէպ ցոյց տուած հոգատարութեամբ: Ան իր ունեցած քաջութեանը հետ մէկտեղ արդար ալ էր. իր խիստ ընթացքը՝ իբրեւ նշանաւոր յոյն անձնաւորութիւն մը՝ անտարակոյս «երիտասարդ տարիքի մէջ գտնուող» Աթենացի Քսենոփոնին, Սոկրատի աշակերտին, կը համապատասխանէր, ինչպէս նոյն ինքն Քսենոփոն կ՚ըսէ: Անոր մէկ բարեկամ ընկերը Բէովտացի Պրոկսենոսը, Կիւրոսի ծառայութեան կոչուած էր իբրեւ առաջնորդ: Այս մարդը Սարդիկէ հրաւիրուած էր մեծահռչակ Կիւրոս պարսիկ իշխանին բարեկամութեան արժանանալու խոստումով: Այս կերպով ան պիտի մասնակցէր Բիւզանդացիներու դէմ մղուած արշաւանքին: Խնդիր է թէ Քսենոփոն յարգա՞ծ է իր որոշումը Պրոկսենոսի կոչումին հետեւելու եւ անոր հետ բարեկամանալու մասին: Թերեւս արկածախնդրութեան փափաքը եւ գաղտնի յարաբերութիւններու առթած դժգոհանքն ալ իրենց բաժինը ունեցան այս խնդրին մէջ:

Քսենոփոն թէեւ սկիզբները պարզապէս կամաւոր աշխատակից մըն էր, բայց շուտով նշանաւոր հանդիսացաւ, խորհրդակցութեանց հրաւիրուեցաւ եւ հետզհետէ մանաւանդ Զապաթոսի մէջ տեղի ունեցած Կլէարկոսի ու միւս յոյն առաջնորդներուն սպանութենէն վերջ կարեւոր ազդեցութիւն մը ձեռք բերաւ: Կարելի է որ Աթենային սպարտական եղանակով արդար վճիռ-

*ներ արձակած ըլլայ, բայց պատմագիրի մը համար թերեւս թերութիւն համարուելիք այս պարագան կը փոխարինուի իր խոհալական կեանքի ըմբռնումովը, իր ճկունութեամբը եւ մարմնական տոկունութեամբը, իր տարակոյս չվերցնող զինուորական յատկութեամբը, խելացութեամբը, խոհեմութեամբն ու սուր հասկացողութեամբը, գործնական ակնարկով մը նպատակին ծառայելիք միջոց մը գտնելու եւ ամէն պատահար ի նպաստ իրեն լուծելու կարողութեամբը, իր ճարտասանութեամբը եւ ժողովուրդին հետ շարժելու եւ անձին իսկ օրինակով զանոնք յառաջ մղելու իր եղանակովը: Ոչ մէկ ստիպողութեան եւ ճնշումի պէտք չէ ունեցած ինքը, այլ առանց նախանձի եւ աճապարանքի սպասած է որ իր ժամանակը գայ:*

*Քսենոփոն գիծէ դուրս հանճար մը, Աղեքսանդր մը, Կեսար մը կամ Նաբոլէոն մը չէր, այլ բարոյական ուժով լեցուն մարդ մը, պարտականութեան հերոս մը, բախտի զինուոր մըն էր: Թերեւս իբրեւ մեծաթռիչ ոճի մը առաջնորդը, իր հայրենիքէն հեռու բարբարոսներու երկրին մէջ հելլէնական արիութեան ոգին եւ պարտականութեան կատարումի ըմբռնումը բարձր բռնած է եւ իր անմահ գործին մէջ երգած է իր անձնական «Քաջ մարդու երգը»։*

*Ընդհանուրին կարծիքին համեմատ, Քրիստոսէ առաջ 401ին Մարտին էր երբ Կիւրոս իր պատրաստութիւնները աւարտեց եւ զինուորները այնպէս մը հաւաքեց որ Սարդիկէէն 8000 Յոյներով եւ 70,000 բնիկ զինուորներով կարենար «Բարբարոսաց բանակը» կտրել:*

*Ես հիմա նկատի պիտի առնեմ դէպ ի Բաբելաստան արշաւանքը եւ մինչեւ Սեւ ծով նահանջը, զոր կը բաժնեմ հետեւեալ կերպով:*

*Ա. Սարդիկէէն յառաջխաղացումը մինչեւ Իսոս՝ Միջերկրական ծովուն վրայ (9 Մարտէն մինչեւ Յունիսի վերջը 401 Ք. Ա.):*

Բ. Խոսէն դէպի Բաբելաստան արշաւանքը մինչեւ Քունաքսայի ճակատամարտը (8 Սեպտ. 401 Ք. Ա.).

Գ. Նահանջ Բաբելաստանէ, մինչեւ

ա) Քրդական լեռները (առաջին երրեակ Նոյմ. 401 Ք. Ա.)

բ) Բասենի ձորը (դէպի Դեկտ.ի վերջը 401 Ք. Ա.)

գ) Սեւ ծով (առաջին երրեակ Փետր.ի 400 Ք. Ա.)

Այս ժամանակագրական կարգերը առած եմ հիմնուելով Քօխի «Բիւրուց Արշաւանք»ին մէջ ցոյց տուած հաշիւներուն վրայ եւ ներկայ, նաեւ յետագայ տեսութիւններուն. մէկ խօսքով նոյն ինքն Քսենոփոնի խօսքերուն հետեւելով:

Մասնաւոր գլուխներու մէջ պարփակուող բոլոր ցուցմունքները Քսենոփոնի մասնաւոր վերտառութեանց տակ կազմած գլուխներուն մէջ կը գտնուին: Բոլոր քաղաքական տեսութիւններս մասնաւորապէս նշանակուած են:

Անուններու ոճը Քսենոփոնի գործածածներուն նոյնն է:

## Ա· ՍԱՐԴԻԿԷՆ ՑԱՌԱՋԽԱՂԱՑՈՒՄԸ ՄԻՆՉԵՒ ԻՍՈՍ ՄԻՋԵՐԿՐԱԿԱՆ ԾՈՎՈՒՆ ՎՐԱ[8]

*9 Մարտէն մինչեւ Յունիսի վերջը 401 Ք. Ա.*

*Հետեւելով իրեն վերագրուած ծրագիրներու, նաեւ անտարակոյս տարբեր վայրերու մէջ գտնուող զօրաբաժինները դիւրութեամբ մը իր մօտ հրաւիրելու համար Կիւրոս ճամբայ ելաւ Լիւդիայի եւ Մեծն Փռիւգիայի (*) բարեբեր երկիրներէն հարաւարեւելքի ուղղութեամբ դէպ ի Քոլոսա քաղաքը, որ Հերոդոտոսի կողմէ իբրեւ նշանաւոր ցոյց տրուած է եւ որ վերջէն Պօղոսի գրած «Թուղթ առ Քոլոսացիս» նամակով ծանօթացաւ ամէնուն: Իր աւերակները այսօր կը գտնուին Խօնասի մօտ Տաւրոսի հիւսիսային բարձրաւանդակին վրայ: Եօթը օր հոն մնաց եւ այդ միջոցին իբրեւ առաջին օգնական ույժ ստացաւ Թեսալիացի Մենոնի զօրագունդը: (Քսերքսէս եւս 481 Ք. Ա. Թուականին դէպ ի Սարդիկէ կատարած իր արշաւանքի միջոցին Քոլոսայի մէջ կանգ առած է:) Յետոյ Տաւրոսը իր աջին թողլով արեւելեան ճամբով ուղղուեցաւ դէպ ի Մեծ Փռիւգիոյ հարուստ մայրաքաղաքը Կելայինա (Տինէիրի աւերակները): Այդտեղ, ուր իրմէ առաջ Քսերքսէս եւ իրմէ վերջ ալ Մեծն Աղեքսանդր ժամանեցին, ամբողջ ամիս մը մնաց, — ինչպէս կը տեսնուի, ժամանակ կ՛անցնէ — եւ միացաւ Լակեդեմոնացի Կլէարկոսի զօրագունդին եւ միւս զօրաբաժիններուն, այնպէս որ իր անձնական կենդանաբանական պարտէզին մէջ աչքէ անցուցած յունական լէգէոնը այժմ 11000 Հոպլիտներ եւ 2000 Թեթեւազէններ կը պարունակէր:*

---

(*) Մեծ Փռիւգիա, զանազանելու համար փոքր Փռիւգիայէն որ Պրոպոնտիսէն կամ Մարմարա ծովէն դէպի հարաւ կը գտնուի։

Այդ միջոցին շատ նշանակալից դէպք մը պատահեցաւ: Կիւրոս գրեթէ բոլորովին յետադարձ շարժումով մը Գելտայի վրայէն դէպ ի կեդրոն Ակորա գնաց (այժմեան Ուշաքի մօտ): Այս քաղաքը Մուսիայի հարաւային սահմանին, նաեւ Դարեհ Ա.ի օրով աւարտած եւ երեք հարիւր մղոն հեռաւորութիւն կտրելով Սարտիկէէն մինչեւ Սուսա ուղղուող արքայական ճամբուն վրայ կը գտնուէր: Իշխանը հարաւի կողմէն այսպիսի նշանակալից շրջան մը կատարելով հոս հասաւ:

Կիւրոսի այս այլանդակ ուղեւորութիւնը դէպի հիւսիս կը բացատրուի անով որ անիկա շրջանով մը, կ'ուզէր Արքայից Արքային Մուսիացիներուն դէմ՝ ունեցած բուռն կասկածը հանդարտեցնել: Ատանկ տեսակէտ մը ես համամիտ չեմ, որովհետեւ ատանկ նպատակի փոփոխութիւն մը իշխանին համար վնասակար պիտի ըլլար: Քսենոփոն այս մասին խօսելով, իր սիրած ու յարգած Կիւրոսին ընթացքը արդարացուցած եւ ջանացած է զայն անպարտ հանել: Այս մասին ուրիշ շատ բան մը չըսեր ինքը, որովհետեւ ես այնպէս կը կարծեմ թէ, անիկա այդ բաները ծանօթ կը նկատէ:

Երբ ես 1908 Մայիսի սկիզբին Անատոլուի բարձրաւանդակը ելայ, բոլոր ընդարձակ դաշտերը ձիւնով ծածկուած էին: Բնական է որ իշխանը — ըլլայ նոյն իսկ անսովոր կերպով — տեղի ունենալիք գարնան ձիւնահալին վրայ կը խորհէր եւ ատանկ մեծ բանակի մը համար խոհեմութիւն չէր նկատեր ջուրերուն մէջ յառաջխաղացում մը: Կը նախապատուէր նոյն իսկ ժամանակ կորսնցնելով հիւսիսակողմէն երթալ եւ մեծ պողոտային հետեւիլ: Այսպէսով միայն զինուորները գաղափար կրնային ունենալ իր կարգադրութեանցը վրայ: Անիկա իր մտադրածին եւ խոստացածին հակառակ չշարժեցաւ երբեք: Քսենոփոն այս մասին բան մը չըսեր, որովհետեւ ամէն բան միասին ըրաւ եւ իրեն բոլորովին բնական թուեցաւ: Կիւրոս աշխատեցաւ իր ճակատին շարժումները իր արքայ եղբօրը ծանօթացնելու եւ ամէն կեր-

պով ադկէ նպաստաւորուելու համար: Ասիկա իր շատ խորամանկ վարուելակերպը կը մատնէ:

Շարժումները ժամանակ անցնելու պատճառ կ'ըլլային, բայց ինչպէս որ մենք կը տեսնենք առաջին շրջաններու ընթացքին առաջնորդողին բանի մը չազդեց: Անիկա յուսալից սպասեց բնիկ զինուորներուն հաւաքուելուն, կամ թէ ինչ որ հաւանական է, լուր առած էր որ Միլէտոսէն զինուորական վերջին ույժերով բեռնաւորուած տորմիղը Իսոս պիտի հասնէր քիչ ատենէն: Տորմիղին երեւումը Կիլիկեան ծոցին մէջ, իրեն համար այն նշանակութիւնը ունեցաւ, որքան էր դէպի Սուրիա յառաջխաղացումի ատեն դիւրութեամբ գոցուող Կիլիկեան դուռը իրապէս բաց գտնելը: Այս կէտերը ուշադրութենէ պէտք չէ վրիպեցնել, որովհետեւ այսօրուան զինուորական բաղադրեալ գործողութիւններն անգամ հակառակ երկաթուղիներուն եւ հեռագիրներուն տակաւին շատ դժուարին են: Մանաւանդ այն ժամանակ շատ աւելի դժուարին էր կացութիւնը երբ նկատի առնենք անանցանելի լեռներու կամ թշնամի երկիրներու իրարմէ ունեցած հեռաւորութիւնը, երբ ո եւ է նոր հրաման գրեթէ անկարելի էր հաղորդել կամ գոնէ ահագին ժամանակի կը կարօտէր:

Կերամոն Ակորայէն Արքայական ճամբուն վրայով եկաւ դէպի Քայսթրու Բետիոն (Պուլվատինի մօտ), որ Արքայական ճամբուն եւ Բիւզանդիոնէ Իկոնիոն (Գոնիա) առաջնորդող ճամբուն իրար խաչաձեւած կէտին վրայ կը գտնուի: Այդ տեղը իրեն պարագայ մը ներկայացաւ որ մազ մնաց իր բոլոր ձեռնարկը նախապէս կատարած իր ուրիշ ձեռնարկներուն նման անյաջողութեան մատնէր: Կիւրոս խորհեցաւ դրամական խնդրոյն վրայ, որ երկար ժամանակէ ի վեր ստիպողական դարձած էր, որովհետեւ երեք ամիսէ ի վեր առնելիք ունեցող զինուորները փութով իրեն առջեւ կուգային եւ վճարում կը պահանջէին: Կիւրոս ազնուական բնաւորութեան տէր անձ մըն էր, բայց հակառակ իր ընդար-

ձակ հատոյթներուն դրամական գործերուն ընաւ հոգ չէր տաներ եւ շատ գէշ տնտեսագէտ մըն էր։ Իր մարդոց հանդէպ իր խոստումները պէտք էր յարգել, ինչ որ ցաւ պատճառեց իրեն, որովհետեւ երբէք չէր սիրեր պարտականութիւն կամ խոստում չկատարել :

Ահա, այս նեղ կացութեան միջոցին կին մը իրեն օգնութեան հասաւ։ Այդ կինը Եփրաքսեան էր, Կիլիկիոյ Սիէննէսիս թագաւորին ամուսինը։ Անտարակոյս իր ամուսնոյն համամտութեամբն էր որ ան օգնութեան կը հասնէր եւ կը հասցնէր այնքան հարուստ դրամական միջոցներ, որոնք բովանդակ բանակին ամբողջ չորս ամսուան ռոճիկին կրնային բաւել։ Ամբողջ գործը շուտով կարգադրուեցաւ Կիւրոսի եւ Կիլիկիոյ թագաւորին միջեւ, եթէ ոչ զինուորները ցրուած պիտի ըլլային եւ Եփրաքսեան ալ Ոսկիի եւ Արծաթի այդքան ահագին բեռ մը — այն ատեն տակաւին թղթադրամ չկար — չպիտի բերէր։

Այս նախաձեռնութեան ոգի կրող կնոջ յուսատու ընկերակցութեամբը Թիմպրիոնէն (Աքշէհիր) Տիւրայոն (Իլկին) հասաւ։ Կիւրոս հոն թագուհիին հետ մէկտեղ յոյները եւ ընիկ զինուորները քննութենէ մը անցուց, որ այսօրուան եղանակով կատարուած ռազմավարական զօրանցքէ մը տարբերութիւն չունէր։ Քսենոփոնի ըսածին նայելով այսպէս ըրաւ պարզապէս թագուհիին ակնյայտնի խնդրանքին վրայ։ Միւս կողմէ ասիկա իշխանին փափաքներուն ալ համապատասխան եկաւ։ Իրեն փափաքն էր անոր եւ ամուսնոյն, այսինքն թագաւորին ցոյց տալ իր պատերազմական ոյժը, նաեւ իր մարդոց վստահութիւն ներշնչել :

Զինուորներուն զօրանցքի պատրաստութենէն վերջ, երբ յոյները “զօրանցքի համազգեստ„ով — կարմիր վերարկու, ծնկակալներ, արոյրէ գլխարկներ եւ փայլուն նշանակներ— չորս մարդու չափ յառաջ էին եկած, Կիւրոս դիտեց նախ «բարբարոսաց բանակը» եւ յոյները : 3—4 քիլոմէթր երկարող ճակատը կտրեց ինքը պատե-

բազմական կառքով եւ Թագուհին ալ զբօսակառքով մը։ Անկէ վերջ Թագուհիին հետ մէկտեղ դէպի ճակատին կեդրոնը ուղղուեցաւ եւ հրամայեց յոյներուն իրենց նետերն ու աղեղները լարելով ետեւի գիծին վրայ գտնուող բանակին դէմ յարձակում մը գործել: Այսինքն թէ կատարել այնպիսի ռազմափորձ մը որ ամէն տարի Յուլիս 14ին Բարիզի զօրանցքի միջոցին կը կատարուի երբ հեծելազօրքը նախագահին եւ ականատեսներուն կողմէն յարձակում կ'սկսի կատարել յառաջուն խանդավառութիւն մը առթելով անոնց: Յարձակումը տեղի ունեցաւ փողերու հրաւէրով եւ կարգապահութեամբ: Երբ «Յառա՛ջ» հրամանը տրուեցաւ, յառաջխաղացումը արագացաւ եւ ամէն ինչ ինքնաբերաբար տեղի ունեցան: Այն ատեն տարօրինակ տեսարան մը պարզուեցաւ, ինչպէս որ մենք հիմա մեր զօրափորձերուն մէջ ալ տեսած ունինք: Թագուհին աճապարելով մէկ կողմ գնաց: Պարսիկները սկսան սարսափիլ եւ կը փախնային բանակէն, վաճառորդները, զովացուցիչ ըմպելիներու հայթայթիչներն ալ զինուորներէն, տեսնելով անոնց քշուելը դէպի զօրանցքի դաշտը: Ամենքն ալ իրենց կառքերը եւն. նետելով, ձգեցին փախան: “Յոյները սակայն զուարճացած այս տեսարանէն իրենց վրանները վերադարձան„ եւ Կիւրոս հպարտացաւ տեսնելով իր աշխատութեան արդիւնքները: Այսպէս աւարտեցաւ այս զօրահանդէսը ի մեծ գոհունակութիւն ամէնուն: Իշխանը այս մասին ոչ թէ շնորհակալութեան խօսքեր, այլ գոնէ զօրահանդէսին մասին քննադատութիւն մը կամ գոնէ զօրահանդէսի օրակարգ մը չէ պատրաստած որովհետեւ ինչպէս կը կարդանք «Թագուհին հիացումով տեսաւ բանակին փառքն ու կարգապահութիւնը:»

Այս հնամենի զօրանցքը զոր մենք բաւականին գիտենք, չափազանց հետաքրքրական է, որովհետեւ այն համոզումը կուտայ մեզի որ այդ կարգի զինուորական ցուցահանդէսներ երբեք նոր բաներ չեն եղած: Այլ ընդհակառակը հազարներով տարիներ առաջ գըտ-

նուած են անոնք քննելու համար զօրաց Ջոկատին զօրութիւնն ու կարգապահութիւնը, միեւնոյն ատեն բարեկամի եւ թշնամիի հանդէպ ունենալիք զօրութիւնը ցոյց տալու եւ իր անձնական զինուորներուն ինքնագիտակցութեան զգացումը բարձր պահելու համար:

Տիւայոնէն բանակը յառաջ անցաւ եւ Հնամենի Իկոնիոն (Գոնիա) քաղաքէն անցնելէ վերջ դէպի հարաւ եւ անկից դէպի Տաւրոսի հիւսիսային լեռները շրջանակ մը գծեց, Լիկայոնիոյ մէջէն: Լիկայոնիայէն Տաւրոսի վրայով դէպի Սոլոյ (Մէցէթլի՝ Միջերկրական ծովու վրայ) առաջնորդող նեղ կիրճի նման ճամբայ մը կայ, ուրկէ ԺԲ. դարուն վերջերը Խաչակիրները օգտուեցան: Այստեղէն Իշխանը դէպի Կիլիկիա ճամբեց Թագուհին իրեն իբրեւ հետեւորդ զօրաւոր գունդ մը յատկացնելով, որուն կը հրամայէր իր ամենակարող առաջնորդներէն մին, Թեսալիացի Մենոնը: Իսկ ինքը իր ճամբան շարունակեց բոլորակաձեւ ուղղութեամբ, դէպի արեւելեան կողմը գտնուող Կապադովկեան նշանաւոր քաղաքը Տիանա (Քիլիսէ-Հիսար), անկէ ալ Տաւրոսեան լեռները— հիմա Պուլկար Տաղ կը կոչուի— Կիլիկեան Դուռնէն անցնելու համար:

Տաւրոսի հիւսիսակողմէն իր ճամբան յառաջ քշելով իր նպատակակէտին՝ Իսոսի կը մօտենար, առանց Պիզիդացիներուն դէմ պատերազմ մը մղել հարկադրուելու, մինչդեռ այնպէս մը հաւատացուցած էր իր զինուորներուն թէ Տարսոնէն դէպի արեւմուտք պիտի երթայ, ուր առանց ժամանակ թողելու Պիզիդացիներուն որ իրենց իշխանութեան տակ գտնուող Տաւրոսեան դժուարին կիրճերուն հասնին, լեռներուն միւս կողմը պիտի բռներ զանոնք:

Բոլոր այս դէպքերուն մէջ նշանաւոր է Սիէննէսիսի խաղացած կրկնակ խաղերը: Մէկ կողմէ Եպիաքսայի միջոցաւ պարսիկ իշխանին անհրաժեշտ եղող դրամի քանակը հասցուց եւ միւս կողմէ ալ Արքայից Արքային հետ չաւրուելու համար—քանի որ վերջնական եւ վրճ-

ռակմանօրէն կարելի չէր գիտնալ թէ գործը ի՛նչ հանգամանք պիտի ստանար եւ ի՛նչպէս պիտի աւարտէր—, գրաւեց իրեն երեւութապէս դիմադրող կիրճերը, թէեւ ինքը ոչ գրաւել կ'ուզէր, ոչ ալ կրնար, որովհետեւ գիտէր թէ Մենոնը արեւմուտքի լեռները արդէն իսկ անցած էր եւ Կիւրոսի կիսովին յունական եւ կիսովին պարսկական նաւատորմն ալ Յոնիայէն ճամբայ ելած էր դէպի Կիլիկիա, որով երկուքն ալ կռնակի կողմէն կ'սպառնային իրեն:

Գաղտնի խօսակցութիւնները միայն Կիւրոսի եւ Սիէննէսիսի միջեւ տեղի ունեցած էին: Զինուորները բանէ մը տեղեկութիւն չունէին: Եւ ինչպէս որ ընդհանրապէս սանկ պարագաներու մէջ կը պատահի, ճախատեսուած միջադէպեր յառաջ եկան: Կիլիկիացիները լեռներուն վրայ Մենոնի զօրագունդին մէկ մասը ջարդեցին եւ այս վերջինն ալ վրիժառութեան համար Տարսոն մայրաքաղաքը եւ տեղւոյն արքայական պալատը փլցուց եւ աւերեց, առանց ժամանակ թողլու որ Կիւրոս հասնէր եւ արգիլէր այդ բանը:

Տաւրոսը վայրի եւ անանցանելի լեռ մըն է 3000 մէթրի չափ բարձր եւ մասամբ մշտատեւ կերպով ձիւնով ծածկուած է: Անատօլուի բարձրաւանդակը կը սահմանագծէ հարաւէն եւ անմիջական կերպով կ'իջնայ Միջերկրական ծովուն մօտերը, ուր կը վերջանայ: 1908ի գարնան Իսոսի հիւսիսակողմը, Ատանայի եւ Տարսոնի վրայէն յառաջանալով Կիլիկեան Դուռնէն անցայ: Կիլիկեան Դրան կիրճը (Կէօլէք Պօղազ) բնական կերտուածք մը ունի, ճիշտ Քսենոփոնի պատմածին նման, «հազիւ կառքի մը լայնութիւնը ունի, արտաքոյ կարգի կարծր, եւ եթէ պաշտպանուելու ըլլայ, ամբողջ բանակ մը չկրնար անցնիլ անկէց»: Բնական է որ հիւսիսային բերանը բաց դաշտի վրայ բացուած ըլլալով աւելի դիւրին է եւ նուազ բարձրաբերձ որքան հարաւի մասը որ ծովերուն վրայ է, երկու պարագային ալ սակաւաթիւ ուժով մը կարելի է փակել: Հին ժամանակ-

ներքէն մինչեւ ներկայ ժամանակը (Եգիպտոսի Իպրահիմ փաշայի օրերը) Սուրիայէն վեր գալու կամ դէպի Սուրիա ընթանալու ատեն այդ տեղը Փոքր Ասիոյ բանալին է: Կիրճին հարաւակողմը սեպաձեւ ժայռերու մէջեւ անդունդ մը կայ զոր ժայռի պատերը իրարմէ կը զատեն: Կարծես թէ նոր բերուած քարի զանգուածներ են եւ իր բոլոր տեսարանը այնչափ մեծաքանչ է որ ես ատոր նմանը միայն Կովկասի ածխային ասֆալթով շինուած զինուորական ճամբուն վրայ տեսայ: Տարիալի անդունդն էր այդ որուն հետ միայն կրնամ բաղդատել զայն: Երբ Քսենոփոն հոստեղ կամ աւելի վերջը բնութեան գեղեցկութիւններուն վրայ յիշատակութիւն չըներ, ատոր պատճառը կամ բացատրութիւնը պէտք է փնտռել սա կէտին մէջ թէ հիներուն մէջ բնութեան սէրն ու հասկացողութիւնը այնչափ չէր ուռճացած ու զարգացած որքան մեր մէջ:

Սիէննէսիս որ բոլոր այդ տիրապետող բարձունքը գրաւած էր, Կիւրոսի առջեւ տեղի տուաւ սակայն եւ այս վերջինը անցաւ անկէ, ինչպէս որ 17 տարի վերջ ալ Մեծն Աղեքսանդր Կիլիկեան դաշտին վրայ գտնուող Կիւդնոսի ձորէն (Մէզար-Օլուք) անցաւ: Երկուքին ալ նպատակը միեւնոյնն էր, երկուքն ալ կը ձգտէին իշխող Արքայից Արքան հետեւաբար եւ պարսկական կայսրութիւնը տապալել, մինչդեռ Կիւրոսէ 18 տարի առաջ նոյն տեղէն Քսերքսէս եկած է իր մեծ զօրութեամբը պզտիկ Յունաստանը ճզմելու համար, ինչ որ պատմութեան մէջ հազուագիւտ օրինակ մըն է։

Այն ժամանակէն ի վեր պտղաբեր ճանչցուած Կիլիկիան (Կիկերոն զայն կ'անուանէ հռոմէական գանձուն համար հարուստ աղբիւր մը) Միջերկրականի հարաւակողմը կը գտնուի եւ Ամանոս լեռան արեւելքի կողմը որուն հետ կիսաշրջանակ մը կը ձեւացնէ: Այս լեռան անունը հաւանաբար Քսենոփոն չէր գիտեր որովհետեւ ան Տաւրոսի հիւսիսակողմին եւ հիւսիսային արեւմուտքին կողմն է: Մեծ ուղին Տարսոնէն Կիւդնոսի

գետը կ'ուղղուի, —ուր մեծն Աղեքսանդր բաղնիք մըտնելով շատ ծանր չերմէ բռնուեցաւ — Միջերկրական ծովու վրայ գտնուող Իսոսէն դէպ ի Արեւելք: Քսենոփոն կ'ըսէ թէ, Կիւրոս դաշտը իջնելէն վերջ չորս օրուան ճամբայ քալեց մինչեւ Տարսոն: Ապահովաբար այստեղ սխալ մը կայ, որովհետեւ այդ տեղւոյն հեռաւորութիւնը գոնէ կէսն է պատմուածին: Ես տակէ սկսած եմ ընդհանուր առմամբ կասկածիլ Քսենոփոնի պատմածներուն վաւերականութեանը վրայ: Քսենոփոն ճամբաները կը հաշուէ օրով եւ փարասանկով (հին չափ մը): Փարասանկը պարսկական չափ մըն է 4ուկէս քիլօմէթր երկայնութեամբ: Բայց եւ այնպէս անիկա կը նշանակէ նաեւ ատկէ ետ դառնալու չափն ալ, որով փարասանկը երկրին դաշտային կամ լեռնային հանգամանքին, ձիւնոտ կամ անտառախիտ ըլլալուն եւ կամ անցանելի ըլլալուն համեմատ կը փոխուի: Ասիկա գրեթէ միեւնոյնն է այսօրուան պարսկական փարսախին, որ երկարութեան եւ ժամանակամիջոցի տեսակէտով միեւնոյն արժէքը ունի:

Տարսոնի, այդ հարուստ, այն ժամանակի մտաւորական կեանքովը նշանաւոր. նաեւ աւելի վերջը իբրեւ Պօղոսի ծննդավայր համբաւանօթ դարձած քաղաքին մէջ, Կիւդնոսի աջ եզերքին վրայ ցոյցի համար նորէն ռազմափորձ կատարուեցաւ, հեռաւոր Արքայից Արքան վերստին խաբելու կամ վախցնելու համար: Այս նպատակաւ Եպիաքսայի միջոցաւ հանդիսաւոր հաշտութիւն գոյացաւ Սիէննէսիսի եւ Կիւրոսի միջեւ: Նուէրներու եւ խոստումներու փոխանակութենէն վերջ, Կիւրոս խոստացաւ այլեւս նոր աւարառութիւն մը չթոյլատրել: Կիլիկեան թագաւորն ալ երկրորդ անգամ ըլլալով «բանակին համար կարեւոր գումար մը տուաւ»:

Իշխանին համար դրամական խնդիրը երկրորդ անգամ ըլլալով դարձեալ խաղաղութեամբ լուծուեցաւ եւ ինք հիմա կրնար այլեւս հանդարտօրէն առաջ քալել: Ինքն ալ այդ փափաքէր, բայց կը նախընտրէր

Արեւելեան կողմէն երթալ քան թէ Արեւմտեան: Կիլի-
կիոյ մէջ ամէնուն եւ իր իսկ խօսքովը նաեւ Քսենոփո-
նին ծանօթ էր թէ ձեռնարկուած այս պատերազմը Բիզի-
տացիներուն (Պիսիդացի) դէմ չէր այլ ամենամեծ եւ
ամենազօրաւոր Արքայից Արքային դէմ: Յոյները մեր-
ժեցին անոր դէմ քալել եւ իրաւունքով պնդեցին թէ
"մենք վարձկան չենք եւ մեր պայմանագրին մէջ այդ-
պիսի բան մը չիկայ": Մենք հոս ականատես կ'ըլ-
լանք եղելութեան մը որ շատ նշանակալից է թէ
վարձկան զինուորներու ներքին վարչութեան եւ իրենց
հաց հայթայթող տիրոջ հանդէպ բռնած դիրքին եւ
թէ տիրող կարգապահական տխուր կացութեան տեսա-
կէտով: «Երբ Կլէարկոս իր մարդիկը հակառակ իրենց
կամքին դէպ ի յառաջ քշել կ'ուզէր եւ երբ ինքը սկսաւ
առաջ անցնիլ, իրեն եւ իր ձիուն քարեր նետեցին եւ
ինքը մեծ դժուարութեամբ խուսափեցաւ քարկոծու-
մէն :»

Այանկ լուրջ յարձակումով մը թշնամիին առջեւ
իր գլխաւորին եւ նոյն իսկ իր զօրավարին դէմ դաւադ-
րութիւն, մե՛ր տեսակէտով սոսկալի բան է, նաեւ ոչ
նուազ այլանդակ: "Որովհետեւ, այսպէս կը պատմէ
Քսենոփոն, հետեւեալ օրը Կլէարկոս երբ տեսաւ որ
անկարելի է բռնի ուժով ճամբու բերել իր զինուոր-
ները, իր մօտ կանչեց զանոնք եւ երկար ատեն ար-
տասուեց: Անոնք զարմացան այս բանին համար եւ
լռեցին, մինչ ինք սկսաւ խօսիլ եւն.": Երեւակայելու է
զօրավար մը որ իր զօրագունդին առջեւ արցունք կը
թափէ եւ այն ալ մէկ օր առաջ մեռնելու չափ քար-
կոծուելէ վերջ: Ի՛նչ պատկեր: Կլէարկոս այն տեսակ
առաջնորդող մըն էր որուն համար տեղ մը սապէս կ'ըս-
ուի, «իր խիստ նկարագրովը, խոժոռ նայուածքով եւ
կորովի ձայնովը մեծ վախ կ'ազդէր:» Ու տակաւին ար-
շաւանքին սկիզբն ենք: Սա պէտք է հարցնել թէ միւս
առաջնորդողները ի՞նչ պիտի կրնային ընել եւ վերջէն
ի՞նչ պիտի սպասէր:

Կլէարկոս իշխանին վստահութեանը արժանացած էր, միշտ անոր ծրագիրներուն համեմատ կը շարժէր եւ միշտ անոր քովը ու անոր կողմն էր: Ինքը եւս Սիէննէսիսի Արքայից Արքային հանդէպ ունեցած ընթացքին նման ընթացք մը ունեցաւ: Թէ արդեօք իր զօրքերուն ի նպա՞ստ եւ Կիւրոսի դէ՞մ կը շարժէր, ինքը պատասխանեց թէ անոր ճակատագիրը կը բաժնէ: «Ինծի համար, ըսաւ ան, հայրենիք, բարեկամ եւ պատերազմի ընկեր միեւնոյն են»: Այս ըսելէ վերջ իրենց կարծիքը հարցուց:

«Պէտք է որ շուտով, ըսաւ անոնցմէ մին, դէպի Յունաստան դառնանք, երբ Կլէարկոս չուզէ մեզի դէպի հոն առաջնորդել, մենք ալ պիտի ստիպուինք շուտով ուրիշ առաջնորդ մը ընտրել, պաշար գնել եւ վերադառնալ:» Ինչ պատասխանեց Կլէարկոս: «Ես կ՚ուզեմ որ անանկ առաջնորդ մը ընտրէք որուն կէտ առ կէտ հնազանդիք, եւ դուք պիտի տեսնէք թէ ես ի՞նչպէս ուրիշ ո եւ է մէկուն պէս սորված եմ հրամանի հնազանդիլ:»

Բնական է որ ասանկ դէպքեր մեր պարագաներուն հետ չէ կարելի բաղդատել: Մենք զանոնք պէտք է դատենք այն ժամանակուան ոգւոյն եւ մասնաւոր յարաբերութիւններուն համաձայն: Հազարաւոր տարիներու ընթացքին գոյացած յոյն հերոսներու պատկերները անհիմն կերպով աւրելու տրամադիր չենք: Որքան ատեն նեղն են, կամ իրենց արժանապատուութեան զգացումը զիրենք կը մղէ, սանկ-նանկ կ՚երթան: Բայց երբ վերջէն ծովը հասնին եւ իրենց հայրենիքը իրենց մօտ զգան, իրենց մօտ գտնուող տկար ռազմասիրութիւնը բոլորովին կը լմննայ: Ամէնքնին ալ առանց ծածկելու տգեղ յատկութիւններ ցոյց կուտան: Նախանձ, յայտնի երկպառակութիւն, ագահութիւն, անվստահութիւն, ստախօսութիւն, դաւաճանութիւն եւ Քսենոփոնի դէմ նոյն իսկ ապերախտութիւն ցոյց տուին, մինչ ան զիրենք յաճախ ազատած էր եւ չամչցան հրապարակաւ ամբաստանելու զինքը հարատ եւ քսելու երեսին: Բնական է որ

նախապէս պատահած գէշ ընթացքներու բերմամբ բողոքելու իրաւունք ունեցողներ չեն պակսիր: Հի՛ն երգ: Քսենոփոն առանց ո եւ է նկատումի տրուած պատիժներուն համամտութիւն յայտնեց որովհետեւ իր նեղ կացութեան մէջ ուրիշէն երբեք օգնութիւն փնտռել չէր կրնար: Անիկա երբեք չէր կրնար հոն հաւաքուած մարդոց իրենց ըրածը ներել: «Ուրեմն ձեր մէջը այլեւս նկարագրի, կամքի տէր ու անձնուէր մարդ մը չկա՞յ»: Եւ ուրիշ տեղ մը. «Այսպէս ուրեմն դուք չէք յիշեր մեր նեղութեան օրերը, դուք որ ատանկ հիանալի յիշողութիւն մը ունիք: Այն ժամանակ դուք ինծի ձեր հայրիկը կ'անուանէիք եւ կը խոստանայիք յաւէտ յիշել զիս իբրեւ ձեր բարերարը: Ապագային ո՞վ պիտի պարծենայ մեզի պէս մարդերով: Ուրեմն մենք պիտի համդուրժենք որ մեզի վատ մարդիկ նկատեն, այնպէս չէ՞: Եթէ աս ասանկ երթայ, պիտի տեսնէք թէ մեր բանակին կացութիւնը ինչ պիտի ըլլայ:»

Ո՞ւր է այս տեղ ուրեմն իրենց այդչափ գովաբանուած հերոսութիւնը: Քսենոփոն կ'ըսէ. «Այն մարդիկը որոնք հիմա բարձրաձայն կ'աղաղակեն, այն ատեն ամենամեծ անամօթներ էին: Անոնցմէ շատը (մասնաւորաբար Թեսալիացի մը) հիւանդ կը ձեւանար եւ աղեղ բռնել չէր ուզեր, բայց երբ կողոպուտի եւ աւարառութեան ձայն առնէր, կարիճ կը դառնար»:

Բոլոր այս պատերազմներուն մէջ Քսենոփոն անըսպասելի անձնուիրութիւն մը կը ներկայացնէ: Մարդքանի խորունկը իջնայ, այնքան կատարելագործուած կը գտնէ ինքզինքը: Ամենայն ազատութեամբ իր պատմութիւնը ինքն իսկ գրած է, մինչ թերեւս ինք չպիտի ճանչցուէր: Իր պատմած դէպքերը մարդկային են եւ ճշդ գծագրուած, այնպէս որ պէտք է նաեւ ճշմարիտ ըլլան: Ասոր համար մենք Յոյներուն գործերուն կը հիանանք, որովհետեւ հիացման արժանի են, բայց ոչ կոյր պաշտումով մը կամ թէ սովորական տեսակէտներով, որովհետեւ այն ատենի մարդերը որդէն իսկ այ-

սորուած մարդոցմէ աւելի բարի եւ ազնիւ էին։ Մարդիկները սակայն, միշտ եւ ամէնատեն մարդ են, եւ իրենց մէջ բանտարկուած կայ «մարդկային անասունը», նոյն իսկ եթէ դրախտէն ալ եկած ըլլան։

Այս նիւթէն շեղումը կատարելէն վերջ ես կ'անցնիմ Կլէարկոսի այն եզական եւ իրապէս զարմանալի դիւանագիտական արուեստին, որով ան Կիւրոսի լուր ղրկեց թէ «Թող անհոգ ըլլայ, ես այս գործը նորէն իր շիտակ ճամբուն մէջ կը բերեմ, եւ գիտեմ ժողովուրդին կարծիքը դարձնել այնպէս, ինչպէս որ գիտեմ»։ Ի վերջոյ որոշուեցաւ որ պատգամաւորութիւն մը ղրկուի Կիւրոսի մօտ, անոր հարցնելու համար թէ ի՞նչ կ'ուզէ։ Կիւրոս սակայն յայտնապէս չըսաւ իր նպատակը, այլ խուսափողական պատասխան մը տուաւ, ըսելով. «Իմ թշնամիս Աբրոքոմա՝ Եփրատի առջեւ կը գտնուի, անկէ 24 մղոն հեռու, որուն դէմ կ'ուզեմ երթալ»։ Աբրոքոմայի մասին բան մը չենք գիտեր։ Անիկա Փիւնիկիոյ կամ Սուրիոյ սատրապ չէր, որովհետեւ Քսենոփոն այդ պաշտօնակալներուն համար ուրիշ անուններ կուտայ, այլ Արտաշէսի կողմէ ստացուող պատերազմի մը կնճռոտութիւններուն ի տես Սուրիոյ եւ Փիւնիկէի զօրագունդերուն վերին հրամանատարութեան կոչուած անձ մը։ Կիւրոսի այս ընթացքը անսովոր չէ, որովհետեւ պարսկական կայսրութեան վարչութիւնը անանկ ցրուած, սատրապներու պատերազմական տրամադրութեանց ենթակայ վիճակը հազուագիւտ բան մը չէ։ Կիւրոս միշտ Տիսափերնէսի հետ յարաբերութիւններ կը մշակէր եւ Արքայից Արքան ատոր համար շատ չէր անուանարկէր զինքը, որովհետեւ անհրաժեշտ տուրքը ժամանակին իրեն կը հասցնէր։ Թէ Յոյները իրենց հաց բաշխող տիրոջ կը հաւատայի՞ն, այդ տարբեր հարց է։ Անոնք միշտ կ'ուզէին առժամանակեայ կերպով գո՞հ ցուցնել իրենք զիրենք եւ ասիկա կ'ընէին որպէս զի իշխանը իրենց ռոճիկը աւելցնէ։

Նեղուելու պարագային, Կիւրոսի պահանջքներ կը

դրուէր: Նոր ձեւով գործադուլ մըն էր որ կը կատարուէր այս կերպով եւ կը յաջողէին ալ: Որքան սխալ է ուրեմն այսօր դժբախտաբար մեր օրակարգին վրայ գտնուող գործադուլի շարժումները, իբրեւ նոր, մեր ժամանակի ոգիին համապատասխան բան մը կարծելը, որովհետեւ ասկէ 2000 տարի առաջ ալ տարբեր բան մը չէր որ կը պատահէր: Բոլոր ասոնք 20 օր վատնուելուն պատճառ եղաւ եւ ի վերջոյ հազիւ թէ կարելի եղաւ Սարոս եւ Պիրամոս (Սիհուն եւ Ճիհուն) գետերը անցնելով մինչեւ Իսոս հասնիլ: Իսոս Միջերկրական ծովուն վրայ, մեծ եւ ծաղկեալ քաղաք մըն է, որմէ այսօր հետք մը իսկ չկայ: Հոն Կիւրոս միացաւ Պելոպոնէսէն, նաեւ Միլիտոսէն եւ Եփեսոսէն եկած նաւատորմին, որ 60 նաւերէ կը բաղկանար: Ատոնք իր վերջին օգնական ոյժերն էին, 700 Հոպլիտներ, նաեւ ուրիշ 400 հոգի: Հիմա այլ եւս իր հրամանին տակ 14,000 Յոյներ, որոնց 10,000ը Հոպլիտներ էին, նաեւ 90,000 բնիկ զինուորներ ունէր:

Սարդիկէէն ճամբայ ելլելէն ի վեր, ամբողջ չորս ամիսներ անցաւ մինչեւ որ այդ ճամբան կտրուեցաւ:

## Բ. ԻՍՈՍԷ ԴԷՊԻ ԲԱԲԵԼԱՍՏԱՆ ՅԱՌԱՋԽԱՂԱՑՈՒՄ ՄԻՆՉԵՒ ՔՈՒՆԱՔՍԱՅԻ ՃԱԿԱՏԱՄԱՐՏԸ

Իսոսի մէջ Կիւրոս իր նպատակը որոշապէս գծեց իր աչքին առջեւ. մինչեւ ցարդ տեղի ունեցած խաղաղ յառաջխաղացումը ասկէ վերջ թշնամի երկիրներէ անցնելու ատեն պատերազմական յառաջխաղացումի մը պիտի փոխուէր: Հիմա Կիւրոս Սուրիական մեծ դուռնէն եւ Միրիանտրոսէն(Միրիանտրոս այժմեան Իսկէնտէրուն) անցնելով դէպի Թափսաքոս եւ դէպի Եփրատ ուղղուեցաւ: Իրմէ վերջ Մեծն Աղեքսանդր եւս Եգիպտոսի գրաւման գացած ատեն նոյն տեղէն անցած է: Այս առթիւ յիշենք որ Կիւրոս իշխան անհաւատարմութեան եւ մարդկային ապերախտութեան ցաւալի ցոյցերու առարկայ դարձած էր: Իր զօրականներէն Արկադիացի Քսէնիաս որ երեք տարի առաջ Դարեհ Բ.ի մահուան առթիւ իբրեւ անձնապահ Սարդիկէն մինչեւ մայրաքաղաք ընկերացած էր իշխանին, արժէքաւոր առարկաներ վերցնելէ վերջ գաղտնապէս նաւ մտաւ եւ փախաւ գնաց: Քսենոփոն այս վերջին սպարագան հետեւալ կերպով կը պատճառաբանէ. “Քսէնիաս հիւանդացաւ — որովհետեւ Տարսոսի դէպքերէն անմիջապէս վերջ իր մարդոց մեծագոյն մասը իրենց բոլոր գոյքերով Կլէարքոսի կողմը անցան, առանց Կիւրոսի կողմէ ոեւէ արգելքի հանդիպելու—:„ Կրնայ այդպէս ալ ըլլալ, բայց շատ կարելի է որ Արկադիացին ուրիշ պատճառ ունեցած ըլլար այս անապատային ճամբորդութենէն խուսափելու: Ես որ նոյն ճամբայէն անցայ կը զարմանամ որ ինչպէս ուրիշ Յոյներ ալ չեն հետեւած Քսենիասի օրինակին: Ուրեմն թշնամիին առջեւէն դասալիք ըլ-

լալը զինուորական ոճիր մը կը նկատուէր եւ որուն աստիճանը շատ աւելի ծանր պիտի ըլլար Քսենիասի համար որ Կիւրոսի մասնաւոր շնորհներուն արժանացած էր: Միրիանդրոսէն անդին Կիւրոս Միջերկրականը թողուց եւ լաւ մը պարենաւորուելէ վերջ աճապարանքով Հալէպի վրայէն անցաւ: Յուլիսի վերջերը Պէյլանի կիրճն ալ անցած եւ Դափսաքոս հասած էր:

Թափսաքոս Եփրատի աջ եզերքին վրայ Պիրէճիք քաղաքէն 150 քիլոմէթր անդին կը գտնուի: Եփրատ գետը հիւսիսէն գալով այդտեղէն դէպի արեւելք կ՚ուղղուի, այնպէս որ այդ կէտը Եփրատի ծունկը կարելի է անուանել: Խոշոր եւ բարգաւաճ քաղաք մըն է, որ ամբողջ այդ անապատային շրջանը կը սնուցանէ: Սուրբ Գիրքին մէջ Թիպուք կոչուած է եւ նկատուած է իբրեւ Սողոմոնեան կայսրութեան հիւսիսային արեւելեան սահմանագլուխի նշանաւոր մէկ քաղաքը: Քսերքսէս Թափսաքոսի կողմէն անցած է գետը իսկ աւելի վերջը, Ք. Ա. 331 թուականին ալ Մեծն Աղեքսանդր նաւերէ կամուրջ մը կազմեց գետը անցնելու համար:

Հոդտեղ, Եփրատի. սուրբ գետին Դրախտի Ջուր անուանուած այդ գետին մօտ, ուրկէ Աբրահամ անցաւ Հարանէն դէպի խոստացուած երկիրը իր կատարած ճամբորդութեանը ատեն, Կիւրոս երկրորդ անգամ ըլլալով իր մօտ հրաւիրեց Յոյն զօրականները եւ խօսքը անոնց ուղղելով ըսաւ. «Յառաջխաղացումը ուղղուած է Բաբելոնի Արքայից Արքային դէմ, պէտք է այս պարագան ծանուցանէք ձեր զինուորներուն, որպէսզի անոր համար պատրաստուին»: Հոդ տեղ Կիւրոս առաջին անգամ ըլլալով վարագոյրը վար ձգելով յայտնապէս ցոյց տուաւ խաղացուելիք խաղը:

Զօրականները գացին եւ իրենց զօրքերուն խօսեցան հարկ եղածը: Եւ սակայն դարձեալ դիւրին չէր անոնց խօսք հասկցնելով զանոնք դէպի յառաջխաղացում մղել: Անոնք իրենց սպաները անիրաւ կերպով կ՚ամբաստանէին ըսելով թէ Կիւրոսի հետ երկար ատեն գաղտնի

*խորհրդակցութիւններ եւ համաձայնութիւններ ունեցած են: Ի վերջոյ սակայն բարեյաջող գործադուլի մը աւարտումէն վերջ, ընդունեցին Կիւրոսի առաջարկը, իրենց վարձքերու բարձրացումն ալ միաժամանակ ապահովելով: Ասկէ զատ Բաբելոնտան՝ հասնելէ վերջ ալ մեծ վարձատրութիւններ պիտի տրուէին իրենց: Զինուորները գետը անցան մինչեւ իրենց կուրծքը ջուրին մէջ մնալով, որովհետեւ իրենցմէ առաջ Աբրոքոմաս նաւերը այրած էր եւ գետն ալ ծանծաղ էր: Միեւնոյն կարգի անցք մըն ալ Ք. Ա. 70 թուականին Հռոմայեցի զօրավար Լուկուլլոսը կատարեց, որովհետեւ ամառուան մէջտեղը Եփրատի ջուրին մակերեսը շատ կը ցածնայ:*

*Այսպէսով խաղը այլեւս սկսած էր: Արկեալ էր վիճակն: Եփրատի ընթացքը քրդական լեռներէն սկսեալ Թափսաքոսէն զատ ուրիշ շատ մը անցքի ճամբաներ ունի որոնք պատմական մեծ դեր կատարած են: Թափսաքոսի վրան է Պիրէճիքը (Ապամէա), որ Խաչակրաց ժամանակ գրաւուեցաւ եւ որուն մօտ Եգիպտացի Իպրահիմ փաշան 24 յունիս 1839ին Նիսիպի դաշտին մէջ Թուրքերուն յաղթեց, նաեւ Քարքէմիշը, որ Պարսից գահաժառանգ Նաբուգոդոնոսորի (Աստուածաշունչի Նաբուգոդոնոսորը) Ք. Ա. 605ին Փարաւոն Նեկոյի վրայ տարած յաղթութեան պատճառաւ անուանի եղաւ: Թափսաքոսէն վար կայ Զենոբիան (Տէյրէլզօրի մօտ) որ վերջէն շինուած Սուրիա-Բալմերա-Պարսկաստանի հռոմէական զինուորական ճամբուն վրայ կը գտնուի, Բիլայի, այսօրուան Ֆէլուճայի մօտ: Ես ինքս Եփրատ գետը չորս անգամ անցած եմ, անգամ մը Ֆէլուճայի կողմէն, երկու անգամ Պաղտատէն Քէրպէլա եւ Բաբելոն անցնելու համար եւ ի վերջոյ վերադարձիս Պիրէճիկէն անցած միջոցիս:*

*Խնդիր է թէ իշխանը ի՞նչու Պիրէճիկը եւ Քարքէմիշը թողլով, Թափսաքոսէն, Զենոբիայէն եւ Բիլայէն անցաւ: Գետին երկու եզերքներն ալ գրեթէ միեւնոյն են: Երկու կողմն ալ անապատ է: Այն ատեն ալ այս-*

պէս էր բնականաբար, որովհետեւ ամբողջ այդ հողամասին վրայ Եփրատը շատ քիչ բուսաբեր հող պատրաստած է, թէեւ Եփրատի ձախ եզերքին վրայ Քսէնոփոնի չյիշատակած Պէլիճի եւ Խապուրի ցած հողերը կամ որոնք «բազում ծորեան եւ գինի» կ'արտադրէին ու արօտատեղիներ կը պարունակէին:

Կիւրոս սակայն դէպի այդ անապատային ճամբան ուղղուեցաւ կատարուած իրողութիւն մը պատրաստելու համար, որպէս զի զինուորները ետ դառնալու կարելիութիւն չունենան, որովհետեւ Եփրատի վերին ընթացքը աւելի դիւրութեամբ կ'անցնուի, քան անկէ 100 քիլօմէթր աւելի վար գտնուող մասերը: Միայն այդ չէր սակայն իր նպատակը, ան կ'ուզէր նաեւ որ իր թշնամի եղբօրը, Արքայից Արքային զգալի մօտաւորութեան մը վրայ գտնուած միջոցին զգուշանայ ապագայ գետանցքէ մը: Եփրատի ձախ եզերքին վրայէն արագօրէն դէպի Արաքսէս կամ Խապուր գետը գնաց (Քարաճա.Տաղէն դէպի վերին Միջագետք կուգայ), որուն ստորոսները երեք օր հանգստացաւ պաշար առնելու համար: Այս արտորացումը—250 քիլօմէթր ինը օրուան մէջ—եւ անկէ վերջ ալ մինչեւ Քունաքսայի ճակատամարտը կտրուած ճամբան առանց մեծ բանակի մը համար որ անապատին մէջէն կ'ընթանայ, անսովոր եւ արտակարգ է: «Կիւրոս հիմա կարելի եղածին չափ կը փութացնէր արշաւանքը. կ'ըսէ Քսենոփոն, եւ կը վարէր հոն ուր սնունդ կ'ստացուի եւ կամ թէ ուրիշ հարկեցուցիչ պարագայ մը կայ, որովհետեւ կը կարծէր թէ որքան աճապարէ, այնքան Արքան անպատրաստ պիտի գտնէ, եւ ընդհակառակը որքան ուշանայ այնքան զօրաւոր բանակի մը դէմը պիտի գտնուի: Ով որ իրաց կացութեան լաւ տեղեակ է, գիտէ թէ պարսկական կայսրութիւնը իր ոյժը իր հեռաւոր երկիրներէն եւ ժողովուրդներէն առնելուն համար, ճամբաներուն երկարութեանը եւ զինուորներուն ընդարձակ տարածութեան վրայ բաժնուելուն պատճառաւ դարձեալ կը կորսնցնէ, եթէ

թշնամի մը կարենայ շուտով պատերազմ մը վարել իր դէմ»: Քսենոփոնի այս շատ քիչ ուշադրութեան առարկայ եղած խօսքերը անուրանալի ճշմարտութիւն մը կը պարունակեն: Նորագոյն ժամանակներու մէջ Խրիմի եւ ռուսեւճապոնական պատերազմներու ընթացքին մենք տեսանք թէ Քսենոփոնի դասէն օգուտ քաղելու է նաեւ այսօրուան պարագաներուն եւ ի մասնաւորի Ռուսիոյ համար:

Օգոստոսի կիզիչ արեւուն տակ Քորսօթի վրայով Բիլայ գացին: Եփրատի հաւանական մէկ թեւէն Մասքատէ ջրուող Քորսօթը իմ գիշերած Ալուքէմալիս տեղը պէտք է որ գտնուի: Քսենոփոն զայն «ամայացած քաղաք» կ՚անուանէ, մինչ երբ նկատենք հարիւր հազար հոգինոց բանակ մը այդ տեղը այդչափ ամայի պէտք չէ համար: Հոդ ալ երեք օր հանգիստ ըրին եւ պաշար առին:

Թափսաքոսէն մինչեւ Բիլայ, ամբողջ ճամբուն վըրայ տարւոյն մեծագոյն մասը չոր կ՚ընէ եւ մարդ աւազներու մէջ կը թաղուի եւ կամ թէ գարնանային ջուրով կը ջրուի ու ցեխ առաջ կուգայ այն աստիճան որ ոչ միայն կառքերը չեն կրնար երթեւեկել, այլ նաեւ հետեւակներն ալ կը ծածկուին անով եւ հեծեալները մեծ դժուարութիւն կը կրեն ատկէ անցնելու: «Անմիջապէս Կիւրոս իր հետեւորդներէն եղող երեւելի եւ հարուստ Պարսիկներուն հետ մէկտեղ կեցաւ եւ հրաման ըրաւ Պարսիկ զինուորներուն որ կառքը դուրս քաշելու օգնեն: Եւ որովհետեւ այդ բանը շուտով կատարելու ի վիճակի չէին, յուզուած ու բարկացած իր հետեւորդները եղող երեւելի Պարսիկներուն ուղղուեցաւ եւ հրամայեց որ իրենք ձեռքով վեր վերցնեն: Այդ առթիւ հնազանդութեան ոչ աննշան օրինակ մը տեսնուեցաւ, որովհետեւ ամէնքն ալ վար նետեցին իրենց ծիրանի զգեստները եւ իրար գերազանցեցին իրենց ներքնազգեստը եւ ծնրակալերը կարծր գետիններուն վրայ նետելու մէջ, որոնցմէ ոմանք շղթաներով եւ ապարօշնե-

*րով զարդարուած էին: Բոլոր այդ զարդերով անմիջապէս ցատկեցին ցեխին մէջ եւ սպասուած ժամանակէն առաջ կառքը դուրս բերին»:*

*Հարիւր հազարնոց բանակ մը Թափսաքոսէն Բիլայ տանելու համար մունիդ եւ այլ պատրաստութիւններ պէտք էր: Բնական է որ բազմաթիւ գրաստներ անօթութենէ ճամբան կը մեռնէին, որովհետեւ անապատին մէջ ոչ արօտատեղի եւ ոչ ալ բոյս մը կամ թուփ մը կար: Սակաւաթիւ բնակիչները անգամ իրենց ապրուստի նիւթեր գտնելու համար գետեզերքի վրայի «քարերը կ'առնէին եւ իբրեւ աղօրիքի ու ջաղացքի քար Բաբելոն կը տանէին»:*

*Այսօր անգամ այդ կողմի ժողովուրդը քարակոփութեամբ կ'զբաղի, որոնք ընդհանրապէս Շիիթներուն մեծ ուխտատեղին, Քէրպէլա կը ղրկուին:*

*Ուտեստեղէններուն գինը չափազանց բարձրացած էր եւ Բարբարոսներու բանակին հետեւող վաճառորդները իրենց ապրանքները կարելի եղածին չափ սուղ կը ծախէին: Ասոր համար շատ պէտք չէ զարմանալ: Անօթութիւնը այնչափ սաստիկ էր որ այլեւս չէին վախնար մինչեւ Եփրատի աջ եղերքը գտնուող Խարմանդէն արմըտիք եւ Արմաւի գինի բերելու: Հետաքրքրական է մանաւանդ անոնց փոխադրութեանը համար գործածուած կառքերուն եւ այժմու «քէլէք»ներուն նմանող նաւակներուն արագօրէն պատրաստուիլը: Օսմանեան ծառայութեան մէջ գտնուող հազարապետ ֆոն Մոլթքէ եւս օգտուած է այդ «քէլէք»ներէն Եփրատի մէջ նաւարկելու համար:*

*Այս միջոցին Լէգէոնի զինուորներուն միջեւ հակառակութիւնները, անկարգապահութիւնը եւ խմբակներու թշնամութիւնները սաստկացած էին: Անգամ մը Կլէարկոս խիստ կերպով յարձակեցաւ Մենոնի զինուորներէն մէկուն դէմ որուն մարդիկը Կլէարկոսի քարեր նետեր էին: Ասոր վրայ Կլէարկոսի եւ Մենոնի գունդերուն միջեւ ընդհարում մը սկսաւ: Թշնամիին առջեւ*

Յոյները իրար պիտի ջարդէին եթէ Կիւրոս ճիշդ ժամանակին չհասնէր եւ չարգիլէր։ Այս ներքին ցաւալի կացութիւնը աստիճանաչափ մըն է որ պիտի բացատրէ ապագայ դէպքերը եւ Քսենոփոնի մատուցած ծառայութիւնները։

Թէպէտ թշնամին շատ մօտ կ'զգային իրենք զիրենք, բայց բան մը չէին տեսներ։ Կիւրոս ձիու հետքերէ եւ այլ նշաններէ հասկցաւ որ արքայական զօրաւոր հեծելագունդ մը անցած է անկէ եւ ամէն բան ոչնչացուցած, որպէսզի ինք հոն չկարենայ ո եւ է կերպով ապաստան գտնել։ Բարեբախտաբար իշխանը երեւան հանեց Որոնդէս անուն երեւելի պարսիկի մը մատուցած մատնութիւնը եւ որ այս տեսակ նմանօրինակ ընթացքներու համար արդէն երկու անգամ ներուած էր, իբրեւ օրինակ խիստ պատիժի ենթարկուեցաւ սպաննուելով։

Բանակը այլ եւս կամաց կը քալէր, որովհետեւ ժամէ ժամ Արքայից Արքային հետ ընդհարում մը կ'սպասուէր եւ ամէն ատեն միւս զօրագունդերու օգնութեան պէտք ունէր։ Եւ այս, միայն հոս կրնար ըլլալ, քանի որ այլ եւս Ջրուտ, ցեխոտ եւ մինչեւ այսօր իսկ ներսերը շատ քիչ թափանցուած Միջագետքի կամ Ճէզիրէի անապատային սթէփները անցած էին, այլեւս Բաբելոնի կամ Իրաքի պէս հարուստ երկիր մը եկած էին։ Կիւրոսի արշաւանքէն 25 տարի առաջ մեռնող Հերոդոտոս կը պատմէ թէ Բաբելոնի ցորենին եւ արմաւին հարստութիւնը միւս երկիրները կ'անցնի։ Տակաւին մինչեւ Հարուն-էլ-Րաշիտի ժամանակ (արաբական տիրապետութիւն) օրհնուած երկրամաս մըն էր։ Թերեւս Աստուածաշունչի մէջ իբրեւ մարդկային Արքայութիւնը նկատուած այս երկիրը, օսմանեան նոր վարչութեան օրով երբ Պաղտատի երկաթուղիին շինութիւնը աւարտի դարձեալ պիտի զարգանայ, թէպէտեւ այդ շատ կամաց պիտի ըլլայ քանի որ Արեւելքը կրօնքով, ժողովուրդով եւ կառավարութիւնով լճացած մնացող է, եթէ նոյնիսկ յառաջդիմութիւն բերող երկաթուղիները շինուին

Կիւրոս ճամբուն երրորդ մղոնին վրայ տակաւին կէս-գիշեր չեղած ամբողջ բանակին զօրանցք մը կատարել տուաւ, երբ արքայական բանակը տակաւին հեռուն էր եւ վճռական ճակատամարտն ալ արշալոյսին միայն կ'սպասուէր: Բովանդակ աշխարհի պատմութեանը մէջ հազուագիւտ է նմանը գտնել այս տեսակ կէս-գիշերեան ընդհանուր ռազմափորձի մը պատկերացուցած տեսարանին:

Զօրահանդէսէն վերջ իշխանը իր մօտ կանչեց իր յոյն սպաները ու իր ենթասպաները եւ առտուան դէմ հանդիսաւոր կերպով խօսեցաւ անոնց հետ: Ճակատամարտի հրամանները տուաւ, ճառով մը քաջալերեց զանոնք եւ յաղթութեան մը պարագային նոր վարձատրութիւններ խոստացաւ: Զօրահանդէսէն ետք ամբողջ բանակը թուահամարէ մը անցընելով տեսնուեցաւ որ Յոյները 10,400 ծանր զինուած եւ 2,400 ալ թեթեւազէն ունէին. մինչ բնիկ զօրքը 100,000 մարդու կը հասնէր, 20 մանգաղ կրող կառքերով միասին: Այս կառքը Արքային բանակին մէջ եւս գոյութիւն ունէր. տեսակ մը կառք էր, որուն առանցքին երկայնքին սուրերը կամ մանգաղները պառկած էին դէպի գետին ծռած որպէսզի ինչ որ հանդիպին կտրեն: Եկպատանէն (Համատան, Պարսկաստան) փութացող Արքայական բանակը սակայն մէկ միլիոն 200 հազար զինուորէ եւ 200 մանգաղի կառքերէ կը բաղկանար, որ չորս հաւասար մասերէ կը կազմուէր եւ որոնցմէ Աբրոքոմայի ղեկավարութեան տակ գտնուող մասը, ինչպէս լուր առած էր Կիւրոս, տակաւին ճակատամարտի դաշտը չէր հասած: Անիկա Քունաքսայի ճակատամարտէն 5 օր վերջը հասաւ Արքայից Արքային մօտ:

Թերեւս պարսկական բանակին զօրութիւնը նշանակելի կերպով չափազանցուած է, բայց եւ այնպէս անոնք այնպիսի զօրաւոր զանգուած մը կը ներկայացնէին որ եթէ զանոնք ամէնքն ալ նեղ տեղ մը պարփակել տային, դարձեալ անոնց պաշար հասցնելու խնդիրը

անլուծելի հարց մը կը մնար: Առտուան դէմ Կիւրոս իր զօրքերուն հետ յառաջ խաղաց մինչ անոնք յոգնած էին: Կէս ճամբան, երկու ժամ վերջը նոր կառուցուած լայն պատուարի մը առջեւ հասան, զոր թագաւորը իր եղբօրը թշնամական յառաջխաղացումը լսելով 50 քիլօ-մէթրի վրայ շինել տուած էր Ք. Ա. 580 թուականին: Ասոր վրայ գնաց դէպի այն կէտը ուր Եփրատ եւ Տիգ-րիս մէկ կամ երկու օրուան ճամբու երկայնութեան չափ իրարու կը մօտենան, հին Օպիսի եւ այսօրուան Պաղտատի մէջտեղ, հարաւային արեւմտեան ուղղու-թեամբ: Ոմանք կը կարծեն կամ կը փափաքին (Լինչ) այդ պարիսպներուն հետքերը գտնել, բայց ես չգտայ:

Այս պատուարին շինութիւնը Մարական պարիսպէն վերջ պաշտպանութեան երկրորդ միջոց մըն էր որ ձեռք առնուած էր: «Այս պատուարին առջեւէն Կիւրոս իր բանակովը քաշուեցաւ եւ պատուարը իր ետեւը ձգեց»: Քսենոփոն կ'ըսէ թէ նոյն օրը երկու ժամ եւս պատերազմական կարգով յառաջ անցան: Ասիկա սխալ է, որովհետեւ ամբողջ բանակը պատուարին առջեւ կեցաւ այս անցքէն դուրս ելլելու եւ վերստին յառաջանալ կարենալու համար, ասիկա այնպիսի շարժում մը եղաւ որ անխուսափելի դժուարներն ալ միասին հաշուելով նոյն իսկ ամենամեծ կարգապահութեան ատեն քանէ աւելի ժամեր կը պահանջէր:

Քսենոփոն միմիայն յունական լեգէոնն է որ աչքի առջեւ ունեցած էր, մինչ բնիկ զինուորները արեւելեան կողմը իրենց համար անձնական կամուրջներ շինելով անցան վրայէն եւ դէպի առաջ գացին—ինչ որ ասանկ զանգուածներու համար շատ երկարատեւ եւ չափա-զանց յոգնեցուցիչ գործողութիւն մըն է: Սպասուածին հակառակ թշնամին հոն չէր, «միայն մարդոց եւ ձիե-րու բազմաթիւ ոտքի հետքեր ցոյց կուտային թէ նա-հանջած են անոնք»: Հակառակ անոր որ իշխանը ընտա-նեկան հպարտութենէ մղեալ լաւ գաղափար մը կազ-մած էր թագաւորին քաջութեան վրայ—ոչ թէ «Դա-

րեհի եւ Պարիզատեսի զաւկին եւ իր եղբօր մասին»— հիմա այլ եւս կը կարծէր թէ պատուարի անցքէն ետք արգելքի չպիտի պատահի եւ շուտով կամ անմիջապէս վերջ յարձակումի չպիտի ենթարկուի: Անիկա այնպէս կը կարծէր թէ «թագաւորը տեղի տուած է եւ չպիտի զարնուի»: Իր մեծագոյն չափով ցոյց տուած կանխատեսութիւնը թողլով, ընդհակառակը մեծ անհոգութեան մը մէջ ինկաւ: Յաջորդ երկու օրերու ընթացքին ան շարունակեց յառաջխաղացութիւնը առանց ոեւէ ապահովութեան: Կիւրոս ինքն իսկ կառք մը նստաւ առանց ամենափոքր ծածկոյթի, մինչ իր մարդիկը անկարգ ու անկանոն կերպով, խումբ խումբ կ'երթային եւ իրենց զէնքերը կառքերու եւ գրաստներու վրայ կը բեռցնէին: Եւ բոլոր ասոնք կը պատահէր, քանի մը քիլոմէթր անդին պատերազմի կազմ ու պատրաստ սպասող հսկայական բանակի մը մօտը: Ասկէ կը տեսնուի թէ ճամբու ապահովութեան խնդիրը որ աստիճան անխնամ թողուած էր: Թէ ինչո՛ւ Արտաքսերքսէս Բ., այն ատենի արեւելեան կամ եգիպտական վեհապետի մը տրամադրութեան տակ գտնուող մարդկային ուժը սպառելով այդ հրաշակերտ կամ հսկայանման պատուարը կառոյց, եւ ինչո՞ւ Եփրատի վրայ յայտնապէս այդ անցքի պարապը թողուց: Այդ կացութիւնը ես սապէս կը բացատրեմ: Թագաւորը իր հակառակորդը բոլորովին պարտութեան մատնել չէր ուզեր—ինչ որ քիչ թէ շատ վտանգաւոր էր—այլ կ'ուզէր զայն բոլորովին անվնաս դարձնել: Անիկա կ'ուզէր իշխանը հրապուրել եւ հրաւիրել զինքը որ բացուած պարապ մասէն անցնի եւ ջրանցքներով կտրուած երկրին մէջ աւելի եւս յառաջանայ, որպէսզի պարիսպին եւ պատուարին ետեւէն Եփրատի աջ կողին վրայ յարձակի եւ զարնէ: Երբ այս ծրագիրը իրականանար, յաջողութիւնը կատարեալ պիտի ըլլար ի գին ոչնչացման թշնամի բանակին:

Արդէն իսկ երկրորդ օրը ցերեկ ատեն մտադրուած տեղը հասած էին երբ Պատեգիաս անուն պարսիկ տե-

ղեկաբեր սպայ մը «ձին քառատրոփ եւ քրտնաթաթախ վիճակի մէջ վազցնելով հասաւ եւ հանդիպած մարդուն պարսկերէն եւ յունարէն լեզուաւ սկսաւ պոռալ. Արքան մեծ բանակով եւ ճակատամարտի կարգով կը յառաջանայ»։

Պատերազմներու պատմութեան մէջ շատ անգամ ասանկ յուզումնալից կերպով լուրեր տրուած են (Բրուսիացինները կուգա՜ն): Ասիկա չնմանիր սակայն Կեսարի նկարագրած գաղիական պատերազմի մէկ տեսարանին երբ Կոնսիտիոս «շատ փորձառու պատերազմիկ մը» սանձարձակ վազեց եկաւ Կեսարին կարեւոր լուր մը հաղորդելու համար որուն սուտ ըլլալը վերջէն հասկցուեցաւ:

Բնական է որ ասոր վրայ անկարգ ու անկանոն մարդկային զանգուածին մէջ «սոսկալի խառնաշփոթութիւն» մը յառաջ եկաւ, մինչ այս տեսակ աննպաստ պարագաներու մէջ թշնամիէն յարձակում կրելու եւ պարզապէս յաղթուելու մեծ վտանգը մօտ էր: Բարեբախտաբար Կիւրոս "կառքէն իջաւ, զրահ հագաւ, ձի հեծաւ եւ սուրը ձեռք առաւ„: Ցանկարծակիի չեկան հրամանատարութեան մեքենան նաեւ լրատարութիւնը շատ լաւ կազմակերպուած էր: "Ամենամեծ արագութեամբ մը„ ինչպէս Քսենոփոն կ'ըսէ, նաեւ իմ կարծիքովս զարմանալի հնարամտութեամբ մը «կարգը հաստատուեցաւ», յառաջխաղացումը եւ ճակատամարտի ուղղութիւնը կարգադրուեցաւ. Յոյները՝ աջ կողմը, Բարբարոսաց բանակը՝ ձախ կողմը մինչեւ բարձրութեան վրայ: Առաջիններուն կը հրամայէր այդ օրը Եփրատի վրայ աջ թեւը կազմող բովանդակ Լէգէոնին վերին հրամանատար՝ Կլէարկոսը, որուն տրուեցաւ նաեւ բնիկներու (Պափլագոնիայի) հեծելագունդի հրամանատարութիւնը: Մենոն կը հրամայէր ձախ գունդին, իսկ ինքն Կիւրոս Յունական Լէգէոնին հետ բնիկ զինուորներուն մէջտեղ կը գտնուէր:

Տակաւին թշնամի չէր տեսնուէր: Քիչ վերջը ա-

կայն, ցորեկին "սպիտակ ամպի նման փոշի մը կը տես-նուէր, որ կամաց կամաց մթութեան մը կը վերածուէր եւ ամբողջ դաշտը կը ծածկէր»: Բաբելաստանի մէջ Սեպտեմբերի սկիզբն էր: Երբ շատ մօտեցան հետզհետէ սկսան տեսնուիլ զէնքերու փայլող մետաղը եւ ուրիշ փայլուն ռազմական առարկաներ — հիմա մենք նոր հա-գուստի եւ նոր զէնքերու կատարելիք ազդեցութենէն կ'զգուշանանք—: Հետզհետէ յայտնի կ'ըլլար զօրաբա-ժիններուն զօրութիւնը, քառակուսի կազմած ջոկատներ երկու կողմի վրանապատ հեծելագունդերը եւ իրարմէ հեռու, ճակատին վրայ երեւցող մանգաղի կառքերը: Ամէն ինչ «հանդարտօրէն եւ համաչափ քայլերով կը յառաջանային», այնչափ դանդաղօրէն, որ Կիւրոս Թշ-նամիին ռազմական կարգին ծանօթանալէ վերջ տակաւին ժամանակ գտաւ Յոյներուն ճակատը երթալու եւ աջ թեւին հրամանատար Կլէարկոսի հրամաններ տալու, որպէսզի դէպի թշնամիին կեդրոնը ուղղուի, որովհետեւ հոն էր թագաւորը եւ «անգամ մը որ ան զարնուի, յաղթութիւնը մերն է»: Կիւրոս թագթիքի տեսակէտով լաւ ճշդած էր այս գլխաւոր կէտը, աչքի առաջ ունե-նալով արդիւնքը:

Արքայական բանակին ճակատը Կիւրոսի բանակէն շատ աւելի ընդարձակ տարածութեան մը մէջ կը գըտ-նուէր եւ անանկ եղանակով մը, որ արդէն իսկ կեդրոնը Կլէարկոսի դէմ քալել կը հարկադրուէր եւ ձախ թեւն ալ Բարբարոսներու բանակին կը հանդիպէր: Կլէարկոս բոլոր ատոնք անձամբ տեսաւ եւ գիտէր որ կեդրոնին դէմ կատարելիք յարձակումին մէջ դէպի ձախ պէտք էր ուղղուիլ, բայց մտածելով որ աջ կողմէն Եփրատի յենլով կարելի էր որ պաշարուէր, հրամանը չգործա-դրեց եւ իր զինուորները ուղղակի առաջ մղեց: Հետե-ւաբար Կլէարկոսի այս ընթացքը երբեք չի համապա-տասխանէր առաջնորդէ մը պահանջուած պատասխա-նատուութեան զգացումի մեծ յատկութեան, այն պատ-ճառով որ ադկէ ամէնուն ալ մտքին մէջ կը ծնի հրա-

մանի դէմ շարժելու եւ իր անձը պաշտպանելու գաղափարը, ուրկէ անկարգապահութիւն կը ծնի: Երբ արքայական բանակը 6-700 մէթր յառաջացաւ, Յոյները ճակատամարտի երգերով սկսան յարձակումի: Մինչ լէգէոնը անդին թշնամիներուն դէմ մասնակի յաջողութիւն մը կ'ունենար, Արքայից Արքան իր բանակին մեծագոյն մասովը, տեսնելով թէ իր դէմ հակառակորդ չկայ, դէպի ձախ ուղղուեցաւ: Իշխանը որ ձախ թեւին եւ բանակին կռնակին կը հսկէր, յանկարծ իր առջեւ տեսաւ արքան հեծեալներու շարքի մը մէջ: Ատոր վրայ մէկէն ի մէկ իր ատելութիւնը բռնկելով, իր խիզախ բնաւորութենէն առաջնորդուած, ինչ որ առաջնորդողին համար նախնական սկզբունքներէն մին է, առանց անհրաժեշտ պէտք մը ըլլալու, ինքը վտանգին առջեւ նետուեցաւ, ամբողջութիւնը չվտանգելու համար, առանց նկատի առնելու զինքը շրջապատողներուն խընդրանքը. որպէս զի ետ կենայ. անիկա նետուեցաւ իր եղբօրը վրայ, վիրաւորեց զայն, ինքն ալ սակայն ինկաւ իր հաւատարիմներուն միջեւ:

Երիտասարդ եւ կարող իշխանին մահը ոչ միայն օրուան բախտը վճռեց, այլ նաեւ իր խոհեմ եւ յանդուգն ծրագրին գործադրութիւնն ալ ձախողեցուց: «Բարբարոսաց բանակը» փախաւ առանց Յոյներէն նըշմարուելու, որովհետեւ այս վերջինները այդ միջոցին անհոգ կերպով յառաջացած էին եւ ճակատամարտը անանկ սաստկութիւն մը եւ ընդարձակ տարածութիւն մը առած էր որ անկարելի էր իմանալ: Լէգէոնին կրկին յաղթութիւնը, որով ան ի վերջոյ ետեւի եւ քովընտի կողմերուն վրայ քալող Պարսիկներուն վրայ կը յառաջանար եւ զանոնք դարձեալ փախուստի կը մատնէր, կացութիւնը չկրցաւ փոխել: Կիւրոսի անձին հետ մէկտեղ այս արշաւանքին նպատակն ալ կորսուեցաւ:

Ի վերջոյ, երեկոյին, Յոյները իրենց բանակատեղին դարձան: Տեսան որ կողոպտուած է եւ հետեւեալ առտուն միայն հասկցան թէ Կիւրոս մեռած եւ «Բարբա-

րոսաց Բանակ»ն ալ իր բանակատեղիէն փախած էր։ Հրամաններու հաղորդակցութիւնը որ խիստ կարեւոր էր, այսպէսով խանգարուած եւ բանակին ներքին կապակցութիւնը խզուած էր։

Այսպէս տեղի ունեցաւ Քունաքսայի ճակատամարտը Ք.Ա. 401 ի Սեպտեմբեր 3ին, Սարդիկէէն ճամբայ ելլելէն վեց ամիս ետք եւ այս ամէն ատենի համար երեք տեսակէտով դաս մըն է որ կը հաստատէ թէ մասնակի յաջողութենէ մը այն ատեն միայն կարելի է ընդհանուրին համար օգուտ քաղել երբ շարքերէն դուրս ելլելը կ'արգիլուի, երբ վերին հրամանատարութիւնը միշտ ետեւ կը կենայ, ամէնուն վրայ հսկելու եւ զանոնք մղելու համար, ի վերջոյ երբ սկիզբէն մինչեւ վերջ համերաշխութեան զգացումներով տոգորուած կ'ըլլան բոլոր առաջնորդները, թէ իրենց բարձրագոյն պետին հանդէպ եւ թէ իրենք իրենց միջեւ։

Յոյները պարզապէս կ'ըսէին թէ պատերազմին ատեն մարդ չկորսնցնեն, որովհետեւ թշնամիները իրենց առջեւէն ընդհարումէն առաջ կը փախէին, մինչ որ նոյն ատենի Պարսիկներուն մղած այս միլիոնաւորներու ճակատամարտներուն մէջ ցոյց տուած զինուորական յատկութեանց մասին շատ տխուր արդիւնք մը ցոյց կու տայ։ Ատոնք, ինչպէս Քսենոփոն կ'ըսէ, մանկլաւիկներ են, որոնք վճռական վայրկեաններու մէջ առանց վարձատրութեան խարազանի հարուածներով ոչ թէ դէպի յաջողութիւն այլ դէպի մահ կ'առաջնորդուէին։

# Գ. ՆԱՀԱՆՋ ԲԱԲԵԼԱՍՏԱՆԷ ՄԻՆՉԵՒ ՔՐԴԱԿԱՆ ԼԵՌՆԵՐ

*Աշունին երկար Նոյեմբերի 401 Ք.Ա.*

*Հարիւրաւոր մղոններու տարածութիւն ունեցող ծովերով, անապատներով եւ լեռներով Հայրենիքէն բաժնուած եւ առանց բարեկամի —որովհետեւ ինչպէս շուտով յայտնուեցաւ «Բարբարոսաց Բանակ»ին վրայ հաւատք կարելի չէր ունենալ— Յոյները շատ դժուարին կացութեան մը մատնուեցան: Կամ պէտք էր զէնընկէց ըլլալով յանձնուիլ արքային եւ կամ երկիր վերադառնալ: Թէպէտեւ դժկամակութեամբ, բայց եւ այնպէս այս վերջինին որոշում տուին եւ Արքայէն ալ այս մասին համաձայնութիւն ձեռք բե[illegible]: Բայց բանակցութիւնները այնքա՛ն երկար տեւեցին որ Ք.Ա. 401 Սեպտեմբերի վերջերը միայն կրցան Բաբելաստանը թողուլ երբ Ջրանցքներու ջուրերուն պատճառաւ ճամբաները անանցանելի դարձած էին: Սկիզբները «Բարբարոսաց Բանակ»ին, այսինքն թէ Կիւրոսի յաջորդ Տիսափեռնէսի զօրագունդերուն ընկերակցութեամբը եւ երեւութական պաշտպանութեանը տակ, նաեւ Հայաստանի Սատրապ Որոնդէսի հետ դէպի ետ արշաւանք մը կազմակերպուած էր թէեւ, բայց վերջէն ատիկա հասարակ նահանջի փոխակերպուեցաւ: Յոյները, լքուած ու մատնուած էին օտար եւ անուններուն անգամ անծանօթ երկիրներէ անցնիլ ստիպուեցան, եւ այսպէսով բովանդակ աշխարհի պատմութեան մէջ գոյութիւն ունեցող մեծ ձեռնարկ մը կատարեցին բոլորովին աննպատակ կերպով: Յոյները դէպի Հայրենիք վերադառնալու առթիւ երկու կարելիութիւն կը տեսնէին: Առաջինը իրենց եկած ճամբով վերադառնալն էր, իսկ երկրորդը Տիգրիսի (Քսենոփոն*

Տիգրէս կը գրէ) վրայով բարձրանալ եւ կարելի եղածին
չափ արեւմտեան ուղղութեամբ ընթանալով Փոքր Ասիա
հասնիլ: Առաջին ճամբան իրենց ծանօթ էր եւ կարճ,
բայց հոն ուտելիք գտնել կարելի չէր: Կը մնար երկ-
րորդ, անծանօթ եւ ընդարձակ ճամբան, ուրկէ անցնիլ
ստիպեցին նաեւ Պարսիկները, անտարակոյս զանոնք դէպ
ի ներսերը հրաւիրելով ապահով կերպով ոչնչացնելու
համար: Յոյները որոշեցին Տիգրիսի ճամբան բռնել,
բայց ոչ թէ Տիգրիսի աջ եզերքին վրայ գտնուող արեւ-
մըտեան ճամբէն, այլ ձախ եզերքին վրայ գտնուող
արեւելեան ճամբէն ընթանալու պայմանաւ. հակառակ
անոր որ, առաջին պարագային գետէն անցնիլ դրեթէ
հարկ չպիտի ըլլար. մինչ արեւելեան ճամբուն համար
սկիզբները այդպիսի պէտք մը պիտի զգացուէր, եւ եր-
կրորդ անգամ՝ դէպի Յոնիա ուղղուելու համար դարձ-
եալ գետը երկրորդ անգամ՝ անցնիլ պէտք պիտի ըլլար:
Գետէ անցնելու խնդիրը մեծ նշանակութիւն ունեցող
հարց մըն էր, որովհետեւ Տիգրիս Եփրատէն շատ աւելի
խիստ ջուրի ընթացք մը ունի: Այս որոշումը մեծ առըն-
չութիւն ունի սնունդի խնդրին հետ, որովհետեւ արեւ-
մըտեան մասը ուրկէ ես անցայ Ասորեստանի պեղում-
ները այցելելու համար, Միջագետեան անապատային
սթէփներ կը պարունակէ ամէն կողմ մինչեւ գետեզրը,
մինչեւ Տիգրիսի արեւելեան կողմը: Շատ հին ժամանակ-
ներէ սկսելով մինչեւ հիմա բազմաթիւ գետի ճիւղա-
ղաւորումներ կան, որոնք այդ ընդարձակ երկիրը բա-
րեբեր եւ բազմամարդ ըրած են: Այսօր եւս Պաղտատէն
Մուսուլ գացող կարաւանը այդ կողմէն կ՚անցնի, Քէր-
քուկի եւ Արբելայի վրայէն:

Յոյները սակայն Բաբելաստանի եւ Պարսկաստանի
միջեւ գտնուող այս հին հաղորդակցութեան ճամբէն
չգացին, այլ աշնան վերջերը երբ ջուրը ծանծաղ կը
դառնայ, կանգ առին գետին մօտ, որովհետեւ վախցան
աւելի առաջ դէպի վայրենաբնակ քրդօպարսկական լեռ-
ները յառաջանալու: Կիւրոսի մահէն վերջ բոլոր գնդա

պետները, գլխաւորները եւ զինուորները Կլէարկոսի կը հպատակէին, լոկ համաձայնութեամբ առանց զայն իրենց առաջնորդ ընտրած ըլլալու «որովհետեւ տեսան թէ անիկա վերին հրամանատարութեան համար հարկ եղած կարողութիւնը ունէր, մինչ ուրիշները այդ մասին անփորձ էին»: Միայն վտանգը եւ դժուարութիւնը զիրենք հարկադրեց միանալու եւ կարգապահութիւն ունենալու։

Սիդդակէի մօտ (հաւանաբար Պաղտատի մօտերը) Յոյները Ք. Ա. 401 հոկտ.ին սկիզբը նաւերով կազմուած պատրաստ կամուրջի մը վրայէն Տիգրիսը անցան եւ դէպի հիւսիս ուղղուելով նախ Փիսկոս գետին վրայ Օպիս քաղաքը եւ ապա գետէն քիչ կամ՝ շատ հեռաւորութեան վրայ երթալով 15 օրէն Զապաթոս հասան: Զապաթոս Տիգրիսի ամենանշանաւոր մէկ ճիւղն է որ դէպի քրդօ-պարսկական լեռները կ՚ուղղուի: Այդ կողմերը ընդարձակ տարածութեան մը վրայ անապատային երկիրներ կան, որոնցմէ անցան, անցնելով նաեւ շատ հաւանաբար Քսենոփոնի չյիշատակած ճէպել Համրինէն, որ հիւսիս-արեւմուտքէն դէպի Ասորեստան եւ անկէ մինչ պարսկական սահմանագլուխ ուղղուիլ, նաեւ երկու կողմէն բաց թողուած ճամբով մը գետին անցքը ապահովող հարիւրաւոր մէթր բարձրութեամբ լեռնաշղթայէն: Ես զայն Աստուածաշունչի մէջ ցոյց տուած Արարատը կը նկատեմ ուր հեռատես եւ իր երկրին բնական անակնկալներուն տեղեակ շէյխին, Նոյ նահապետին՝ ժամանակին կազմեց տապանը եւ խառն բնակչութեամբ իջաւ, երբ ջուրը դէպի ծով իջաւ: Եւ հոս էր որ Տիգրիսի արեւելակողմը, ճէպէլը Համրինի այս սուրբ, պըտղաբեր եւ այգեւէտ երկրին մէջ իր բնակութիւնը հաստատեց:

Արեւելքը թէեւ անուններու տեւականութեան տեսակէտով պահպանողական է, բայց շատ տեղերու մէջ ոչ միայն ասանկ չէ, այլ նաեւ կարգ մը վայրեր բոլորովին անյայտացած են: Ես կը կարծեմ թէ ճէպէլը

*Համրինը նախապէս Արարատ կը կոչուէր եւ հիմա իր անունը կորսնցուցած է: «Լեռ» բացատրութիւնը արգելք մը չէ ատոր, քանի որ Բաբելացի Նոյը միայն դաշտի վրայ գաղափար ունենալով իրեն համար բարձրութիւնները լեռ էին: Բաբելաստանէ հարիւր մղոնէ աւելի դէպի հիւսիս եւ հայկական բարձրաւանդակին միւս կողմը գտնուող ճշմարիտ Արարատը, որ յաւիտենական ձիւնով ծածկուած է եւ Մօնպլանէն ալ 300 մէթր աւելի բարձր է, այն չէ եւ չկրնար ալ ըլլալ:*

*Տիգրիսի կողին վրայ գտնուող Կալնա քաղաքին բնակիչներէն ապրուստի պաշար առին եւ գետնաւերու (քէլէք) մէջ փոխադրեցին: Եզեկիէլ մարգարէն Կալնան անուանած է «ծաղկեալ եւ մեծ քաղաք»: Մենք սակայն վճռական կերպով ընդունած ենք որ այս քաղաքը հին Ասուր քաղաքն է, ուր ասորական շինութիւններ ու հետքեր ալ կան: Մինչեւ Զապաթոս Յոյները հանդարտ ձգեցին: Այդտեղ սակայն, թէ իրենց հայրենիքէն եւ թէ Բաբելոնէն բաւականաչափ հեռու ըլլալնուն պատճառաւ, Պարսիկներու յետին նկատումները ամբողջովին երեւան եկան: Տիսափեռնէս Յոյներու առաջնորդները եւ գլխաւորները իր մօտ հրաւիրեց եւ երբ այս վերջինները մեծ թիւով, իրենց մէջ ըլլալով նաեւ Կլէարկոսը եւ Պրոկսինոսը, հրաւէրին պատասխանեցին, —ոչ առանց կասկածի, սակայն վստահելով նախապէս փոխադարձաբար տեղի ունեցած երդումին—ամէնը մէկ բռնել տալով ջարդեց եւ կամ գերի բռնեց վերջէն սպաննելու համար:*

*Առաջնորդէ զուրկ եւ մեծ թշուառութեան մատնուած, երբ Յոյները Զապաթոսի եզերքներուն վրայ, «յաւէն եւ հայրենիքի, ծնողքի, կնոջ ու զաւակներու աչքէն ու բաղձանքէն անքուն կը մնային, մտածելով որ զանոնք վերստին տեսնալիք չունին», ճիշդ այդ միջոցին էր որ յառաջ եկաւ Քսենոփոն եւ բոլոր ձեռնարկութիւններուն հոգին դարձաւ: Բազմաթիւ վարդապետական ճառերով ան խօսեցաւ գիշերանց հաւաքուող*

առաջնորդներուն եւ գլխաւորներուն, նաեւ անոնցմէ վերջ հաւաքուող զինուորներուն ու հասկցուց անոնց որ բոլոր այս պատահարներէն եւ ներկայ ճգնաժամային կացութիւնէն վերջ այլեւս իրենց մտքէն պէտք է հանեն, ուրիշ լուծումի մը ճամբայ գտնելու պարագան եւ պէտք է փարին այն միակ գաղափարին որ էր զէնքը ձեռք առնելով միաբանութեամբ եւ քաջութեամբ երկրին ճամբան գտնելու համար կռուել:

«Ոչ բազմութիւնը» գոչեց ան, «ոչ զօրութիւնը դուք լաւ գիտէք թէ պատերազմի մէջ յաղթանակ չեն ապահովեր, այլ միայն ամենամեծ չափով ցոյց տրուած արիաբարութեամբ է որ մարդ Աստուածներուն վրայ վստահելով ճակատամարտի կ'երթայ»:

Յոյները ասոր վրայ որոշեցին յառաջխաղացումը շարունակել եւ շուտով իրենց մեռած առաջնորդներուն տեղ ուրիշներ ընտրեցին, որոնցմէ Պրոկսենոսի տեղ ընտրուեցաւ Քսենոփոն: Ասոր առաջարկով կառքերուն մեծ մասը, նաեւ առանց նկատի առնելու մօտակայ ձմեռը, բոլոր վրանները այրուեցան, «այսպէսով արջառները չեն որ մենէ առաջ ճամբայ պիտի կրնան առնել, այլ մենք ենք որ կարաւանէն անկախ կերպով ճամբան մինակնիս պիտի քալենք յօգուտ բանակին»: Աւելի վերջը ճամբորդութեան համար քառանկիւնի ձեւը որոշուեցաւ եւ գրաստներն ու կարաւանը մէջտեղ առնուեցաւ, գլխաւոր հրամանատարութիւնը յանձնուելով Լակեդեմոնացի Քէյրոսիփոսի: Վերջապահներուն կ'առաջնորդէին Թիմասիոն եւ Քսենոփոն: Այս վերջինը ընդհանուր Հրամանատարութիւն չէր ուզեր, այլ նահանջի մը համար խիստ կարեւոր եւ դժուարին եղող վերջապահի պաշտօն մը: Այդ դիրքին վրայ գտնուողէ մը կը պահանջուի ամէն զոհողութիւն որպէսզի ժամանակ եւ միջոց գտնայ պաշտպանութիւն ընձեռելու իրեններուն, եւ եթէ հարկ է ինքզինքն իսկ իր զինուորներուն հետ միասին զոհէ: Ասիկա ոչ միայն պաշտպանութիւն այլ նաեւ սովորութիւն դարձած էր: Քսե-

նոփոն տակաւին ատիկա չունէր: Երբ Յոյները տարւոյն այդ եղանակին Զապաթոսը անվնաս կերպով անցան, իրենց ետեւէն թեթեւազէն Պարսիկներու կողմէ յարձակում կրեցին: Քսենոփոն իր վերջապահ Հոպլիտներուն հետ միասին, առանց Պարսիկներուն ո եւ է վնաս հասցնելու ձգեց որ անոնք ուզածնուն չափ յառաջանան բովանդակ կարգը վտանգելու եւ յառաջխաղացումը դժուարութեան մատնելու աստիճան: Քէյրոսիֆոսի ազդարարութեան վրայ Քսենոփոն իր սխալները ուղղեց եւ վերջապահներու ապագայ լաւագոյն մէկ պաշտպանութեան համար պզտիկ հեծելագունդ մը, նաեւ Հռոդոսցի նիզակաւորներու ջոկատ մը կազմեց սրոնք հետեւեալ քանի մը օրուան մէջ շատ մեծ ծառայութիւններ մատուցին: Իրենց նպատակն էր վերջապահներուն կարելի եղածին չափ ազատ շարժումը ապահովել, ինչպէս որ տակաւին մինչեւ այսօր օրէնք է դարձած վերջապահներուն քիչ թիւով հետեւակազօրք միայն տալ, մինչ ընդհակառակը շատ հեծելազօրք եւ թնդանօթաձիգ յատկացնել:

Յոյները Զապաթոսի բերանէն չէր որ անցան, այլ քիչ մը աւելի վերէն եւ միւս օր Լարիսայի մէջ, աւելի վերջն ալ Մեսպիլայի, Քալախի, Նիմրուտի եւ Նինուէի մօտ Տիգրիսի առջեւ ժամանեցին։ Այս ասորական նախկին մեծ քաղաքները Ք. Ա. 606ին գոյութիւն ունէին, բայց Ասորեստանի Ասուրրիտտանիպալ թագաւորին մահէն վերջ, բաբելոնեան եւ մարական միացեալ ուժերէն—վերջինը Կիաքսար թագաւորին հրամանատարութեամբ—քանդուեցան, իսկ Քսենոփոնի ժամանակ ամայացած, աւերակ դարձած վայրեր էին անոնք։ Զարմանալի է այս եւ կ՚ապացուցանէ թէ որքան հիմնական եղած է կործանումը, որ հազիւ թէ երկու դար վերջ Քսենոփոն անոր բոլորովին տարբեր անուն մը կուտայ: Նինուէի աւերակներուն Քոյունճու բլուրին հիւսիսակողմէն ժամանակին դիտած եմ ես այդ քրդական լեռները: Անոնց վրայէն էր որ Տիգրիսէ քիչ հեռուն

Ցոյները շարունակեցին իրենց ճամբան միշտ հալածուելով Պարսիկներէն, նաեւ անոնց հետ դաշնակցած բարբարոսներու բանակէն, այնպէս որ ստիպուեցան իրենց քառակուսիի կազմող սիսթէմը թողլով շարժուն ջոկատներու վերածուիլ: Այսօրուան Քէյֆի եւ Զաքօյի միջեւ, աւելի այս վերջինին մօտ տեղի ունեցաւ առաջին լուրջ ընդհարումը, ուր իրենց ունեցած կորուստները ստատիկ ըլլալով, հարկադրուեցան մօտակայ գիւղերէն բժշկական օգնութիւն խնդրել զինուորները դարմանելու համար: Այդ ժամանակէն իսկ յիշատակուած է Պարսիկներուն գիշեր ատեն իրենց ձիերը կապելու եւ անոնց ոտնակապեր անցնելու սովորութիւնը որ տակաւին մինչեւ այսօր Պարսկաստանի եւ բովանդակ Միջագետքի մէջ գործածական է:

Պատերազմի մը ատեն Քսենոփոն իր անձին իսկ օրինակովը ցոյց տուաւ թէ ինք մեծ առաջնորդ մըն է: Անգամ մը հարկ եղաւ բարձրութենէ մը մագլցիլ թշնամիին դէմ ելլելու համար փութով: Քսենոփոն կրակոտ խօսքեր կ'ըսէր: Զինուորին մէկը երբ ընդդիմախօսեց ըսելով թէ լաւ կը խօսի բայց ձիու վրայ է. մինչ ինք զրահներու ծանրութեան տակ կը կքի, Քսենոփոն ցատկեց ձիէն վար, զարկաւ քիթին բերնին առաւ զրահը ձեռքէն, եւ ոտքով, հակառակ իր հեծեալի կազմածներուն, ամէնէն առաջ անցաւ: Օրինակը խորապէս ազդեց: Ցոյները շուտով բարձրութեան վրայ ելան: Այս առթիւ յիշենք թէ կեսար անգամ մը զինուորի մը ձեռքէն սուրը առած եւ ամէնէն առաջին կարգը անցնելով, նոր կորով ներշնչած է իր զինուորներուն, ինչպէս ըրած է Պօնաբարթ Արկոլի մէջ 1796 նոյմ. 15ին: Քսենոփոն սպաներուն խօսելով կ'ըսէ. «Զինուորներուն աչքը ձեր վրայ է որ յառած է: Եթէ ձեզի քաջութենէ զուրկ տեսնեն, ամէն ինչ կը թողուն, բայց եթէ ամէնէն առաջ թշնամիին դէմ ելլէք եւ միւսներն ալ առ այդ ստիպէք այն ատեն համոզուեցէք որ անոնք ալ ձեզ պիտի հետեւին եւ ամէն ջանք պիտի թափեն: Ձեզի

կը պատկանի սակայն ապացուցանել թէ դուք իրապէս անոնց սպաներն էք»։ Ի վերջոյ Ցոյները շարունակական ճակատամարտներէն վերջ այսօրուան Ֆինէքի մօտ հասան, ուր իրենց կացութիւնը չափազանց դժուարացաւ։ Մէկ կողմէն բարձր լեռներ կային, իսկ միւս կողմէն ալ գետը կար, որուն խորութիւնը նետի մը երկարութենէն աւելի էր։ Տիգրիս գետը այս տեղն է որ Քրդական լեռներուն կը հանդիպի։ Այս մասին մէջ գետին ճիշդ մէջտեղը կղզի մը կայ որ կը կոչուի Ճեզիրէ Իպնը Օմար։

Հոս կ'աւարտի Նահանջին առաջին մասը։ Հակառակ մեծ թիւով առաջնորդներու սպանութեան եւ կորուստներու, տակաւին ամէնէն թեթեւն էր, քանի որ շատ նպաստաւոր եղանակի մը մէջ տեղի ունեցաւ։ Նշանակալից է մանաւանդ Քսենոփոնի երեւան գալը, որուն ազդեցութիւնը հետզհետէ պիտի աւելնայ։

# ԲԱՍԵՆԻ ԴԱՇՏԻՆ ՄԷՋ

## 401 Ք. Ա. Դեկտեմբերի վերջերը

Մինչեւ ցարդ բոլորուած Բիւրուց արշաւանքի ճամբուն մասին ընդհանուր առմամբ ո եւ է տարակոյս չկայ, զի Փոքր Ասիոյ քաղաքներուն, Կիլիկեան, Սուրիական կիրճերուն ու անցքերուն, Թափսաքոսի, Եփրատի եւ Տիգրիսի ընթացքներուն, նաեւ Քրդական լեռներուն հետ է որ առնչութիւն ունի: Բոլոր այդ վայրերը որոշ կէտեր եւ գիծեր են, որոնց միջեւ յառաջխաղացումը առաւել կամ նուազ տարբեր ուղղութիւններով տեղի ունեցած է:

Քսենոփոն կարողացաւ իր հետազօտութիւնները հանգիստ սրտով կատարել հիմնուելով իր անցած երկիրներուն աշխարհագրական յարաբերութիւններուն վրայ: Անկէ անդին սակայն Յոյները լեռներու եւ իրենց բոլորովին օտար ու անծանօթ երկիրներու մէջ ինկան: Քսենոփոն իր ուժերը սկսաւ գործածել իր առաջնորդութեան միջոցին ծագած դժուարութիւնը հարթելու, քանի որ սառով ու ձիւնով ծածկուած երկիրներէ հարկ էր անցնիլ, նաեւ ռազմիկ եւ ուժեղ ցեղերու հետ կռուիլ: Ալ անկէ ասդին իր նօթերը այնքան ցանցառ դարձած են որ, առանց անցած երկիրներու կացութիւնը եւ մագլցած լեռներու ուղղութիւնն ու գետերու ընթացքը եւ իր գլխուն եկածներն ու տեսածները յըստակ ոճով նկարագրելու սկսած է ամէն ինչ, թէ տարածութեան եւ թէ ժամանակամիջոցի տեսակէտով իրար խառնել: Ահա ճիշդ այս տեսակէտներէն ղեկավարուած ես հիմա կ'ուզեմ փորձ մը փորձել Յոյներու շարունակական յառաջխաղացմանը հետեւելու եւ հասկնալու համար թէ ի՞նչպէս այստեղէն, անձնապէս չգիտցած այս երկրամասէս, զինուորական ուղղութեամբ մինչեւ

*Բասենի ձորը հասած եւ անկէ ալ մինչեւ Սեւ Ծով ժամանած են: Այս վերջին մասին մէջ իրենց հետքերուն կրցած եմ հետեւիլ:*

*Նոյեմբերի առաջին երրեակին Թոյները այսօրուան Ճէզիրէ Իպն Օմարի (Պետզաբդէ) մէջ, Տիգրիսի եւ քրդական լեռներուն, Ճէպէլ Ճուտիի միջեւ ձգած էինք շատ ծանր կացութեան մը մէջ: Այս քրդական լեռները մինչեւ 1500 մէթրի չափ բարձրութիւն ունին եւ հայկական բարձրաւանդակին երեք մասերէն հարաւայինին սահմաններուն վրայ կը գտնուին: Երբ ես 1908 Ապրիլի կիսուն Մուսուլէն Մարտին ուղղուեցայ, իմ աջ կողմս ինկած անոնք եւ տակաւին մինչեւ այդ եղանակին մինչեւ իր ստորոտները ձիւնով ծածկուած էր: Մուսուլի եւ աւելի վերջ Մարտինի մէջ, այն ատեն ինծի ըսին որ, նոյնիսկ իմ պզտիկ կարաւանս, կառավարութեան կողմէ ամէն պաշտպանութիւն վայելելով հանդերձ շատ դըժուարութիւն պիտի քաշէ Քոճնուփնի խուզարկութեան համար Ճէզիրէ-Բաղէշ-Կարին ճամբէն անցնելու առթիւ:*

*Հայաստան, այսօր ամբողջովին ռուսական տիրապետութեան տակ գտնուող Անդրկովկաս ուղղուած երեք խոշոր, լեռնաշղթաներով բաժնուած մասեր ունի, որոնք հիւսիսի կողմը ծովէն մինչեւ 2000 մէթր բարձր բարձրաւանդակ մը կը կազմեն, որոնց մէջէն կանցնին հսկայ լեռներ եւ գետեր: Ձմեռը ցուրտ եւ երկար կ՚ընէ, մինչ ամառը տաք: Թոյները այս մասին բան մը չէին գիտեր, որովհետեւ առաջնորդները գերիներ կալանաւորել կուտային եւ անոնց միջոցաւ տեղեկութիւն կ՚ստանային զիրենք շրջապատող երկիրներու մասին: Անոնք իրենց հետեւեալը ըսին: Հարաւի ճամբան դէպի Բաբելաստան եւ Մարաստան կը տանի ուրկէ Թոյները եկած էին, Արեւելքի ճամբան Պարսկաստան կը տանի, Տիգրիսի միւս կողմէն դէպի արեւմուտք տանող ճամբան դէպի Լիւդիա եւ Յոնիա կ՚առաջնորդէ, իսկ հիւսիսի ճամբան ալ պատերազմիկ եւ տակաւին մինչեւ ցարդ չզսպուած Կարդուկներու (քուրդ) լեռներուն վրա-*

յով դէպի Հայաստանի բարեբեր սատրապութիւնը կ՚առաջնորդէ, ուրկէ մարդ կրնայ «Տիգրիսի աղբիւրներէն անցնիլ կամ անոր եզերքէն երթալ»:

Յոյները ո՞ւր կը փափաքէին երթալ: Բնական է որ դէպի Լիւդիա եւ Յոնիա: Անկէ, Ճէզիրէէն (Պէդզաբդէ) Տիգրիսի վրայով — Մեծն Աղեքսանդր եւս Ք. Ա. 331 թուականին Թափսաքոսէն Կուակամէլա (Պէդզաբդէի մօտ) գացած միջոցին անկէ անցաւ —եւ անկից ալ դէպի արեւմուտք այսօրուան Մարտինի վրայէն, գրեթէ ժամանակին իմ անցած ճամբուս ուղղութեամբ գացին: Դժբախտաբար այդ կողմէն Տիգրիսը չկրցան անցնիլ ոչ թէ որովհետեւ գետը անանցանելի վիճակ մը ունէր,— ընդհակառակը Հռոդոսցի մը առաջարկած էր մէջտեղէն իրար կապուած եւ օդով լեցուն գերաններ, բրնձի փայտով, հողով եւ քարով ամրացնել եւ արուեստական նաւերու կամուրջ մը հազմակերպել— այլ որովհետեւ իրենց ետեւ մեծ բանակ մը ունէին եւ միւս կողմի բարձրութիւններուն վրայ բազմաթիւ հեծեալ զօրքեր տեսան:

Այս կացութեան առջեւ, որոշեցին դէպի հիւսիս ուղղուիլ եւ թշնամին խաբելու համար նահանջի կարճ շարժում մը ընել, նախ ցոյցի համար ռազմափորձ մը կատարել, ոչ թէ գետին եւ ժայռերուն միջեւ գտնուող եւ յանկարծակի յարձակումներու ենթակայ հողամասին մէջ, այլ երկրին ներսերը լեռնադաշտերուն վրայ: Այդ կերպով յուսացին, Տիգրիսը աւելի վերէն, «իր աղբիւրին մօտէն անցնիլ եւ Եփրատի հովիտը ժամանել»:

Այսպէս սկսան ճամբան: Հակառակ իրենց բեռներուն փոքրուելուն եւ մաքրագործումին, որով առաջնորդները իրենց նախապէս ընդգրկած սիսթէմը կրկնեցին, ինկան անանցանելի լեռներու մէջ որոնք շատ դժուար եւ շատ կորստաբեր էին: Կարդուկները, Կորդուացները կամ այսօրուան Քուրդերը վայրենի եւ պատերազմիկ ժողովուրդ մըն էին, որոնք այն ժամանակ տակաւին լեռներուն մէջ կը նստէին: Իրենց ցեղերէն մէկ

*քանին Միջագետքի դաշտին մէջ պէտէվիններուն հետ անընդհատ կռիւներ կը մղէին եւ այսպէսով վաչկատուն ցեղերուն կեանքին ու բարքերուն վարժուեցան: Ֆօն Մոլթքէ կը նկարագրէ զանոնք իբրեւ «աղքատ, առանց պատուհանի եւ առանց դուռի խրճիթներու մէջ ապրող, վայրի եւ ազատ, պէտք եղած ատեն երկրագործ, բայց պատերազմիկ բնաւորութեամբ եւ ձգտումով»: Ասոնք կը նեղէին յառաջացող խումբերը, անընդհատ յարձակելով, նաեւ ժայռի կտորներ նետելով անոնց վրայ: Նոյն իսկ Քուրդ կիները կը մասնակցէին այս շարժումին: Յոգնութիւնները եւ զրկանքը օր ըստ օրէ կ'աւելնային եւ անձրեւոտ օդն ալ կը դժուարացնէր անոնց յառաջխաղացումը: Ասով է որ կը բացատրուի այն պարագան թէ Յոյներր լեռներուն անդին կողմը 7 օրուան մէջ հազիւ թէ 70 քիլոմէթրի տարածութիւն մը կրցած էին անցնիլ, մինչեւ ցարդ չտեսնուած եղանակով մը ամենածանր կորուստներ տալով:*

*Թէ ինչպէս անոնք դէպի յառաջ եւ դէպի աջ ու ձախ նրբանցքներու ձեւով իրարու վրայ բարդուած լեռներէն անցնիլ փորձեցին, անընդհատ վտանգելով Քսենոփոնի կողմէ առաջնորդուող իրենց վերջապահ գունդը, այդ եղանակը ճշդիւ կը համապատասխանէ Ռուսերուն դէպի Կովկաս (Տաղիստան, Կունիպ) յառաջխաղացման, թէպէտ այս վերջինները թնդանօթներով ալ զօրացած էին: Մասնաւորապէս նշանակալի է որ Յոյներուն թաքթիքը հաւասարած է Թուրքերուն անցեալ դարու երեսնական թուականներուն, դեռ այն ատեն հազարապետ եղող Ֆօն Մոլթքէի ներկայութեան տեղի ունեցած զինուորական գործողութեանց ու ընդհարումներուն, որոնք մեծ մասամբ նկարագրուած են յիշեալին կողմէ: Այդ ընդհարումներն ալ միեւնոյն երկիրներուն մէջ տեղի ունեցած են եւ շատ մը տեսակէտներով իրարու կը նմանին:*

*Երբ մարդ մտածէ թէ, յունական լէգէոնը այս ամէնը ըրաւ առանց քարտէսի, նոյեմբերի անարեւ եւ*

ամպոտ օրերուն, առանց կողմնացոյցի եւ ուղղութիւն կարենալ ճշդելու, վայրի լեռներու մէջ եւ բեռնաւորուած անհրաժեշտ ուտեստեղէններով, հակառակ անոր որ փոքրած էին իրենց կարաւանը, իրապէս պէտք է զարմանալ որ անոնք այդ տեղը չեն փճացեր: Մազ մնացեր էր ատիկա ալ պիտի ըլլար եւ Պարսիկները պիտի ընէին այդ բանը, բայց անոնք այլեւս չէին երեւար, այլ իրենց զանգուածներովը հաւանաբար քաշուած էին Ճէզիրէ Իպն Օմարէն, Տիգրիսի վրայով դէպի իրենց երկիրները Լիւդիա եւ Հայաստան եւ իրենց տեսակէտով ձգած էին որ Յոյները ապահով կերպով ընթանան:

Այս վերջինները· ինչպէս ըսինք, եօթը օրուան դժուարին ճամբորդութենէ մը վերջ Թոսպիթեան (Վանայ լիճ) լիճէն ծագում առնող Կենդրիտեան գետին (Պօհթան Սու) ստորոտը հասան, որ այն ատեն անկախ Կարդուկներու երկրին եւ Հայաստանի պարսկական սատրապութեան սահմանագլուխը կը կազմէր եւ այսպէսով հարուստ պաշարով լեցուն բարեբեր գիւղեր ժամանեցին: Քսենոփոն այն տեղի ժողովուրդին գետնափոր կարաններու մէջ պահած գինիի մը մասին կը խօսի, որուն հետքը չկայ այսօր այլեւս, որովհետեւ իսլամական երկիրներու մէջ գինեգործութիւնը վերցած է: Այդ նկարագրուած գինի պահելու պարագան այսօր իսկ տակաւին Հայաստանի եւ Անդրկովկասի շատ մը վայրերուն մէջ կայ եւ ես շատ հանդիպած եմ ատոնց:

Կենդրիտեան գետը անցնելու համար բարեբախտաբար մօտերը ծանծաղ մաս մը նշմարեցին ուրկէ ջուրին մէջէն քալելով կարելի պիտի ըլլար միւս եզերքը հասնիլ· Հակառակ ասոր սակայն գետանցքը վտանգաւոր էր, որովհետեւ գետափին միւս կողմի բարձունքներուն վրայ հեծեալներ կային, մինչ իրենց ետեւէն ալ տակաւին հետապնդող Կարդուկներ կային, որոնք կրնային յարձակիլ իրենց վրայ եւ ընդհարում մը ստիպել զիրենք:

Ո՞ւր էր ուրեմն գետանցքի վայրը: Յոյները այլեւս

*Տիգրիսի երկայնքէն չէին երթար, այլ լեռներէ բարձրանալով անոնցմէ դէպի կենդրիտեան հովիտը իջած էին: Հոն Տիգրիս գետը չտեսան, արեւմուտքէն դէպի այսօրուան Տիարպէքիրի վրայ եկող անոր մէկ ճիւղին հետ ալ գործ չէին կրնար ունենալ, այլ կը կարծէին թէ Տիգրիսի աղբիւրը իրենցմէ քիչ մը հեռուն կը գտնուի: Այդ կը նշանակէ թէ այս գետը Տիգրիսի հիւսիսային կամ հիւսիս-արեւելեան մէկ ճիւղը կարծեցին: Ասոր համար ես կը կարծեմ թէ գետանցքը ընդհանրապէս ընդունուածին համաձայն Թիլէն դէպի Ջօխի ուղղութեամբ տեղի չէ ունեցած, որովհետեւ այդ կողմերը լեռնային հողամասեր կան, մինչ Քսենոփոն յստակօրէն տափարակ եւ մեղմ բարձրութիւններու վրայ կը խօսի: Ուրեմն այդ անցքի տեղը կենրիտեան գետին Քէսէր-Սուն կոչուած տեղէն քիչ մը վեր պիտի ըլլայ ուր ճամբան նախապէս նեղ է եւ ուր Յոյները այլեւս Հայաստանի մէջէն մինչեւ հիւսիսակողմի այսօրուան Սղերդը յառաջացան: Այդ երկրամասը չափազանց տափարակ չէր, բայց քրդական լեռներէն վար իջնող Քսենոփոն այդ կերպ բացատրութիւն մըն է որ կուտայ:*

*Այդ տեղէն, այդ բարեբեր երկրէն Քէսէր-Սուի վրայով Պիթլիս-Սու իջան, զոր Տիգրիսը նկարեցին, բարձրացան մինչեւ անոր աղբիւրը որ այսօրուան Բաղէշի մօտ կը գտնուի: Ստրաբոն (Քրիստոսի ծննդեան ժամանակ) եւ անոր հետեւելով նաեւ Պլինիոս այն կարծիքը ունին թէ Տիգրիս Թոսպիթիան լիճին արեւմտեան կողմէն կը ծագի, որոշ տարածութիւն մը գետնին տակէն կ'անցնի եւ այսօրուան Բաղէշի կողմէն վերստին երեւան կուգայ: Ֆոն Մոլթքէ իր «Թուրքիոյ կացութեան մասին նամակներ» գործին մէջ Սղերդի եւ Մուշի միջեւ գտնուող հողամասը պէտք եղածին պէս նկարագրած է:*

*Թոսպիթեան կամ Վանայ լիճին անմիջապէս մօտիկ արեւմտեան ծայրը, ծովէն 1800 մէթր բարձր եւ Պիթլիս-Սուի ձորէն 300 մէթր բարձրութեան վրայ գտնուող Թահթալըի կիրճին կողմէն, անցան Տիգրիս եւ*

*Եփրատի, հետեւաբար եւ Քրդաստանի եւ Հայաստանի միջեւ գտնուող մասը եւ հասան 400 մեթրի խորութեան մէջ գտնուող, Թէլէպօասի (Գարասու, Սեւջուր) բազմամարդ եւ սիրուն ձորը, որ արեւելեան Եփրատի. Մուրատ-Սույի ձախ թեւը կը կազմէ: Արեւմտեան Եփրատէն, որ Արեւելեանին Մուրատ Սույի հետ մէկտեղ Խարբերդի արեւմտեան կողմէ բուն իսկ Եփրատի կը միանայ, շատ քիչ տեղեկութիւն ունինք: Նմանապէս շատ քիչ տեղեկութիւն ունինք արեւմտեան Տիգրիսի մասին: Թահթալըի կիրճին մագլցումը շատ դժուարութիւն մը չունի, անիկա աւելի ընդարձակ եւ բարձր տափարակութիւն մըն է քան թէ լեռ մը: Կիրճին անցքին վրայ կարելի չըլլար տեսնել ճիշդ մօտը գտնուող Թոսպիթեան լիճը, ասիկա կը բացատրուի անով որ Նոյեմբերի այս մթին օրերուն մօտակայ բարձրութիւններու տեսքը կը դժուարանար: Քսենոփոն թէ կիրճէն անցնիլը եւ թէ աւելի վերջը տեղի ունեցող ուրիշ շատ կարեւոր դէպքեր ուշադրութենէ վրիպեցուցած է:*

*Թէլէպօասէն Հայաստան ժամանելէ վերջ, Նոյն տեղւոյն Սատրապ Տիրիբազոսի հետ կասկածելի կամ տարակուսելի դաշնագիր մը կնքեց, «Յետոյ երեք մղոն 15 փարասանգի ճամբայ դաշտին մէջ յառաջ գացին ու բազմաթիւ բարեբեր գիւղերու եւ արքայական դղեակի մը հանդիպեցան», այս կը նշանակէ թէ անոնք քալեցին Թէլէպօասի ընդարձակ, պտղաբեր եւ այգեւէտ հովիտէն եւ Մուշի շրջանակի հիւսիսային ընդարձակ երկրամասը ժամանեցին: Մշոյ դաշտին մէջ բազմաթիւ օրեր անցուցին անոնք միասին: Այդ միջոցին գիշերները այն աստիճան սաստիկ կը ձիւնէր որ բովանդակ լեռները ու սարերը ծածկեց, գրաստները հազիւ թէ ոտքի վրայ կրնային կենալ եւ մարդ թշնամիին շարունական սպառնալիքէն զատ ցուրտին պատճառաւ կ'ստիպուէր վրանաբնակութիւնը մէկ կողմ թողուլ եւ տուներուն մէջ պաշտպանութիւն փնտռել:*

*Նոյեմբերի վերջ 1300 մեթրի բացարձակ բարձրու-*

թեան վրայ զօրաւոր ձիւն իյնալը շատ բնական երեւոյթ մըն է: Քսենոփոն առաջին անգամ ըլլալով հոս կը յիշատակէ ձիւնը իբրեւ նոր բան մը, անկէց վերջ հոն ու հոս մերթ ընդ մերթ կը յիշատակէ, իսկ անկէ վերջ բնաւ, հակառակ անոր որ Հայաստանի կլիմայական կացութիւնը այդպէս կը տրամադրէր: Ձիւնը հոն շատ երկար ժամանակ կը մնայ եւ մինչեւ Տրապիզոն իջնելու ատեն Յոյներու ճամբան հետզհետէ ալ աւելի մեծ չափով մը կը դժուարանար: Բարեբախտաբար այդ ժամանակ նոյն երկրամասերը ամբողջովին անտառներով ծածկուած էին եւ բաւականաչափ ածուխ ու վառելափայտ կը գտնուէր, մինչդեռ այսօր Հայաստանի մէջ այլ եւս ծառ չէ մնացած եւ իբրեւ վառելանիւթ մի միայն յարդ եւ չորցած աղբ կը գործածեն: Կարսէն մինչեւ Կարին իմ ամբողջ ճամբորդութեանս ընթացքին, ռուսական սահմանային երկրին մէջ միայն Սարըղամըշի կողմերը շոճիի անտառներ տեսնուեցան: Բայց եւ այնպէս այդ աննշան բոյսերէն անդին քաղաքներուն եւ գիւղերուն մօտերը հազիւ թէ բոյսի մը կտոր կարելի կ'ըլլայ տեսնել:

Կենդրիտեան գետէն ասդին գտնուած մասին դառնալով, այդ ճամբուն շուրջ հետախոյզներու մեծամաս նութեան համամիտ եմ: Այսու հանդերձ անոնց մեծագոյն մասը կը կարծէ թէ Քսենոփոն դէպի հիւսիս ուղղուելով Եփրատը անցած, հիւսիս-արեւմտեան ուղղութեամբ ոտքով մինչեւ Բիւրակն լեռներու (Պինկէօլ տաղ, 300 մէթր բարձր) ստորոտը գացած է, ուր Բասկանի մօտ Ջերմուկ մը կը գտնուի: Անկէ ալ երեք կիրճեր անցնելով դէպի հիւսիս Հասանքալէ եւ Բասենի դաշտը ժամանած է: Բոլոր ասոնք մակաբերած են Քսենոփոնի յիշատակած ջերմուկէն եւ հիւսիսի սաստիկ քամիէն որ զօրագունդերուն «երեսը կը ծեծէր» եւ կուգար Բիւրակն լերանց վերեւէն: Այդ լեռները իրապէս Փոքր Ասիոյ տանիքը կը կազմեն ատկէ է որ ծագած են Արաքս գետը, եւ Արեւելեան Եփրատի, Մուրատ Սույի բազմաթիւ

ճիւղաւորումները: Հրաբխային լայն եւ բարձր քերդուածք մըն է ան, մարած հրաբերանով, որ կը լրացնէ պտղաբեր եւ ջրդի բարձրաւանդակը, ուր կը գտնուի այսօր Խնուսը:

Ջերմուկին գալով, այդ կողմերուն մէջ Բասկանի ջերմուկէն տարբեր ջերմուկ չենք գիտեր: Հայաստանի մէջ սակայն ուրիշ շատ մը ջերմուկներ կան զոր օրինակ Բաղէշի եւ Հասանքալէի մէջ:

Ես այնպէս կը կարծեմ թէ Քսենոփոն ժամանակագրական եւ տեղագրական տեսակէտներով սխալներ կը գործէ: Թէ եւս իր ճամբու ընթացքին ուրիշ տեղ մը ջերմուկ մը տեսաւ, որ այսօր ցամքած է, հետեւաբար հանդիպանելի կրնայ ըլլալ: Կամ թէ թերեւս տակաւին շատ մեծ հետազօտութեան առարկայ չեղած երկրամասերու մէջ գտնուելով, դեռ չէ վերագտնուած: Քսենոփոնի համար ասանկ տեղագրական սխալ մը հասկնալի է, որովհետեւ անիկա վերջէն Փրիս եւ Ալիս գետերը անգամ նախ ճշդիւ դէպի Արեւելք եւ վերջն ալ սխալմամբ Սինոպի արեւմտեան կողմը ցոյց տուած է: Զմեռ ատեն հոն հիւսիսային քամին ամէն տեղ խիստ կը փչէ եւ հարկ չիկայ անպատճառ Բիւրակն լեռներէն գալու: Քանիցս արտայայտած կարծիքիս համեմատ, Քսենոփոնի ճամբորդութեան վերջին մասին տեղագրութիւնն եւ ժամանագրական կարգը ոչ թէ նոյնութեամբ այլ մօտաւորապէս պէտք է ընդունիլ: Ես չեմ կրնար խորհիլ որ 15էն 20 հազար հոգինոց զօրաւոր բանակի մը ղեկավարը եղող զօրավար մը ձմրան ամենասաստիկ մէկ միջոցին երբ ձիւնը պատած է ամէն կողմ, Բիւրակն լերանց նման անմատչելի լեռներու շղթայէ մը անցնի, ուղղակի անոր կռնակէն ուրիշ դժուարին կիրճերու մէջէն իր ճամբան շարունակելու համար:

Ես աւելի կը կարծեմ որ, Յոյները Մուշի շրջականերէն Եփրատի եզերքն ի վեր ելած են, եւ Եփրատի աղբիւրներուն հիւսիսային արեւելեան ուղղութեան հետեւելով Գարաքիլիսէի մէջ, արեւելեան Եփրատի, Մու-

րատ Սուի հովիտէն, մինչեւ Արաքս գետ տանող հնամենի ճամբան բռնած եւ անկէ ալ Բասենի դաշտը հասած են: Իմ այս տեսակէտս հաստատելու համար կը հետեւիմ նոյն ինքն Քսենոփոնի տուած բացատրութեանց:

«Յոյները դէպի վեր (Մուշի շրջականերէն) բարձրացան, ճամբան կռուեցան թշնամիներու դէմ, որոնք կարգ մը բարձրութիւններ գրաւեր էին եւ Եփրատի վրայ գտնուող անապատային վայրերէն երեք մղոն տեղ քալեցին, այսինքն թէ Նեբրովթ լերան հիւսիս-արեւելքէն բարձրանալով Շատախի լեռնային կողերէն վար իջնելով Լիճի եւ Կոբի վրայէն քալեցին մինչեւ Եփրատի 60րդ քիլօմէթրին վրայ գտնուող Մանազկերտ քաղաքը, ինչ որ տիրող սաստիկ ձիւնին բաղդատմամբ ահագին գործունէութիւն կը նշանակէ: Այստեղ դարձեալ Թոսպիթեան լիճին (Հարաւակողմ) յիշատակութիւնը չըլլար, որովհետեւ Վանայ լիճը ճամբէն 40-50 քիլօմէթր հեռու կը գտնուի եւ Նեբրովթ (3000 մէթր բարձր) ու Սինան (4000 մէթր բարձր) լեռներուն միջեւ բոլորովին ծածկուած է:

«Յետոյ անցան Եփրատը, որուն մինչեւ ցարդ միայն ճիւղաւորումներուն շուրջ կը շրջէին, որովհետեւ այլ եւս անոր աղբիւրներուն մօտեցած էին: Երեք օր անդադար քալեցին համակ ձիւնապատ եւ սառնաբոյր դաշտերու մէջէն եւ միւս օրը հասան բաւական մեծ տեղ մը ուր զինուորներու մէկ մասը կարողացաւ պատսպարուիլ»: Յետոյ գացին Մանազկերտ որ շատ հին տեղ մըն է եւ բազմաթիւ աւերակներ ունի: Այդ տեղ Եփրատը (Մուրատ Սու) ձմեռ ատեն 100 մէթրի չափ լայնութիւն եւ երեք քառորդ մէթրի խորութիւն միայն կ'ունենայ: Հոնկէ՝ գետին աջ (արեւմտեան) եզերքը ժամանեցին եւ առաջին երեք օրուան մէջ մինչեւ Թութախի միւս կողմը, նաեւ վաղայաջորդ օրը մինչեւ Գարաքիլիսէի կողմերը հասան: Բնական է որ ամէնուն հաճոյալի բան մը չէ եղած մինչեւ կէս մէջքը սառած ջուրերու մէջ թրջուելով անցնիլ: Քսենոփոն այս մասին եւ ոչ մէկ խօսք չէ արտաբերած: Հակառակ տիրող սաստիկ ցուր-

տերուն Եփրատ գետը սառած չէր: Եւ ասիկա ճիշդ է, որովհետեւ գետին վերին կողմէն այնպիսի սաստիկ կեր֊պով կը վազէ ջուրը, որ շատ հազուագիւտ պարագանե֊րու մէջ միայն սառ կը բռնէ. ինչպէս կը պատահի Արաքսի (Արաս Սու) վերին մասին մէջ, ուր ես տեղւոյն վրայ քաղած եմ սոյն նշանակալից մանրամասնու֊թիւնները:

«Եօթ մնոցող զինուորները ձորի մը մէջ շոգիի աղ֊բիւր մը գտան», ասոնք այն տաք աղբիւրներն են որոնց պատճառաւ գիտնականները կը կարծեն թէ Յոյները Բիւրակն լեռներուն վրայով Եփրատի դաշտահովիտնե֊րէն դէպի Բասկան գացած ըլլան: Այսօր Գարաքիլի֊սէի մէջ ջերմուկներ չկան, չկան նաեւ Բասենի դաշտին մէջ Հասանքալէի կողմը, ուր Յոյները հասան աւելի վերջէն: Կամ այն է որ Քսենոփոն երկու վայրեր իրա֊րու հետ շփոթած է, ինչ որ քիչ հաւանական է, եւ կամ այն է որ Գարաքիլիսէի հարաւակողմը գտնուող բլրաձեւ երկրամասին մէջ այնպիսի աղբիւրներ կային որոնք այսօր կորսուած են, եւ կամ թէ եթէ երբեք չեն կորսուած վերագտնուած ալ չեն:

Թէլէպօասէն մինչեւ հոս տեղի ունեցող երկարա֊տեւ ճամբորդութիւնը չափազանց յոգնեցուցիչ եղաւ: Յոյները Պարսիկներուն եւ Քուրտերուն հետ իրենց ու֊նեցած պատերազմներէն յաղթական դուրս եկան եւ շատ քիչ թիւով կորուստներ միայն ունեցան, մինչդեռ Հայաստան ժամանելէ վերջ չափազանց վնասուեցան հայկական ձմեռին կացութենէն: Մարդեր եւ կենդանի֊ներ անօթութենէ եւ ցուրտէն կ'իյնային, կը մեռնէին: Երրորդ օրը, դէպի Թութախ տանող ճամբուն հիւսի֊սակողմին վրայ, հիւսիսի սաստիկ քամի մը սկսաւ իրենց երեսին փչել: Ձիւնը կը կուրցնէր իրենց աչքերը, ոտ֊քերնին կը դողար. մինչ ակռաները իրարու կը զարնուէին եւ ինչ որ մնացած էր, իրենց շուրջ վխտացող թշնա֊միները կը փճացնէին եւ կամ թէ եթէ երբէք իրենց հետ ընկերացնելու արժանի համարէին, կը քշէին, կը

տանէին: Այն ժամանակ, այսօրուան ծառերէ զրկուած այդ հողամասը ամբողջովին իբրեւ անտառ կը նկարագրուի, որ ոչ միայն կերակուրի կամ ջերմութեան համար հարկ եղած վառելանիւթը լիուլի կը հայթայթէր, այլ նաեւ յանկարծակի յարձակելու կամ ընդհակառակը՝ պահուըտելու համար կը ծառայէր եւ թշնամիներու շարժումները կը ծածկէր խնամով:

Գարաքիլիսէ Եփրատի ճիւղերէն Մուրատ Սուի կողմէ ճոխապէս ջրուած Ալաշկերտի բարեբեր դաշտին եւ Պարսկաստանէն Սեւ ծով տանջնորդող հաղորդակցութեան գլխաւոր ճամբուն վրայ կը գտնուի, ուրկէ դէպի յառաջ երթալով Բասենի դաշտը եւ Կարին կ'երթայցուի: Տակաւին մինչեւ այսօր բազմաթիւ հարուստ կարաւաններ կ'անցնին անկից: Գարաքիլիսէի եւ անոր շրջակայ գիւղերուն մէջ բանակը շաբաթի մը չափ հանգստացաւ, որու միջոցին յետամնացները հետզհետէ հասան եւ ամբողջ բանակը բաւականաչափ պաշար ստացաւ: «Բնակարանները հողին տակ կը գտնուին, եւ աղբիւրի բացուածքներուն նման նեղ դուռներ ունին: Վարը սակայն ընդարձակ է եւ ուր կը բնակին մարդեր, այծեր, ոչխարներ, արջառ եւ հաւազգի կենդանիներ»: Տակաւին այսօր իսկ կարելի է այդ կարգի բազմատեսակ բնակութիւններ գտնել Հայաստանի մէջ, թէեւ ոչ բոլորովին ստորերկրեայ, ինչպէս կը նկարագրէ Քսենոփոն: Կ'երեւի թէ այդ միջոցին հողին վրայի մասը ձիւնով պատուած էր բոլորովին:

Իմ տեսակէտովս Յոյները մինչեւ ցարդ, այսինքն թէ Թելէպօասի հովիտէն ասդին միմիայն տափաստաններէ անցած են, Եփրատը դէպի իր աղբիւրներուն ուղղութեամբ հետապնդելով: Եթէ ուզէին բարձր լեռները կրնային շրջապատել: «Այս տեղէն (այսինքն թէ Գարաքիլիսէի հողամասէն) Փազիս գետը հասան 10 մղոն քալելով»: Փազիս ըսելով Քսենոփոն անշուշտ Արաքս գետը կը հասկնայ որ Բիւրակն լեռներէն գալով Կուր գետին հետ կը միանայ եւ Կասպից ծովը կը թափի:

Գարաքիլիսէէն 115 քիլոմէթր անդին Քէօբրի քէօյ հասան: Իրենց անցած տեղերը մեծ չէին թէեւ, բայց Յոյները դիզուած ձեան հիւսքերու մէջէն հազիւ թէ դանդաղօրէն կրնային յառաջանալ շրջադիծեր գծելով: Երրորդ օրը Տէլի Պաբայի կիրճէն անցան: Այդ կիրճը վերջին ռուսեւթուրք պատերազմին շատ կարեւոր դեր մը խաղաց:

Ք. Ա. 401ի Դեկտեմբերի վերջերը լեգէոնը Բասենի դաշտը հասաւ: Քսենոփոն այդ տեղւոյն բնակիչները Փասեանցիք կ'անուանէ Քէօբրի գիւղի մօտէն անցնող Ֆազիս (Արաքս) գետին անունով: Ես ինքս Կարսէն հոս եկած եմ Յոյներուն հետապնդած ճամբուն ճշդիւ եւ քայլ առ քայլ հետեւելով մինչեւ Սեւ ծով:

# ՄԻՆՉԵՒ ՍԵՒ ԾՈՎ.

Առաջին երկրակ փետրուարի 100 Ք.Ա.

Արշաւանքին այս վերջին մասին մէջ, Քսենոփոնի նկարագրութիւնները աւելի թերի եւ անբաւական են: Ճամբուն ուղղութեան մասին բոլորովին անորոշ են իր բացատրութիւնները, բաղդատմամբ իր նախորդ գրութեանց. այնպէս որ զանազան հաշիւներու եւ ենթադրութիւններու տեղի տուած է: Սկզբնաւորութեան եւ վերջաւորութեան երկու որոշ կէտերը Բասենի դաշտը եւ Տրապեզոնը նկատի առնելով, նաեւ ճամբու օրերու տեւողութեանը, Մեծն Հերոդոտոսի եւ Ստրաբոնի՝ Քսենոփոնի կողմէ նկարագրուած ժողովուրդներուն նկատ ու կայլին մասին տուած տեղեկութեանցը վրայ հիմնուելով ոմանք ճամբայ մը գծած են՝ որ բարձր կիրճերու, անանցանելի եւ վայրի հովիտներու, ուչ-հիւրասէր եւ սառնաշունչ երկիրներէ կ'անցնի: Իմ կարծիքովս զիրենք շրջապատող թշնամիներու դէմ շարժելու համար ոչ թէ մաս առ մաս, այլ միշտ խրախու հետ միասին, իրենց բեռներով եւ տասնից դադարի կարճ օրերու մէջ ընթանալ ուզող բանակի մը համար այդ կարելի չէ, մանաւանդ երբ նկատի առնենք ընդհարումները, աւարառութիւններն եւ ուրիշ պատահարները որոնք ժամանակին այժ կ'պատահէին, նաեւ խաչակրաց արշաւանքներ կը հարկադրէին:

Հոս ալ կը կրկնեմ այն պարագան թէ Քսենոփոնի տեղեկութիւնները ժամանակագրական եւ տեղագրական տեսակէտով ճիշդ չեն: Երկիրին այսինքն թէ ճամբու ուղղութիւններուն մասին ճշգրիտ գաղափար մը չունէր ինքը եւ ոչ իսկ ամենաթեթեւ տեղեկութիւն մը ունէր լեռներով պատուած երկիրներու շփոթեցուցիչ կացու-

թեանը մասին։ Քարտէս ըսած չունէր։ Զէր գիտեր թէ լեռներու գլխաւոր մասին մէջ ինչպէս բազմաթիւ լայն հովիտներ կը հանդիպէին նեղ ձորերու։ Ուղեցոյց կը պակսէր իրեն, նաեւ ձմեռնային ձիւնոտ երկինքը — եթէ կարելի է այսպէս ըսել — շաբաթներով կը մթագնէր հորիզոնը եւ թող չէր տար որ Արեւը ցոյց տայ ճամբու ուղղութիւնը։ Այս մասերուն մէջ իր (Քսենոփոնի) տուած բացատրութիւնները, ամէնքն ալ լի են պակասներով եւ իր սխալները ոչ միայն չեն կրնար բացատրուիլ, այլ նաեւ գրեթէ անխուսափելի են։

Ընդհանուր կարծիքին համեմատ լեգէոնը Բասենի դաշտէն, նախապէս իմ պատմածիս նման Արեւելեան կողմէն դէպի Քէօփրիւ գիւղ չէ եկած, այլ հարաւային կողմէն դէպի Հասանքալէ, ուրկէ դէպի հիւսիս քալելով Քալիբացիներուն, Թաօկացիներուն եւ Փասիանցիներուն դէմ պատերազմները մղելէ վերջ 2600 մէթր բարձրութեան վրայ գտնուող կիրճ մը անցնելով, այժմ Ռուսիոյ Կովկասեան զինուորական վարչութեան մէկ շրջանակը կազմող Օլթիի հովիտը ժամանած են։ Անկէ ալ Կարսի ռուսական նահանգին մէջէն հիւսիսային ուղղութեամբ Կուր գետը հետեւելով մինչեւ Արտահան բարձրացած են, ուրկէ Հարպասոս գետին (Ճորոխ գետ) արեւմտեան կողմը գտնուող լեռնային դժուարանցանելի մասերը եկած են։ Անկէ փոխանակ քիչ մը անդին գըտնուող ծովը երթալու, հարաւային արեւմտեան ուղղութեամբ 200 քիլոմէթր հեռուն գտնուող Գիմնիաս (Բաբերդ) «մեծ քաղաք»ը հասան եւ դարձեալ 2000 մէթրի բարձրութիւն մը ունեցող Պոնտոսեան լեռներուն նեղ արահետէն Տրապեզոս ոտք կոխեցին։ Բոլոր ասոնք պարզապէս, օրերու եւ ճամբու տեւողութիւններ, հեռաւորութիւններ են ծանօթ ժողովուրդներու յայտնի բնակատեղիները դասաւորելու եւ իրար հետ համաձայնեցնելու համար։

Ժողովուրդներու մասին տրուած բացատրութիւնները ճիշդ կրնան ըլլալ. բայց եւ այնպէս զօրաւոր ցե-

ղերու կողմէ ճնշումի ենթարկուած վայրերուն գալով ատոնք վերջին փոփոխման ենթարկուած են: Այդ ցեղերը միշտ լեռնային սահմաններուն վրայ չէին կենար, այլ մասամբ լեռնէրէն դէպի բարձր տափաստանները կ՚արշաւէին եւ կը յարձակէին, ինչպէս օրինակի համար Թաօկոյլնները որոնք հիւսիսէն, նաեւ Փասխանցինները որոնք Արեւելքէն Կարինի դաշտը կ՚իջնային: Ես, սակայն, ինչպէս որ տակէ առաջ Թելէպօսէն մինչեւ Բասենի ձորը տանող ճամբուն մասին յայտնեցի իմ կարծիքս, այս վերջինէն մինչեւ Սեւ ծով ուղղուող մասին համար եւս Քսենոփոնի ճամբու յատակագիծին շուրջ կազմուած գաղափարներուն հակառակ եմ: Ընդհակառակը հաստատապէս համոզուած եմ որ Յոյները ամենապարզ եւ ամենակարճ ճամբան ընտրեցին, որ էր Կարնոյ դաշտին վրայէն հիւսիսային ուղղութեամբ դէպի Հարպաստի (Ճորոխ գետ) հովիտը, ուրկէ մինչեւ Գիմնիաս (Բաբերդ) բարձրանալով պտղաբեր եւ մեծաւ մասամբ ընդարձակ հովիտներէն Զիկանայի կիրճին վրայով Թէքէսեան լեռներէն (Թալաթթա՛, Թալաթթա՛) մինչեւ Տրապեզոն: Ես հոս Քսենոփոնի պատմածները մէջ բերելէ վերջ զանոնք իմ տեսակէտիս պիտի համաձայնեցնեմ: Արեւելքէն եկող Յոյները Քէօփրիւգիւղի մէջ ձգեր էինք:

«Այս տեղէն երկու մղոն եւ 10 փարասանգ ճամբայ կտրելէ վերջ լեռան կողերուն վրայ հասան, որ դէպի միւս կողմ դաշտերը կ՚առաջնորդէր, այնինքն թէ դէպի Քալիբացինները, Թաօկայինները եւ Փասխանցինները»: Բասենի դաշտին հիւսիսային կողմը լեռնաշղթաներ կան, որոնց մէջէն Արեւմուտքէն եկող գետ մը կ՚անցնի, զոր հետապնդելով այդ ուղղութեամբ (Քսենոփոն եւս տարբեր ուղղութիւն մը ցոյց չի տար: 40 քիլոմէթր (10 փարասանգ) մինչեւ Տէվէ Պոյուն ժամանեցին: Անիկա լեռան կող մըն է որ արեւմտեան կողմէն Բասենի դաշտին կը միանայ: Այդ կիրճը շատ բարձր չէ եւ հանդարտ բարձրացումէ մը վերջ դէպի Կարնոյ դաշտը կ՚առաջ-

նորդէ: Թէ այդ կիրճերը եւ թէ յարակից տափաստանները վերջին ռուսեւթուրք պատերազմին ատեն ժամանակաւորապէս գրաւուեցան Ռուսներէն: Այժմ սակայն բոլոր ատոնք Կարնոյ ամրութիւններու գօտիին մէջ կը գտնուին:

Երբ ես Քէօբրի-գիւղ-Հասանքալայէն գալով Տէվէ Պօյունի կը մօտենայի, Քսենոփոնը ձեռքս առի, եւ կարդացի քաջարութիւններու մասին իր բրած նկարագրութիւնները նաեւ հողային կացութեան եւ անցածին ու դարձածին շուրջ արձանագրած պատմութիւնը: Անտարակոյս Քսենոփոնի յառաջխաղացումը այս տեղը տեղի ունեցած է: Յոյները իրենց ճակատը հոն կազմեցին («ամէնպէս մը կեցան, որպէս թէ կ'ուզէին յարձակիլ») եւ գիշերանց լեռները հետագօտիչ գունդեր ղրկեցին — ճամբան միայն աջ կողմը (հիւսիսային) պիտի ըլլայ այդ — կիրճը բանալու համար: Յոյներուն գործունէութիւնը կատարելապէս կը նմանի 1877 Նոյեմբեր 4ին Ռուսներուն կողմէ Թուրքերուն վրայ կատարուած յարձակումին: Քսենոփոն երկրորդ անգամ ըլլալով կ'ըսէ թէ զինուորները կիրճին միւս կողմը «Դաշտին մէջ իջան», «ուր դէպի գիւղերը իջան, որոնց ամէնքն ալ պաշարով հարուստ էին»: Եւ սակայն Բասենի դաշտէն անդին այդ կողմի բովանդակ երկրին մէջ միայն մէկ դաշտ կայ, որ է Կարնոյ դաշտը: Այս վերջինը չափազանց ցուրտ է թէեւ, բայց շատ յուռթի է եւ ունի բարեբեր հող: Յետոյ Քսենոփոն 16 սթատիոն (11000 մէթր) ընդարձակութիւն ունեցող լեռան կողի մը վրայ կը խօսի, որ միայն Տէվէ Պօյունը կրնայ ըլլալ, որովհետեւ երբ Հասանքալէէն դէպի հիւսիս քալենք բարձր լեռներու առջեւ կը հասնինք, որուն վերջաւորութիւնը չի տեսնուիր: Ի վերջոյ կ'ըսէ որ այս լեռնային կողերը Քաղդէացիներուն, Թաոխացիներուն եւ Փասիանացիներուն կողմէ պաշտպանուած էին:

Քաղդէացիները Կարնոյ դաշտին արեւմտեան կողմէն մինչեւ հիւսիսային արեւմուտք երկարող գաւառ

լեռնաշղթայի մը մէջ կը նստէին: Այդ լեռնաշղթան կը գտնուի մինչեւ Սեւ ծով երկարող Հայաստանի (Ճորոխ գետ) եւ արեւմտեան Եփրատի մէջտեղը: Թաօկայքները Օլթիի եւ Արդուինի լերանց հովիտներուն մէջ կը բնակէին, փախանայքներն ալ Բասենի դաշտին մէջ: Փախանայքները արեւելքի կողմէն Տէվէ Պօյունի վրայով մինչեւ Կարինի դաշտը, Թաօկացիներն ալ հիւսիսէն մինչեւ միեւնոյն դաշտին հիւսիսակողմը գտնուող բլուրները հասած էին, ինչ որ կը բացատրուի սա խօսքերով «Քալիբացիները, Թաօկայքները եւ փախանայքները լերանց կողերուն վրայ իրարու դէմ յանդիման կը գտնուին»: Բնական է որ Քալիբացիները եւ Թաօկները իրենց իսկ իսկական շահերուն բերումով Կարնոյ դաշտին կողմը բնակող փախանայքներուն օգնութեան փութային եւ դանոնք Տէվէ Պօյում հասնող Յոյներուն դէմ պաշտպանէին: Կարելի բան չէ որ Յոյները Հասանքալէէն դէպի հիւսիս քալած ըլլան: Քալիբացիները, նամանաւանդ փախանայքները ինչո՞վ առնչուած էին Թաօկներուն պաշտպանութեանը համար այն կողմի լեռնային կիրճերը անցնելու, քանի որ իրենք այդտեղի պէտք մը չունէին: Նաեւ փասխանացիները իբրեւ դաշտի բնակիչներ Տէվէպօյունէն անցնելով Կարնոյ դաշտը կրնային հանիլ եւ պէտք չունէին Թաօկներուն վայրի ձորերէն եւ լեռներէն անցնելու: Ես այնպէս համոզուած եմ որ Բասենի դաշտէն դէպի հիւսիս չեն գացած, այլ դէպի արեւմուտք:

«Ասոր վրայ Թաօկներու երկրին մէջ քաշուեցան եւ հինգ. մղոն երեսուն փարազանկ եւ դարձան»: Կարնոյ դաշտէն քիչ մը դէպի հիւսիս գտնուող բլրակներու երկրին Թաօկներու մասին մէջ մտան պաշար հաւաքելու համար: Այս անցքը ընդհարումներ հարկադրեց, որովհետեւ Թաօկները իրենց հարուստ պարէնը, պաշարներն ու արջառը ամուր դիրքերու մէջ հաւաքած էին, եւ նախ հարկ էր այդ դիրքերը գրաւել: Յոյները 5 օր սպասեցին այդ նպատակաւ եւ այդ միջոցին այն-

քան պաշար եւ արջառ գրաւեցին որ մինչեւ Հարպասոս (Ճորոխ գետ) «եօթը օրէն միայն» կրցան վարել Քաղդէացիներու լեռնային երկրէն անցնիլ. բայց նոր ըսան չգտան որով կարենային Թաօքներէն առած իրենց արջառի արօտը արածեցնել»: Հարպասոսի (Ճորոխ գետ) լայն ձորին մէջէն քալեցին «դաշտի մը վրայով. Սկիւթենացիներու երկրէն, ամբողջ ութը օր եւ հասան Գիմնիաս կոչուած մեծ, հարուստ եւ բազմամարդ քաղաքը»:

Եւ մենք շատ մեծ հաւանականութեամբ Գիմնիասը այսօրուան Բաբերդի տեղը կը դաւանինք — չեմ հաւնար թէ ինչպէս ոմանք Կարինը Գիմնիասի տեղ կ'ընդունին. խնդիր է թէ Յոյները Կարինի դաշտէն հա ինչպէս կը հանին· Կարինէն Բաբերդ երեք ճամբայ կայ: Այդ ճամբաներէն երկուքը Քոփ եւ Եէհէն լեռներուն արեւմտեան ուղղութեամբ բարձր կիրճերէ կ'անցնին եւ Մատէն խանի մէջ կը միանան: Կոփ լեռան ըլրան ճամբան կարաւանի գլխաւոր ճամբան է եւ Տրապիզոնէն դէպի Կարին ու Վանայ կուսակալութիւնները եւ դէպի Պարսկաստան հաղորդակցութիւնը կ'ապահովէ: Անցեալ դարուն եօթանասնական թուականներուն շօսէ շինուեցաւ հոն, որ հիմա բոլորովին քայքայուած վիճակի մէջ է: Երրորդ ճամբան Էրզրումէն դէպի Հիւսիս Ճորոխ գետին վրայ գտնուող 1200 մեթր բարձր Սպեր քաղաքը կ'երթայ, շատ նեղ է եւ յարմար չէ իբրեւ կառք անցնելու ճամբայ: Շատ մարդ չանցնիր անկէ, որովհետեւ հաղորդակցութեան համար հարկ է բարձրաբերձ եւ դժուարին կիրճերէ անցնիլ:

Այս ճամբան բռնեցին ահա Յոյները եւ դէպի Սպեր առաջնորդուեցան: Հոգ կէ. Հարպասոսի (Ճորոխ գետ) վրայէն եւ Սկիւթինացւոց պտղաբեր երկրին մէջէն անցնելով դէպի Գիմնիաս (Բաբերդ) եկան: Այս տեղէն ալ Պոնտոսեան լեռներուն վրայէն դէպի Տրապիզոն ուղղուեցան: Ոմանք կը կարծեն որ Բաբերդէն անդին դէպի արեւելք Ճորոխի հովտին նեղ ճամբէն Բաշկար Տաղ կոչուած պոնտական լեռներուն վրայով

դէպի Րիզէ ուղղուած, եւ անկից ալ առանց ո եւ է կանոնաւոր ճամբու հետեւելու դէպի ծով առաջնորդող բազմաթիւ հովիտներէ եւ ձորերէ անցնելով Տրապիզոն հասած են։ Ես ասիկա ճշմարիտ չեմ կարծեր, ոչ ալ կ'ընդունիմ որ Բաբերդէն ուղղակի հիւսիսային ուղղութեամբ Փիթու՛ա լերան եւ Մուսէլայի վրայէն (2400 մեթր բարձր կիրճ մը) անցած ըլլան։ Ասանկ արահետաներէ ոչ մէկ բանակ կ'անցնի, յետոյ եւ ոչ մէկ կերպով ասիկա չի համապատասխաներ Քսենոփոնի տուած բացատրութեան։ Ուրեմն միայն երրորդ ճամբան կը մնար որ արեւելքէն քանի մը հարիւր մեթր բարձր Վավուքի կիրճէն շուրջանակի անցնելով գետեզերքի երկայնքին լայն, արօտներ եւ բազմամարդ հովիտներէն երկրորդ կիրճ մը, Զիկանայի կիրճը կը տանի եւ անկէ ալ Տրապեզոն։ Այս ճամբան բնութենէն պատրաստուած է եւ ամենադժուարին սարն անգամ ասկէ տարբեր ճամբէ մը չերթար, ուրկէ անցաւ նաեւ Քսենոփոն եւ Զիկանայի կիրճէն կամ կիրճին ճամբուն վրայ գտնուող բարձրութենէ մը տեսաւ ծովը (Թալաթթա. Թալաթթա.')։ Դառնանք մենք Քսենոփոնին։ Յոյները անոր հետ ճամբան շարունակեցին Վարդահանի եւ Կիւմիւշխանէի վրայով, ուր հասան հինգ օրէն, (110 քիլօմէթր մինչեւ Զիկանայի կիրճը), ինչ որ չափաւոր է։ Ամբողջ այս ճամբուն ընթացքին «ընդ հուր եւ ընդ սուր» անցուցին Գիմնիասի իշխանին թշնամի եղող այս երկիրը, կողոպտեցին եւ աւերակ դարձուցին։ Քսենոփոն Թէքէս կ'անուանէ այն լեռը կամ լեռները, ուրկէ Յոյները հինգերորդ օրը ծովը տեսան։ Բաբերդի եւ Զիկանայի կիրճին մէջտեղ նեղ հովիտի մը վրայ գիւղ մը կայ, որ քարտէսին մէջ Թէքքէ արձանագրուած է, մինչ ժողովուրդը զայն կ'անուանէ Թաշիէ։ Ասկէ մի միայն ամառները անցանելի եղող ճամբու մը միջոցաւ Մատէն խանի եւ Քօլաթ լերան վրայէն ուղղակի Տրապիզոն կ'երթցուի։ Շատ կարելի է որ Յոյները Թէքքէէն դէպի հիւսիս ուղղուած ըլլան։ Այս ճամբան հիմա անանցանելի է,

Ջորիները քանի մը ժամուան մէջ ամբողջ մարմինով ձիւնին մէջ մնացին: Առանկ պարագաներու մէջ ինծի համար անկարելի կ'ըլլար ձմեռ ատեն տեղի ունենալիք բանակի արշաւանք մը, մանաւանդ որ Յոյները չէին կրնար իրենց բեռներէն բաժնուիլ, այլ միշտ իրենց հետ կը տանէին զանոնք. իրենց մէջտեղը կ'առնէին որպէս զի տեղացիներէն չհետապնդուին եւ վնասի չենթարկուին:

Քսենոփոնի ճամբուն հետեւեցայ մինչեւ Զիկանայի կիրճը: Այս 2000 մէթր բարձր կիրճը Սեւ ծովէն հազիւ թէ 50 քիլօմէթր հեռու է: Ես երբ բարձրին էի Սեւ ծովը չկրցայ տեսնել, որովհետեւ լեռնաշղթայ մը կար առջեւս, ուրեմն ճամբորդներու բացատրութիւնները ճիշդ չէին: Երբ դէպի հիւսիս արեւելք ուղղուեցանք դէպի ձիւնածածկ բարձրութիւնները, հոն ժանտարմները ինծի կապոյտ անորոշութիւն կամ՝ շաղի մը ցոյց տուին զոր ես դիտակով ալ չկրցայ լաւ ճշդել եւ զայն իբրեւ Սեւ ծով համարեցին: Հոդ պէտք է ըլլայ արդարեւ: Այդ մասին կասկած չկար այլ եւս, Քսենոփոն իր ճամբէս քալած էր եւ թերեւս նոյն այս բարձրութիւններուն վրայ առաջնորդուած ուղեցոյցէն: Հոս էր որ ծովը տեսան, գրեթէ այսպէս, երբ տակաւին փետրուարի սովորական մշուշը չէր փարատած, «աչքերնուն մէջ ուրախութեան արցունքներով» եւ ուրախութեան աղաղակներ արձակեցին դէպի ետ մնացողները ուղղուած յարաճուն աղաղակներով. Թալաթթա՛, Թալաթթա՛ (Ծո՛վ, Ծո՛վ): Ճշմարտապէս Քսենոփոն ճիշդ այն դիրքին մէջ գտնուած է, որուն մէջ գտնուեցաւ նաեւ Քոլոմպոս 2000 տարի վերջ երբ այս վերջինին մարդիկը պոռացին «Երկի՛ր, երկի՛ր»:

«Ուղեցոյցը Յոյներուն գիւղ մը ցոյց տուաւ ուր կրնային կենալ» եւ հոն գիշերեցին (Մաստէն գիւղ՞ արդեօք): Զիկանա լեռը Քոլաթ լեռան շարունակութիւնը կը կազմէ եւ Քսենոփոն երկուքն ալ կ'անուանէ Թէքէս լեռներ: Յաջորդ օրերուն կիրճը անցան «եւ երեք օր քալեցին (10 փարսանգ) Մաքրոններու երկիրին մէջէն»

սայլինքն թէ 40 քիլօմէթրի չափ ետ եկան դէպի այ-սօրուան Ճէմիլիքը: Թէպէտ ճամբան կարճ էր բայց Մաքրոնեաններուն հետ պատերազմի հաւանականութեան պատճառաւ երկարեցաւ:

Քսենոփոն կ՚ըսէ «առաջին օրը անցանք Մաքրոնեան-րու եւ Սկիւթինացւոց սահմանը կազմող գետը», տախկա գարնան ափերը առատ ջուր ունեցող Մաչկա գետը պէտք ըլլայ: Այսօրուան ուղին գետին աջ եզերքին (արեւելեան) վրայ կը գտնուի, մինչդեռ այն ժամանակ ձախ եզերքին վրայ կը գտնուէր: Յոյները մինչեւ այ-սօր ծառերով ծածկուած այս գետը անցան համաձայ-նելով Մաքրոնեաններուն հետ, որոնք իրենց օգնեցին «եւ հետեւեցան անոնց մինչեւ Կողքիսցիներու սահմանը» այսինքն թէ մինչեւ այսօրուան Ծէմիլիքը: Անտեղէն Կողքիսցիները վանեցին առանձին գունդեր կազմելով «եւ երկու մղոն քալելով (7 փարսախ կամ 30 քիլօ-մէթր) դէպի ծով Տրապիզոն հասան»: Այս տեղին գա-ղութը Սինոպէն եկած էր դէպի Կողքիսցիներու երկիրը եւ սիրով ընդունեց զիրենք ուր Պիքսերեան բերանին առջեւ (Տէյիրմէն տէրէ) ամիս մը մնացին:

Բասենի դաշտէն սկսելով իմ ճամբաս հետապնդող մը բնական ընթացքով մը դարձած կ՚ըլլայ եւ ինչպէս որ մենք տեսանք այս ընթացքն է որ կը համապատաս-խանէ Քսենոփոնի պատմածներուն: Ք. Ա. փետրուարի կիսուն, Սարդիկէն ճամբայ ելլելէ տարի մը վերջ Յոյները ծով հասան ի մեծ զարմացումս թէ ժամանա-կակիցներու եւ թէ այսօրուայ ուսուցիչներուն: 8 հազար Հօպլիտ եւ 1800 թեթեւազէն մնացեր էին, գրեթէ 10 հազար հոգի: Ասոր համար է որ կ՚ըսուի. «Նահանջ Բիւրոց»: Տրապիզոնի մէջ լաւ ընդունեցան թէեւ բայց իրենց ալ պատահեցաւ այն ինչ որ ուրիշներու ալ կը պատահի, ուրախութեամբ ընդունեցան եւ սիրով լքուեցան: Տրապիզոնցիները հետզհետէ ճնշում կը բա-նեցնէին անոնց մեկնումին համար, մինչդեռ հարկ եղած թիւով փոխադրանաւեր չկրցան գտնել եւ ճամբան շա-

թունակելով պայծն դէպի քոյր պարտէզը Կեռասի քա-ղաքին, Կերասոս (Կիրասոն): Անտարակոյս զարմանալին այդ ճամբան այսօրուան չափ դէշ էր, ինչպէս Պլատա-նայի ճամբան: Մարտի եւ Ապրիլի ընթացքին Պոնտոսի լեռներուն ջուրերը կը հոսէին դէպի ծով եւ կամուրջէ-զուրկ առուներ եւ գետեր կը կազմէին եւ մինչեւ Մայիս ճահճային վիճակի մէջ կը մնային: Մինչեւ Պլատանա ճամբան լաւ է, անկէ անդին ձիով ալ [illegible] է երթալ, ամէն պարագայի մէջ լաւագոյն է Տրապիզոնէն կամ Պլատանայէն Կիրասոն նաւով երթալ:

Ք. Ա. 400 տարուան Մարտ 10ին Յոյները բազմա-թիւ կորուստներ ընդհարումներէ վերջ (Կողքիացիներու եւ ուրիշ լեռնային ժողովուրդներու հետ) հոն հասան: Տրապեզոնէն մինչեւ Կերասոս – 110 քիլոմէթր – միայն երեք օր տեւեց. ինչ որ կը նշանակէ թէ շատ լաւ քա-լեցին: Իրենց ծովու եւ ցամաքի ճամբան շարունակել-ու առաջ Կերասոսի մէջ տասը օր մնացին: Կրկին հաշիւ մը եթէ ընենք միայն ութը հազար վեց հարիւր հոգի ողջ գտնենք այլ եւս: «Ասոնք բարեբախտ էին հոն հասնե-լով, մինչ ուրիշներ. թշնամիին սուրէն, ցուրտէն եւ հի-ւանդութիւններէն հնձուեցան»:

# ՎԵՐՋԱԲԱՆ

Հոս կը վերջանան Քսենոփոնի արշաւանքին մասին մեր դիտողութիւնները ու նկատառումները: Իր բոլոր ծանրութեամբն ու հետաքրքրութեամբը անօրինակ բան մըն է այս պատմութեան մէջ եւ Մարաթոնի ու Սալամինէի յաղթանակներուն արդիւնքը կամ հաստատութիւնը: Անիկա կ'ապացուցանէ նաեւ որ ներքնապէս առողջ մշակոյթ մը (կուլտուրա) կը յաղթէ բարբարոսութեան: Պարսկական կայսրութեան քայքայումն ու ակարութիւնը մէջտեղ դնելով Մեծն Աղեքսանդրը հրապուրած է եւ զայն մղած է իր արշաւանքները կատարելու: Հազարներով տարիներ պատերազմական վրաններու եւ դերաններու աշխատանոցներուն մէջ թէ հիները եւ թէ նորերը նոյն հիացումը ունեցած են այս մարդկային գործերուն եւ անմահ փառքին համար:

Մենք ալ փորձեցինք զայն ուսումնասիրել, ժամանակագրական, պատմական, աշխարհագրական, քաղաքական եւ մանաւանդ զինուորական տեսակէտներով: Ամենամեծ դասը կարելի է առնել սակայն Քսենոփոնի հիանալի անձնաւորութենէն, որ փիլիսոփայաբար վարուեցաւ, որ կեանքի գործնականութեան մէջ լաւատեսութիւն ցոյց տուաւ, երբեք չյուսահատեցաւ, ամէն պատահարներէն, նոյն իսկ ամենավատագոյներէն լաւ արդիւնք մը հանել աշխատեցաւ եւ «Աստուծոյ վրայ» նաեւ իր անձնական ուժին վրայ վստահելով գործը երջանիկ վերջաւորութեան մը յանգեցուց, բնութեան եւ մարդոց վրայ յաղթանակ մը տարաւ:

«Քեզ մարդուն երգը բարձր կը հնչէ.
«Ինչպէս երգեհոնին եւ զանգակներուն ձայները.
«Փառք Տեառն, որ ես կրնամ երգել եւ գովել
«Գովասանք հիւսել քեզ մարդուն որ անմա՛հ է»:

ՎԵՐՋ

# ՏԱՐԵՑՈՅՑ ԿԻԿՕ

## Զուարթ հայերուն

## Ազգայնական հայերուն

# ՄԻԱԿ ԳԻՐՔԸ

Հրապարակ ելաւ. Ճշմարտապէս աննախընթաց բովանդակութեամբ, 50 մեծադիր ծաղրանկարներով (ազգային ու քաղաքական նիւթերու շուրջ) Մայրէ ի ծայր սրամիտ, զուարթ յօդուածներ Եր. Օտեան, Յ. Ալփիարէ, Թանիկէ. Լեւ Մէէ, Խաչագողէ եւ . . . Կիկօէ։

## „ԿԻԿՕ„Ի 1914Ի ՏԱՐԵՑՈՅՑԸ

Կաղանդի միակ նուէրցուն է, քանի որ ամէն Հայ կրնայ համարձակ տուն տանիլ։

Ամէնէն ընդարձակ Տարեցոյցը ըլլալով հանդերձ, ամէնէն աժանն է

## „ԿԻԿՕ„Ի ՏԱՐԵՑՈՅՑԸ

որ կ'արժէ միայն

## 5 ՂՐՈՒՇ

### ԳԱՒԱՌՆԵՐԸ 6 ՂՐՈՒՇ

Միակ կեդրոնատեղին է՝ Հայկ Կոչկարեան գրատուն։

Հասցէ՝ Կեդր. Նամակատուն Թիւ 92 փոստարկղ։

---



Տպագրութիւն Տ. ՏՕՂՐԱՄԱՃԵԱՆ

Կ. ՊՈԼԻՍ, Պապը Ալի ճատտէսի թիւ 49

# Հայկ Կօշկարեան Գրատուն

**Կ.Պոլիս, Պապը Ալի, Ճըղալ օղլու եօգուշու, թիւ 9**

Հրատարակչական ու գրավաճառական հրապարակին վրայ ծանօթ Պ. Հայկ Կօշկարեան այս անգամ հիմնեց նոր գրատուն մը, միակ բնաբան ունենալով՝

**ՃՇԴԱՊԱՀՈՒԹԻՒՆ, ԱՐԱԳՈՒԹԻՒՆ ԱԺԱՆՈՒԹԻՒՆ**

Ամէն անոնք, որ գործ ունեցած են այս գրատան հետ ըլլան Պոլիս թէ Գաւառը, միշտ գոհ մնացած են՝ տեսնելով որ Կօշկարեան գրատունը հաւատարիմ կը մնայ իր սկզբունքներուն եւ ամէն կերպով կը գոհացնէ զիրենք։

Կօշկարեան Գրատունը ունի ճոխ ու այլազան մթերք մը ամէն կարգի հրատարակութիւններու յարմար գիներով։ Սոյն գրատունը ունի նաեւ հրատարակչականի ճիւղ մը ուրկէ կրնան որոշ պայմաններով օգտուիլ լաւագոյն հրատարակութեան ունեցողները։

Կօշկարեան գրատունը միակ կեդրոնատեղին է հետեւեալ նոր ու օգտաշատ հրատարակութիւններուն —

| | Դրշ. | Փրյ. |
|---|---|---|
| Արեւելեան Հարցը (Լէօնառ Տուլո) | 20 | |
| Մտերիմ Զրոյցներ ամուսնական առողջապահութեան | 14 | |
| Հարազատ Որդի (վէպ՝ Եր. Սրմաքէշխանլեան) | 5 | |
| Հայկական հարցին վերջին փուլերը (Լիւդովիք Բոթամսոն) | 4 | 20 |
| Դիւներական սխալը (պատկերազարդ) | 4 | |
| Ամուսնական խնդիր (Յ. Ճաճրիկեան) | 1 | 20 |
| Ուր խեցինեք ժողվեցի (Յ. Տէր-Յակոբեան) | 5 | |
| Հայ Պանդուխտին (Դ. Ն. վրդ. Ալանեան) | 1 | 20 |
| Գրիգոր Օտեան կենսգր. (Մ. Կազմաջեան) | 14 | |
| Բերայի Հովարտաները (Լեւոն Շանթեան) | 4 | |
| Խենթը (Րաֆֆի) | 13 | |
| Ջալալէդդին (Րաֆֆի) | 3 | |
| Ժիրայր (Դ. Ն. վրդ. Ալանեան | 3 | |
| «Կիլօ»ի Տարեցոյց (910—912—913—914) | 2-5-4-5 | |
| Հայաստանի մէջէն պատկերներ. (Զօր. Հօֆմայսթր) | 15 | |

Յառաջիկային գրատունը պիտի ունենայ ընդարձակ ու ճոխ գրացուցակ մը։ Գաւառներէն եւ արտասահմանէն դիմողներու համար իր միակ հասցէն է.

**Կեդրոնական Նամակատուն 92 թիւ փոստարկղ**

Գաւառական վաճառողներու, գրադարաններու եւ գաւառի գրավաճառներու մասնաւոր զեղչեր։



ՊՈՆՏՈՍ ԵՒՔՍԻՆՈՍ
ՍԵՒ ԾՈՎ
ԹՐԱԿԻԱ
ՊԱՓԼԱԳՈՆԻԱ
ԲԻՒԹԱՆԻԱ
ՄՈՒՍԻԱ
ՓՈՔՐ ԱՍԻԱ
ՄԵԾ ՓՐԻՒԳԻԱ
ԿԱՊԱԴՈՎԿԻԱ
ԼԻԿԱՈՆԻԱ
ԿԱՐԻԱ
ՏԱՒՐՈՍ
ԿԻԼԻԿԻԱ
ԿԻՊՐՈՍ
ՀԱՅԱՍՏԱՆ
ՎԱՆ
ՄԻՋԱԳԵՏՔ
ՍԻՐԻԱ
ԱՐԱԲԻԱ
ԲԱԲԵԼՈՆ
ՄԻՋԵՐԿՐԱԿԱՆ ԾՈՎ
Մինչև Սև Ծով

